ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԷ°

37

ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ՄԱՆՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

ՄԱՍՆ Բ.



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1901.

ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ՄԱՆՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

## ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԲՆԱԳԻՐՔ

---

ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ, Է—Ժ

ԽԻԿԱՐ ԵՒ ԻՒՐ ԻՄԱՍՏՈՒԹԻՒՆՆ, ԱԳԱՊԵՏՈՍ ԵՒ ԻՒՐ ՅՈՐԴՈՐԱԿԱՆՔ ԱՌ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ, ԹՂԹԱԿՑՈՒԹԻՒՆ ԱԲԳԱՐՈՒ ԵՒ ՔՐԻՍՏՈՍԻ ԸՍՏ ՆՈՐԱԳԻՒՏ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ԵՓԵՍՈՍԻ, ԵՒ ԳԷՈՐԳԱՅ ՊԻՍԻԴԵԱՅ ՎԵՑՕՐԵԱՅՔ

ԳՐԵՑ

Հ. ՅԱԿՈՎԲՈՍ Վ. ՏԱՇԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1901.

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԷ.

ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ՄԱՆՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

## ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԲՆԱԳԻՐՔ

---

ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ, Է—Ժ

ԽԻԿԱՐ ԵՒ ԻՒՐ ԻՄԱՍՏՈՒԹԻՒՆՆ, ԱԳԱՊԵՏՈՍ ԵՒ ԻՒՐ ՅՈՐԴՈՐԱԿԱՆՔ ԱՌ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ, ԹՂԹԱԿՑՈՒԹԻՒՆ ԱԲԳԱՐՈՒ ԵՒ ՔՐԻՍՏՈՍԻ ԸՍՏ ՆՈՐԱԳԻՒՏ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ԵՓԵՍՈՍԻ, ԵՒ ԳԷՈՐԳԱՅ ՊԻՍԻԴԵԱՑ ՎԵՑՕՐԵԱՅՔ

ԳՐԵՑ

Հ. ՅԱԿՈՎԲՈՍ Վ. ՏԱՇԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1901.

# ԱԶԴ

Հաւաքմանս առաջին մասը լոյս տեսած է իբր վեց տարի յառաջ (Վիեննա 1895, Ազգ. Մատ. ԺԶ.) պարունակելով ուսումնասիրութիւններ գրոցՆեմեսիոսի, Պրոկղի, Խոսրովկայ, Եպիփանու եւ Սեկունդոսի՝ քանի մը բնագիրներով միասին: Իբր երկրորդ մաս դիտուած էր "Վարդապետութիւն Առաքելոց„ անվաւերականն եւ յարակից Թադդէի Կանոնքն եւ Կողբատոսի Թուղթը, բայց գործոյն ընդարձակուելովն անկախ լոյս տեսաւ· (Վիեննա 1896, Ազգ · Մատ. Ի:) Ուրիշ զբաղումներ արգելք եղան երկար ժամանակամիջոց մը՝ հաւաքման շարունակուելուն. եւ այսպէս այսօր միայն լոյս կը տեսնէ ներկայ հատորը՝ նախընթացին փոխարէն՝ իբր Երկրորդ մասն գործոյն:

Ծրագիրն եւ այլ հանգամանք ի հարկէ նոյն են, միակ տպագրական փոփոխութեամբ մը՝ որ կը ցաւինք թէ չէ գործադրուած արդէն առաջին մասին: Քանի որ գործս շարունակութիւն է, եւ պիտի յառաջ տարուի՝ որչափ պարագաները կը ներեն, բնական է որ նիւթերու կարգաթուերը շարունակեալ են (հոս՝ Է–Ժ·) եւ նոյնը պիտի ըլլայ յաջորդներուն ալ: Անկէ կրնար դիւրաւ շփոթութիւն ծագիլ եւ գործածութեան դժուարութիւն: Դիւրութեան եւ որոշութեան համար աւելցուցինք իւրաքանչիւր էջի վրայ վերնագիրներ՝ որ Հաւաքման Մասը կամ Հատորն, իւրաքանչիւր ուսումնասիրութեան կարգաթիւը, նիւթն եւ մանրաքաժանումները կը ցուցընեն:

Ներկայ հատորիս մէջ պարունակուած են չորս ուսումնասիրութիւններ, որոնք լոյս տեսած են նախնաբար "Հանդիսի„ մէջ, առաջինը կամ Խիկար արդէն 1899ին[1],

---

[1] Հմմտ. "Հանդ. Ամս.„ 1899, էջ 33—8, 74—9, 112—6, 129—33, 173—6, 198—201, 236—8, 272—7, 295—9, 334—8 եւ 372—7:

միւմները՝ 1900ին[1]: Սակայն՝ ինչպէս միւս մասերը՝ նաեւ ասոնք ունին հոս այլեւայլ յաւելուածոյ մասեր, որոնք յիշեալ թերթին մէջ չէին առնուած: Հոս յատկապէս կը յիշենք Ագապետոսի բնագրին ծանօթութիւնքն ու համեմատութիւնքն:

Տպագրական քանի մ'ուղղելեաց եւ նմաններու մասին կը յուսանք թէ ընթերցողք ներողամիտ կ'ըլլան:

ՀԵՂԻՆԱԿԸ

---

[1] Հմմտ. Ագապետոս՝ “Հանդ. Ամս.„ 1900, էջ 37—40, 77—81, 116—121, 165—172 եւ 201—7. — Թղթակցութիւն Աբգարու՝ անդ, 1900, էջ 257—270 եւ 321—8. — Գէորգ Պիսիդէս՝ անդ Թ. 9—10, էջ 308—315. Թ. 11, էջ 341—6 եւ Թ. 12:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ՄԱՆՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

---

## Է.

## ԽԻԿԱՐ ԵՒ ԻՒՐ ԻՄԱՍՏՈՒԹԻՒՆՆ

Խիկար հռչակուած անուն մըն է Հայոց քով՝ իբրեւ իմաստուն եւ առակախօս անձի, թէեւ ոչ ոք պայծառ գաղափար ունեցած է այս իմաստնոյն մասին։ Իւր հռչակն այնչափ մեծ է որ մինչեւ անգամ ազգային թերթ մը՝ Հայոց համբաւաւոր երգիծաբան Պարոնեանէն հրատարակուած՝ "Խիկար" անունը կրած է[1]. պատիւ մը՝ զոր Խիկար ուրիշ որեւէ ազգի մէջ չէ վայելած։ Նաեւ իբր մարդու անուն բաւական գործածուած կ'երեւայ։ Այսպէս ինծի ծանօթ են՝ ի մէջի այլոց՝ երկու կանայք՝ "Խիկար" անուանակոչութեամբ. մին ԺԵ. դարու կամ ճշդիւ 1455ին, միւսը 1627ին[2]։ Միւս կողմանէ նաեւ իբր ածական գործածուած կը գտնենք, ընդհանրապէս "իմաստուն" իմաստով արդէն Շնորհալւոյ քով, որ աղուխուն համար իւր

---

1 "Խիկար, Հանդէս ամսեայ", խմբ. Յ. Յ. Պարոնեան. Կ. Պոլիս (Ա—Դ տարի) 1884—9։

2 Առաջինը տես մեր "Ցուցակ", էջ 425. երկրորդը Ս. Կանայեանց, "Ցուցակ Հայ. ձեռագր. Ներսիսեան Դպրանոցի" (Տփ. 1893) էջ 40։

տռակաց մէջ կը գրէ՝ “Խելօքն ծով է ու խէնթը„[1]։ Այս իմաստով արդէն բառարանաց մէջ մտած է բառս, նաեւ Հիւպշման հայագիտին ստուգաբանական քերականութեան՝ արաբերէնէ փոխառեալ բառից շարքին մէջ[2]։ Մեր ռամկագիր բանաստեղծներուն մէջ ալ կայ “Մուրատ Խիկար„ մը, որուն “Մարտն կու գայր ծաղկըներով„ 16 տուն տաղը հրատարակեց Կ. Կոստանեանց ԺԷ. դարու ձեռագիրներէ, թէեւ նոյն տաղն ուրիշ տեղեր առհասարակ անանուն է, իսկ Հ. Ալիշան Ամդայ եպիսկոպոսին Մկրտչի Նաղաշի կը վերագրէ[3]։

Խիկարի անունն այսչափ հռչակուելէն ետքն՝ ըստ հինաւուրց սովորութեան զինքը հայացընելու փորձը միայն կը պակսէր։ Դարուս կէսէն վերջն այս պակասն ալ լեցուց Գաբր. արք. Այվազովսքի, որուն “Հազար եւ մի առակաւոր բանք„ գրքուկին[4]

---

1 Տես Մատենագրութիւնք Շնորհալւոյ, տպ. Վենետ. 1830, էջ 562, Առակ Թ։ Նման խօսք մը “Խելօքն եւ Խիկար տրտում է„ եւն՝ տես մեր “Ցուցակ„ էջ 167։

2 Հմմտ. Հայկազն. Բառ. (Ա 494) “Խիկար„ ուր բացի Շնորհալւոյ յիշեալ տեղէն յառաջ կը բերուին սա վկայութիւնք՝ “Խիկար եւ աղուաշ։ Պատմութիւն Խիկարայ իմաստնոյ։ Ոսկեփ.„։ — Հայագէտն Փր. Միւլլեր ի թերթին WZKM, VIII, 281 նկատած էր որ “խիկար„ ալ առնուելու է արաբերէնէ փոխառեալ բառերու շարքին մէջ, ուստի եւ Հիւպշման ալ ընդունած է իւր քերականութեան մէջ. (Hübschmann, Arm. Gram. I, 268 եւ 516) իբր = haiqār.

3 Տես Կ. Կոստանեանց, “Ժողովածու„, Բ, 5—7, գործածելով երկու տաղարաններ՝ 1647 եւ 1695 տարիները գրուած, յետոյ գտնելով նաեւ 1617ին գրուած տաղարանի մը մէջ ալ (Նոր Ժողովածու, Գ, էջ Ձ)։ Տաղիս վերջին տունը կը սկսի “Մուրատ Խիկար եղար յուսով„ եւն։ Թերի են տաղիս միւս հրատարակութիւնքն (տես “Բզմ.„ 1862, էջ 66. Ալիշանի “Յուշիկք„, Ա, 184. Միանսարեանց “Քնար Հայկական„, էջ 378—9), որոնց մէջ Մուրատ-Խիկար չի յիշուիր։

4 “Հազար եւ մի առակաւոր բանք ազգային եւ

մէջ ամէն քայլափոխին կը հանդիպի Խիկար անունը՝ իբրեւ նշանաւոր առակախօս Հայ ներկայանալով։ Այլազգութեան աւր պատճառը մեկնելու համար՝ երեք էջ տեղեկութիւն կը գրէ Խիկարայ վրայ Ցառաջաբանին մէջ. (էջ Ը—ԺԱ։) "Խիկար իմաստունը, կ'ըսէ, մեր ազգին մէջ գրեթէ նոյն համբաւն ունի, ինչ որ ունեցեր է Յունաց մէջ Եսովպոսը, Արաբացւոց մէջ Լոգմանը, Տաճկայ մէջ Նասրէտդինը . . . ։ Թէպէտեւ ստուգութեամբ յայտնի չէ մեզի թէ մեր Խիկարը որ ժամանակի մարդ է, եւ իւր առակներն ու խրատները գրով աւանդեր է թէ ոչ։ Շնորհալւոյն անունով գրուած հանելուկներէն մէկուն մէջ Խիկարայ անունը այս կերպով յիշուած է " . . . Խելօքն ծով է ու Խիկար„ ։ Ասով կրնայ կարծուիլ թէ Խիկարը Շնորհալիէն առաջ կամ գէթ նորա ժամանակակից անձ մի է. բայց շատ կարելի է որ այդ հանելուկն ալ Շնորհալւոյն օրերէն յետոյ շարադրուած լինի։ Նմանապէս հին Ոսկեփորիկի մը մէջ համառօտ հատուած մի կայ խրատական խօսքերու. եւ այն խրատները՝ հանդերձ առասպելական պատմութեամբ Խիկարայ՝ տպագրուած են ի Կոստանդնուպոլիս 1807ին Պընչէ +աղա+էն պարմա—Ըէ—Ն անունով գրքուկին մէջ։ Բայց այնպիսի եւ այնքան միայն աշխատութեամբ անկարելի էր որ այն համբաւը ստանար Խիկարը մեր ազգին մէջ. պէտք է որ ուրիշ շատ գրաւոր եւ անգին յիշատակներ թողած լինի նա իւր իմաստասիրութեանը։ Մեզի կ'երեւի թէ մեր ազգին մեծ մասին բերանը մինչեւ ցայժմ

---

տարբ„, Կ. Պոլիս, տպ. Արամեան 1874 12° էջք 286։ Այս գրքուկիս մէջ Խիկարայ մասին ըսուածներուն մտադրութիւն ընել կը հրաւիրէ նաեւ Ն. Քարամեանց (Verzeichnis der arm. Hss. Berlin 1888, p. 65), յաւելլով որ Խիկար առասպելեալ անձնաւորութիւն մըն է որուն կը տրուին բազմաթիւ առածներ, եւ թէ իւր մասին քննութիւն մ'ընել կարեւոր է։

պտըտող առակներուն ու առածներուն մեծ մասը Խիկարայ հնարածներն են, եւ Նասրէդդին Խոճայի անունով պատմուած առակներուն եւ նոցա բերանը դրուած առածներուն մէկ մասն ալ մեր Խիկարայ իմաստնոյ հնարածներն են . . . : Ցանկալի է որ առենով նաեւ գրաւոր աւելի ընդարձակ եւ ստոյգ տեղեկութիւն գտնուի հին ձեռագրաց մէջ նորա անձին եւ առակներուն վրայ: Խիկար իմաստունը՝ ոչ թէ Ասորեստանեայց Սենեքերիմ թագաւորին ատենադպիրն է եղեր (ինչպէս որ Պոլսոյ քաղաքին անհամ ու անժուր պատմութեան հեղինակը հնարեր է), հապա ինչպէս մենք կը կարծենք Արծրունեաց Սենեքերիմ թագաւորին օրերուն, այսինքն ասկից 850 տարիի չափ յառաջ, Հայաստանի մէջ անուանի եղած զուարճաբան առակախօսն ու ժողովրդական իմաստասէր էր:„

Խիկարի “Մէր„ ըլլալէն ետքը՝ կը մնար միայն պրպտել այն “գրաւոր եւ անգին„ յիշատակները ձեռագրաց մէջ: Ջուր աշխատանք անշուշտ. բայց վերջապէս “Խիկար„ ստորագրութեամբ մէկ երկու կտոր բան կրնար գտնուիլ: Արդէն նոյն անունը կը կրէ “Ամծախօսի„ զրոյցը, քանի մը տող բան, որուն սկիզբն է “Իսլըստանբօլ քաղաքն մէկ քարէ մարդ էր շինած եւ անունն Ամծախօս„ եւն[1]: Երկրորդ պատառիկ մը՝ դարձեալ “Խիկար„ անուամբ սա խորագիրը կը կրէ “Ջգինին հէնց խմեցէք որ զառիւծն սպանէք„[2]: Ասոնք ի հարկէ Խիկարի հետ գործ չունին. արդէն կը գտնուին այլուր “Առակաւոր բանից„ խառնակ հաւաքմանց մէջ, ուր ամէն կողմէ զրոյցներ եւ առակներ եկած թափուած են՝ նաեւ բուն Ողուեսագրոց կից[3]:

---

[1] Ցպագրուած՝ “Բզմ.„ 1870, էջ 253:

[2] Տպ. “Բզմ.„ 1870, էջ 263—4:

[3] Հմմտ. ի միջի այլոց մեր մատենադարանի թիւ 31 Բ (Առակ Բ), թ. 398, թղ. 1ա (Առակ Ա). “Ցուցակ„ էջ

Միայն մէկ գիրք մը կայ, որուն հետ կապ ունի Խիկարի անունը, այն ալ ճիշդ Այվազովսքիի այնպէս “անհամ ու անժուր„ հռչակածն է, այսինքն՝ “Խրատ„ կամ “Իմաստութիւն Խիկարայ„ հանդերձ իւր պատմութեամբն. գիրք մ'որ “հայ„ Խիկարի գործ չէ, այլ թարգմանութիւն արեւելեան հին եւ տարածուած վէպի մը։ Անշուշտ այս այլեւայլ տեսակէտով՝ նշանաւոր վէպս եղած է՝ Խիկարայ հռչակին պատճառը Հայոց մէջ։ Արդէն սիրուած գիրք մ'եղած է՝ բազմաթիւ տպագրութիւններ ունեցած ըլլալով, միշտ “Պղնձէ քաղաքի„ պատմութեան՝ ինչպէս նաեւ ուրիշ նոյն կարգի վէպերուն կից[1]։ Ասոնք արաբերէնէ թարգմանուած այլուստ ալ հանրածանօթ վէպեր են։ Յատկապէս “Պղնձէ քաղաքի„ թարգմանիչն է “Առաքել վարդապետ„ որ թարգմանած է “ի տաճիկ (= յարաբ.) լեզուէ ի Հայոց լեզուս„[2]։ Այս թարգմանն է թերեւս Առաքել վրդ. Անեցի կամ Շիրակվանեցի, որ ՈՀԱ (= 1222) թուականին նոյնպէս արաբերէնէ հայերէնի փոխադրած է “Թու-

---

178, 850։ Վերջինս տես նաեւ Հ. Ղ. Յովնանեան “Հետազօտութիւնք„ եւն Բ, 283։

1 “Գիրք պատմութեան վասն Պղնձէ քաղաքին եւ Հարցմունք աղջկանն եւ մանկան եւ պատմութիւն Խիկարայ եւ Փահլուլ թագաւորին„ եւն. Կ. Պոլիս 1708. նոյն 1731 (տես “Մատենագիտ.„ էջ 583)։ Սակայն գիրքս յաճախ տպուած ըլլալով՝ Խիկարայ իմաստութիւնն ալ յաճախ լոյս տեսած է. այսպէս տպ. 1807, էջ 71—106. տպ. 1834 էջ 72–105. տպ. 1850, էջ 69–102. տպ. 1861, էջ 73—105 եւն։ Հին տպագրութեան մը մէկ մասը տես “Ցուցակ„ էջ 996 (տպ. էջ 49–80)։

2 Հմմտ. մեր մատենադարանի թիւ 88, Ը եւ 466, Գ$^{b}$, (“Ցուցակ„, էջ 354, 942) “Պատմ. Պղնձէ քաղաքին զոր թարգմանեաց Առաքել վրդպն. ի Տաճիկ լեզուէ ի Հայոց լեզուս„։ Այս վէպիս մասին տես նաեւ Հ. Ղ. Յովն. “Հետազօտութիւնք„. Բ, 331—7։ Այս գործքիս եւ իւր արաբական բնագրին մասին ուրիշ անգամ։

փառ Մուլքին„ կամ “Աշէնչ-խօս„ երազահանը[1]: Այսու հանդերձ Խիկարայ պատմութիւնը յետոյ մնած ըլլալու է միւս վէպերուն շարքը. նախնաբար զատ եւ հնագոյն թարգմանութիւն մըն է՝ չենք տարակուսիր արդէն Շնորհալւոյ ծանօթ: Եթէ միայն “Պղնձէ քաղաքին„ կից բոլորովին ռամկախօս հայերէն բնագիրը ծանօթ ըլլար, կրնար անոր հնութեան մասին կասկած ըլլալ. բայց այժմ՝ երբ հայագէտն կոնիբիր հնագոյն եւ ընտրելագոյն՝ թէեւ դարձեալ բաւական աղաւաղ՝ բնագիր մը լոյս հանեց, պատճառ չկայ Շնորհալւոյն “Խիկարի„ յիշատակութեան մասին տարակոյս մ'ունենալու:

## 1.

Խիկարի պատմութիւնը շատոնց ծանօթ էր գիտնոց. վասն զի արաբերէնը կը գտնուի հռչակաւոր “Հազար ու մէկ գիշերներու„ զրուցաց կարգին մէջ, որ Արեւելից ամէնէն տարածուած գրքերէն է[2]: Սակայն Խիկարայ պատմութիւնը բուն

---

1 Տես մեր մատ. Թիւ 88, Բ1 (“Ցուցակ„, էջ 348) “Վասն երազի համար...: Այս երազահան գիրքս Խալաւ խանին եւ սուլթանին է, նովաւ յարեզան յԱնեցի որ անուամբ Առուտիլ ասեն... եւ Շէրաֆէտնեցի ի յԱնի քաղաքի մաւտն: Եւ ի թվականութեան Թորգոմեան ՈՀԱ (= 1222) եր՝ եւ անարժան Առաքել աբեղայս թարքմանեցի ի յարապ լեզւէ ի Հայոց բառ եւ ի յամնեանն Հայոց Մեծաց Սահմի Գ„ եւն: “Թերեւս„ ըսինք այս անձն է նաեւ “Պղնձէ քաղաքի„ թարգմանիչ Առաքելն, ինչպէս կը համարի նաեւ Հ. Ղ. Յովհաննեան՝ “Հետազօտ.„ Բ, 331: Սակայն անկարելի չէ որ տարբեր անձինք ըլլան: Առաքելի անուամբ գործքեր տես մեր “Ցուցակ„, էջ 1061. Երազահանի հատած մ'ալ “Բզմ.„ 1848, էջ 84:

2 “Հազար ու մէկ գիշերաց„ (Alf laila wa-laila) բնագրին հրատարակութեանց լաւագոյններէն է՝ Maximilian Habicht, Tausend und eine Nacht, Բրեսլաւ 1825—39 (Հտր. Ա—Ը), շարունակեց՝ H. L. Fleischer, Հտր. Ը—ԺԲ (Բրեսլաւ 1842—3): Եգիպտական ձեռագրէ մը հրատա-

“Հազար ու մէկ, զրոյցներէն չէ, ուստի եւ ոչ բուն Շէհրզատի պատմածին մասն էր նախնաբար. այլ անոր կցուած է՝ ուրիշ շատ վէպերու հետ՝ իբր յաւելուածական հաւաքում մը։ Այս յաւելուածական վէպերն առանձին հատորներով ալ կը գտնուին։ Հատոր մը Բարսելոնայի գրատան մէջ՝ որ կը պարունակէ Պատմութիւն Սողոմոնի, Ադ իբն Շէդդադ, Սինդբադ Նաւազնաց, Խիքար, Էլ-Ազմայի եւ այլ վէպեր, առիթ տուած էր Գինսբուրգ գիտնականին եւ անոր հետեւութեամբ Ռընէ-Բասէ արեւելագիտին՝ կարծելու որ “Հազար ու մէկ գիշերաց” նոր խմբագրութիւն մը գտած ըլլան։ Անոր դէմ համառօտ տեսութեան մը մէջ կը հաստատէ Լիցբարսկի[1] որ այս կարգի յաւելուածական հատոր-

րակեց W. H. Macnaghten (Կալկութա 1839--42 Հտր. Ա—Դ)։ Բուլաքի (ուր շատ անգամ լոյս տեսած է) առաջին տպագրութեան վրայէն անգլ. թարգմանեց W. Lane (Լոնդոն, 1841 եւ յաճախ, երեք հատոր)։ Գերմաներէն թարգմանութիւն մը՝ ի միջի այլոց հոգաց յիշեալ Հաբիխտ՝ ընկերակցութեամբ երկու գիտնոց (Բրեսլաւ 1825—36, տասնեւհինգ հատոր, Խիկար՝ ԺԳ, 86 եւն), դարձեալ G. Weil (Փորցհայմ, 1838–41, չորս հատոր, իբր 2000 պատկերով։) Գաղղիերէն մը նոյնպէս պատկերազարդ՝ Galland, Mille et une nuits, Պարիս, 1865–8, երկու հատոր։ Վերջապէս քննական հրատարակութիւն մ'ըրաւ՝ հանդերձ ներածութեամբ՝ A. Salhani յիսուսեանը (Բէյրութ, 1890, 5 հատոր)։ Անթիւ են ուրիշ թարգմանութիւնք, հրատարակութիւնք եւն։ Հայերէն ալ “Հազար ու մէկ գիշերներ, արաբական վէպեր” թարգմանած է Տ. Ց. Տէտէեան (Զմիւռնիա 1871), զոր այժմ առձեռն չունենալով՝ չենք գիտեր թէ ինչ կարգի գործ է։ Շատ թարգմանութիւններ խնամով եղած են՝ մեղմելով անհամեստ մասերը։

1 Տես M. Lidzbarski, Eine angeblich neuentdeckte Recension von 1001 Nacht, ի թերթին ZDMG, 1896, p. 152։ Բասէի գրութիւնը լոյս տեսած էր Պարիսի “Արեւելեան թերթին” մէջ (René-Basset, Un Mscr. des Mille et une nuits, ի թերթին Journ. As., Sér. IX, t. VI

ներ բաւական տարածուած են քրիստոնեայ Ասորւոց քով. եւ այսպիսի ձեռագրէ մըն էր՝ որ Սալխանի հրատարակեց՝ իբրեւ լրացուցիչ մասն իւր հրատարակած “Հազար ու մէկ գիշերաց„ իր անուանի “Արաբական Զրոյցքը„, որոնց սկիզբը հրատարակուած է Խիկարայ պատմութեան արաբերէն բնագիրը[1]: Այսու հանդերձ՝ ինչպէս նոյն հաւաքման շատ կէտերը՝ Խիկարայ վէպն ալ յատկապէս մտադրութեան արժանի չէր եղած՝ գրեթէ մինչեւ մօտ ժամանակներս:

Ուշադրութիւն գրաւած էր միայն այն կապը որ կը տեսնուէր Խիկարայ վէպին եւ Եզովպոսի վէպին մէկ մասին մէջ, պարագայ մ'որուն մտադիր եղած էր արդէն ասորագիտութեան հայրը՝ Ասեմանի[2]: Այս կէտին ուշադրութիւն դարձուցած են անկէ ետքը յատկապէս Եզովպոսի քննիչները, ոմանք սեմական Խիկարի, միւսները յունական Եզովպոսի տալով առաջնութիւնը, ի միջի այլոց՝ Ցինդէլ, Կէլլէր, Գաստէր եւ ուրիշներ, զորոնք հոս մի առ մի յիշելը մեր ծրագրէն դուրս է[3]:

---

407ff, որուն հիմը կը կազմէր Gintsburgի գրածն Ռուսական Հնախօսական Ընկերութեան տեղեկագրոց մէջ (Zapiski etc. VIII, 148ff.)

1 A. Salhâni, „Tarâïf fukâhât“ կամ Contes arabes. Beyrouth 1890, 8° pp. VIII+98: Խիկարայ պատմութիւնը կը գտնուի՝ I, p. 1—20:

2 Համմ. Assemani, Bibl. Or. II, 508 եւ III, 286: Առաջին տեղը կը նշանակէ պարզապէս Վատիկանի արաբական ձեռագրաց Թ. 40 որ կը պարունակէ “Hicari philosophi Mosulani praecepta„. Երկրորդ տեղը՝ Եբեդյեսուի մատենագրաց ցուցակին ծանօթութեանց մէջ կը նշանակէ Վատիկանի Թ. 55 արաբական ձեռագրին քաններորդ կտորը՝ “Պատմ. Խիկարայ իմաստնոյ„ (Historia Hicari sapientis), աւելցնելով որ “Խիկարայ վրայ գրեթէ նոյն բաները կը պատմուին՝ ինչ որ նաեւ Եզովպոսի վրայ„ եւն:

3 Եզովպոսի եւ Խիկարայ ունեցած առընչութեան մասին գրութիւնքը տես Կրումբախերի հռչակաւոր

Խիկարայ պատմութեան վրայ աւելի ուշադրութիւն դարձնելու պատճառ եղաւ Հոֆման իւր այլուստ ալ հռչակաւոր գրութեամբն "Քաղուածքներ Արեւելեան (Պարսից) վկայից ասորական վկայաբանութիւններէն„ որ լոյս տեսաւ գերմ. արեւելագիտական ընկերութեան հրատարակութեանց մէջ 1880ին[1]: Հոֆման յիշեալ վարքերէն եւ նման աղբիւրներէն, վանաց հիմնարկութեան զրոյցներէն եւն քաղած հանած է բազմաթիւ աշխարհագրական, պատմական եւն թանկագին տեղեկութիւններ Միջագետաց եւ շրջակայ աշխարհաց համար, ուր կան ինչ ինչ յարգի տեղեկութիւններ նաեւ մեզ Հայոցս համար: Հոս (էջ 182—3) խօսելով Խիկարայ զրուցին մասին, որուն ասորերէնին հանդիպած էր Բրիտ. թանգարանի հաւաքման մէջ, յատկապէս մատնանիշ կ'ընէ որ Խիկարայ զրոյցը կապ ունի Տովբիթայ գրոց հետ, ուր՝ անուանց քանի մը տարբերութեամբ համառօտիւ կը յիշուի Խիկարայ (ասոր. "Ախիկար„) զրոյցը, երբ մահամերձն Տովբիթ իւր Տուբիա որդւոյն խրատներ կու տայ եւ հետեւեալը կը յիշեցընէ (Տովբ. ԺԴ, 10.) "Որդեակ իմ, տես դու որպէս արար Ադամ Աքիաքարայ (յոյն՝ Ἀχειχάρ = "Ախիկար„ եւ "Խիկար„) որ սնոյց զնա, որպէս ի լուսոյ տարաւ զնա ի խաւար, որչափ չար անցոյց ընդ նա. այլ Աքիաքարոս ապրեցաւ, եւ նմա հատուցումն անդրէն հատուցաւ, եւ էջ նա փոխանակ նորա ի խաւարն. եւ Մանասէ արար զողորմութիւնս, եւ ապրեցաւ յաւուր մահու՝ զոր թաքոյցն նմա, եւ Ադամ անկաւ յորոգայթ եւ կորեաւ„ եւն: Ասի-

"Բիւզանդեան Մատենագրութեան Պատմութեան„ մէջ (K. Krumbacher, Geschichte der Byz. Litteratur. Միւնխէն 1897. էջ 897—8)·

1 G. Hoffmann, Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer (ի հաւաքման Abhandlungen für die Kunde des Morgenlandes, Bd. VII, Heft 3) Leipzig 18 80

կայ ճիշդ Խիկարայ պատմութեան ուղղեւծուծն է, միայն անուանց մէջ զանազանութիւն կայ։ Խիկար անգամ մը յիշուելէն ետքը՝ երկրորդ անգամ “Մանասէ„ կը յորջորջուի, իսկ Խիկարի քեռոր-դին “Նաթան„ կամ “Նադան„ կը կոչուի Հոս “Ա-դամ՝„ (բայց սինայական յոյն բնագիրը Ναδάβ,) պէսպիսութիւններ՝ որոնց մասին այժմ քննիչք պէտք եղած մեկնութիւնները կու տան։ Հոֆման կ'եզրակացընէր որ Խիկարի զրոյցը գրողին ծանօթ էր Տովբիթայ գիրքը, ուստի կերպով մը իբր լու-սաւորութիւն Տովբիթայ գրքին՝ անոր վրայ հիմ-նուած։ Այս կարծիքն ունեցան յետագայ քննչաց մէկ մասը, մինչդեռ ուրիշները հակառակը պնդե-ցին եւ կը պնդեն, որ արդէն աւելի բնական ալ կ'երեւայ, այսինքն թէ Խիկարայ պատմութիւնն արդէն գրաւոր ծանօթ էր Տովբիթայ գրոց հեղի-նակին։ Այսպէս կամ այնպէս՝ “Հազար ու մէկ գիշերաց„ անբաւ խառնակուտին մէջ կորսուած վէպը յանկարծ սերտ կապի մէջ մտաւ Ս. Գրոց մատեաններուն հետ, իբրեւ մին Հին Կտակարանի բազմաթիւ Անվ—եր գրքերուն՝ անոնց շարքին մէջ իւր պատշաճ տեղը գրաւելով։

Խիկարայ պատմութեան քննութեան նոր զարկ մ'ալ տուաւ հին սլաւերէն խմբագրութեան մը գիւտը, զոր գերմաներէն թարգմանութեամբ ծանօթացուց Եագիչ “Բիւզանդական թերթին„ մէջ 1892ին[1]։ Այս սլաւական խմբագրութիւնը յունարէն բնագրէ մը թարգմանուած է, որ այժմ չէ գտնուիր։ Այս միջոցներով կրնար արդէն քըն-նուիլ այն աղերսը զոր ունի մէկ կողմանէ Տովբիթայ յիշածը, Եսովպոսի համեմատական մասը, յոյն-սլաւական խմբագրութիւնն, եւ միւս կողմանէ սեմական խմբագրութիւնը, յատկապէս արաբա-

1 V. Jagič. Der weise Akyrios, ի թերթին „Byzantinische Zeitschrift“, ed. K. Krumbacher, I (1892), p. 107–126.

կանը (որ տարբ ձեռագրէ մըն է)։ Նոյն թերթին մէջ յիշեալ հրատարակութեան կից՝ հրատարակից ծանօթ գիտնականն է. Կուն՝ այս խնդրոց մասին համառօտ բայց հմտական յօդուած մը՝ մատենախօսական ճոխ տեղեկութիւններով[1], խնդրելով Եսովպայ զրուցքց նոր քննութիւն մը. այլուստ Կուն կարծակից է Հոֆմանի՝ Խիկարի զրոյցը Տովբիթայ գրոց վրայ հիմնուած համարելով։ Երկու տարի ետքը Բրունոյ Մայսնէր ընդարձակ եւ ամէն մասամբ հմտալից քննութիւն մը հրատարակեց՝ «Հետազօտութիւնք աղբերաց Խիկարայ պատմութեան» գերմ. արեւելագիտական թերթին մէջ[2]։ Այս վեց մասի բաժնուած գրութիւնը Խիկարայ մասին՝ առաջին ընդարձակ եւ ամէն կողմանէ հըմտալից քննութիւնն էր, ուր կը հետազօտուի նախ Խիկարայ արաբերէն բնագիրը. երկրորդ՝ այն ժամանակ տակաւին անտիպ ասորերէնը. երրորդ՝ Եսովպոսի եւ Խիկարայ աղերսը. չորրորդ՝ արաբերէնի եւ այլ թարգմանութեանց՝ ասորերէնին հետ ունեցած կապը, եւ վերջապէս հինգերորդ՝ Խիկարայ զրուցին հետքերն հին գրականութեան մէջ, յատկապէս Տովբիթայ գրոց յիշատակութիւնը։ Մայսնէր ընդունելով ալ որ Խիկարայ զրոյցը հնագոյն է քան Տովբիթայ գիրքը, սակայն գրաւոր վէպ մը չ'ընդունիր այն հնութեամբ, այլ բերնէ բերան պտըտող զրոյց մը յԱսորիս, որ յետոյ գրի առնուեցաւ եւ այն՝ նախ յունարէն. ուստի երբեք չմտաւ Հին Կտակարանի անվաւերականաց շարքին մէջ։ Եսովպոսի համեմատական մասն ալ հնագոյն կը համարէր քան Խիկարայ պատմութեան արդի տարի խմբագրութիւնը։

---

1 E. Kuhn, Zum weisen Akyrios, տես՝ B. Z. I. 127—130։ Հմմտ. նաեւ G. Bickellի գրածը ի թերթին Athenaeum, 1890, p. 700.

2 Bruno Meissner, Quellenuntersuchungen zur Haikârgeschichte, ի թերթին ZDMG, 1894, p. 171–87.

*քննութեանս մէկ երկու՝ նաեւ գլխաւոր կէտերը՝ հաւանական չերեւցան ուրիշ գիտնոց։ Նախ Մայսնէրի՝ Խիկարայ քով տարուոյ ամիսներուն եւ օրերուն նմանութեան մասին ըսածը (էջ 182) ճշդելու պէտք տեսաւ Վինդիշ գիտնականը*[1]։ *Աւելի յառաջ գնաց վերոյիշեալ Լիցբարսկի նոյն թերթին մէջ համառօտ յօդուածով մը*[2]՝ *Մայսների վերջին եզրակացութիւնքն ջրելով։ Իւր կարծիքն է որ Խիկարի վէպն արդէն Քր—ոէ կը գտնուէր Տովբիթայ հեղինակին առջեւ, հաւանականագոյնս եբրայեցերէն քան թէ յունարէն. յամենայն դէպս արդի ասորերէնը հնագոյն բնագիրն է՝ թէեւ ոչ նախնականը։ Այս կարծիքն է զոր իբր ուղիղ կ՚ընդունի այժմ Հարրիս, որուն վրայ քիչ մ՚ետքը։*

*Իրաց այս վիճակին մէջ էր որ մեր ալ դիտաւորութիւնն եղաւ Խիկարայ հայերէնը ծանօթացընել գիտնոց այն ծրագրով, որով լոյս տեսաւ Սեկունդոսի զրոյցը*՝[3] *իբրեւ շարունակութիւն վերջնոյս։ Մէկ կողմանէ երկարատեւ ուրիշ զբաղմունք, յատկապէս մեր մատենադարանի ձեռագրաց ցուցակագրութիւնը, միւս կողմանէ այն պարագայն որ ոեւէ լաւագոյն բնագրով ձեռագիր մը կը պակսէր մեզ (“Պղնձէ քաղաքի„ տպագրութիւնն աղաւաղ եւ նոր է) արգելք եղան ծրագրին իրագործման։ Մեր հաւաքման մէջ ձեռագիր մը չունինք Խիկարայ. այնպէս որ “Ցուցակին„ մէջ կրնայինք նշանակել՝ բաց ի հին տպագրութեան մէկ մասէն, որ Թ. 424ի ծայրը դրուած է (տես “Ցուցակ„ էջ 996), միայն հայատառ Ղփչաղերէն թարգմանութիւն մը (Թիւ 468, թղ. 53բ — 62ա) “Ուսլու Խիկարնին սօզու„*

---

1 E Windisch, Das Räthsel vom Jahre, *ի թերթին* ZDMG, 1894, p. 353—7.

2 M. Lidzbarski, Zum weisen Achikar, *անդ*՝ ZDMG, 1894, p. 671—75.

3 *Հայերէն տես “Մատ. մանր Ուսում.„ Վիեննա* 1895. *էջ* 162—294։

եւն, Հայերէնէ թարգմանուած՝ բայց համառօտ. (տես էջ 944։) Մատենախօսական բաժնին մէջ ալ նշանակած էինք գլխաւոր հրատարակութիւնքն մինչեւ այն տարին. (տես էջ 1097։) Այժմ այս պակասը բոլորովին լեցուած է՝ Հայերէն հնագոյն բնագրի մը հրատարակութեամբն հայագէտ Կոնիբէրի ձեռօք։ Սակայն նախ քան ասոր մասին խօսիլը՝ յիշելու ենք քանի մ'ուրիշ գործք ալ որ ասկէ յառաջ լոյս տեսան։

Վերոյիշեալ Լիտզբարսկի Պերլինի մատենադարանի մէջ Փելլիխի կամ Տուրաբդինի Նոր ասորերէն գաւառաբարբառով ձեռագիրներէն հաւաքած ու հրատարակած է ի մէջի այլոց "Պատմութիւններ եւ Երգեր„, կցելով նաեւ գերմ. թարգմանութիւն եւ բառացուցակ։ Ասոնց սկիզբը կայ նաեւ նոյն գաւառաբարբառով Խիկարայ պատմութիւնը՝ դիմացն ալ արաբերէն բնագիրը, որմէ թարգմանուած է Փելլիխի լեզուաւ[1]։ Այս գործքին մասին հռչակաւոր Նէօլդէքէի գրած քննադատութիւնն[2] աւելի լեզուագիտական տեսակէտով է։ Բուն Խիկարայ պատմութեան խնդրով եւ յատկապէս Տովբիթայ գրոց առընչութեան քննութեամբ զբաղեցաւ Ջէմս իւր արդէն հանրածանօթ "Անտիպ Անվաւերականք„ գրոց երկրորդ հատորին մէջ[3], ուր նկատած է նաեւ Խիկարայ մէկ առածին

---

1 M. Lidzbarski, Geschichten und Lieder aus den neuaramäischen Handschriften der kgl. Bibl. zu Berlin (Beiträge zur Volks- und Völkerkunde, Bd. IV) Weimar, 1896, 8° pp. VIII+312.

2 Th. Nöldecke ի թերթին ZDMG, 1896, p. 302 ff.

3 R. James, Apocrypha Anecdota, second series (ի հաւաքման Textes and Studies, ed. J. Armitage Robinson, Vol. V, Nr. 1) Cambridje 1897, 8° pp. CII+174. Գործքիս առաջին հատորը նոյն հաւաքման մէջ լոյս տեսած է (Textes etc. Vol. II, Nr. 3)։ Դժբախտաբար ճիշդ Բ. հատորն

եւ Աւետարանաց չար ծառային (Մատթ․ ԻԴ, 48 եւն) նմանութեան աղերսը։ Նոր Կտակարանի քանի մ'ուրիշ նմանութեանց աղերսն ալ քննած է նոյն գիտնականը՝ անգղ․ թերթի մը մէջ նորերս զետեղած մէկ յօդուածովը[1]։ Նոյն միջոցին այս խնդրին քննութեամբ զբաղած է նաեւ Դիլլոն, որ իւր գրութեան իբրեւ նախաճաշակ հատուած մը հրատարակած է ուրիշ անգղ․ թերթի մը մէջ[2]․ իսկ ամբողջ գործքն անշուշտ չ'ուշանար լոյս տեսնելու։ Այս միջոցներուն վերջապէս լոյս տեսաւ հատուած մ'ալ հայերէն լեզուաւ[3] "Ա․ Ա․" ստորագրութեամբ, որ՝ Խիկարայ եւ Վենետիկոյ ձեռագրին մասին համառօտ տեղեկութիւն մը տալէն ետքը, կը ծանուցանէր նաեւ թէ Կոնիբիր հրատարակելու է հայերէն բնագիրն, ինչպէս թղթով ծանուցած էր Հայագէտը։ Ահա այս ծանուցուած գործքն է զոր այժմ առջեւնիս ունինք՝ լիակատար քան նախընթաց բոլոր հրատարակութիւնները։ Հայագէտ Կոնիբիր բարեհաճած էր օրինակ մը խաւրել մեզ։

"Պատմութիւն Խիկարայ՝ ասորի, արաբական, հայ, եթովպական, յոյն եւ սլաւոնեան թարգմանութիւններէն"[4]․ այս է գրքին տիտղոսը, որուն գործակցած են երեք հոգի, հայագէտն Կոնիբիր, Ռ․ Հարրիս եւ ուսումնական ծանօթ օրիորդն Ագնէս Սմիթ Լիուիս․ վասն զի՝ ինչպէս կ'ըսէ հրատարակիչը, Խիկարայ վէպն այնչափ բազմազգի

---

ուր Խիկարայ մասին խօսուած է, չունինք այժմ առձեռն, ինչպէս նաեւ յաջորդ կրկին յօդուածները։

1 Տես „Guardian“ 1898, Febr. 2, p. 163.

2 E. J. Dillon ի թերթին Contemporary Review, 1898, March.

3 Տես "Բզմ․" 1898․ էջ 488—492։

4 „The Story of Ahikar, from the Syriac, Arabic, Armenian, Ethiopie, Greek and Slavonik Versions, by F. C. Conybeare, J. Rendel Harris and Agnes Smith Lewis. London, 1898, 8° pp. LXXXVIII+162+74.

ձեւերով եւ լեզուներով կը գտնուի՝ որ դժուարաւ միակ գիտնական մ՚ամբողջ ատաղձը գործածել եւ առանձին հրատարակել ու թարգմանել կրնայ։ Ներկայ գործքիս մէջ Հարրիս հոգացած է քննական ներածութիւնն, ասորերէն բնագրին հրատարակութիւնն ու թարգմանութիւնը. Հայագէտն Կոնիբիր՝ հայերէն բնագիրն ու թարգմանութիւնը. Ագնէս Լիուիս՝ արաբական բնագիրն ու թէ անոր եւ թէ սլաւոնականին թարգմանութիւնը։ Գործքն ըստ այսմ երեք մասէ կը բաղկանայ. նախ ընդարձակ քննական ներածութենէ մը (էջք Ա—ՁԸ), երկրորդ՝ անգղ. թարգմանութիւններէ՝ սլաւոնական բնագրին (Եակիչի գերմ. թարգմանութեան վրայէն, էջ 1—23), հայերէնին (էջ 24—55), ասորերէնին (էջ 56—82) եւ արաբերէնին (էջ 85—118). երրորդ՝ հրատարակութիւններէ բնագիրներու, որոնց սկիզբը դրուած է Եսովպոսի յունարէն համեմատական մասերը (էջ 119—124), յետոյ “Խրատք եւ իմաստութիւն Խիկարայ„ հայերէն (էջ 125—162)։ Գրքին վերջին ծայրէն կը սկսին սեմական բնագիրք, այսինքն արաբերէնն (էջ 1—32) եւ ասորերէնը (էջ 33—74)։ Ամբողջ գործքը խնամով աշխատասիրուած է, ուստի նաեւ բնագիրներու հրատարակութիւնքն։

Մեզի համար կարեւոր է յատկապէս հայերէնը, զոր հոս առաջին անգամ հրատարակուած կը գտնենք Պարիսի չորս, Պոդլեան երկու, Վենետկոյ մէկ եւ Էջմիածնի մէկ ձեռագրին համեմատ, շատ տարբեր ու հնագոյն քան “Պղնձէ քաղաքի„ տպագրութիւնը։ Այսու հանդերձ բաւական աղաւաղ է բնագիրը նաեւ այս հնագոյն ձեւին մէջ։ Մենք կը յուսանք հայերէն բնագրին որպիսութեան, անոր ու միւս բնագրաց աղերսին եւ ընդհանրապէս Խիկարայ զրուցին բովանդակութեան մասին քանի մը դիտողութիւններ ընել հետզհետէ։ Միայն կանխենք ըսել որ կը բաղձայ-

փառ Մուլքին" կամ "Աղէկխօս" երազահանը[1]։ Այսու հանդերձ Խիկարայ պատմութիւնը յետոյ մտած ըլլալու է միւս վէպերուն շարքը. նախնաբար զատ եւ հնագոյն Թարգմանութիւն մըն է՝ չենք տարակուսիր արդէն Շնորհալւոյ ծանօթ։ Եթէ միայն "Պղնձէ քաղաքին" կից բոլորովին ռամկախօս հայերէն բնագիրը ծանօթ ըլլար, կրնար անոր հնութեան մասին կասկած ըլլալ. բայց այժմ՝ երբ հայագէտն Կոնիբէիր հնագոյն եւ ընտրելագոյն՝ թէեւ դարձեալ բաւական աղաւաղ՝ բնագիր մը լոյս հանեց, պատճառ չկայ Շնորհալւոյն "Խիկարի" յիշատակութեան մասին տարակոյս մ'ունենալու։

## 1.

Խիկարի պատմութիւնը շատոնց ծանօթ էր գիտնոց. վասն զի արաբերէնը կը գտնուի հռչակաւոր "Հազար ու մէկ գիշերներու" զրուցաց կարգին մէջ, որ Արեւելքից ամենէն տարածուած գրքերէն է[2]։ Սակայն Խիկարայ պատմութիւնը բուն

[1] Տես մեր մատ. Թիւ 88, Բ1 ("Ցուցակ", էջ 348) "Վասն երազի համար...։ Այս երազահան գիրքս Խալաւ խանին եւ սուլթանին է, նովաւ յարեղան յԱնեցի որ անուամբ Առ—ոփէլ ասեն... եւ Շիրակւանեցի ի յԱնի քաղաքի մաւտն։ Եւ ի Թվականութեան Թորգոմեան ՈՀԱ (= 1222) էր՝ եւ անարժան Առաքել աբեղայս Թարքմանեցի ի յարապ լեզւէ ի Հայոց բառ եւ ի յամենանն Հայոց Մեծաց Սահմի Գո եւն։ "Թերեւս" ըսինք այս անձն է նաեւ "Պղնձէ քաղաքի" Թարգմանիչ Առաքելն, ինչպէս կը համարի նաեւ Հ. Ղ. Ցովհաննեան՝ "Հետազօտ." Բ, 331։ Սակայն անկարելի չէ որ տարբեր անձինք ըլլան։ Առաքելի անուամբ գործքեր տես մեր "Ցուցակ", էջ 1061. Երազահանի համառօտ մ'ալ "Բզմ." 1848, էջ 84։

[2] "Հազար ու մէկ գիշերաց" (Alf laila wa-laila) բնագրին հրատարակութեանց լաւագոյններէն է՝ Maximilian Habicht, Tausend und eine Nacht, Բրեսլաւ 1825—39 (Հտր. Ա—Ը), շարունակեց՝ H. L. Fleischer, Հտր. Ը—ԺԲ (Բրեսլաւ 1842—3)։ Եգիպտական ձեռագրէ մը հրատա-

“Հազար ու մէկ„ զրոյցներէն չէ, ուստի եւ ոչ բուն Շէհրզատի պատմածին մասն էր նախնաբար. այլ անոր կցուած է՝ ուրիշ շատ վէպերու հետ՝ իբր յաւելուածական հաւաքում մը։ Այս յաւելուածական վէպերն առանձին հատորներով ալ կը գտնուին։ Հատոր մը Բարսելոնայի գրատան մէջ՝ որ կը պարունակէ Պատմութիւն Սողոմոնի, Ադ իբն Շէդդադ, Սինդբադ Նաւագնաց, Խիքար, Էլ·Ազմայի եւ այլ վէպեր, առիթ տուած էր Գինսբուրգ գիտնականին եւ անոր հետեւութեամբ Ռընէ-Բասէ արեւելագիտին՝ կարծելու որ “Հազար ու մէկ գիշերաց„ նոր խմբագրութիւն մը գտած ըլլան։ Ասոր դէմ համառօտ տեսութեան մը մէջ կը հաստատէ Լիցբարսկի[1] որ այս կարգի յաւելուածական հատոր-

րակեց W. H. Macnaghten (Կալկուտտա 1839--42 Հտր. Ա—Դ)։ Բուլաքի (ուր շատ անգամ լոյս տեսած է) առաջին տպագրութեան վրայէն անգղ. թարգմանեց W. Lane (Լոնդոն, 1841 եւ յաճախ, երեք հատոր)։ Գերմաներէն թարգմանութիւն մը՝ ի միջի այլոց հոգաց յիշեալ Հաբիխտ՝ ընկերակցութեամբ երկու գիտնոց (Բրեսլաւ 1825—36, տասնեւհինգ հատոր, Խիկար՝ ԺԳ, 86 եւն), դարձեալ G. Weil (Փորցհայմ, 1838–41, չորս հատոր, իբր 2000 պատկերով։) Գաղղիերէն մը նոյնպէս պատկերազարդ՝ Galland, Mille et une nuits, Պարիս, 1865–8, երկու հատոր։ Վերջապէս քննական հրատարակութիւն մ'ըրաւ՝ հանդերձ ներածութեամբ՝ A. Salhani յիսուսեանը (Բէյրութ, 1890, 5 հատոր)։ Անթիւ են ուրիշ թարգմանութիւնք, հրատարակութիւնք եւն։ Հայերէն ալ “Հազար ու մէկ գիշերներ, արաբական վէպեր„ թարգմանած է Տ. Թ. Տէտէեան (Զմիւռնիա 1871), զոր այժմ առձեռն չունենալով՝ չենք գիտեր թէ ինչ կարգի գործ է։ Շատ թարգմանութիւններ խնամով եղած են՝ մեղմելով անհամեստ մասերը։

1 Տես M. Lidzbarski, Eine angeblich neuentdeckte Recension von 1001 Nacht, ի թերթին ZDMG, 1896, p. 152։ Բասէի գրութիւնը լոյս տեսած էր Պարիսի “Արեւելեան թերթին„ մէջ (René-Basset, Un Mscr. des Mille et une nuits, ի թերթին Journ. As., Sér. IX, t. VI

ներ բաւական տարածուած են քրիստոնեայ Ասորւոց քով. եւ այսպիսի ձեռագրէ մըն էր՝ որ Սալխանի հրատարակեց՝ իբրեւ լրացուցիչ մասն իւր հրատարակած "Հազար ու մէկ գիշերաց", իր անուանի "Արաբական Զրոյցքը", որոնց սկիզբը հրատարակուած է Խիկարայ պատմութեան արաբերէն բնագիրը[1]։ Այսու հանդերձ՝ ինչպէս նոյն հաւաքման շատ կէտերը՝ Խիկարայ վէպն ալ յատկապէս մտադրութեան արժանի չէր եղած՝ գրեթէ մինչեւ մօտ ժամանակներս։

Ուշադրութիւն գրաւած էր միայն այն կապը որ կը տեսնուէր Խիկարայ վէպին եւ Եզովպոսի վէպին մէկ մասին մէջ, պարագայ մ՚որուն մտադիր եղած էր արդէն ասորագիտութեան հայրը՝ Ասեմանի[2]։ Այս կէտին ուշադրութիւն դարձուցած են անկէ ետքը յատկապէս Եզովպոսի քննիչները, ոմանք սեմական Խիկարի, միւսները յունական Եզովպոսի տալով առաջնութիւնը, ի միջի այլոց՝ Ցինդէլ, Կելլէր, Գաստէր եւ ուրիշներ, զորոնք հոս մի առ մի յիշելը մեր ծրագրէն դուրս է[3]։

---

407ff, որուն հիմը կը կազմէր Gintsburgի գրածն Ռուսական Հնախօսական Ընկերութեան տեղեկագրոց մէջ (Zapiski etc. VIII, 148ff.)

1 A. Salhâni, „Tarâïf fukâhât“ կամ Contes arabes. Beyrouth 1890, 8° pp. VIII+98։ Խիկարայ պատմութիւնը կը գտնուի՝ I, p. 1—20։

2 Համմ. Assemani, Bibl. Or. II, 508 եւ III, 286։ Առաջին տեղը կը նշանակէ պարզապէս Վատիկանի արաբական ձեռագրաց Թ. 40 որ կը պարունակէ "Hicari philosophi Mosulani praecepta". երկրորդ տեղը՝ Եբեդյեսուի մատենագրաց ցուցակին ծանօթութեանց մէջ կը նշանակէ Վատիկանի Թ. 55 արաբական ձեռագրին քաներորդ կտորը՝ "Պատմ. Խիկարայ իմաստնոյ" (Historia Hicari sapientis), աւելցնելով որ "Խիկարայ վրայ գրեթէ նոյն բաները կը պատմուին՝ ինչ որ նաեւ Եզովպոսի վրայ" եւ.ն։

3 Եզովպոսի եւ Խիկարայ ունեցած առընչութեան մասին գրութիւնքը տես Կրումբախերի Հռչակաւոր

Խիկարայ պատմութեան վրայ աւելի ուշադրութիւն դարձնելու պատճառ եղաւ Հոֆման իւր այլուստ ալ հռչակաւոր գրութեամբն "Քաղուածքներ Արեւելեան (Պարսից) վկայից ասորական վկայաբանութիւններէն" որ լոյս տեսաւ գերմ. արեւելագիտական ընկերութեան հրատարակութեանց մէջ 1880ին[1]։ Հոֆման յիշեալ վարքերէն եւ նըման աղբիւրներէն, վանաց հիմնարկութեան զրոյցներէն եւն քաղած հանած է բազմաթիւ աշխարհագրական, պատմական եւն թանկագին տեղեկութիւններ Միջագետաց եւ շրջակայ աշխարհաց համար, ուր կան ինչ ինչ յարգի տեղեկութիւններ նաեւ մեզ Հայոցս համար։ Հոս (էջ 182—3) խօսելով Խիկարայ զրուցին մասին, որուն ասորերէնին հանդիպած էր Բրիտ. Թանգարանի հաւաքման մէջ, յատկապէս մատնանիշ կ'ընէ որ Խիկարայ զրոյցը կապ ունի Տօվբիթեայ գրոց հետ, ուր՝ անուանց քանի մը տարբերութեամբ համառօտիւ կը յիշուի Խիկարայ (ասոր. "Ախիկար") զրոյցը, երբ մահամերձն Տօվբիթ իւր Տուբիա որդւոյն խրատներ կու տայ եւ հետեւեալը կը յիշեցընէ (Տովբ. ԺԴ, 10.) "Որդեակ իմ, տես դու որպէս արար Ադամ Աքիաքարայ (յոյն՝ Ἀχειχάρ = "Ախիկար" եւ "Խիկար") որ սնոյց զնա, որպէս ի լուսոյ տարաւ զնա ի խաւար, որչափ չար անցոյց ընդ նա. այլ Աքիաքարոս ապրեցաւ, եւ նմա հատուցումն անդրէն հատուցաւ, եւ էջ նա փոխանակ նորա ի խաւարն. եւ Մանասէ արար զողորմութիւնս, եւ ապրեցաւ յաւուր մահու՝ զոր թաքոյցն նմա, եւ Ադամ անկաւ յորոգայթ եւ կորեաւ" եւն։ Ասի-

---

"Բիւզանդեան Մատենագրութեան Պատմութեան" մէջ (K. Krumbacher, Geschichte der Byz. Litteratur. Միւնխէն 1897. էջ 897—8).

[1] G. Hoffmann, Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer (ի հաւաքման Abhandlungen für die Kunde des Morgenlandes, Bd. VII, Heft 3) Leipzig 18 80

ներ բաւական տարածուած են քրիստոնեայ Ասորւոց քով. եւ այսպիսի ձեռագրէ մըն էր՝ որ Սալխանի Հրատարակեց՝ իբրեւ լրացուցիչ մասն իւր Հրատարակած “Հազար ու մէկ գիշերաց”, իր անուանի “Արաբական Զրոյցքը”, որոնց սկիզբը Հրատարակուած է Խիկարայ պատմութեան արաբերէն բնագիրը[1]։ Այսու Հանդերձ՝ ինչպէս նոյն Հաւաքման շատ կէտերը՝ Խիկարայ վէպն ալ յատկապէս մտադրութեան արժանի չէր եղած՝ գրեթէ մինչեւ մօտ ժամանակներս։

Ուշադրութիւն գրաւած էր միայն այն կապը որ կը տեսնուի Խիկարայ վէպին եւ Եսովպոսի վէպին մէկ մասին մէջ, պարագայ մ'որուն մտադիր եղած էր արդէն ասորագիտութեան Հայրը՝ Ասեմանի[2]։ Այս կէտին ուշադրութիւն դարձուցած են անկէ ետքը յատկապէս Եսովպոսի քննիչները, ոմանք սեմական Խիկարի, միւսները յունական Եսովպոսի տալով առաջնութիւնը, ի միջի այլոց՝ Ցիւնդել, Կելլեր, Գաստէր եւ ուրիշներ, զորոնք Հոս մի առ մի յիշելը մեր ծրագրէն դուրս է[3]։

---

407ff, որուն Հիմը կը կազմէր Gintsburgի գրածն Ռուսական Հնախօսական Ընկերութեան տեղեկագրոց մէջ (Zapiski etc. VIII, 148ff.)

1 A. Salhâni, „Taraîf fukâhât“ կամ Contes arabes. Beyrouth 1890, 8° pp. VIII+98։ Խիկարայ պատմութիւնը կը գտնուի՝ I, p. 1—20։

2 Հմմտ. Assemani, Bibl. Or. II, 508 եւ III, 286։ Առաջին տեղը կը նշանակէ պարզապէս Վատիկանի արաբական ձեռագրաց թ. 40 որ կը պարունակէ “Hicari philosophi Mosulani praecepta”. երկրորդ տեղը՝ Եբեդյեսուի մատենագրաց ցուցակին ծանօթութեանց մէջ կը նշանակէ Վատիկանի թ. 55 արաբական ձեռագրին քաներորդ կտորը՝ “Պատմ. Խիկարայ իմաստնոյ” (Historia Hicari sapientis), աւելցընելով՝ որ “Խիկարայ վրայ գրեթէ նոյն բաները կը պատմուին՝ ինչ որ նաեւ Եսովպոսի վրայ” եւն։

3 Եսովպոսի եւ Խիկարայ ունեցած առընչութեան մասին գրութիւնքը տես Կրումբախերի Հռչակաւոր

Խիկարայ պատմութեան վրայ աւելի ուշադրութիւն դարձնելու պատճառ եղաւ Հոֆման իւր այլուստ ալ հռչակաւոր գրութեամբն “Քաղուածքներ Արեւելեան (Պարսից) վկայից ասորական վկայաբանութիւններէն„ որ լոյս տեսաւ գերմ. արեւելագիտական ընկերութեան հրատարակութեանց մէջ 1880ին[1]։ Հոֆման յիշեալ վարքերէն եւ նըման աղբիւրներէն, վանաց հիմնարկութեան զրոյցներէն եւն քաղած հանած է բազմաթիւ աշխարհագրական, պատմական եւն թանկագին տեղեկութիւններ Միջագետաց եւ շրջակայ աշխարհաց համար, ուր կան ինչ ինչ յարգի տեղեկութիւններ նաեւ մեզ Հայոցս համար։ Հոս (էջ 182—3) խօսելով Խիկարայ զրուցին մասին, որուն ասորերէնին հանդիպած էր Բրիտ. Թանգարանի հաւաքման մէջ, յատկապէս մատնանիշ կ'ընէ որ Խիկարայ զրոյցը կապ ունի Տօվբիթայ գրոց հետ, ուր՝ անուանց քանի մը տարբերութեամբ համառօտիւ կը յիշուի Խիկարայ (ասոր. “Ախիկար„) զրոյցը, երբ մահամերձն Տովբիթ իւր Տուբիա որդւոյն խրատներ կու տայ եւ հետեւեալը կը յիշեցընէ (Տովբ. ԺԴ, 10.) “Որդեակ իմ, տես դու որպէս արար Ադամ Աքիաքարայ (յոյն՝ Ἀχειχάρ = “Ախիկար„ եւ “Խիկար„) որ սնոյց զնա, որպէս ի լուսոյ տարաւ զնա ի խաւար, որչափ չար անցոյց ընդ նա. այլ Աքիաքարոս ապրեցաւ, եւ նմա հատուցումն անդրէն հատուցաւ, եւ էջ նա փոխանակ նորա ի խաւարն. եւ Մանասէ արար զողորմութիւնս, եւ ապրեցաւ յաւուր մահու՝ զոր թաքոյցն նմա, եւ Ադամ անկաւ յորոգայթ եւ կորեաւ„ եւն։ Ասի-

---

“Բիւզանդեան Մատենագրութեան Պատմութեան„ մէջ (K. Krumbacher, Geschichte der Byz. Litteratur. Միւնխէն 1897. էջ 897—8)։

1 G. Hoffmann, Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer (ի հաւաքման Abhandlungen für die Kunde des Morgenlandes, Bd. VII, Heft 3) Leipzig 18 80

կայ ճիշդ Խիկարայ պատմութեան ուղղեւծուծն է, միայն անուանց մէջ զանազանութիւն կայ: Խիկար անգամ մը յիշուելէն ետքը՝ երկրորդ անգամ “Մանասէ„ կը յորջորջուի, իսկ Խիկարի քեռորդին “Նաթան„ կամ “Նադան„ կը կոչուի հոս “Ադամ՝„ (բայց սինայական յոյն բնագիրը Ναδάβ,) պէսպիսութիւններ՝ որոնց մասին այժմ քննիչք պէտք եղած մեկնութիւնները կու տան: Հոֆման կ'եզրակացընէր որ Խիկարի զրոյցը գրողին ծանօթ էր Տովբիթայ գիրքը, ուստի կերպով մը իբր լուսաւորութիւն Տովբիթայ գրքին՝ անոր վրայ հիմնուած: Այս կարծիքն ունեցան յետագայ քննչաց մէկ մասը, մինչդեռ ուրիշները հակառակը պնդեցին եւ կը պնդեն, որ արդէն աւելի բնական ալ կ'երեւայ, այսինքն թէ Խիկարայ պատմութիւնն արդէն գրաւոր ծանօթ էր Տովբիթայ գրոց հեղինակին: Այսպէս կամ այնպէս՝ “Հազար ու մէկ գիշերաց„ անբաւ խառնակուտին մէջ կորսուած վէպը յանկարծ սերտ կապի մէջ մտաւ Ս. Գրոց մատեաններուն հետ, իբրեւ մին Հին Կտակարանի բազմաթիւ Անվ—եր գրքերուն՝ անոնց շարքին մէջ իւր պատշաճ տեղը գրաւելով:

Խիկարայ պատմութեան քննութեան նոր զարկ մ'ալ տուաւ հին սլաւերէն խմբագրութեան մը գիւտը, զոր գերմաներէն թարգմանութեամբ ծանօթացուց Եագիչ “Բիւզանդական թերթին„ մէջ 1892ին[1]: Այս սլաւական խմբագրութիւնը յոյներէն բնագրէ մը թարգմանուած է, որ այժմ չի գտնուիր: Այս միջոցներով կրնար արդէն քըննուիլ այն աղերսը զոր ունի մէկ կողմանէ Տովբիթայ յիշածը, Եսովպոսի համեմատական մասը, յոյն-սլաւական խմբագրութիւնն, եւ միւս կողմանէ սեմական խմբագրութիւնը, յատկապէս արաբա-

1 V. Jagič. Der weise Akyrios, ի թերթին „Byzantinische Zeitschrift“, ed. K. Krumbacher, I (1892), p. 107–126.

կանը (որ ասորի ձեռագրէ մըն է)։ Նոյն թերթին մէջ յիշեալ հրատարակութեան կից՝ հրատարակեց ծանօթ գիտնականն Է. Կուն՝ այս խնդրոյ մասին համառօտ բայց հմտական յօդուած մը՝ մատենախօսական ճոխ տեղեկութիւններով[1], խնդրելով Եսովպայ զրուցց նոր քննութիւն մը. այլուստ Կուն կարծակից է Հոֆմանի՝ Խիկարի զրոյցը Տովբիթայ գրոց վրայ հիմնուած համարելով։ Երկու տարի ետքը Բրունոյ Մայսնէր ընդարձակ եւ ամէն մասամբ հմտալից քննութիւն մը հրատարակեց՝ "Հետազօտութիւնք աղբերաց Խիկարայ պատմութեան„՝ գերմ. արեւելագիտական թերթին մէջ[2]։ Այս վեց մասի բաժնուած գրութիւնը Խիկարայ մասին՝ առաջին ընդարձակ եւ ամէն կողմանէ հըմտալից քննութիւնն էր, ուր կը հետազօտուի նախ Խիկարայ արաբերէն բնագիրը. երկրորդ՝ այն ժամանակ տակաւին անտիպ ասորերէնը. երրորդ՝ Եսովպոսի եւ Խիկարայ աղերսը. չորրորդ՝ արաբերէնի եւ այլ թարգմանութեանց՝ ասորերէնին հետ ունեցած կապը, եւ վերջապէս հինգերորդ՝ Խիկարայ զրուցին հետքերն հին գրականութեան մէջ, յատկապէս Տովբիթայ գրոց յիշատակութիւնը։ Մայսնէր ընդունելով ալ որ Խիկարայ զրոյցը հնագոյն է քան Տովբիթայ գիրքը, սակայն գրաւոր վէպ մը չ՚ընդունիր այն հնութեամբ, այլ բերնէ բերան պտըտող զրոյց մը յԱսորիս, որ յետոյ գրի առնուեցաւ եւ այն՝ նախ յունարէն. ուստի երբեք չմտաւ Հին Կտակարանի անվաւերականաց շարքին մէջ։ Եսովպոսի համեմատական մասն ալ հնագոյն կը համարէր քան Խիկարայ պատմութեան արդի ասորի խմբագրութիւնը։

---

1 E. Kuhn, Zum weisen Akyrios, անդ՝ B. Z. I, 127—130։ Հմմտ. նաեւ G. Bickellի գրածը ի թերթին Athenaeum, 1890, p. 700.

2 Bruno Meissner, Quellenuntersuchungen zur Haikàrgeschichte, ի թերթին ZDMG, 1894, p. 171–87.

Քննութեանս մէկ երկու՝ նաեւ գլխաւոր կէտերը՝ հաւանական չերեւցան ուրիշ գիտնոց։ Նախ Մայսների՝ Խիկարայ քով տարւոյ ամիսներուն եւ օրերուն նմանութեան մասին բառը (էջ 182) ճշդելու պէտք տեսաւ Վինդիշ գիտնականը[1]։ Աւելի յառաջ գնաց վերոյիշեալ Լիցբարսկի նոյն թերթին մէջ համառօտ յօդուածով մը[2]՝ Մայսների վերջին եզրակացութիւնքն ջրելով։ Իւր կարծիքն է որ Խիկարի վէպն արդէն Քր—ոբ կը գտնուէր Տովբիթայ հեղինակին առջեւ, հաւանականագոյնս եբրայեցերէն քան թէ յունարէն. յամենայն դէպս արդի ասորերէնը հնագոյն բնագիրն է՝ թէեւ ոչ նախնականը։ Այս կարծիքն է զոր իբր ուղիղ կ'ընդունի այժմ Հարրիս, որուն վրայ քիչ մ'ետքը։

Իրացս այս վիճակին մէջ էր որ մեր ալ դիտաւորութիւնն եղաւ Խիկարայ հայերէնը ծանօթացընել գիտնոց այն ծրագրով, որով լոյս տեսաւ Սեկունդոսի զրոյցը՝[3] իբրեւ շարունակութիւն վերջնոյս։ Մէկ կողմանէ երկարատեւ ուրիշ զբաղմունք, յատկապէս մեր մատենադարանի ձեռագրաց ցուցակագրութիւնը, միւս կողմանէ այն պարագայն որ ոեւէ լաւագոյն բնագրով ձեռագիր մը կը պակսէր մեզ ("Պղնձէ քաղաքի" տպագրութիւնն աղաւաղ եւ նոր է) արգելք եղան ծրագրին իրագործման։ Մեր հաւաքման մէջ ձեռագիր մը չունինք Խիկարայ. այնպէս որ "Ցուցակին" մէջ կրնայինք նշանակել՝ բաց ի հին տպագրութեան մէկ մասէն, որ Թ. 424ի ծայրը դրուած է (տես "Ցուցակ" էջ 996), միայն հայատառ թուրքերէն թարգմանութիւն մը (Թիւ 468, թղ. 53բ – 62ա) "Ուսլու Խիկարնին սօզու"

---

1 E Windisch, Das Räthsel vom Jahre, ի թերթին ZDMG, 1894, p. 353—7.

2 M. Lidzbarski, Zum weisen Achikar, անդ՝ ZDMG, 1894, p. 671–75.

3 Հայերէն տես "Մատ. մանր Ուսում.," Վիեննա 1895. էջ 162–294.

եւն, հայերէնէ թարգմանուած՝ բայց համառօտ. (տես էջ 944։) Մատենախօսական բաժնին մէջ ալ նշանակած էինք գլխաւոր հրատարակութիւնքն մինչեւ այն տարին. (տես էջ 1097։) Այժմ այս պակասը բոլորովին լեցուած է՝ հայերէն հնագոյն բնագրի մը հրատարակութեամբն հայագէտ Կոնիբէրի ձեռօք։ Սակայն նախ քան ասոր մասին խօսիլը՝ յիշելու ենք քանի մ'ուրիշ գործք ալ որ ասկէ յառաջ լոյս տեսան։

Վերոյիշեալ Լիցբարսկի Պերլինի մատենադարանի մէջ Ֆելլիխի կամ Տուրաբդինի նոր ասորերէն գաւառաբարբառով ձեռագիրներէն հաւաքած ու հրատարակած է ի միջի այլոց "Պատմութիւններ եւ Երգեր", կցելով նաեւ գերմ. թարգմանութիւն եւ բառացուցակ։ Ասոնց սկիզբը կայ նաեւ նոյն գաւառաբարբառով Խիկարայ պատմութիւնը՝ դիմացն ալ արաբերէն բնագիրը, որմէ թարգմանուած է Ֆելլիխի լեզուաւ[1]։ Այս գործքին մասին հռչակաւոր Նէօլդէքէի գրած քննադատութիւնն[2] աւելի լեզուագիտական տեսակէտով է։ Բուն Խիկարայ պատմութեան խնդրով եւ յատկապէս Տովբիթայ գրոց առընչութեան քննութեամբ զբաղեցաւ Ջէմս իւր արդէն հանրածանօթ "Անտիպ Անվաւերականք" գրոց երկրորդ հատորին մէջ[3], ուր նկատած է նաեւ Խիկարայ մէկ առածին

---

1 M. Lidzbarski, Geschichten und Lieder aus den neuaramäischen Handschriften der kgl. Bibl. zu Berlin (Beiträge zur Volks- und Völkerkunde, Bd. IV) Weimar, 1896, 8⁰ pp. VIII+312.

2 Th. Nöldecke ի Թերթին ZDMG, 1896, p. 302 ff.

3 R. James, Apocrypha Anecdota, second series (ի Հաւաքման Textes and Studies, ed. J. Armitage Robinson, Vol. V, Nr. 1) Cambridje 1897, 8⁰ pp. CII+174. Գործքիս առաջին հատորը նոյն հաւաքման մէջ լոյս տեսած է (Textes etc. Vol. II, Nr. 3)։ Դժբախտաբար ճիշդ Բ. հատորն

եւ Աւետարանաց չար ծառային (Մատթ. ԻԴ, 48 եւն) նմանութեան աղերսը։ Նոր Կտակարանի քանի մ'ուրիշ նմանութեանց աղերսն ալ քննած է նոյն գիտնականը՝ անգղ. Թերթի մը մէջ նորերս զետեղած մէկ յօդուածովը[1], Նոյն միջոցին այս խնդրին քննութեամբ զբաղած է նաեւ Դիլլոն, որ իւր գրութեան իբրեւ նախաճաշակ հատուած մը հրատարակած է ուրիշ անգղ. Թերթի մը մէջ[2]. իսկ ամբողջ գործքն անշուշտ չ'ուշանար լոյս տեսնելու։ Այս միջոցներուն վերջապէս լոյս տեսաւ հատուած մ'ալ հայերէն լեզուաւ[3] "Ա. Ա." ստորագրութեամբ, որ՝ Խիկարայ եւ Վենետկոյ ձեռագրին մասին համառօտ տեղեկութիւն մը տալէն ետքը, կը ծանուցանէր նաեւ թէ Կոնիբէր հրատարակելու է հայերէն բնագիրն, ինչպէս թղթով ծանուցած էր հայագէտը։ Ահա այս ծանուցուած գործքն է զոր այժմ առջեւնիս ունինք՝ լիակատար քան նախընթաց բոլոր հրատարակութիւնները։ Հայագէտ Կոնիբէր բարեհաճած էր օրինակ մը խաւրել մեզ։

"Պատմութիւն Խիկարայ՝ ասորի, արաբական, հայ, եթովպական, յոյն եւ սլաւոնեան թարգմանութիւններէն"[4]. այս է գրքին տիտղոսը, որուն գործակցած են երեք հոգի, հայագէտն Կոնիբէր, Ռ. Հարրիս եւ ուսումնական ծանօթ օրիորդն Ագնէս Սմիթ Լիուիս. վասն զի՝ ինչպէս կ'ըսէ հրատարակիչը, Խիկարայ վէպն այնչափ բազմազգի

---

ուր Խիկարայ մասին խօսուած է, չունինք այժմ առձեռն, ինչպէս նաեւ յաջորդ կրկին յօդուածներն։

1 Տես „Guardian" 1898, Febr. 2, p. 163.

2 E. J. Dillon ի Թերթին Contemporary Review, 1898, March.

3 Տես "Բզմ." 1898. Էջ 488—492։

4 „The Story of Ahikar, from the Syriac, Arabic, Armenian, Ethiopie, Greek and Slavonik Versions. by F. C. Conybeare, J. Rendel Harris and Agnes Smith Lewis. London, 1898, 8° pp. LXXXVIII+162+74.

ձեւերով եւ լեզուներով կը գտնուի՝ որ դժուարաւ միակ գիտնական մ՚ամբողջ ատաղձը գործածել եւ առանձին հրատարակել ու թարգմանել կրնայ։ Ներկայ գործքիս մէջ Հարրիս հոգացած է քննական ներածութիւնն, ասորերէն բնագրին հրատարակութիւնն ու թարգմանութիւնը. հայագէտն Կոնիբիր՝ հայերէն բնագիրն ու թարգմանութիւնը. Ագնէս Լիուիս՝ արաբական բնագիրն ու թէ անոր եւ թէ սլաւոնականին թարգմանութիւնը։ Գործքն ըստ այսմ երեք մասէ կը բաղկանայ. նախ ընդարձակ քննական ներածութենէ մը (էջք Ա—ՁԸ), երկրորդ՝ անգղ. թարգմանութիւններէ՝ սլաւոնական բնագրին (Եակիչի գերմ. թարգմանութեան վրայէն, էջ 1—23), հայերէնին (էջ 24—55), ասորերէնին (էջ 56—82) եւ արաբերէնին (էջ 85—118). երրորդ՝ հրատարակութիւններէ բնագիրներու, որոնց սկիզբը դրուած է Եսովպոսի յունարէն համեմատական մասերը (էջ 119—124), յետոյ “Խրատք եւ իմաստութիւն Խիկարայ„ հայերէն (էջ 125—162)։ Գրքին վերջին ծայրէն կը սկսին սեմական բնագիրք, այսինքն արաբերէնն (էջ 1—32) եւ ասորերէնը (էջ 33—74)։ Ամբողջ գործքը խնամով աշխատասիրուած է, ուստի նաեւ բնագիրներու հրատարակութիւնքն։

Մեզի համար կարեւոր է յատկապէս հայերէնը, զոր հոս առաջին անգամ հրատարակուած կը գտնենք Պարիսի չորս, Պոդլեան երկու, Վենետիկոյ մէկ եւ Էջմիածնի մէկ ձեռագրին համեմատ, շատ տարբեր ու հնագոյն քան “Պղնձէ քաղաքի„ տպագրութիւնը։ Այսու հանդերձ բաւական աղաւաղ է բնագիրը նաեւ այս հնագոյն ձեւին մէջ։ Մենք կը յուսանք հայերէն բնագրին որպիսութեան, անոր ու միւս բնագրաց աղերսին եւ ընդհանրապէս Խիկարայ զրուցին բովանդակութեան մասին քանի մը դիտողութիւններ ընել հետզհետէ։ Միայն կանխենք ըսել որ կը բաղձայ-

ինք տեսնել այն խոստման կատարումն զոր կ'ընէ “Բազմավիպի„ յիշեալ յօդուածին հեղինակը, “յարմար առթիւ„ Վենետկոյ “ընտրելագոյն„ ձեռագրին “ամբողջական հրատարակութիւնն„ ընելու: Այնտեղ հաղորդուած պատառիկները համեմատելով հայագիտին հրատարակութեան հետ՝ կը տեսնուի որ շատ տեղ բաւական մեծ տարբերութիւններ կան, տեղ տեղ լաւագոյն ընթերցուածներով, թէեւ աղաւաղման կողմանէ ան ալ ուրիշ տեղեր միւս բնագրէն վար չի մնար:

## 2.

Խիկարայ պատմութեան էական կէտերը հետեւեալներն են: Պատմութիւնը կը սկսի այսպէս. “Յամս եւ ի թագաւորութեան Սինիքերիմայ արքային Նինուէի եւ Ասորեստանի՝ ես Խիկար դպիր Սինիքերիմայ արքայի վաթսուն կին առի եւ վաթսուն ապարանս շինեցի. եւ ես Խիկարս վաթսուն տարու եղայ եւ ոչ եղեւ ինձ որդի„: Զուր ընծայ եւ զոհ կը մատուցանէ դից Խիկար խնդրելով որդի. պատգամ կ'առնու թէ “առցես զՆաթան քեռորդին քո„՝ որդեգիր: Խիկար կ'անսայ եւ կ'առնու միամեայ Նաթանը, եւ կ'ըսէ թէ “արբուցի նմա կաթն եւ մեղր եւ ննջեցուցանէի զնա ի վերայ արծուեաց եւ աղաւնեաց իմոց մինչեւ եղեւ եօթն ամաց„: Այն ժամանակ կը ներկայացընէ զՆաթան արքային, եւ տանելով իւր ապարանքը՝ “այսպէս ասէի յուսուցանելն իմում: Որդեակ՝ եթէ լսես բան ինչ ի դրանէ արքունի, մեռո եւ թագո զնա ի սրտի քում, եւ մի՛ ումեք ի վեր հանիցես: Զկապն կնքեալ մի՛ արձակել, եւ զարձակեալն մի՛ կապեսցես: Եւ զոր տեսանես մի՛ ասել, եւ զոր լսես մի՛ յայտնել: Որդեակ . . . „ եւն. Հոս կը դրուի Խիկարայ իմաստութիւնն կամ իւր խրատուց առաջին շարքը՝ առածներ թուով 100'

մէջը հաշուելով նաեւ Պարիսի Թ. 58 ձեռագրին յաւելուածոյ առածները։ Ամէնն ալ կը սկսին՝ "Որդեակ„ կոչականով։

Սակայն Նաթան Խիկարայ խրատներն "անտես արար, եւ հոսեաց որպէս զփոշի ընդդէմ հողմոյ„, . սկսաւ վատնել ինչքերն, "եւ ոչ խնայէր ի ծառայս իմ եւ յաղախնեայս եւ տանջէր զնոսա եւ սպանանէր եւ կոտորէր զձիս եւ զջորիս եւ զերիվարս իմ„ ըսէ։ Խիկար կ՚իմացընէ արքային, որ հրաման կը հանէ թէ "Որչափ Խիկար կենդանի է՝ յինչս նորա ոչ ոք մերձեսցի„։ Նաթան իւր Բուզան եղբօր կ՚ըսէ թէ "Խիկար հայր իմ ծերացեալ է եւ բանք նորա անհամացեալ„. որուն վրայ Խիկար զՆաթան կը մերժէ։ Ասոր համար Նաթան դաւ կը նիւթէ Խիկարայ դէմ։ Խիկարայ անուամբ կեղծ նամակ մը (միւս խմբագրութիւնք կ՚ըսեն նամակ մ՚ալ առ Ալի բար Խամսելին՝ արքայ Պարսից) կը գրէ Փարաւոնի՝ Սենեքերիմայ թշնամւոյն՝ գրելով թէ "յորժամ գիրս ի քեզ հասանի՝ գումարեսցես զզաւրս քո, եւ եկեսցես ի դաշտս Արծունեաց որ աւրն ԻԵ լինի հրոտից ամսոյն„՝ խոստանալով ձեռք տալ Ասորւոց աշխարհն եւ Սենեքերիմ արքայն։ Նաթան "նմանեցուցեալ էր զգիրն իւր իմոյ (այսինքն՝ Խիկարայ) ձեռնագրին, եւ կնքեալ մատանեաւ իմով„։ Այս նամակը կը տանի կու տայ Սենեքերիմայ՝ մատնիչ ամբաստանելով զԽիկար։ Միւս կողմանէ "հրամանաւ արքային„ թուղթ կը գրէ Խիկարայ նման պարունակութեամբ, հրամայելով որ նոյն օրը զօրքով գայ Խիկար "Արծունեաց„ դաշտը, յաւելլով թէ "իբրեւ տեսցես զիս՝ ճակատեսցիս ընդդէմ իմ. քանզի հրեշտակք Փարաւոնի առ իս են եկեալ, զի տեսցեն զօրս իմ„։ Խիկար՝ անտեղեակ դաւին՝ կը հնազանդի, նոյն օրը զօրքով ճակատելով յիշեալ տեղը։ Թագաւորը կը համոզուի Խիկարայ յանցապարտութեան, կը կանչէ Խիկար իւր առջեւն եւ երեսին կը զարնէ

մատնութիւնն ու թուղթը կը ցուցընէ։ Խիկար կ'ափշի, իւր լեզուն “որպէս մագաղաթ գալարեցաւ„։ Իսկ Նաթան խրատ կու տայ արքային տալ Խիկարու ձեռքն “յերկաթ„ եւ ոտքերն “ի կոճեղս„ կապել եւ պատժել։ Թագաւորը կը հրամայէ Աբուսմաք “Նայիպին„ թէ՝ “Տար սպանանես զանաստուած Խիկարդ, եւ հեռացո զգլուխ դորա իբրեւ կանգունս Ճ„։ Խիկարայ աղաչանքը միայն այնչափ լսելի կ'ըլլայ որ թոյլ կը տրուի իւր դրան առջեւը սպանուիլ։

Բայց Խիկար նախ թուղթ մը կրնայ հասցընել իւր Աբեստան կնոջ գրելով թէ՝ “Յորժամ թուղթս ի քեզ հասանէ, դու հան ընդ առաջ իմ կուսանս Ռ, եւ զգեցցին զգեստ սգոյ եւ դիցեն ինձ սուգ„ եւն։ Կինը կը կատարէ, եւ “ել ընդ առաջ իմ եւ եմոյծ զնոսա (դահիճները) ի տուն, եւ եդ առաջի նոցա սեղան եւ կերակրեաց զնոսա, եւ ետ ըմպել գինիս հինս եւ անապակս, մինչեւ թմրեցան եւ արբեցան եւ ի քուն մտին„։ Այն ատեն Խիկար ու իւր կինն Աբեստան կ'աղաչեն Աբուսմաքայ, յիշեցընելով “զաղուհացն որ ի միասին կերեալ եմք, եւ յիշեա զայն որ մատնեցին զքեզ Սենեքերիմայ արքային հայրն, եւ ես առեալ պահեցի զքեզ„ եւն։ Խիկար խորհուրդ կու տայ թէ՝ “Է իմ այր մի ի բանտի, եւ յոյժ նման է ինձ, արիւնարար ի դրան իմոյ եւ մահապարտ է, եւ անուն նորա Մենիքար կոչի. արդ տարցես զհանդերձս իմ ի բանտին եւ զգեցուցանես նմա եւ սպանցես զնա„ եւն։ Այսպէս ալ կ'ըլլայ. դահիճները կը կարծեն թէ բուն Խիկարայ գլուխն էր զոր մարմնէն “հեռացուցին... կանգունս Ճ„։ Իսկ Աբուսմաք եւ Աբեստան կը շինեն “տուն գետնափոր„ եւ այն “մերձ ի դրան սեմոց տանս„. հոն կը փակեն զԽիկար՝ դնելով իւր քովը “հաց եւ ջուր„։ Աբուսմաք կ'իմացընէ թագաւորին՝ “եթէ Խիկար սպանաւ„։ Նաթան կ'անցնի Խիկարայ տեղը, կու գայ տուն

եւ “փոխանակ լալոյն ժողովեաց զուսանս, եւ արար ուրախութիւն մեծ, եւ զծառայս եւ զաղախնայս չարչարէր” եւն:

Խիկարի մահը լսեց նաեւ Փարաւոն, եւ անմիջապէս թուղթ մը գրեց Սենեքերիմայ թէ “կամիմ շինել ապարանս ընդ երկինքն եւ ընդ երկրիս ի մէջ ի կախ. տես եւ առաքեա առ իս ճարտար այր որ շինէ, եւ այլ զոր ինչ հարցանեմ՝ տայ պատասխանի. ապա եթէ անփոյթ առնես՝ ես գամ եւ բառնամ զթագաւորութիւնդ” եւն: Թագաւորը կը տրտմի, վասն զի բոլոր իմաստունները չեն կրնար պատասխան տալ ասոր. նաեւ Նաթան՝ Խիկարայ իմաստութեան աշակերտը՝ չի կրնար տալ բայց միայն թէ “Ձայդ բանդ եւ դիքն ոչ կարեն վճարել:” Այն ժամանակ յառաջ կու գայ Աբուսմաք եւ կ'ըսէ՝ “Թագաւոր յաւիտեան կեաց. որ զհրաման թագաւորին ոչ առնէ՝ մահապարտ է... դու զԽիկար հրամայեցեր սպանանել, եւ նա դեռ կենդանի է”: Կ'ուրախանայ թագաւորն եւ պարգեւներ կը խոստանայ, Աբուսմաք կ'երթայ “իբր սրաթռիչ հաւ,” կը հանէ զԽիկար գետնափորէն որուն երեսն այլագունեալ էր, գլուխը “թաղկեալ” եւ ըղունգները “իբրեւ զարծւոյ աճեցեալ”: Քառասուն օր տունը դարմանուելէն ետքը՝ կ'ելլէ թագաւորին առջեւը, կը յայտնէ իւր անմեղութիւնը, իսկ Փարաւոնի խնդրի մասին անհոգ կ'ընէ թէ “Ես երթայց եւ տաց նմա պատասխանի եւ զհարկն ի յԵգիպտոսէ ես բերից առ քեզ”: Շուտով կը գրէ Խիկար իւր կնոջ թէ՝ “Յորժամ կարդաս զգիրս՝ դու որսալ տուր Բ ձագս արծւոյ, եւ Բ տղայս դեռախաւսս, եւ Բ կինս սնուցանողս որ սնուցանեն զմանկտին եւ ասեն այսպէս՝ կաւ, կիր, ծեփ, աղիւս. ճարտարքս կան խափան: Եւ տուր մանել Բ պարտն . . . եւ տուր հիւսան զուգել Բ արկնոց մանկանցն, եւ տուր կերակուր արծուեացն յամէն օր գառինս Բ, եւ տուր կապել զմանկտին ի վերայ

արձուացն, եւ պակաս թռիչս առնել, մինչեւ սովորութիւն առնուն . . . մինչեւ բարձրանան ԲՃ կանգուն:„ Խիկարայ կինը կը կատարէ այս ամէնը:

Այսպէս պատրաստուած՝ կ'իջնայ Խիկար Եգիպտոս: Հասնելով Փարաւոնի արքունիքը, կը կապէ տղաքն “ի վերայ արծուացն. Թռեան ի վեր եւ բարձրացան, եւ մանկտին աղաղակէին եւ ասէին՝ կաւ, կիր, ծեփ, աղիւս. Ճարտարքս կան խափան„: Խիկար գաւազան առած՝ կը գանահարէ շրջակայքն պնդելով թէ “փութացէք, տուք զոր խնդրեն ճարտարքն„: Փարաւոն կը հաւնի այս ճարտարմտութեան. եւ կը հարցընէ Խիկարայ՝ զոր մեռած կը կարծէ, անունը: Խիկար կը ծածկէ իւր ով ըլլալը եւ կ'ըսէ. “Աբիկամ է անուն իմ, քանզի ստրուկ եմ Սենաքարիմայ արքայի„: Այնուհետեւ Փարաւոն կ'ընէ իւր հարցումները՝ օրը հատ մը, որոնց պատասխան կու տայ Խիկար: Հարցումն է՝ “Ո՞ւմ նման եմ ես, կամ զաւրքն իմ ո՞ւմ նման են„: Խիկար կը պատասխանէ՝ “Նման ես դու դիցն, եւ նախարարք քո քրմանց նոցա„: Երկրորդ օրը թէ՝ “Նման ես դու արեգական եւ նախարարք քո ճառագայթից արեգական„: Երրորդ անգամ թէ՝ “Նման ես Դալարոյ եւ նախարարք քո ծաղկանց նորա„: Այն հարցման թէ “Սինաքարիմ արքայն ո՞ւմ նման է՝„ կը պատասխանէ Խիկար. “Սինաքարիմ արքայն նման է Բելշիմի եւ նախարարքն նորա փայլատականցն. յորժամ կամի նիւթէ անձրեւ եւ արկանէ ցաւղ ի բարձունս„ եւն: Ասկէ ետքը կրկին կը հարցընէ Փարաւոն թէ “Զի՞նչ է անուն քո„ եւ այս անգամ Խիկար կը յայտնէ իւր մեռած չըլլալը, որուն վրայ կ'ուրախանայ թագաւորը: Փարաւոն կը հարցընէ հոս տարւոյ հռչակաւոր առածը թէ “Հան զայս խաւսս, եթէ՝ Սիւն մի կայ եւ ի վերայ այն սեանն երկոտասան մայրք, եւ ի վերայ նոցա անիւք երեսուն, եւ ի վերայ անուոցն սուրհանդակք եր-

կու, մին սեւ եւ միւսն սպիտակ„։ Խիկար ի հարկէ կը մեկնէ տարին, ամիսներն, ամսու օրերն եւ գիշեր ու ցորեկ, առած մը՝ զոր նաեւ “Աստրուց հորթարածները գիտեն„։ Միւս հանելուկն է՝ “յԵգիպտոսէ մինչեւ ի Նինուէ ԵՃ խրասխ է՝ զիա՞րդ լուան կուսանք (այլք՝ մատակ ձիեր) զխրխնջիւն երիվարաց ձերոց եւ վրիժեցան (վիժեցին)„։ Իբր պատասխան Խիկար կ՚առնու աքիս մը, զոր Եգիպտացիք կը պաշտէին, “եւ յանդիմանեալ տանջէի զնա„։ Երբ կը հարցընեն թէ ինչո՞ւ կ՚ընէ այս բանը, կ՚ըսէ թէ Նինուէ քաղցրախօս աքաղաղ մ՚ունէր, իսկ այս աքիսը “ի գիշերիս յայսմիկ չոգաւ եւ եհատ զգլուխ աքաղաղին եւ եկն այսր„։ Կը պատասխանեն թէ անկարելի է այդ, ուստի “որչափ ծերացար, բանք քո եւ իմաստութիւնդ շրջեցան„։ Խիկար կը պատասխանէ այն ժամանակ թէ ճիշդ այնպէս կարելի է աքիսին ըրածն՝ “որպէս խրխնջիւն զոր լուան կուսանք ձեր եւ վրիժեցան„։ Փարաւոն կը զարմանայ այս իմաստութեան վրայ, բայց Եգիպտացիք կ՚ըսեն թէ “Լուեալ եմք զբանդ զայդ„։ Իսկ Խիկար թուղթ մը կը յօրինէ Սենեքերիմայ անուամբ Փարաւոնի ուղղուած, ուր կ՚ըսուի թէ “Հրամեա եւ տուր բերել ինձ ի ձեռն հրովարտակիդ արծաթ Ճ քանքարս„։ Թուղթն առած կը ներկայանայ թագաւորին, ըսելով որ ասոր մէջ գրուածն այնպիսի բան մըն է՝ զոր Եգիպտացիք չեն լսած։ Նախարարք կը բողոքեն թէ “լուեալ եմք եւ գիտեմք զբանդ զայդ„։ Թուղթը կը բացուի եւ կը կարդացուի, իսկ Խիկար կը պնդէ “լուեալ էք, զոր գրած է՝ տուք„։ Բայց Փարաւոն կ՚ըսէ թէ հարկ չի տար, մինչեւ որ “զաւազեայ պարան ոչ մանես ինձ„։ Խիկար այս ալ կը յաջողցընէ հետեւեալ հնարագիտութեամբ. “Մտի ի տուն մի խորխորատ, եւ ծակեցի զորմն տանն, ուստի արեւ ծագէր. եւ ի ծագել արեւուն՝ ցայթեց ի տանն կանգունս Է. եւ առի փոշի աւազի եւ արկի

ի ծակն եւ փչէի ի նա. երեւցաւ որպէս մանածք։ Եւ ասեմ. Հրաման տուր արքայ, զի ժողովեսցեն զպարանսդ, եւ ես այլ մանեցից„։ Թագաւորը կը ծիծաղի այս հնարքին վրայ, կ՚օրհնէ զԽիկար, պարգեւներ ու Եգիպտոսի հարկը տալով կ՚արձակէ։

Խիկար կը դառնայ Սենեքերիմայ քովը, որ շատ կը պատուէ զինքը։ Պարգեւները չ՚ընդունիր Խիկար, խնդրելով որ զանոնք Արուսմաքայ տայ, իսկ իրեն յանձնէ իւր ապերախտ քեռորդին Նաթան. որուն կը հաւանի թագաւորը։ Այնուհետեւ կը պատմէ Խիկար թէ "կապեցի զնա (զՆաթան) ընդ աղխւոյ երկաթոյ միոյ, որ էր կշռոյ Է քանքարոյ ի դրան սրահին իմոյ, եւ յանձն արարի զնա Բէլիարայի ծառային իմոյ։ Եւ հրամայեցի գան հարկանել ի թիկունս եւ ի փոր նորա, եւ ասեմ ցնա ի մտանելն իմ եւ յելանելն՝ զոր ինչ առակաւ խօսիմ ընդ սա եւ դու գրեա ի թղթի եւ պահեա„ եւն։ Հոս կը դրուին երկրորդ շարք մը խրատուց, որոնք յատկապէս առակներ են, թուով իբր 27։ Առաջինն է. "Որդեակ, որ ընդ ականջն ոչ լսէ, ընդ թիկունս լսեցուցանեն„ եւայլն։ Պատմութիւնը կ՚աւարտի այսպէս. "Որդեակ Աստուած ապրեցոյց զիս վասն անմեղութեան իմոյ եւ զքեզ կորոյս վասն անաւրէնութեան քո։ Աստուած առնէ փոխարէն ընդ իս եւ ընդ քեզ. զի ագին շանն հաց տայ եւ բերանն՝ բիր։ Ի նմին ժամու ուռեցաւ Նաթան եւ պատառեցաւ։ Եւ ես ասեմ. Որդեակ, որ բարի առնէ՝ բարի գտանէ, եւ որ այլոց խորխորատ փորէ՝ ինքն անկանի ի նմա։ Կատարի բարին ի բարի, եւ չարն՝ ի չար։ Ցայս վայր կատարեցաւ Խիկար„։

---

Ահա Խիկարայ իմաստութեան կամ պատմութեան բովանդակութիւնն այն հայերէն բնագրին համեմատ՝ զոր Կոնիբիր հրատարակած է։ Ոչ

միայն լեզուաւ, այլ նաեւ պատմութեան այլեւայլ կէտերովն բաւական տարբեր է այն հայերէնը, որ ծանօթ էր "Պղնձէ քաղաքի" տպագրութեանց մէջ: Ընդհանուրը նոյն, իսկ մանրամասնութեանց մէջ նուազ պէսպէս չեն միւս խմբագրութիւնները, նաեւ ձեռագրէ ձեռագիր: Հրատարակութիւնքն արդէն յիշած ենք:

Ասորերէնը հնագոյն խմբագրութիւնն է միւս արեւելեանց մէջ: Պատառիկ մը կայ Բրիտ. Թանգարանի մէջ (Cod. Add. 7200, Թղ. 114) որուն արդէն Հոֆման մտադիր եղած էր: Գրուած է իբր ԺԲ.—ԺԳ. դարու: Պատմութիւնը շատ համառօտ է, բաց աստի թերի՝ խրատուց միայն 21 կտորն ունենալով[1]: Մայսնէր կը յիշէ ուրիշ թերակատար ձեռագիր մ'ալ (Ms. Or. 2313, Թղ. 172ա եւն), նորագոյն բնագրով ալ, իբրեւ ութերորդ հատած կորսուած գրքի մը, սկիզբն ալ պակաս[2]: Ամբողջական ձեռագիր մը կայ Կէմբրիջի համալսարանի գրատունը (Cod. Add. 2020) եւ ասկէ եղած է լիակատար հրատարակութիւնն ու թարգմանութիւնն Հարրիսի վերոյիշեալ գործոյն մէջ[3]: Տպագրութեան ժամանակ իմացած է Հարրիս որ երեք օրինակ կը գտնուի Ուրմիայի ամերիկեան միսիոնարաց քով, երեքն ալ նոր ընդօրինակութիւնք, միայն թէ մէկը գրուած է հնագոյն գաղափարի մը վրայէն: Վերջապէս օրինակ մ'ալ կայ Պերլին՝

1 Բնագիրը տես Հարրիս, էջ 33–6, Թրգմ. էջ 56—8:

2 Տես Մայսնէր (ZDMG, 1894), էջ 175:

3 Թղթեայ միջակ դրիւք մատեան մըն է 190 թղթով, իւրաքանչիւր էջ 27—30 տողով: Գրուած է յամի Յունաց 2009 (= 1697 Յ. Ք.) Խիկարայ պատմութիւնը կը գտնուի՝ Թղ. 66ա. յետոյ կու գան ի միջի այլոց "Առակք իմաստնոյն Յովսեպոսի (Եսովպոս)"՝ Թղ. 78ա եւն. դարձեալ "Այլ առակք Յովսեպոսի (Եսովպ.)"՝ Թղ. 105ա եւն: Հմմտ. Հարրիս, էջ ԻԱ—Բ:

ի ծակն եւ փչէի ի նա. երեւցաւ որպէս մանանձք։ Եւ ասեմ. Հրաման տուր արքայ, զի ժողովեսցեն զպարանդ, եւ ես այլ մանեցից„։ Թագաւորը կը ծիծաղի այս հնարքին վրայ, կ՚օրհնէ զԽիկար, պարգեւներ ու Եգիպտոսի հարկը տալով կ՚արձակէ։

Խիկար կը դառնայ Սենեքերիմայ քովը, որ շատ կը պատուէ զինքը։ Պարգեւները չ՚ընդունիր Խիկար, խնդրելով որ զանոնք Աբուսմաքայ տայ, իսկ իրեն յանձնէ իւր ապերախտ քեռորդին Նաթան. որուն կը հաւանի թագաւորը։ Այնուհետեւ կը պատմէ Խիկար թէ "կապեցի զնա (զՆաթան) ընդ աղխուսոյ երկաթոյ միոյ, որ էր կշռոյ Է քանքարոյ ի դրան սրահին իմոյ, եւ յանձն արարի զնա Բէլխարայի ծառային իմոյ։ Եւ հրամայեցի գան հարկանել ի թիկունս եւ ի փոր նորա, եւ ասեմ ցնա ի մտանելն իմ եւ յելանելն՝ զոր ինչ առակաւ խօսիմ ընդ սա եւ դու գրեա ի թղթի եւ պահեա„ եւն։ Հոս կը դրուին երկրորդ շարք մը խրատուց, որոնք յատկապէս առակներ են, թուով իբր 27։ Առաջինն է. "Որդեակ, որ ընդ ականջն ոչ լսէ, ընդ թիկունս լսեցուցանեն„ եւայլն։ Պատմութիւնը կ՚աւարտի այսպէս. "Որդեակ Աստուած ապրեցոյց զիս վասն անմեղութեան իմոյ եւ զքեզ կորոյս վասն անաւրէնութեան քո։ Աստուած առնէ փոխարէն ընդ իս եւ ընդ քեզ. զի ագին շանն հաց տայ եւ բերանն՝ բիր։ Ի նմին ժամու ուռեցաւ Նաթան եւ պատառեցաւ։ Եւ ես ասեմ. Որդեակ, որ բարի առնէ՝ բարի գտանէ, եւ որ այլոց խորխորատ փորէ՝ ինքն անկանի ի նմա։ Կատարի բարին ի բարի, եւ չարն՝ ի չար։ Ցայս վայր կատարեցաւ Խիկար„։

---

Ահա Խիկարայ իմաստութեան կամ պատմութեան բովանդակութիւնն այն հայերէն բնագրին համեմատ՝ զոր Կոնիբիր հրատարակած է։ Ոչ

միայն լեզուաւ, այլ նաեւ պատմութեան այլեւայլ կէտերովն բաւական տարբեր է այն հայերէնը, որ ծանօթ էր "Պղնձէ քաղաքի" տպագրութեանց մէջ։ Ընդհանուրը նոյն, իսկ մանրամասնութեանց մէջ նուազ պէսպէս չեն միւս խմբագրութիւնները, նաեւ ձեռագրէ ձեռագիր։ Հրատարակութիւնքն արդէն յիշած ենք։

Ասորերէնը հնագոյն խմբագրութիւնն է միւս արեւելեանց մէջ։ Պատառիկ մը կայ Բրիտ. Թանգարանի մէջ (Cod. Add. 7200, Թղ. 114) որուն արդէն Հոֆման մտադիր եղած էր։ Գրուած է իբր ԺԲ.—ԺԳ. դարու։ Պատմութիւնը շատ համառօտ է, բաց աստի թերի՝ խրատուց միայն 21 կտորն ունենալով[1]։ Մայսնէր կը յիշէ ուրիշ թերակատար ձեռագիր մ'ալ (Ms. Or. 2313, Թղ. 172ա եւն), նորագոյն բնագրով ալ, իբրեւ ութերորդ հատած կորսուած գրքի մը, սկիզբն ալ պակաս[2]։ Ամբողջական ձեռագիր մը կայ Կէմբրիջի համալսարանի գրատունը (Cod. Add. 2020) եւ ասկէ եղած է լիակատար հրատարակութիւնն ու թարգմանութիւնն Հարրիսի վերոյիշեալ գործոյն մէջ[3]։ Տպագրութեան ժամանակ իմացած է Հարրիս որ երեք օրինակ կը գտնուի Ուրմիայի ամերիկեան միսիոնարաց քով, երեքն ալ նոր ընդօրինակութիւնք, միայն թէ մէկը գրուած է հնագոյն գաղափարի մը վրայէն։ Վերջապէս օրինակ մ'ալ կայ Պերլին՝

---

1 Բնագիրը տես Հարրիս, էջ 33–6, Թրգմ. էջ 56—8։

2 Տես Մայսնէր (ZDMG, 1894), էջ 175։

3 Թղթեայ միջակ դրիւք մատեան մըն է 190 թղթով, իւրաքանչիւր էջ 27—30 տողով։ Գրուած է յամի Յունաց 2009 (= 1697 Յ. Ք.) Խիկարայ պատմութիւնը կը գտնուի՝ Թղ. 66ա. յետոյ կու գան ի միջի այլոց "Առակք իմաստնոյն Յովսեպոսի (Եսովպոսի)"՝ Թղ. 78ա եւն. դարձեալ "Այլ առակք Յովսեպոսի (Եսովպ.)"՝ Թղ. 105ա եւն։ Հմմտ. Հարրիս, էջ ԻԱ—Բ։

Սախաւի հաւաքման մէջ (Sachau 336, թղ. 17 եւն), նոր ընդօրինակութիւն մը, որուն մասին ընդարձակ տեղեկութիւն կու տայ Մայսնէր. բնագիրն ալ նոր խմբագրէն փոփոխուած, եւ խորագրին մէջ Յակոբայ Եդեսացւոյ տրուած[1]։

Արաբերէնը կախուած է ասորերէնէն եւ անկէ թարգմանուած։ Յաճախ կը գտնուի այս վէպն Արաբաց քով, նոյն իսկ "Հազարումէկ գիշերաց" մէջ մտած ըլլալով, ինչպէս վերը յիշեցինք, ինչպէս նաեւ Սալխանի գիտնականին հրատարակութիւնն։ Ասոնցմէ զատ ձեռագիրք ալ չեն պակսիր, այնպէս որ Հարրիս երկար ցուցակ մը կրնար կազմել արաբերէն եւ քարշունի գրչութեանց[2]։ Մայսնէր

---

1 Տես Մայսնէր, անդ, էջ 176։ Ձեռագրիս խորագիրն է՝ "Յանուն Աստուծոյ . . . գրեմք զպատմութիւն նինուէական Ախիկարայ ատորեստանցւոյ, զոր եհան Յակոմբ Ուռհայեցի յասորի լեզուէն յիմաստուն իմացուածոյ որբոյն Եփրեմայ, յորոց առաջին հանդեաւ յերկրին Քաղդէացւոց յամի Յունաց 1252 (= 940 Յ. Ք.)։ Մայսնէր կը հաստատէ որ այս տեղեկութիւնը յարգ չունի, ինչպէս կը ցուցընէ նաեւ Ուռհայեցւոյ մահուան սխալ տարեթիւը։ Ուռհայեցի Ասորւոց բեղմնաւոր գրիչներէն մին է՝ թէ իբր թարգմանիչ եւ թէ իբր քերական։ Եդեսիոյ եպիսկոպոս եղած է յամի 679—80, ըստ Բարհեբրէոսի ձեռնադրուած է Աթանաս Բ. պատրիարքէն (684—87)։ Տես իւր վրայ՝ ի մէջի այլոց W. Wight, A short history of Syriac Litterature, Lond. 1894, p. 141—154, եւ այլուր յաճախ, յատկապէս առ Ասեմանեայ եւն։

2 Տես Հարրիս, էջ ԻԲ—Գ։ Յիշուած են հետեւեալ ձեռագիրք. ամէնէն կարեւորն է Կէմբրիջի Cod. Add. 2886 (թղ. 81ա—106ա) քարշունի ձեռագիրն, որուն վրայէն եղած է Ագնէս Լիուիսի հրատարակութիւնը։ Քարշունի է նոյնպէս Բրիտ. թանգարանի Cod. Add, 7209 (թղ, 182ա—213ա), Ձեռագիր մ'ալ կայ Գոթայի գրատունը, զոր Մայսնէր կը յիշէ "թիւ 341" (տես Pertschի ցուցակը, Հատ. Դ 404), իսկ Հարրիս կը յիշէ նոյնն իբր թիւ 2652, նշանակելով որ ուրիշ գիտնականք ալ տարբեր թուով կը յի-

յատուկ գլուխ նուիրած է այս թարգմանութեան, ցուցընելով անոր կախումն ունենալն ասորերէնէ[1]. ընդհանրապէս այս գիտնականին քննութիւնն աչքի առջեւ ունենալու են Խիկարայ վէպին քըննիչները։ Մենք կը շատանանք նշանակելով այս պարագայն. վասն զի մեր նպատակէն դուրս է այս խնդրոց մանրամասնութեանց մէջ մտնել։ Արաբերէնէ թարգմանուած է նոր-արամերէնը, զոր Լիցբարսկի հրատարակեց, ինչպէս արդէն յիշած ենք։

Արաբերէնէ անցած է վէպս Եթովպացւոց. Թէպէտ եւ Խիկարայ ամբողջական գործքը չէ գտնուած, բայց "Բանք իմաստասիրաց" գործոյն եթովպական խմբագրութեան մէջ կը գտնուին 15 առածներ Hêkâr իմաստնոյն, որ նոյն են Խիկարայ արաբականին համեմատական առածներուն հետ։ Կոռնիլ գիտնականը, յիշեալ "Բանք իմաստասիրաց" գործոյն հրատարակիչը, հրատարակած, թարգմանած եւ արաբերէնի հետ համեմատած է նաեւ Խիկարայ այս առածքն[2]։ Հարրիս իւր նշա-

չէն, այսպէս Կոռնիլ (Թիւ 589) որ ասկէ տպագրած է Խիկարու առածները ("Բանք իմաստասիրաց", էջ 32) եւն։ Խիկարու զրոյցն է հոն՝ Թղ. 47բ—64բ, այս ալ քարշունի է, ինչպէս նաեւ Ասեմանեայ յիշած Թիւ ԼԲ ասորի ձեռագիրն Հալէպի գրչագիրներուն։ Հարրիս ասոնց կարգին կը դասէ նաեւ Մայսների յիշած Բերլինի Սախաւեան հաւաքման նոր-արամերէն օրինակը։ Ըստ Լիցբարսկիի ("Վէպեր եւ տաղեր", էջ Ժ, տես վերը) այս թարգմանութիւնը կատարած է Եսայի Կուլիթացի սարկաւագն։ Բուն արաբատառ ձեռագիրք կան նաեւ ի Կոպենհագէն (Cod. Arab. 236, Թղ. 1—41, գրուած 1670ին). Վատիկան (տես Ասեմ. God. Arab. Իննովկենտիոսի ԺԳ.ի հաւաքման, գրուած 1766ին, Cod. Arab. Vat. 55), Բարսելոնա՝ զոր վերն յիշեցինք, եւ այլուր։

1 Տես Մայսներ, անդ, էջ 171—9, եւ յատկապէս 184—7։

2 C. H. Cornill, Mashafa Falâsfâ Tabibân. Das Buch der Weisen Philosophen nach dem Aethiopischen

*նաւոր գործոյն մէջ չէ առած այս եթովպական բնագիրը, բայց թարգմանութիւն մը դրած է առածներուն։*[1]

*Ասոնցմէ դուրս է Հայերէն խմբագրութիւնը, որ կը գտնուի՝ բաց ի յիշեալ աղաւաղ տպագրութիւններէն՝ բազմաթիւ ձեռագիրներու մէջ, զորոնք գործածած է Կոնիբիր։ Ասոնց մասին յետոյ։ Յիշեցինք նոյնպէս որ յունարէն թարգմանութիւն մ՚ալ եղած ըլլալու է, բայց այժմ կորսուած, որմէ փոխադրուած է սլաւականը։ Զատ է այն յունարէնը՝ որ Եսովպոսի վարուց մէջ կը գտնուի, եւ որ արժանի է առանձին մտադրութեան, ինչպէս նաեւ այն յիշատակութիւնքն որ Տովբիթայ գրոց մէջ կը գտնուին։ Ասոնք են այն աղբիւրները, որոնցմէ ծանօթ է Խիկարի պատմութիւնը, եւ որոնց գլխաւորներուն քննութեամբ կրնայ լոյս ծագիլ այս սիրուն պատմութեան ծագման, տարածման, փոխանցման եւ գտած ընդունելութեան վրայ Հնութեան մէջ։*

## 3.

*Առաջին խնդիրն որ հոս մեր առջեւը կ՚ելլէ, այն է թէ ո՛րչափ հնութիւն ունի եւ ո՛ր մասերն արդէն նախնականին կը վերաբերէին. վասն զի բնական է կարծել որ իւր արդի ձեւով եւ ամէն*

untersucht. Leipzig, 1875. *տես յատկապէս էջ* 19 *եւ* 40 *եւն։ Այս “Բանք իմաստասիրաց„ կայ նաեւ Հայերէն այլեւայլ խմբագրութեամբ. տես մեր “Ցուցակ„ էջ* 1094։

1 *Հարրիս էջ* 85—6՝ *Համեմատ Կորնիլի թարգմանութեան։ Յայտնապէս, կ՚ըսէ գիտնականը, ասոնք քաղուած են առածներու Հաւաքմանէ մը եւ ո՛չ Խիկարու լիակատար պատմութենէ մը։ Արդէն արաբերէն առանձին ալ կը գտնուին Խիկարու առածներն՝ անշուշտ առանց վէպին, ինչպէս կը ցուցընէ Ասեմանեայ յիշած Վատիկանեան արաբացի ձեռագիրն որ ունի “Խիկարայ իմաստնոյ Մոսուլացւոյ պատուիրանք„։*

մանրամասնութեամբ չէր գործս ի սկզբան անդ։ Նախնաբար կրնար զուտ պատմական-խրատական գրուածք մ՚ըլլալ, որ յետոյ փոխուած է վէպի ու զրուցի՝ այնպէս ինչպէս ունինք այսօր։ Հարրիս գեղեցիկ տեսութիւն մը կ՚ընէ իւր ներածութեան երրորդ գլխուն մէջ այս խնդրոյ մասին, յատկապէս քննելով վէպիս մէջ յիշուած գլխաւոր անձինքը։

Խիկարայ պատմութեան նախնականն անշուշտ այն ձեւով էր, զոր յիշատակուած կը գտնենք Տովբիթայ քով. ուստի պէտք է նախ այն յիշատակութիւնքն ճշդրտել, քանի որ նոյն իսկ Տովբիթայ գիրքն այլեւայլ խմբագրութեամբ հասած է մեզի[1]։ Սովորական բնագիրն՝ որ Վատիկանեան եւ Աղեքսանդրեան ձեռագրաց համեմատ է եւ որուն մասամբ համաձայն է նաեւ Հայերէնը, համառօտեալ բնագիր մըն է աւելի եւ տեղ տեղ աղաւաղած։ Երկրորդ խմբագրութիւնը կամ Սինայական բնագիրը շատ տարբեր է, այնպէս որ ղատ ալ տպուած է։ Պարզ համեմատութիւն մը, ինչպէս ըրած է Հարրիս, կը ցուցընէ որ Սինայականն աւելի լաւ պահած է Խիկարայ յիշատակութիւնքն

---

1 Տովբիթայ գրոց պէսպէս խմբագրութեանց մասին տես՝ ի մէջ այլոց՝ F. Kaulen, Einleitung in die hl. Schrift, Freib. 1876, p. 214ff. Կաուլէն Տովբիթայ Հայերէնը համեմատ կը դնէ Վատիկանեան-Աղեքսանդրեան խմբագրութեան հետ (Gr. A), Սինայականը (Gr. B) ընդարձակ եւ հաւանօրէն բնագրին վրայէն սրբագրեալ բնագիր մը. կը յաւելու թէ Տովբիթայ երկրորդ մասին (Զ. 7 տեղէն սկսեալ) երրորդ յոյն խմբագրութիւն (Gr. C) ալ կայ՝ որմէ եղած է Իտալայի թարգմանութիւնը։ Պեշիտթայի ասորերէնն առաջին մասին մէջ (Ա. 1—Է. 9) համընթաց է A խմբին, անկէ ետքը C խմբին։ Մօտերս գտնուեցաւ քաղդէական խմբագրութիւնն՝ որուն վրայէն ըրած է Յերոնիմոս իւր լատին փոխադրութիւնն, ուստի ասոր կարգէն է արդի Վուլգատան։ Այս եւ նման խնդիրները տես այն տեղ, ուր յիշուած են նաեւ Տովբիթայ մասին հրատարակութիւնք։

քան միւսը։ Ահա այս կտորները՝ երկու խմբագրութեանց համեմատ. (Սինայականը մենք թարգմանած ենք, իսկ Վատիկանեանը դրած հայերէն բնագրին համեմատ[1])։ Հոս դրուած են այն ամէն տեղերն՝ ուր ընդհանրապէս Աքիաքարոս-Խիկարի անունը յիշատակուած է։

### ՀԱՅ եւ ՎԱՏԻԿ. — ՍԻՆԱՅԱԿԱՆ

Տովբիթ, Ա. 24 եւն:

**ՀԱՅ եւ ՎԱՏԻԿ.**

1. Եւ թագաւորեաց Ասորդան (յոյն. Σαχερδονὸς) որդի նորա ընդ նորա. եւ կարգեաց նա զԱքիաքարոս (յոյն. ᾿Αχιάχαρον) զԱնայէլ որդի եղբօր իմոյ[2] ի վերայ ամենայն իշխանաց թագաւորութեանն իւրոյ եւ ի վերայ ամենայն տան իւրոյ[3]։ Եւ աղաչեաց Աքիաքարոս (᾿Αχιάχαρος) զթագաւորն վասն իմ. եւ եկին դար-

**ՍԻՆԱՅԱԿԱՆ**

1. Եւ թագաւորեաց Ասորդան (Սաքերդոնոս) որդի նորա յետ նորա. եւ կարգեաց զԱքիքարոս (᾿Αχείχαρον) զորդի Անայէլի եղբօր իմոյ ի վերայ ամենայն գանձուց թագաւորութեան նորա, եւ ունէր նա զիշխանութիւն ի վերայ ամենայն վարչութեան։ Յայնժամ աղաչեաց Աքիքարոս (᾿Αχείχαρος) վասն իմ, եւ

---

1 Հայ բնագիրը կը դնենք Զօհրապեանի հրատարակութեան համեմատ („Աստուածաշունչ", տպ. Վենետ. 1805), անոր համաձայն նաեւ համարաթուերը, որ բաւական կը տարբերին յունարէն բնագրի հրատարակութիւններէն։ Օրինակի համար վերջնոյս համեմատ Տովբիթայ մեր յառաջ բերած տեղերն են՝ Տովբ. Ա, 21, Բ, 10՝ ԺԱ, 17—18 եւ ԺԴ, 10։ Ասորին այսպէս կը սկսի առաջին կտորը. „Եւ թագաւորեաց Սարխեդոնծար որդի նորա։ Եւ զԱխիոր որդի Հանայելի որդի եղբօր իմոյ ի վերայ ամենայն հաշուոց թագաւորութեան իւրոյ եւ տնտեսութեան ամենայն ծառայից" եւն։ Տես յաջորդ ծանօթութիւնքն։

2 Այսպէս Հայը՝ սխալմամբ ᾿Αχιάχαρον τὸν ῾Αναὴλ υἱὸν եւն թարգմանելով բառ առ բառ, միտ չդնելով որ անհոլովական ῾Αναὴλ հոս սեռական է, ուստի Անայէլ Տովբիթայ եղբայրն է, իսկ Աքիաքարոս Անայէլի որդի։

3 Այս ալ հայուն յաւելուկ է („իշխանաց . . . տան իւրոյ.") սովորական յունարէնը նոյն է Սինայականին հետ զոր դիմացը դրինք։ Ասորին տես վերը։

ծուցանել զիս[1]. եւ եկի ես ի Նինուէ: Եւ էր Աքիաքարոս տակառապետ, եւ ամենայն գիր համարոյ ելի եւ մուտ տան թագաւորին՝ ի ձեռին նորա[2]: Եւ կացոյց զնոսա քերդոյն (կարդա՝ զնա Սաքերդոն)[3] երկրորդ իւր. եւ էր նա եղբօրորդի իմ:

իջի ես ի Նինուէ: Եւ էր Աքիքարոս աւագ տակառապետ, եւ ի վերայ կնքոց, եւ վարիչ եւ գանձապետ առ Սենեքերիմաւ (Σενναχηρείμ) արքայիւ Ասորեստանեայց. եւ կարգեաց զնա Ասորդան (Σαχερδονὸς) կըրկին: Եւ էր եղբօրորդի իմ եւ յազգէ իմմէ...

*Տովբիթ, Բ. 18:*

2. Եւ երթալ իմ առ բժիշկս՝ ոչ ինչ օգնէին ինձ: Եւ Աքիաքարոս դարմանէր զիս ռոճկօք իւրովք, մինչեւ չոգայ ես յԵղիմայիդայ ('Ελλυμαίδα):

2. Եւ չոքայ առ բժիշկս բժշկել, եւ որչափ օծանէին զիս դեղովք, այնչափ առաւել վատէին աչք իմ լուսամբք, մինչեւ կուրացան: Եւ էի կոյր աչօք ամս չորս: Եւ ամենայն եղբարք իմ տրտմէին վասն իմ, եւ Աքիաքարոս ('Αχειάχαρος) դարմանեաց զիս ամս երկուս մինչեւ չոգաւ նա յԵղիմայիդա:

---

1 Յունարէնն եւ ասորին չունին "եւ եկին դարձուցանել զիս:"

2 Այս ալ հայուն յատուկ եւ համառօտ է: Յունարէնն է՝ "Եւ Աքիաքարոս էր տակառապետ, եւ ի վերայ կնքոց եւ վարիչ եւ գանձապետ." (վերջնոյս տեղն է՝ "գիր համարոյ ելի եւ մուտ"): Նոյնպէս ասորին:

3 Հոս հայը շատ աղաւաղ է: Նախ անիմաստ "եւ զնոսա քերդոյն" խօսքը պէտք է ուղղել՝ "Եւ կացոյց զնա Սաքերդոն (Σαχερδονὸς, Ասորդան) երկրորդ իւր", ինչպէս ունի Ասորին ալ, Ուստի "երկրորդ իւր" կրնայ շատ լաւ ըլլալ. բայց արդի յունարէնն այլազգ կը կարդայ, այսինքն "Եւ կացոյց զնա Սաքերդոն՝ որդի յերկրորդէ" (ἐκ δευτέρας "յերկրորդէ" եւ "երկրորդ անգամ"), որ կրնայ հասկցուիլ թէ Ասորդան որդի էր երկրորդ կնոջէ: Բայց Հարրիս (էջ ԼԱ) կ'առաջարկէ՝ պարզ ստորակէտ մը ջնջելով՝ կարդալ՝ "Եւ կացոյց զնա Սաքերդոնի որդի՝ երկրորդ անգամ:"

*Տովբիթ, ԺԱ. 19—20:*

3. Եւ եղեւ ուրախութիւն ամենեցուն եղբարցն նորա որք էին ի Նինուէի: [Եւ եկն Աքիաքարոս եւ Նասբաս եղբօրորդի նորա[1]:]

3. Եւ եղեւ յաւուր յայնմիկ ուրախութիւն ամենայն Հրէիցն որք էին ի Նինուէ: Եւ եկին Աքիկար (Ἀχεικάρ) եւ Նաբադ (Ναβὰδ) եղբօրորդիք նորա խնդութեամբ առ Տուբիթ:

*Տովբիթ, ԺԴ, 12:*

4. Որդեակ իմ, տես դու որպէս արար Ադամ[2] (Նադաբ) Աքիաքարայ (Ἀχιάχαρος) որ սնոյց զնա. որպէս ի լուսոյ տարաւ զնա ի խաւար, որչափ չար անցոյց ընդ նա[3]: Այլ Աքիաքարոս ապրեցաւ. եւ նմա հատուցումն անդրէն հատուցաւ եւ էջ նա փոխանակ նորա ի խաւարն: Եւ Մանասէ (Μανασσῆς) արար ողորմութիւնս, եւ ապրեցաւ յաւուր մահու [յորոգայ-

4. Տես, որդեակ իմ. որպիսի ինչ իրս արար Նադաբ (Ναδὰβ) Աքիկարայ (Ἀχεικάρος) որ սնոյց զնա. ո՞չ ապաքէն իջուցաւ կենդանի յերկիր. եւ հատոյց Աստուած զարհամարհանս յանդիման երեսաց նորա: Եւ ել ի լոյս Աքիկարոս (Ἀχίκαρος) եւ Նադաբ էջ ի խաւարն յաւիտենական, զի կամեցաւ կորուսանել զԱքիկարոս: Փոխանակ զի արար ինձ (Աքիկար) զո-

1 Փակագծի մէջ դրուածը Հայերէնին կը պակսի: Զօհրապ ծանօթութեան մէջ կը նշանակէ թէ Ոսկան իւր Աստուածաշնչին մէջ հոս աւելցուցեր էր պակասը, այսինքն՝ “Եւ եկին Աքիաքարոս եւ Նասբաս եղբօրորդիք նորա:” Մենք դրինք յունարէնին համեմատ. “Նասբաս” է Νασβᾶς, ուր Սինայականն “Նադաբ”: Ասորին աղաւաղ է ‘Եւ եկն անդր Աչիչոր եւ Լոբան (Նադաբ) քեռորդի նորա առ Տոբիթ”: Հոս “Ակիկար” լաւ է, մինչդեռ վերը (Նաեւ Բ, 18) “Ախիոր” սխալ ընթերցումն ունէր:

2 “Ադամ” նաեւ յունարէնին մէջ (յոյն ուրիշ ձեռագիրք՝ Ἁμὰν, Համան) սակայն՝ ինչպէս Հարրիս (էջ ԻԹ) ցոյց կու տայ, պարզապէս սխալ ընթերցումն է, ἐποίησε Ναδὰμ (արար Նադամ) կարդացուած է ἐποίησεν Ἀδὰμ (արար Ադամ), անուան “Ն” սկզբնատառը “արար” բային ծայրը կցուելով: Ասորին “Ակաբ” կը կարդայ սխալմամբ:

3 Յոյն՝ “եւ որպիսի ինչ իրս հատոյց նմա”. Նոյն իմաստով է Հայերէնն ալ:

թէ][1] զոր թաքոյցն նմա. եւ Ադամ (Նադաբ) անկաւ յորոգայթ եւ կորեաւ։

ողորմութիւն՝ ապրեցաւ յորոգայթէ մահու զոր թաքոյց նմա Նադաբ. եւ Նադաբ անկաւ յորոգայթն մահու եւ կորեաւ։

Այս համեմատութիւնքը պայծառ կը ցուցընեն, բաց ի անկէ որ Խիկարի պատմութիւնը յէականս շատ հին է, գլխաւորաբար սա կէտը որ Տովբիթայ դրոց բնագիրը շատ պէսպիսութեամբ հասած է. եւ արդէն այս բանս մեծ դժուարութիւններ կը պատճառէ մեկնիչներուն։ Մեր խնդրոյն համար նախընտրելի է Սինայականը, որ միւս բնագրաց շատ մը շփոթութիւնները կամ սխալ ընթերցմունքը չունի, ի մասնաւորի Խիկարի տեղ «Մանասէ» եւ Նադանի տեղ «Ադամ» կամ «Համան», «Լաբան», եւն, ինչպէս ծանօթութեանց մէջ նշանակեցինք։

Խիկարի պատմութիւնը յատկապէս յիշատակուած է ԺԴ, 12 տեղը։ Սակայն կարելի չէ, դժուարութենէ փախչելու համար, պնդել որ միւս տեղեր յիշուած Աքիկարն՝ Տովբիթայ ազգականը՝ զատ համանուն անձ մ'ըլլայ։ Սինայականը նոյն իսկ ԺԴ, 12 տեղը բացայայտ կ'ըսէ որ Աքիկար «ապրեցաւ յորոգայթէ մահու», վասն զի «արար ինձ զողորմութիւն»՝ ակնարկելով ԺԱ, 19 տեղը։ Ուստի Աքիկար-Խիկարը նոյն է այն Աքիկարոսի

---

1 Այս տեղ աղաւաղութիւն մ'ըլլալու է հայերէնին մէջ, գոնէ «յորոգայթէ» պէտք է աւելցընել յունարէնին եւ ընդհանրապէս իմաստին համար։ «Ցաւուր մահու» հայուն յատուկ է, ուր յունարէնը «յորոգայթէ մահու» կ'ըսէ։ Ասորին ամբողջ կտորն այսպէս ունի. «Քանզի ի նմա (ի Նինուէ) հատոյց Աչոբ՝ Ակիկարայ որ սնոյց զՏուբիթ, զի ոչ իջոյց զնա յերկիր. այլ Ակաբ էջ ի խաւար, իսկ Ակիկար ել ի լոյս յորոգայթէ զոր թագոյց նմա Ակաբ. սակայն ինքն էջ յերկիր։» Ուստի բաւական մթին ու խառնակ։

*հետ որ Տովբիթայ ազգական էր, անոր Անայէլ եղբօրորդին, մեծ իշխան Սենեքերիմայ եւ Սաքերդոնի (Ասորդանի), ինչպէս արդէն մեր Խիկարն էր «դպիր Սինիքարիմայ արքայի»: Պէտք չէ զարմանալ որ այսպէս Խիկար անձուկ յարաբերութեան մէջ կը մտնէ Ս. Գրոց հետ, յատկապէս Տովբիթայ հետ: Խիկարայ պատմութիւնն այնպէս ինչպէս առջեւնիս ունինք ասորերէն, արաբերէն, հայերէն եւն՝ կը ներկայանայ իբրեւ սիրուն վէպ մը. բայց իւր հիմնականը կրնար պատմական ըլլալ՝ գոնէ յէականս: Մեղի ծանօթ չէ արդի վէպին նախնականը, այն զոր Տովբիթայ հեղինակն առջեւն ունէր: Անտարակոյս պատմական-խրատական գրութիւն մըն էր, Աքիկարայ՝ Տովբիթայ եղբօրորդւոյն կենսագրութիւնը՝ մէջն իմաստնալից խրատներով. արդէն նաեւ յետոյ՝ երբ վէպի փոխուած է գրութիւնն, այս ընդհանուր նկարագիրը պահած է: Աքիկարի կենսագրութեան Խիկարի վէպի փոխուիլն եղած է ինքնուրոյն ճամբով, անցած նաեւ Եսովպոսի վէպին՝ պահելով իւր էական նկարագիրը, քանի մը թեթեւ փոփոխութեամբ արեւելեան նկարագրին: Եւ այս փոփոխողին արդէն անծանօթ էր Խիկարի եւ Տովբիթայ Աքիկարայ նոյն ըլլալն, այնպէս որ որ եւ է յիշատակութիւն չենք գտներ Խիկարայ եւ Տովբիթայ ազգականութեան մասին: Այս պարագան չէր պակսեր անշուշտ, եթէ Խիկարայ պատմութեան գրողը կախումն ունենար Տովբիթէն (ինչպէս կը կարծէին Հոֆման, Մայսնէր եւն), ուստի իւր գործն իբրեւ լուսաւորութիւն Տովբիթայ յիշեալ տեղեկութեանց գրած ըլլար: Ամենապարզ մեկնութիւնն է ուրեմն ըսել՝ Հարրիսի կարծեաց համեմատ՝ թէ Տովբիթայ հեղինակն առջեւն ունեցած է Աքիկարայ պատմութիւնը գրաւոր, եւ ինքը յատկապէս շեշտած է անոր իւր ազգական ըլլալը, զինքը խնամելն եւն: Վերջապէս՝ եթէ նաեւ Խիկարայ նախնականը վիպախառն գրութիւն մ՚ալ*

ըլլար, անսովոր երեւոյթ մը չէր կրնար համարուիլ աստուածաշունչ մատենի մը մէջ յիշատակուած կամ գործածուած ըլլալը. վասն զի սուրբ գրոց մեկնչաց ծանօթ են բաւական թուով նման դէպքեր. բաւական է յիշել միայն Յուդայի թղթոյն (տող 14) հռչակաւոր տեղը՝ ուր գործածուած է համբաւաւոր “Ենովքայ Տեսիլը„, եւ բազմաթիւ նմաններ: Այս կէտին մեկնութիւնը թողունք սուրբ գրոց մեկնչաց. իսկ մենք դառնանք Խիկարի քննութեան:

Խիկարի պատմութեան գոնէ երկու գլխաւոր անձինք ըստ այսմ նախնականին կը վերաբերին՝ գտնուելով արդէն Տովբիթայ քով յիշատակուած: Միւս կողմանէ Տովբիթայ գիրքն աւելի լաւ պիտի հասկցուի այսուհետեւ՝ Խիկարայ պատմութեան համեմատութեամբն. որովհետեւ՝ վերը յիշուած՝ պէսպէս խմբագրութեանց եւ օրինակաց բազմաթիւ աղաւաղմունք, ընթերցմանց տարբերութիւնք ասով կրնան ճշգրտուիլ, որով նաեւ Սինայականին ընթերցմանց ճշդութիւնը հաստատուիլ: — Խիկարի պատմութեան գլխաւոր անձինքն են՝

ա. “Խիկար„՝ հայերէնին համեմատ[1], ամենէն կարեւոր դէմքն է պատմութեան: Ասորերէնը “Ախիկար„ (ܐܚܝܩܪ), արաբերէնը՝ “Հայկար„ (حيقار, որ կը կարդացուի նաեւ “Հէյկար„ եւ “Հիկար„, ձեւ մ'որ ըստ Մայսների նախնաբար ուրիշ անուն մըն էր[2]), եթովպականը՝ “Խեկար„, ինչպէս

[1] Հայերէնին համար կ'ըսէ Հարրիս (որ Khikar կը գրէ, տես էջ ԻԷ) թէ “չի միաբանիր լեզուին յիշուած ամէն ձեւերուն հետ.„ սակայն հայը յայտնապէս ասորի “Ախիկար„ ձեւէն է՝ սկզբնատառին իյնալովը:

[2] Տես ZDMG. 1894, էջ 186: Մայսներ կը համարի թէ արաբացին վէպիս թարգմանութեան ժամանակ չգիտնալով թէ “Աքիկարն„ ինչ անուն է, փոխագրած է իրեն այլուստ ծանօթ “Էլ-Խիկար„ կամ “Էլ-Հայկար„ անձին անուան՝ որ կը յիշուի իբր Պարսից թագաւոր մը եւն (տես

յիշեցինք. յունացած ձեւ մ'ունի սլաւականը՝ "Ակիւրիոս" (Akyrios)։ Դառնալով Տովբիթայ գրոց տեսանք վերն այս անուան բազմաթիւ ձեւերը (չհաշուելով նաեւ սխալ "Մանասէ" ընթերցումը), գլխաւորաբար "Աքիաքարոս" այլեւայլ ուղղագրութեամբ։ Ամէնէն մերձաւորն է Սինայականին "Աքիկար" ('Αχειχάρ եւ 'Αχίχαρος), զոր նոյնութեամբ ունի նաեւ լատին հին թարգմանութիւնը (Achicarus), մինչդեռ Տովբիթայ ասորերէն պեշիտթա թարգմանութիւնը (որ բնագիր չէ՝ այլ յունարէնէ փոխադրուած) տարբեր կերպով կը կարդայ, երկու տեղ (ԺԱ, 17 եւ ԺԴ, 10) "Ակիկար" (ܐܟܝܩܪ, բայց Լակարդի հրատարակութիւնը՝ "Ախիկար" ܐܚܝܩܪ), իսկ միւս երեք անգամ (Ա, 21 եւ Բ, 10) փոքր տառասխալով մը, այսինքն ܘ (կ)

---

ի գիրս "Ջաւալիկի", հրտ. Սախաու, էջ 54)։ Ասկէ յետոյ՝ յօդին իյնալով, եղած է "Հայկար" ձեւը, այնպէս ինչպէս "Աղէքսանդր" անունն եղած է "Ասկանդար"։ Ասով կը մերժէ Մայսներ նաեւ Կելլերի կարծիքն որ անունս յառաջ կը բերէր արաբերէն "Հակար" (անարգել) բայէն ("Հակիր" անարգ, խեղճ)։ Թէ "Ախիկար" եբրայական ո՞ր անուան համեմատ կրնայ մեկնուիլ, չի կրնար Մայսներ որոշել, բայց իբրեւ նախատիպ կը յիշէ զԱխիշար (Գ. Թագ. Դ, 6, հայն ու յոյնը՝ "Աքիսար", որ "հրամատար" էր Սողոմոնի կամ պալատան վերատեսուչ), աւելի մերձաւոր՝ Ախիքամ (Դ. Թագ՝ ԻԲ, 25, հայը "Աքիկամ" հայր Գոթողեայ. հմմտ. Երեմ. ԼԹ, 14, Խ, 5)։ Մերժելով Պէն-Սմիթի կարծիքը (Payne-Smith, Thesaurus Syr. I, 124) որ "Ախիկար" եւ բոլոր նման ձեւերը աղաւաղութիւն կը համարի, իսկ ուղիղը "Ախիոր", կը յիշեցընէ Մայսներ նմանաձեւ անուն մ'ալ սուրբ բնագրին Մնացորդաց (Ա Մնաց. Զ, 4) որ Աբիքամ (հոս յոյնն ունի Boxxí, հայը՝ "Բոքքի" նաեւ ասորին քիչ մ'եաքն՝ անգ. Զ, 51 նոյնպէս ունի)։ Ուրիշները (զոր օր. Otto Zöckler, Die Apocryphen des Alten Test. Միւնխէն 1891, էջ 169) հիմն առնելով "Աքիաքար" ձեւը՝ կը մեկնեն եբրայերէն "ախի-ախար" (= "միւս եղբայրը")։ չմոռնալով նաեւ "Ախիոր" եբրայական անունը։

եւ օ (վ, ս) նմանաձեւ տառերու շփոթելովն, տարբեր անուն մ'եղած է՝ "Ախիօր" ([illegible]): Ճիշդ նոյն ձեւն ունի լատինական Վուլգատան՝ Achior թարգմանելով ամէն տեղ, որ նշան է թէ սորի բնագիր մ'ունէր առջեւը Ս. Յերոնիմոս[1], ինչպէս արդէն ինքը կը յայտարարէ:

Բ. Երկրորդ գլխաւոր անձն է "Նաթան" կամ "Նադան" ըստ հայերէնին. վերջինիս համեմատ են միւս խմբագրութիւնքն ալ՝ "Նադան" (սորին [illegible], արաբը نادان), սլաւականը՝ "Անադան": Դառնալով Տովբիթայ գրոց՝ նախ պէտք է մէկդի դնել այլեւայլ անճիշդ ընթերցուածքն, այսպէս "Համան", "Ադամ" եւն: Միայն թէ՝ ինչպէս վերն յիշեցինք՝ "Ադամ" պարզապէս սխալմամբ յառաջ եկած է, զոր պէտք է կարդալ "Նադամ": Սինայականն ունի երկու ձեւ՝ "Նաբադ" (Ναβάδ) եւ "Նադաբ" (Ναδάβ), որոնց լաւագոյնն է վերջինը: Ուստի նախնականը "Նադամ" կամ "Նադաբ" էր կամ նման բան մը, որ համեմատ է Խիկարու պատմութեան "Նադան" անուան[2]: Վատիկանեանն ունի "Նասբաս" ձեւ մ'ալ, զոր եթէ չ'ուզենք Հարրիսի եւ այլոց հետ Նադանայ կրտսեր եղբօր անունը համարիլ, պէտք ենք ուղղել նախընթացին պէս: Տոբիթայ միւս թարգմանութիւններէն հայերէնը միայն "Ադամ" ունի (ԺԴ, 10, միւս տեղը

---

1 Տես Մայսներ՝ անդ, էջ 191—192 ծան.: Յերոնիմոս "Ախիօր" սխալ ընթերցումը գտած էր եւ ընդունած այնու մանաւանդ որ այս անունն այլուստ իրօք կայ. իրեն անծանօթ չէր կրնար ըլլալ "Աքիովր (յոյն՝ 'Αχιώρ) առաջնորդ ամենայն որդւոցն Ամոնայ", որ Յուդիթի գրոց մէջ յաճախ կը յիշուի (Ե, 5, 26. Զ, 1, 5 եւն):

2 Մայսներ (անդ, էջ 192) ընդհակառակն աւելի նախապատուութիւն կ'երեւայ տալ "Նաբադ" ձեւին՝ համեմատելով անունս Յերոբովամայ հօր անուան հետ (Գ. Թագ. ԺԱ, 26 "Յերոբովամ որդի Նաբատայ" յոյնը Ναβάτ, նոյնպէս այլք):

կը պակսի), ասորին երկու սխալ ընթերցում՝ «Լաբան» (ԺԱ, 17) եւ «Ակաբ» (ԺԴ, 10 ܣܘܪ), աւելի լաւ է հին լատիներէնը (Nabal եւ Nabad) եւ Վուլգատան (Nabath)՝ որ կը ցուցընէ թէ այսպէս էր ասորին ալ Ս. Յերոնիմոսի առջեւ: Եթէ կայ դժուարութիւն մ'այն այս է, որ ըստ Խիկարու պատմութեան Նադան Խիկարու «քեռորդին» է. իսկ Տովբիթայ գրոց օրինակները պէսպիսութիւն մ'ունին: Նախ ամէնքը զԱքիկար Տովբիթայ եղբօրորդին կը դնեն. անկէ ետքը Վատիկանեանը զՆասբաս (Նադան կամ իւր եղբայրը) Աքիկարու եղբօրորդին (ԺԱ, 17 տես նոյնը, ուր Հայերէնը կը պակսի, յոյնը՝ ἐξάδελφος), մինչդեռ Սինայականը «եւ եկին Աքիկար եւ Նաբաթ եղբօրորդիք նորա խնդութեամբ առ Տուբիթ», ասոր համաձայն ըլլալով Վուլգատան ալ (Achior et Nabath consebrini Tobiae), ուստի Խիկար եւ Նադան եղբօրորդի են Տովբիթայ: Սակայն այս դժուարութիւնը կրնայ դիւրաւ բարձուիլ, «եղբօրորդիք» յոգնակին Վատիկանեանին հետ եզակւոյ փոխելով (հին լատ. զՆադան avunculus կ'անուանէ Աքիկարայ): Ասորին՝ Վուլգատայի հիմը՝ աւելի յառաջ ալ կ'երթայ եւ «քեռորդի» ալ կ'ըսէ գրելով՝ «Եւ եկն անդր Աքիկարոս եւ Լաբան (Նադան) որդի քեռ նորա ընդ նմա առ Տուբիթ:» Ասով համաձայնութիւնը լիակատար կ'ըլլայ.

գ. Խիկարու պատմութեան մէջ աննշան դեր մ'ունի Նադանի կրտսեր եղբայրը, զոր Հայերէնը «Բուզան» կ'անուանէ («Բաւզան»՝ Պոդլեան օրինակը, որ աղաւաղ ըլլալու է): Ասորին՝ զուտ ասորեստանեայ ձեւով՝ «Նաբուզարդան» (ܢܒܘܙܪܕܢ, զոր արաբը կէտի սխալ դնելովն ըրած է «Բենուզարդան»՝ بنوزردان, անգամ մըն ալ «Նաւդան», «Հազարումէկ Գիշերաց» մէջ «Էընատադամ».) սլաւականը չունի: Հարրիս, որ «Նուբուզարդան» անունը Ս. Գրքէն փոխառեալ կը համարի, կ'առաջարկէ

տոր հետ համեմատել Վատիկանեանի "Նասբաս" անունն՝ որ ըստ այսմ Նադանի կրտսեր եղբայրն ըլլայ. բայց ինքն ալ ապահով չի համարիր այս բանս[1]։

Դ. Գլխաւոր անձինքներէն մին է արքայն Նինուէի եւ Ասորեստանի։ Հայերէնը միայն Սենեքերիմ կը յիշէ այլեւայլ ձեւերով (հմմտ. սկիզբը "յամս եւ ի թագաւորութեան Սինիքերիմայ արքային Նինուէի" եւն, այլուր "Սինիքարիմ", Սինաքարիմ")։ Տեղ մը միայն ակնարկութիւն կայ արքայի հօր այսպէս՝ "յիշեա զայն որ մատնեցին զքեզ Սինաքարիմայ արքայի հաւրն ; եւ ես առեալ պահեցի զքեզ" եւն. որմէ կ'երեւայ որ Խիկար նոյն բարձր պաշտօնին մէջ էր նաեւ անոր ատեն։ Լաւագոյն են միւս խմբագրութիւնք։ Ասորին զոր օրինակ՝ նոյն իսկ սկիզբը կ'ըսէ՝ "Յամի քսաներորդի Սենեքերիմայ ("Սիննախերիբ") որդւոյ Սարխադոմի (ܣܪܚܕܘܡ) արքայի Ասորեստանեայց եւ Նինուէի" եւն, նոյնպէս արաբականը (سنحاريب ابن سرحادوم). իսկ սլաւականը հայերէնին պէս միայն Սենաքերիմ (Sinagrip) կը յիշէ։ Դառնալով Տոբիթայ գրոց՝ կը տեսնենք որ "Սարխադոմ" յիշատակութիւնն անհրաժեշտ է. բաւական է յիշել միայն Տոբ.

---

1 Հարրիս՝ էջ ԺԹ եւ ԻԴ։ Հարրիս անունս առնուած կը համարի սա տեղէն (Դ. Թագ. ԻԵ, 8) "Եկն Նաբուզարդան դահճապետ" Նաբուքոդոնոսորայ եւն։ — Ուրիշ մեկնիչները յաճախ աւելի չփոթած են իրերը։ Այսպէս Zöckler (անդ էջ 179) նկատելով որ Տոբ. Ա, 22 միայն Աքիկար կը յիշուի Տոբիթայ եղբօրորդի, կ'առաջարկէ ԺԱ, 17 տեղին կարդալ "Աքիաքարոս ու Ե— Նասբաս", ուստի Խիկարայ ուրիշ մէկ անունն ըլլայ "Նասբաս"։ Ասոր համեմատ նաեւ ԺԴ, 10 տեղւոյ Վատիկանեանի "Մանասէ" սխալ ընթերցումն կը մեկնէ Ցէօկլէր (էջ 183) իբրեւ աղաւաղումն "Նասբաս" անուան։ Այսպէս մեկնած են ուրիշներն ալ։

Ա. 22 տեղն, ուր Վատիկանեանն (ու Հայը) միայն Ասորդանի ("Սաքերդոն") ատեն կը դնէ Աքիկարի գործունէութիւնը, իսկ Սինայականն երկուքին ալ, գրելով՝ "Եւ էր Աքիքարոս աւագ տակառապետ... եւ գանձապետ առ Սենեքերիմաւ. եւ կարգեաց զնա Սաքերդոն (Σαχερδονὸς, Ասորդան) կրկին անգամ" (այս վերջին բացատրութեան մասին տես վերը)։ Ուստի ասորւոյն եւ արաբականին "Սարխադոմ" արքայն է "Սաքերդոն" կամ Ասորդան։ Միայն թէ Խիկարու պատմութիւնը ժամանակագրօրէն սխալ է, զՍենեքերիմ Սարխադոմայ որդին դնելով ամէն տեղը, մինչդեռ հակառակն է ճիշդը։ Հարրիս՝ որ երկար կը խօսի ժամանակագրութեան խնդրիս մասին, մէտ է ընդունելու որ այս սխալն արդէն նախնականին մէջն ալ այսպէս էր, մինչդեռ Տովբիթայ քով ուղիղը կը տեսնենք։ Այս ալ ապացոյց մըն է Խիկարու պատմութեան Տովբիթայ գրքէն ազդուած չըլլալուն, այլ անկէ անկախ ու հնագոյն։ — Սակայն նաեւ Տովբիթայ օրինակները սխալ ընթերցուածներ յաճախ ունին, որով ժամանակագրական քանի մը մթին կէտեր ու խնդիրներ կան եւ որոնց մասին մեկնիչները պէսպէս ենթադրութիւններ կ'ընեն։ Օրինակի համար Սինայականն յիշելով Նինուէի կործանումը (ԺԴ, 15) կ'ըսէ թէ նոյնն ըրաւ Աքիաքարոս (... ἣν ᾐχμαλώτισεν Ἀχιάχαρος, նոյնպէս հին լատ. Achicar), մինչդեռ Վատիկանեանն լաւագոյն է, կարդալով՝ "զոր գերեաց Նաբուքոդոնոսոր եւ Ասուերոս" (Ναβουχοδονόσορ καὶ Ἀσύηρος). Հայն այս "Եւ"ն ալ ջնջելով ըրած է՝ "զոր գերեաց Նաբուքոդոնոսոր Ասուերոսն"։ Քանի որ "Ասուերոս" Մարաց արքայ կ'ըսուի, պէտք է ուղղել կամ հասկնալ "Կիաքսարէս", եւ Նաբուքոդոնոսորայ տեղ (որ այն ատեն թագաժառանգ էր) լաւագոյն է դնել անոր հայրը Նաբոբաղասար։ Բայց այս ամէն խնդիրները մեր ծրագրէն դուրս են. միայն պէտք է կրկնել որ

Սինայականին հոս "Աքիաքարոս" ըսելը պարզ շփոթութիւն մըն է[1]:

Խիկարու պատմութեան մէջ կան ասոնցմէ դուրս քանի մ'անուններ ալ, որոնց յիշատակութիւն չկայ Տովբիթայ քով. ուստի աւելի արժանի են ուշադրութեան այն տեսակէտով որ թերեւս

[1] Համառօտիւ յիշելու համար, քանի որ Խիկարու պատմութեան լուսաւորութեան համար ալ պէտք է, Տովբիթայ գրոց ժամանակագրական գլխաւոր կէտերն են հետեւեալները: Հրէից մէկ մասը գերի կը տարուի (Ա, 2 եւն) "յաւուրս Ենեմեսարու արքայի" ('Ενεμεσσάρ), որ ըլլալու է Սաղմանասար Դ. արդէն հին լատ., Վուլգատան եւ ասորին "Սաղմանասար" կը կարդան: Յետոյ Ա, 15 կ'ըսուի՝ "Եւ յորժամ մեռաւ Նեմեսար, եւ թագաւորեաց Սենեքերիմ որդի նորա" եւն. այսպէս նաեւ միւս բնագիրք, միայն յոյն ձեռագիր մը "Աքերիմ" կը կարդայ "Սենաքերիմ" անուան առաջին վանկը դուրս թողլով: Դժուարին կէտ մըն է այս. քանի որ Սաղմանասարու յաջորդը Սարգոն է, այն որ նոյնպէս գերեց Հրեաները, եւ ասոր որդին է Սենեքերիմ. դժուարութիւն մ'որ ուրիշ տեղ ալ կայ: Սուրբ Գրոց ուրիշ տեղեր ալ (Հմմտ. Դ. Թագ. ԺԷ, ԺԹ եւն) չի յիշուիր Սարգոն: Այս դժուարութեան մեկնութիւն տրուած է այլեւայլ կերպով, նոյն իսկ "Ենեմեսար" զՍարգոն համարելով, քանի որ երկու անուանց մէջ ալ նոյն արմատական տարերքն են: Թողլով այս կէտը՝ յիշենք Տովբ. Ա, 23 "սպանին զնա (զՍենեքերիմ) երկոքին որդիքն իւր եւ փախեան նոքա ի լերինս Հայոց (յոյն՝ εἰς τὰ ὄρη 'Αραράτ եւն, տես Դ. Թագ. ԺԹ, 36—37). եւ թագաւորեաց Ասորդան որդի նորա". (քիչ մ'ետքը հայը "Սաքերդոն" ալ կ'անուանէ զայս՝ աւելի նման յունին եւ այլոց): Ի վերջոյ կը յիշուի (ԺԴ, 15) Նինուէի կործանումն Ասուերոսի ձեռօք, որուն մասին խօսեցանք վերը: Ըստ այսմ Տովբիթայ գրոց պատմուածը հետեւեալ շրջանին կ'իյնայ. Սաղմանասար Դ (727—722 Ն. Ք.), Սարգոն (722—705), Սենեքերիմ (705—681), Ասորդան կամ Սաքերդոն, բուն՝ Էսարհադդոն (681—668), Սարդանապաղ, բուն՝ Ասուրբանիպալ (668—626), եւ Նինուէի կործանումն՝ 606ին: — Խիկարայ շրջանն է Սենեքերիմայն ու Ասորդանինը:

կարենանք որոշել մաս մ'որ նախնականին վերաբերէր (— այս կարգիններն առհասարակ աստեղատանեայ նկարագիր ունին. —) եւ մաս մ'որ յետոյ մտած են։ Ընդհանրապէս երկրորդական անձինք են ասոնք։

Է. Բաւական անգամ կը յիշուի Խիկարու կինը՝ Աբէսփոն հայերէնին համեմատ։ Սլաւականը չունի կնոջ անուն. ունի ասորին "Աշֆեգանէ" (ܐܫܦܓܢܝ), որմէ նաեւ արաբականն՝ կրկին ձեւով, պարզապէս գրչութեան պէսպիսութեամբ (اشفغنى, սխալմամբ՝ شفعنى!), ուստի ուղղակի ասորերէնէն կախում ունենալով։ Դժուար է մեկնել անունն ու իր ծագումը. Հաւանօրէն ալ նախնականին չէր վերաբերեր։

Ը. Մեծ դեր մը կը խաղայ Խիկարայ "ընկեր իմ" կոչածը, դահճապետն "Աբուսմաք", որ հին աղաւաղութիւն մ'ըլլալու է, քանի որ ասորին ալ նման ձեւով մ'ունի "Եաբուսէմաք" (ܝܒܘܣܡܟ), բայց կարելի է ուղիղը գտնել միայն տառ մ'ուղղելով այսինքն՝ Նաբուսէմաք (= Նաբույ կրեաց) որ բուն ասորեստանեան կազմութիւն է։ Արդէն արաբացին այս ուղիղն ալ ունի, բայց ընդհանրապէս ասորերէնն աւելի աղաւաղած է՝ Իբն կամ Աբու-Սամիք գրելով (ابن سميك կամ ابو)։ Յատկապէս նախնականին մէջ ալ կար Նաբուսեմաք անունս, այնչափ աւելի որ նոյնը մտած է նաեւ Եսովպոսի վարուց մէջ, ուր դահիճը յունաձեւ Hermippos կը կոչուի, (Հերմէս = Նաբոյ)[1], զօրաւոր ա-

---

1 Հմմտ. Հարրիս, էջ ԼԴ։ Նաբույի յունական համապատասխանողն է Հերմէս, որուն վկայ կը բերէ Հարրիս՝ Աբուլփարագի (Պատմ. Գ) սա խօսքը՝ "Անուն նորա էր Նաբուխադնեծծար (Նաբուքոդոնոսոր), այսինքն՝ Հերմէս տակ"։ Մայսներ (էջ 177, 184) Նաբուսեմաք անունը կը համեմատէ Ս. Գրոց "Ախիամաք" անուան հետ (Եզք ԼԱ, 6. ԼԵ, 35. Հայերէնն ունի "Աքիամ")։

պացոյց մը, ինչպէս կ՚ըսէ Հարրիս, Եսովպոս-Խիկարու առաջնութեան դէմ։

 Է. Խիկարի տեղ գլխաւորող՝ անոր շատ նման ծառային անունը հայերէնը "Սէնւքար„ կ՚ըսէ։ Ո՛չ սլաւականն ունի եւ ո՛չ արաբականը պահած է։ Միայն ասորերէնն անուն մը կու տայ ծառային, այն ալ "Մանզըփար„ (ܡܢܙܦܪ), ուստի բաւական տարբեր։ Խնդրական է ասոր նախնականին մէջ գտնուիլը։

Ը. Ինչպէս վերը յիշեցինք՝ միւս բնագիրք Պարսից Թագաւոր մ՚ալ կը յիշեն, որուն Նաթան թուղթ գրած ըլլայ, անունն ալ Աքէ Քար Խամօէլէմ ըստ ասորւոյն (ܐܘܨܐ ܕܡ ܡܣܩܠܐ), իսկ "Աւէշ որդի Շահի Թագաւոր Պարսից եւ Աջամի„ ըստ արաբականին, աւելի ուղիղ "արքայ Պարսից եւ Եղամայ„։ Այս վերջինը կը հաստատուի սլաւականին աղաւաղութեամբն ալ որ "Թագաւոր Պարսից, Nalon„ կ՚ըսէ, (անշուշտ "Եղամայ„)։ Ըստ Հարրիսի՝ Եղամայ յիշատակութիւնը գրաւական մըն է հնութեան[1]. միւս կողմանէ անուանս ինչ ըլլալը չի կրնար մեկնուիլ։ Հայերէնը չունի ոչ անունս եւ ոչ անոր նամակի յիշատակութիւնը։

Թ. Փարաւոնի առջեւ Խիկար նախ ծածկելով իւր ով ըլլալը՝ կ՚ըսէ թէ ինքն է "Աքէկամ„ ստրուկ Սենեքերիմայ։ Ճիշդ այսպէս ունին ասորին (ܐܒܩܡ)

---

[1] Արդէն Մայսներ (էջ 177) սրբագրած էր այստեղ "Պարսից եւ Աղամայ„ (բարբարոսաց) խօսքը՝ "Պարսից եւ Եղամայ„։ Այս սրբագրութիւնը կը հաստատեն նաեւ Կէմբրիջի ասորերէնն ու Պերլինի օրինակը։ Եթէ ուզենք հեռաւոր համեմատութիւն մ՚ալ՝ կը գտնենք Տովբիթայ քով (Բ, 10) ուր կը պատմուի Ախիկարի Եղիմայիդա երթալը. (այսպէս լաւագոյն ըստ Սինայականին, ուր Վատիկանեանն ու Հայը սխալ ընթերցմամբ զՏովբիթ հոն կը խաւրեն)։ Միւս կողմանէ Մայսներ այս "Ակի„ անունը կը համեմատէ Ա. Թագ. ԻԱ, 11. ԻԷ, 2 եւն յիշուած անուան հետ, զոր հայերէնն "Անքուս„ փոխադրած է։

ու արաբացին ալ (ابيقام Նաեւ սխալ՝ ابی قام գրուած), վերջինս սխալանձեւ, որ "Հազար ու մէկ գիշերաց" մէջ աւելի յառաջ երթալով "Աբիմակամ" եղած է։ Սլաւականն ալ ունի Obikam (եւ Abesam)[1]։

ժ. Կը յիշուի ծառայ մ՚ալ որուն կը յանձնէ Խիկար գրել ըսածներն երբ զՆաթան կը պատժէր։ Հայը "Բէլշոր", որ դժուարաւ հնագոյնն է։ Ամէնէն հարազատ ձեւն ունի հոս սլաւականը՝ Nagubil (որուն Հարրիս կը համեմատէ Ս. Գրոց մէջ յիշուած "Աբեդնագով" Abednego՝ ծառայ Նեբոյի[2])։ Նեբոյի յիշատակութիւնը պահած են հոս նաեւ ասորին՝ "Նաբուէլ" (ܢܒܘܐܝܠ) եւ արաբը՝ "Նաբուհալ" (نبوحال) գրելով։

ժա. Կը մնայ վերջապէս յիշել երկու անուն ալ, որ հայերէնին մէջ չկան, ինչպէս նաեւ ոչ սլաւականին։ Արծուոց վրայ թռչող երկու տղոց անունն կու տան արեւելեանք, մին "Նաբուխայէլ" (ܢܒܘܚܐܝܠ արաբերէնը "Նաբուհալ" նախընթացին պէս.) երկրորդին "Տաբշալոմ" (ܛܒܫܠܘܡ, طبشاليم). երկուքն ալ խնդրական. վերջինս արդէն "Կալիլակ եւ Դիմնակ" աղուեսագրքէն առնուած է[3]։

Կը տեսնուի որ անուանցս գոնէ հնագոյններուն մէջ մեծ դեր մը կը խաղայ "Նաբոյ" դիք։

---

1 Մայսնէր կը համեմատէ անունս Ս. Գրոց յիշած Ախիքամ անուան հետ (տես Դ. Թագ. ԻԵ, 22. Եր. ԼԹ, 14. Խ, 5. Հայը "Աքիկամ")։ Տես նաեւ վերը։

2 Հմմտ. լաւ եւս Լաբուբնայի յիշած քրմապետն "Աբեդնեբօ" (տպ. Վենետ. էջ 31) եւ նմանները։

3 Մայսնէր կ՚ուզէ համեմատել այն անուան հետ, զոր Հայ թարգմանք տեղ մը (Եսայի, Է, 6) "Տաբէլ" եւ ուրիշ տեղ մը (Բ Եզր., Դ, 7) "Տաբեէլ" փոխադրած են։ Աղուեսագրոց արաբերէնը "Դաբշալիմ", ասորին "Դաբշարամ" անունն կու տայ Հնդկաց թագաւորին։ Տես՝ ի միջի այլոց՝ Keith-Falconer, Kalilah and Dimnah etc. Կէմբրիճ 1885, էջ 1 եւ 270—1 ծան. 4։

այնպէս որ անկարելի չէ այն մեկնութիւնն ալ որ "Նադան" անունն աղաւաղութիւն կը համարի "Նաբօդօն" ասորեստանեան կազմութեան [1]։ Այս ամէնն ասորեստանեայ շրջան մը կ'ենթադրէ, կարծես երաշխաւորութիւն մը Խիկարու պատմութեան ստուգիւ նախ ի Նինուէ երեւան գալուն՝ այս կամ այն ձեւով։ Միւս կողմանէ ենթադրել կու տայ որ նախնականին մէջ Խիկար ներկայացուած էր իբր հեթանոս մը, կամ գոնէ հեթանոսական գաղափարներով խառնուած. եւ այս կրնայ մեկնել գրքիս նախնականին կորսուիլը։ Հայերէնն այս մասին որ եւ է տարակոյս չի թողուր, ամէն տեղ դից յիշատակութիւն կայ, անոնց կ'աղաչէ Խիկար զոհով ու ընծաներով եւն։ Արդի օրինակները շատ տեղ "չաստուածք" կ'ըսեն, որ չենք կարծեր հին ընթերցուածն ըլլայ. բայց արդէն Խիկար կ'աղօթէ՝ "Ո՛վ տեարք իմ եւ չաստուածք, Բէլշիմ եւ Շէմիլ եւ Շամին" (Պարիսի Թ. 131 "Շիմել եւ Շամին") դից անուններ՝ որ միւս խմբագրութիւնքն չունին եւ մասամբ ալ դժուարաւ կը մեկնուին։ Ցայտնի կը տեսնուի որ թէ ասորին եւ թէ արաբն հեթանոսական կամ դիցական հետքերը ջնջելու աշխատած են։ Տեղ մը միայն աչքէ փախած է։ Երբ Փարաւոն կը հարցընէ Խիկարու թէ ինքն որո՞ւն նման է, պատասխան կու տայ Խիկար՝ "Նման ես դու դիցն (այսպէս հայերէն, ասորին ու արաբը "Բէլշայ". ասոր. ܒܠܫܐ, արաբ. بيل եւ بعال) եւ նախա-

[1] Հմմտ. Հարրիս, էջ ԼԶ-ԼԸ։ Իրաւամբ մոռադիր կ'ընէ Հարրիս որ հայերէն դից անուանքն ալ չփոթ են եւ մեկնութեան կարօտ։ Բաց աստի Նաբույի ամէն յիշատակութիւն պէտք չկայ Նինուէի եւ Բաբելոնի օրերուն հանել։ Շատ եաքն ալ մնացին անոնք. Եդեսիա քրիստոնէութեան դարձաւ Բէլի եւ Նաբույի պաշտամանէն, ինչպէս Լաբուբնա յաճախ կը յիշատակէ այս դիքն. (Հայերէն տպ. էջ 24, 28 եւն. "Նաբով", զոր Խորենացի Բ, իէ "Նաբոգ" ձեւով ունի)։

բարըքդ քո քըմանց„ ։ Քիչ մ'ետքն այն Հարցման
Թէ Սենեքերիմ որո՞ւն նման է, կը տրուի պատաս-
խանս՝ “Սենեքերիմ արքայ նման է Բէլշիմի եւ նա-
խարարքն նորա փայլատականց„ եւն։ Ասորին ճիշդ
Հոս (տպ. էջ 61) ջնջուած է, այնպէս որ “Բիլշիմի„
տեղն անընթեռնլի կը մնայ։ Բայց այս տեղս կը
մեկնուի արաբերէնով որ կ'ըսէ՝ “Տէրն իմ (Սենե-
քերիմ) է աստուածն երկնից„ եւն (سيدى الله السماء،
տպ. էջ 21)։ Դժուար չէ այժմ որոշել որ ասորին
ունէր “Բէլ երկնից„ կամ նման բան մը, որով կ'ար-
դարանայ Հայուն “Բէլշիմ„ անունը. (“Բէլ-Շիմ„,
երկինք՝ ասոր. “շմայա„ եւն)։ Հայուն այս դիցաբա-
նական անուանց մասին յետոյ առիթ կ'ունենանք
խօսելու. Հոս կը բաւէ Հաստատել որ ըստ երեւ-
ոյթին ասորեստանեայ-Հեթանոսական Հետքեր
կային նախնականին մէջ, եթէ մանաւանդ ճիշդ է
Լիցբարսկի գիտնականին դիտողութիւնն, որ մինչեւ
անգամ նոր տարւոյ օրուան Բէլայ արձանին թա-
փորին ակնարկութիւն մը կը կարծէ գտնել[1]։ Ըստ
մեզ այս Հեթանոսական նկարագիրն աւելի յետոյ
զարգացած ըլլալու է, վէպի զարգացումն տուող
գրչէն, դժուարաւ բուն նախնականին մէջ։ Գոնէ
Տովբիթայ Հեղինակին Աքիկարի մասին ակնար-

---

[1] Այս ակնարկութիւնը կը նշմարուի Հոն՝ որ նախ Խիկար զՓարաւոն կը նմանցընէ, ինչպէս վերը յիշեցինք, “Դուլարոյ (ասորին եւ արաբը՝ “Նիսան ամսոյ„) եւ նախաբարք քո ծաղկանց„, իսկ յետոյ Սենեքերիմ կ'ըլլայ “Բէլշիմ„, որ երբ կ'ուզէ կարկուտ կը բերէ, կամ “ծագէ արեւ եւ Հարկանէ զբոյս դալար„ (Նիսանի գեղը), եւ դարձեալ ասորւոյն Համեմատ՝ “կ'արգելու զԲէլ գալու եւ երթալու ի փողոցի եւ զքրմերը տեռնուելու„ եւն։ Եթէ ասովստուգիւ կ'ակնարկուի Ասորեստանեայց ամանորայ տօնն, երբ Բէլայ եւ ուրիշ դից արձանները թափորով կը պտտցընէին, այն ատեն լիովին կը Հաստատուի այն պարագան ալ՝ որ Խիկարու պատմութեանս եգիպտական միջադէպը նախնականին կը վերաբերէր՝ գոնէ յէականս։

կածներն ու բրած գովութիւնքն (Հմմտ. ԺԱ 17, եւ եւ ԺԴ, 10) դժուարաւ կը մեկնուին, եթէ իւր առջեւն եղած գրութեան մէջ Աքիկար կռապաշտ հեթանոս մը ներկայացուած ըլլար այնպէս բացորոշ գոյներով։

Տեղւոյ անուն չենք գտներ վէպին մէջ, բայց միայն Նինուէ եւ "Արծռունեաց դաշտն" ուր եղաւ զօրաժողովը։ Ասորին ալ նոյնն ունի (ܦܩܥܬܐ ܕܢܨܪܝ), զոր բառ առ բառ օրինակած է արաբայինն بقعة نسرين թէեւ այս իւր լեզուաւ ուրիշ իմաստ մ'ունի սովորաբար[1]։ Հայերէնին մէջ Բոդլեան ձեռագիրն է որ "դաշտ Արծռունեաց" կ'ըսէ կանոնաւորապէս։ Ասկէ միայն քայլ մը կը մնար բոլորովին հայացնելու եւ "Արծրունեաց դաշտ" ընելու, ինչպէս ըրած են բոլոր միւս օրինակները։ Այս ալ վէպին հայացնելու հին ճիգ մը համարելու չենք, այլ պարզապէս շփոթութեան արդիւնք։

4.

Եսովպոսի անունը քանի մ'անգամ յիշեցինք, իւր վարուց գոնէ մէկ մասը Խիկարայ զրուցին վրայէն ձեւուած ըլլալով։ Եսովպոսի հռչակը հիմնուած է իւր Առակաց վրայ, որոնք բազմատեսակ բախտի հանդիպած են մինչեւ մեզի հասնիլը։ Թողլով հիները՝ միայն Բիւզանդեան ժամանակէն բազմաթիւ խմբագրութիւններ եւ Առակաց այլա-

[1] Արաբացին "Նսուրէն" ընթերցումը պահելով աւելի "վայրի վարդեր" կրնայ նշանակել արդի լեզուաւ քան արծուիք, որովհետեւ "Նսոր" արծիւ նշանակութեամբ յոգնակի կը կազմէ՝ բեկեալ կոչուած ձեւով՝ "Նուսուր" եւ "Անսուր" (տես Հարրիս, էջ 96 եւ այլուր)։ Բայց արաբացին հոս պարզապէս օրինակած է ասորի բառերն՝ առանց միտ դնելու այս կէտին։ "Հազար ու մէկ գիշերաց" մէջ աղաւաղած է անունս եւ եղած "դաշտ Բուշրէն" (զոր ուղղելու է "Նասրին", տես Մայսներ, էջ 173 եւ 185)։

զան հաւաքումներ եղած են, ամէնքն ալ Եզով-պոսի անուամբ[1]. միւս կողմանէ «Սինտիպաս» փիլի-սոփայի (Բանք Եւթն Իմաստասիրաց) անուամբ անգամ՝ կը գտնենք Եզովպեան առակաց հաւա-քումն, որ Թ—ԺԱ դարերու մէջ ասորերէնի թարգմանուած՝ «Սոփոս» իմաստնոյ կ'ընծայուի[2], անուն մ'որ ուրիշ բան չէ բայց «Եզովպոս»ի ա-ղաւաղութիւնը: Ասորւոց քով արդէն «Յովսեպոս» ալ կը կոչուի Եզովպ[3]: Եզովպեան առակաց ուրիշ խմբագրութիւն մը կամ յարասութիւն մը յօրի-

1 Համմ. Krumbacher, Geschichte der Byz. Lit. Միւնխէն 1897, էջ 906, 908 եւ այլուր:

2 «Սինտիպասի» առակաց մասին տես՝ Կրումբախեր, էջ 894–5, ուր նաեւ դրուած են հրատարակութիւնք, ի միջի այլոց՝ Chr. Fr. Matthaei, Syntipae philosophi Persae fabulae. Lips. 1781 եւն: Ասորերէն «Սոփոսի» առակները հրտ. Jul. Landsberger, Mathle de-Suphus, die Fabeln des Sophos, syr. Original der gr. Fabeln des Syntipas, Posen 1859, դարձեալ՝ Fabulae aliquot Aramaeae 1846. նոյն առանձին գրութիւնն ի թերթին ZDMG, 1858, p. 149—159, դարձեալ Geigerի՝ անդ, 1860, էջ 586—93 եւ ուրիշներ: Քննութեանց մէջ յիշենք H. Grauert, De Aesopo et Fabulis Aesopiis, Bonnae 1825, եւ նմաններ:

3 Վ. Րայտ իւր «Ասորական Մատենագրութեան Պատմութեան» մէջ (W. Wright, A short History of Syriac Lit. Լոնդոն 1894, էջ 241—2) կը նշանակէ որ «Յովսեպոս» կ'ըսուի յաճախ Եզովպ Ասորւոց քով, այնպէս որ կապ մ'ըլլալու է նաեւ այն վէպին մէջ որ իբր «Պատմ. Յովսեպոսի եւ Նաբուքոդոնոսորայ արքայի» կը գտնուի Պերլինի ձեռագրի մը մէջ (Alt. Bestand 57, թղ. 16—57), ուստի շարք մ'եզովպեան առակներ առած հրատարակած է Րէօդիգեր (Rödiger, Chrestomathia syriaca, Բ. տպ. էջ 97–100) «Յովսեպոսի» երկու շարք առածներ ունի նաեւ Կէմբրիջի Խիկարայ ձեռագիրը (տես Հարրիս, էջ ԼԲ): Նոյնպէս Պերլինի Թ. 336 (Սախաու) եւ ուրիշներ: Ըստ այսմ նաեւ ձեռագիրք Խիկարի պատմութեան կից ունին Եզով-պայ առակները: Տես նաեւ Մայնէր, էջ 184:

նած է Իգնատիոս սարկաւագ ի Կ. Պոլիս, յետոյ մետրապոլիտ Նիկիոյ (Թ դարուն), որուն գործքը Վիեննայի կայսերական դրատան մէկ ձեռագրին մէջ Բաբրիոսի անուամբ է[1]: Աւելի ուշ Գէորգ մատենագիր ԺԳ դարու՝ իբրեւ պատրիարք Կ. Պոլսոյ (1283—89) Գրիգորիոս՝ յօրինած է նոյնպէս յարասութիւն մ'Առակաց, որ տակաւին անտիպ է[2]: Եթէ աւելի նորագոյններ ալ յիշել ուզենք՝ կրնանք անուանել Գէորգայ Ետոլիացւոյ († 1580) գործն, որ Եսոպայ եւ "Բաբրիոսի" առակները տաղաչափած է[3]: Թողունք յիշել բազմաթիւ նման գործքեր՝ հին ու նոր փոխադրութիւններ, թարգմանութիւնք քիչ շատ ամէն լեզուաւ, քննութիւնք եւն: Հայերէն ալ ունինք Եսոպոսի Առակները զանազան թարգմանութեամբ[4], նաեւ պատկերազարդ տպագրութեամբ:

1 Իգնատիոսի Եսոպեան առակները շատ անգամ լոյս տեսած են (նախ Հրտ. Ալտոս Մանուտիոս, ի Վենետ. 1505). ամէնէն կատարեալ գործն է՝ C. Fr. Müller, Ignatii Diaconi tetrasticha iambica, Kiel 1886, եւ O. Crusius, Babrii fabulae Aesiopeae, Լայպսիգ (ընդ մամլով): Մնացեալք տես Կրումբախէր, էջ 717:

2 Տես Կրումբախէր, էջ 477:

3 Գէորգայ տաղը հրատարակած է P. Lambros, ի թերթին Δελτίον եւն, Աթէնք 1896 (Ե. տարի, էջ 1–102): Տես Կրումբախէր, 898: — Ընդդէմ Եսոպի ալ գրող յոյն մատենագիրներ եղած են (Հմմտ. Կրումբ. էջ 782): Միւս կողմանէ առակախօսին մեծ համբաւը պատճառ եղած է որ իրեն վերագրած են նաեւ բոլորովին օտար նիւթեր. այսպէս նոյն իսկ Աղուէսագիրքը (Հմմտ. Baldoի լատիներէն Alter Aesopus, տես Keith-Falconer, Kalilah and Dimnah. Կէմբրիճ 1885, էջ ԺԵ), եւ ուրիշ նմաններ՝ զորոնք հոս յիշելն աւելորդ կը համարինք:

4 "Առակք Եզոբոսի Փռիւգացւոյ, թարգմանեալ յանգղիացի բարբառոյ ի հայս՝ յԱղայ Մարգարայ Շահրիմանեանց... սրբագրեալ ի վերայ իտալական օրինակին ի Հ. Կոմիտաս վարդապետէ Կարապետեան" եւն: Թրեստ 1784:

Սակայն հոս մեզի համար հետաքրքրական չեն «Եսովպի» առակներն եւ իւր հետեւորդներն Փեդրոսէն մինչեւ Լաֆոնդէն, Լեսսինգ ու Կռիլով[1], այլ իւր Կենսագրութիւնը, այն ալ անյատուկ մտօք. վասն զի՝ ինչպէս քննադատութիւնը ցուցուցած է, Եսովպոս ինքնին առասպելեալ անձնաւորութիւն մըն է, որուն մասին հները շատ բան պատմած են՝ զանազան աղբիւրներէ քաղելով եւ «Եսովպի» մը վրայ յարմարցընելով։ Ամենէն աւելի նշանաւորն եւ ամենէն տարածուածն է այն կենսագրութիւնը, զոր խմբագրած է՝ կ'ըսուի՝ Մաքսիմոս Պլանուդէս (Πλανούδης), իբր կրօնաւոր՝ Մանուէլ, որ Նիկո-

— «Առակք Եզովբոսի, թարգմանեալ ի գաղղիական լեզուէ, յաւելմամբ ոտանաւոր իմաստից եւ բարոյական խրատից, ի Հ. Մինաս վարդապետէ Բժշկեանց»։ Վենետ. 1818. չորրորդ տպ. 1860. հինգերորդ տպ. 1886 (պատկերազարդ, 8° էջք 540)։ — «Հայկ. Մատենագրութիւն» (Վենետ. 1883, էջ 165) կը յիշէ նաեւ «Եզովբոս, հատընտիր առակք եւ առածք պէսպէս ազգաց, պատկերազարդ, Ս. Պետերբ. 1859», զոր տեսած չենք։ — Հմմտ. նաեւ Միրզաբէկեան Խորէն քհ. «Գօշ Մխիթարի, Ողոմպիանու եւ Եզովպոսի ընտիր առակները», Թրգմ., Բագու 1878. (ասոր մասին տես մատենախօսութիւնն ի «Փորձ» 1879, Դ, էջ 143—50)։

[1] Ասոնք ալ հայ թարգմանութեամբ ունինք։ Այսպէս՝ «Փեդրոսի ազատագրին Օգոստեայ ինքնակալի առակք» (եսովպեանք) Թրգմ. Հ. Եդուարդ արքեպ. Հիւրմիւզ. Վենետ. 1855, 4° էջք 108։ — «Առակք Լաֆոնդենի» Թրգմ. Ա. Մ. Գարագաշեան. Վիեննա 1894, 8° էջք 478։ — «Առակք Յովհ. Քռիլովի յինն գիրս» Թրգմ. Գրիգ. արքեպ. Այվազեան. Կ. Պոլիս 1870, Բ. տպ. Էջմ. 1896. 8° էջք ԿԴ+408 (հմմտ. նոյն թարգմանչին «Հատընտիր առակք Քռիլովի» տպ. Թէոդոսիա). Թարգմանութիւն մ'ալ ունի Քուչներեան Հ. Ք. «Առակք ծաղկաքաղք» եւն. Վենետ. 1876, էջք 95 եւ նմաններ, զոր օր. Յովհ. Տէր-Աբրահամեան, «Ընտիր առակներ Եզովպոսի եւ Քռիլովի» եւն, Ռոստով 1880, 8° էջք 170 եւն։

միդիա ծնած է 1260ին, ապրած Կ. Պոլիս եւ հոն մեռած 1310ին։ Նշանաւոր Բիւզանդեան մատենագիր մըն է[1], մանաւանդ իբրեւ հմուտ լատին լեզուի եւ թարգման բազմաթիւ լատիներէն գրքերու. ցանցառ կերպարանք մը վերջին ժամանակի Բիւզանդեան գրականութեան մէջ։ Պլանուդէսի կը տրուին արդ նաեւ Եզովպեան առակներու յարմարութիւն մը եւ "Վարք Եզովպոսի", ինչպէս նաեւ յունական առածներու հաւաքում մը եւն։ Այս վարքը՝ բազմաթիւ գլուխներու բաժնուած՝ կը պարունակէ այն ամէն զրոյցներն որ Եզովպոսի վրայ յարմարցուած են. եւ շատ տարածուած է[2], բազմաթիւ լեզուներու թարգմանուած[3] նաեւ

---

1 Այս անձին եւ իւր գրութեանց մասին մանրամասն տես Կրումբախեր, էջ 99—100, 543—5 եւ այլուր յաճախ։ Յատկապէս Եզովպայ կենսագրութեան մասին, անոր հրատարակութիւնքն, թարգմանութիւնքն ու քննութիւնքն՝ անդ, էջ 897–8, ուստի գլխաւորներէն մէկ քանին կը յիշենք այստեղ յաջորդներով։

2 Շատ յաճախ հրատարակուած է, ի վերջոյ առ A. Eberhard, Fabulae Romanerses, Լայպցիգ 1872, Հտր. Ա, 226—305։ Անկէ առած է Հարրիս Խիկարայ վերաբերող գլուխներն. (էջ 119—124, Գլուխք ԻԳ—ԼԲ։) Բայց Եզովպայ վարքը կայ նաեւ ուրիշ խմբագրութիւններով. այսպէս ուրիշ բնագիր մը հրատարակեց A. Westermann, Vita Aesopi. Բրաունշվայգ 1845, էջ 7—57։

3 Նորագոյն եւրոպական բազմաթիւ լեզուներով թարգմանութեանց հիմը կը համարուի Rinuccio d'Arezzoյի լատին թարգմանութիւնն որ 1448ին եղած է՝ այնպիսի յոյն բնագրի մը վրայէն որ երրորդ տարբեր խմբագրութիւն մըն էր։ Ռամկօրէն յունարէնի թարգմանած էր Անդրոնիկոս Նուկիոս (տպ. Վենետ. 1543), նոր յունարէն վարք մ'ալ տպ. Վենետ. 1783։ Բուլղար-սլովենական թարգմանութիւնը հրատարակած է Պ. Սիրկու՝ որուն կից է լատիներէն թարգմանութիւն մը նոյն բնագրին՝ խնամովք Եակիչի ("Տարեգիրք սլաւական բանասիրութեան", Հտր. Է, 1884, էջ 88-89)։ Տաճկերէն թարգմանութիւն մ'ալ կայ (տես

Հայերէն, եւ Եսովպոսի քննչաց կողմանէ յաճախ ուսումնասիրուած[1], մանաւանդ այն մասն որ Խիկարու հետ կապ ունի. վասն զի արդեամբք վերջին գլուխներուն մէջ "Եսովպայ" անուան տակ Խիկարայ զրոյցն է, զոր կը կարդանք։ Եւ որովհետեւ ԺԴ. դարու Պղանուդէսն հոս հնագոյն աղբիւր մը օրինակած է, շատ շատ նոր խմբագրած, այս մասն կարեւոր աղբիւր մըն է Խիկարու զրոյցին քննութեան համար։ Բարեբախտաբար Հ. Մինաս Բժշկեան թարգմանած է Պղանուդեսի այս գործը, թէեւ գղ. թարգմանութեան վրայէն[2], որով

---

O. Blauի յօդուածն ի ZDMG, 1874, էջ 572—5)։ Ինչպէս նաեւ ռումաներէն եւն եւն. (տես Կրումբախեր՝ անդ, եւ ի միջի այլոց՝ Grösse, Lehrbuch einer allgemeinen Literaturgeschichte, II, 2, p. 1113—6 եւ այլուր։)

1 Շատերն արդէն յառաջագոյն յիշեցինք, յատկապէս անոնք որ Խիկարի խնդրով զբաղած են. Մնացեալներէն գլխաւորներն ալ գոնէ հարեւանցի։ Նշանաւոր գրութեանց մէջ յիշենք՝ J. Zündel, Aesop in Aegypten, ի պարբերականին Rheinisches Museum, V (1847), p. 422—456. — O. Keller, Untersuchungen über die Geschichte der gr. Fabel, ի պարբերականին „Jahn's Jahrbuch“ Supplementband IV (1861—7), p. 361 եւն։ — M. Gaster, Litteratura populara romana, Բուկարեշտ, 1883, էջ 104—113 (ռումանական խմբագրութեանց մասին). Նոյն անձին՝ Greeko-Slavonik, Լոնդ. 1887, էջ 112—115։ Ուրիշ բազմաթիւ գործքերը մի առ մի յիշել չենք կրնար. (տես W. Engelmann, Bibliotheca scriptorum classicorum, I, 8 (1880), p, 114 եւն, Կրումբախեր, Մայսներ եւ այլուր։

2 "Վարք Եզովբոսի շարադրեալ հելլէններէն ի Մաքսիմոս Բլանուդէ", թրգմ. Հ. Մինաս Բժշկեան՝ "Առակք Եզովբոսի" եւն, Վենետ. 1886, էջ 3—86։ Սկիզբը սա ծանօթութիւնը կը գտնենք. "Բլանուտ Մաքսիմոս էր յոյն կրօնաւոր, որ հին բաներու տեղեակ ըլլալով փիլիսոփաներու ոտանաւորները ժողվեց ի գիրք ըրաւ. յետոյ Եզովբոսի վարքն ալ հին գրեանց մէջէն եւ հիներուն բերնէն լսելով շարադրեց, որ ֆռանսըզներէն ընտիր թարգմանած ըլլալով՝ մենք ալ աշխարհաբառ դարձուցինք։ Կ'ե-

պէտք չկայ հոս երկար յառաջ բերել այս գլուխները. ուստի միայն քանի մը կարեւոր կէտերը յիշելով կը շատանանք։

Եսովպայ վարքին մէջ երկու իրարմէ շատ տարբեր մասեր կը զանազանուին։ Սկիզբէն մինչեւ ԻԹ գլուխ կը պատմուի Եսովպայ անցուցած վարքն Քսանթոս փիլիսոփայի հետ եւ Լիւդիոյ Կրեսոս թագաւորին քով։ Վերջին մասն ալ (գլ. ԼԳ, հայ թրգմ. ԻԷ—ԻԸ) կը պատմէ Եսովպայ մահն "ի Դեղոս" կամ Դիլփի։ Երկուքն ալ զուտ յունական նկարագրաւ են՝ որչափ ալ թերեւս հոս հոն օտար նիւթեր մուծուած ըլլան։ Բայց այս երկուքին մէջ կայ բոլորովին արեւելեան նկարագրաւ մաս մը, ուր յանկարծ Եսովպոս Բաբելոն ու Եգիպտոս կը փոխադրուի, ուր՝ ինչպէս լաւ կ'ըսէ Մայնէր (էջ 179) Եսովպոս իբր արեւելեան մոգ մը կը ներկայանայ։ Ահա այս միջանկեալ մասն է որ կապ ունի Խիկարի հետ, կամ լաւ եւս՝ Խիկարայ վարքն է ամէն մանրամասնութեամբ, քանի մը մանր կէտերու մէջ միայն քիչ մը շեղելով։ Միայն անունները փոխուած են. Խիկար եղած է

---

բեւայ թէ մեր մէջ ալ հին ատենը թարգմանած պիտի ըլլայ. վասն զի հին գրեանց մէջ Եզովբոսին բաներէն կը գտնուին։"-- Գաղղիերէնէ թարգմանուած այս աշխարհաբարը տեղ տեղ բաւական տարբեր բնագիր մը կը ցուցնէ քան այն սովորական վարքը՝ զոր վերոյիշեալ Եբերհարդ հրատարակեց։ Եբերհարդի քով Խիկար-Եսովպոսի վարքը կը սկսի ԻԳ գլխով՝ "Յետոյ ելաւ այս կղզիէն գնաց աշխարհ ամենայն պտըտեցաւ՝ ամէն տեղ փիլիսոփայից հետ հակաճառելով. եւ գալով Բաբելոն", եւն (— հայ. թրգմ. էջ 64, ԻԲ գլխուն կէսէն)։ Եբերհարդի քով կը լմննայ Խիկարայ վերաբերեալ մասը ԼԲ գլխով, իսկ Բժշկեանի թարգմանութեան մէջ ԻՁ գլխով (էջ 77), երկուքն ալ ճիշդ նոյնպէս վերջանալով, իսկ գլխոց բաժանման եւ նաեւ բնագրին մէջ իրարմէ տեղ տեղ շեղելով. բայց մեր նպատակին համար աննշան է այս պարագան։ Նոյն բանն է հայերէն ալ՝ եականաց մէջ։

“Եսովպ„, Նաթան՝ “Եննոս„, Նաբուսմաք՝ “Հերմիպպոս„, Սենեքերիմ թագաւորը՝ “Լիգերոս„, իսկ Փարաւոն առած է հոս այլուստ ալ ծանօթ “Նեկտենաբոս„ անունը։

Եսովպ-Խիկարու այս մասն համառօտիւ հետեւեալն է։ Եսովպ կ'ելլէ Սամոսէն եւ շատ տեղեր պտըտելով ի վերջոյ Բաբելոն կ'երթայ, հոն ալ իր իմաստութիւնը կը յայտնէ եւ Լիգերոսի (Λυκῆρος) Բաբելոնի թագաւորին քով կը մտնէ։ Այն ժամանակ թագաւորներն իրարու առակներ եւ հարցումներ կը խաւրէին, որոնց եթէ մէկը չկարենար լուծում տալ, տուրք վճարել կը ստիպուէր։ Լիգերոս շատ համբաւ եւ տուրքեր ստացաւ, քովն ունենալով Եսովպոս իմաստունը։ — Այսպէս յառաջաբանութիւնը՝ որմէ ետքը կու գայ բուն պատմութիւնն՝ ըստ Խիկարայ։

Եսովպոս որդի չունենալով որդեգիր կ'առնու զԵննոս (῎Εννος, այլ օրինակ՝ Αἶνος), ազնուականի մ'որդին[1], բայց շուտով կը սկսի Եննոս անկարգութիւններ ընել՝ Եսովպայ մէկ հարճին հետ։ Եսովպ տունէն կը մերժէ զԵննոս, որ վրէժ առնելու համար կեղծ նամակ մը կը գրէ Եսովպայ անուամբ եւ անոր կնքով՝ որով Եսովպ մատնիչ կ'երեւայ։ Լիգերոս իմանալով կը բարկանայ, կը հրամայէ Հերմիպպոսի (῞Ερμιππος) սպաննել զԵսովպոսը։ Բայց Հերմիպպոս կ'ազատէ՝ ծածուկ պահելով զԵսովպոս գերեզմանի մը մէջ[2]. իսկ Եննոս կը տիրէ Եսովպի տան եւ կալուածոց։

---

1 Այս առաջին շեղումն է։ Խիկարու վէպին մէջ Նաթան քեռորդի է Խիկարու, հոս Եննոս ազգական չէ Եսովպայ, այլ օտար ազնուականի մը զաւակը (ἕνα τινὰ τῶν εὐγενῶν, ῎Εννον κτλ.)

2 Այս ալ (ἔν τινί τῶν τάφων) փոքր շեղումն է։ Լաւագոյն է Խիկարու վէպին “գետնափորն„՝ անոր տան սեմին տակը, ուր կը պահուի Խիկար։

Եգիպտոսի Նեկտենաբոս (Νεκτεναβὼ) թագաւորը լսելով Եսոպայ մահը՝ նամակ մը կը գրէ Լիգերոսի, ճարտարապետներ ուզելով որ աշտարակ (πύργος) մը շինեն որ ոչ երկնքին դպչի եւ ոչ գետնին, նաեւ իմաստուն մ'որ իւր հարցմանց պատասխան տայ, ապա թէ ոչ տուրք տալու է։ Լիգերոս նեղ կը մնէ՝ իմաստուն մը չունենալով։ Այն ատեն Հերմիպպոս կ'իմացընէ որ Եսոպ կենդանի է։ Լիգերոս կ'ուրախանայ, Եսոպայ կը դարձընէ իւր ստացուածքն եւ պատիւը, իսկ Եսոպ յանձն կ'առնու Նեկտանեբոսի պատասխան տալ։ Եսոպոս դարձեալ տուն կ'առնու զԵննոս եւ անյիշաչար ըլլալով՝ գեղեցիկ խրատներ կու տայ անոր (հոս կան 15 կտոր առածներ)։ Եննոս այս խրատներէն այնպէս կը զգածուի, որ սրտի ցաւէն քիչ ժամանակէն կը մեռնի[1]։

Եսոպոս հաւորսներու կ'ապսպրէ արծուի չորս ձագ որսալ. զանոնք սնոյց, ու "ինչպէս կ'ըսուի„ այնպէս կրթեց, "որ ինծի ամենեւին հաւատալի չ'երեւար„ (ὅπερ οὐ πάνυ τί με πειθόμενον ἔχει)[2], մինչեւ վզերէն զամբիւղներ (θύλα-

---

[1] Տարբերութիւն մ'ալ այս է։ Խիկարու վէպին մէջ Նաթան կը մեռնի՝ Խիկարի Եգիպտոսէն դառնալէն ետքը, նախ պատիժ կրելով՝ խրատները լսած ատեն։ Բաց աստի Խիկարի բուն խրատները նախ դրուած են հոն՝ ուր յարմար է, այսինքն երբ Խիկար կը կրթէ զՆաթան։ Դարձեալ Եսոպայ այս 15 առածները կամ խրատներն աննշան են համեմատութեամբ Խիկարայ առածներուն։ Հոս ալ կայ այն առածը թէ "Շան ագին կեր կու տայ անոր„ եւ նմաններ։

[2] Նշանաւոր է այս խօսքն, այնու որ կը ցուցընէ թէ Պղանուդէս թէեւ չէր կրնար հաւատալ պատմուածին, հաւատարմութեամբ օրինակած է. ուստի ստուգիւ հնագոյն գաղափար մ'ունէր առջեւը, ոչ թէ ինքը կցկցած է Խիկարու զրոյցն Եսոպոսի վրայ։

*χες)*[1] *կախած՝ որոնց մէջ տղաք կային, կը թռչէին։ Այսպէս պատրաստուած՝ ձմեռն անցնելէն ետքը գարնան կ՚երթայ Եգիպտոս։*

*Հոն՝ Խիկարայ պէս՝ նոյն հարցման կը ստիպուի պատասխանել Եսովպոս, այսինքն թէ Փարաւոն որո՞ւն նման է։ Երկու անգամ կ՚ըլլայ հարցումն, որուն կը պատասխանէ նախ թէ Փարաւոն կը նմանի գարնան արեւու, իսկ իշխանքն ատոքացեալ ցորենոյ*[2]*. երկրորդ անգամ թէ՝ "Նման ես արեգական, եւ իշխանք՝ ճառագայթից„։ Իսկ երբ Փարաւոն ինք զինք Լիգերոսէն վեր կը համարի, կը պատասխանէ Եսովպ թէ Լիգերոս լոյս (φῶς) է, իսկ Նեկտենաբոս խաւար (ζόφος)։ Յետոյ՝ ինչպէս Խիկար՝ կը շինէ աշտարակն, այսինքն կը թռչին արծիւներն, իսկ զամբիւղի մէջ եղող տղաք կը պոռան թէ "Բերէք մեզի քար ու կիր եւ փայտ„ (δότε ἡμῖν λίθους, δότε χονίαν, δότε ξύλα). այնպէս որ Նեկտենաբոս կը զարմանայ այս "թեւաւոր մարդկան„ վրայ։ Յետոյ կ՚առաջարկէ լուծել այս հանելուկը թէ ի՞նչպէս կ՚ըլլայ որ Եգիպտոսի մատակները (θήλειαι ἵπποι) լսելով Բաբելոնի արու ձիոց խրխնջիւնը շուտով կը յղանան։ Եսովպոս ալ Խիկարի պատասխանը կ՚ընտրէ.*

---

1 *Այսպէս յոյնը՝* θύλαξ *(պարկ, քսակ, կողով), զոր Մայսնէր (էջ* 180) Ballon *կը մեկնէ. յամենայն դէպս լաւագոյն է յունին զամբիւղ ըսելն եւ աւելի խելքի մօտ՝ մտածելն տղաքն զամբիւղի մէջ դրուած եւ արծիւներու վզէն կախուած, քան Խիկարու վէպին մէջ "արկղոց„ կամ սնտուկներն՝ արծուեաց կռնակը դրուած եւ անոնց մէջը տղաքն։ Հոս նախնականին աւելի մերձաւոր է "Եսովպոս„։*

2 *Այս ալ շեղում մըն է։ Խիկարու քով Փարաւոն նման է "Դալարոյ„ կամ Գարնան (Նիսան) եւ իշխանքն ծաղկանց գարնան։ — Նոյնպէս Լիգերոսի "Լոյս„ եւ Նեկտանեբոսի՝ համեմատութեամբ առաջնոյն՝ "Խաւար„ ըլլալը տարբերութիւն մ՚ունի Խիկարու զրուցէն, ուր Սենեքերիմ "Բէլշիմ„ է եւն։*

Եգիպտացւոց պաշտած կատու (αἴλουρος) մը բռնելով կը գանակոծէ ըսելով թէ գիշերն. Բաբելոն գացած եւ Լիգերոսի աքաղաղը խղդած է. երբ կ'ըսեն թէ կարելի չէ այս, կը պատասխանէ թէ այնպէս կարելի է ինչպէս Եգիպտոսի մատակներուն յղանալն, եւն։ — Վերջապէս Նեկտենաբոս Արեգքաղաքէն (ἀφ' Ἡλίου πόλεως) կը կանչէ “սոփեստական հարցմանց հմուտ անձինք„ Եսովպի հետ վիճաբանելու համար։ Մին կ'ըսէ թէ իր աստուածը զինքը խաւրած է որ հարցումներ ընէ, որուն կը պատասխանէ թէ Աստուած ամենագէտ ըլլալով՝ հարցում ընելու համար զանի խաւրելու պէտք չի կրնար ունենալ[1]։ Ուրիշ մը կը հարցնէ տարւոյն առակը, այսինքն թէ՝ “Մեծ տաճար (ναὸς) մը կար, մէջը մէկ սիւն (στῦλος) տասնուերկու քաղաքով[2], ամէն մէկն երեսուն գերան (δοκὸς) ունէր, եւ երկու կանայք կը պտըտէին չորս դին„։ Պատասխանն ի հարկէ նոյն է. տաճարն՝

1 Խիկարու մէջ կը պակսի այն պարագան, բայց այս՝ ինչպէս նաեւ ամբողջին մէջ եղած շեղմունք՝ մեծ բաներ չեն։

2 Այսպէս նաեւ յոյն բնագիրը (δώδεκα πόλεις ἔχων), բայց անշուշտ անյարմար է այս “քաղաքներ„՝ սեան մը վրայ։ Հարրիս (էջ 123) կ'առաջարկէ կարդալ πύλας (փեղկեր եւն), որ գոնէ աւելի լաւ է։ Ընդհանրապէս Խիկարու վէպէն կը շեղի առածս. հոն կայ՝ “սիւն„ մը, վրան 12 “մայրք„՝ մայրի գերաններ, երեսուն “անիւ„ներ, եւ երկու “սուրհանդակք„ (ասորին՝ երկու ձիաններ, մէկը ճերմակ, միւսը սեւ), չյիշելով այլեւայլ խմբագրութեանց մանր տարբերութիւնքը։ Յիշեցինք որ Մայսներ (էջ 182 եւն) նախապատուութիւն կ'ուզէր տալ այս յունական ձեւին, որուն դէմ գրեց Վինտիշ յատուկ յօդուած մը։ Մայսներ կը յիշէ Դիոգենէսի Լայերտացւոյ “Վարք փիլիսոփայից„ գրոց մէկ տեղն (Ա. 6, Թիւ 3), Կղէոբուլի կ'ընծայուի նման հանելուկ մը տարւոյ, որ սակայն բաւական տարբեր է. հոն՝ հայր մը կ'ըսուի, երկոտասան որդիք, իւրաքանչիւրն երեսուն երկդիմի (սպիտակ ու սեւ) կերպարանօք։

աշխարհս է, սիւնը՝ տարին, “քաղաքները„՝ ամիսները, գերանք՝ օրերն, երկու կանայք՝ ցորեկն ու գիշեր։ — Վերջապէս տուրքէ ազատելու համար՝ պայման կը դնեն Եգիպտացիք որ Եսովպոս առաջարկութիւն մ'ընէ զոր ամենեւին լսած ու գիտցած չըլլան։ Եսովպոս թուղթ մը կը յօրինէ ուր գրուած էր թէ Նեկտենաբոս հազար տաղանդ տալիք ունի Լիգերոսին։ Թուղթն երբ կը ներկայացընէ թագաւորին՝ իշխանքը կը պոռան թէ՝ գիտեն, անծանօթ չէ իրենց եւն։ Լաւ, կ'ըսէ Եսովպ։ Բայց երբ թուղթը կը կարդացուի՝ նեղ կը մնայ Նեկտենաբոս, որուն համամիտ կ'ըլլան իշխանք ալ թէ այսպիսի տալիք մը չեն գիտեր. բայց ճիշդտով ալ պիտի յաղթէ Եսովպ, ներկայացընելով խնդիր մ'որ լսած չըլլային ամենեւին։ Վերջապէս հազար տաղանդն առած կը դառնայ Եսովպոս փառաւորութեամբ Լիգերոսի քով, որ ի պատիւ Եսովպոսի ոսկի արձան (ἀνδριάντα χρυσοῦν) մը կանգնել կու տայ։ — Այսպէս կը լմնայ “Եսովպոսի՝„ Խիկարայ համապատասխանող մասը։

Եսովպայ այս մասն քննչաց բազմաթիւ կարծեաց առիթ տուած է, գլխաւորաբար այն տեսակէտով որ արդեօք “Եսովպայ„ առաջնութիւն տալու է թէ Խիկարայ։ “Հազարումէկ գիշերաց„ գերմանացի թարգմանն (Հտր. ԺԳ, 294) Խիկարայ կու տայ առաջնութիւնն. նոյնպէս Ցիւնդէլ եւ մասամբ Վագեներ[1]։ Ընդ հակառակն Կելլէր (էջ 372 եւն) ջերմ պաշտպան է Եսովպայ առաջ-

[1] Հմմտ. Zündel, Aesop in Aegypten, ի գիրս Rein. Mus., V, 450 եւն։ Wagener, Essai sur les rapports qui existent entre les apologues de l'Inde et les apologues de la Grèce, ի պարբերականին Mémoires de l'Académie royale... de Belgique, XXV, 54 եւն։ Վագեներ Եսովպ-Խիկարու զրուցին ծագումն հնդկական կը համարի, որուն մասին յետոյ։

նութեան, որուն համամիտ է Մայաներ՝ որ ընդարձակ կը խօսի այս խնդրոյն մասին[1], թէեւ ինքն ալ կը հաստատէ որ Խիկարայ միւս բնագիրքն "Եսովպայ" արդի բնագրէն անկախ են։ Վերջին կէտիս մասին խնդիր չի կրնար ըլլալ. ինչպէս նաեւ այն կէտն ալ ստոյգ է՝ որ (Պղանուդեանէն ալ յառաջ) Խիկարայ զրոյցն բերուած ձեւուած էր Եսովպի վրայ, եւ յետոյ մուծուած անոր վարքին մէջ։ — Կելլէր այնչափ յառաջ կ'երթայ որ Եսովպի օդեղէն աշտարակ շինելու մասը բոլորովին յունական համարելով՝ անոր աղբիւր կը կարծէ Ստոյն-Կալլիսթենեայ՝ Աղեքսանդրի վարուց այն մասն, ուր կը պատմուի Աղեքսանդրի երկու թռչուն լծակով մը կառքին կապելով՝ օդոյ մէջ թռչիլն եւն[2]։ Եսովպ-Խիկարի գետնափորի մէջ պահուելով ազատիլն ալ

---

1 Համմտ. ZDMG, 1894, էջ 181—4, 187—96, շատ ընդարձակ եւ հմտական տեղեկութիւններով։ Ինքը յունական Եսովպայ աւելի նախապատուութիւն կու տայ այլեւայլ տեսակէտով։ Յունականին առաւելութեանց մին կը համարի ներածութեան մասն, ուր կ'ըսուի թէ թագաւորներն իրարու հանելուկ կը խաւրէին. վասն զի ասով կը հասկցուի "Եսովպի" Եգիպտոս երթալու պատճառն եւն։ "Խիկարի" քով այս ներածութիւնը չկայ։ Երկրորդ՝ աւելի պարզ է տղոց թռչելու զրոյցն՝ արծուեաց վզէն կախուած զամբիւղներով, քան (Խիկարու քով) մնտուկներով՝ որ արծուեաց թեւերուն վրան դրուած կ'ըսուին։ Աւելի լաւ կը համարի դարձեալ Եսովպի ըսելն .թէ Լիկերոս "լոյս" է, որուն համեմատութեամբ Նեկտանեբոսի արեւն "խաւար" է։ Տարւոյ հանելուկն՝ ինչպէս ըսինք՝ նոյնպէս յունական կը համարի Մայաներ, որ վերջապէս Խիկարայ առածներուն մէկ երկուքն յունական աղբիւրէ կը համարի։ Ասոնց մասին յետոյ։

2 Տես Կալլիսթ. Բ, 41, բայց միայն C (ընդարձակեալ) յոյն օրինակն ու լատին թարգմանն ունին այս մասն. ո՛չ միւս յունական բնագիրք եւ ո՛չ հայերէնը (տպ. Վենետ. 1842, էջ 128, Հտծ. ՄԹ)։ Տես մեր "Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալլիսթենեայ", Վիեննա 1892, էջ 251։

կը համարի Յամբլիքոսի "Բաբելոնականք„ վէպէն առնուած[1] եւն: Թէ նմանութիւններ կան՝ պէտք չկայ ուրանալու: Ստոյգ ալ է որ Եսովպի կենսագրին ծանօթ էր Սուտ-Կալլիսթենէս, որմէ առած կ'երեւայ "Նեկտենաբոս„ անունը[2], մինչդեռ Խիկարու քով պարզ "Փարաւոն„ մըն է: Բայց Սուտ-Կալլիսթենէս իբրեւ աղբիւր նկատել ամբողջ "Եսովպայ„ զրոյցին՝ կարելի չէ: Մայսներ շատ լաւ կ'ապացուցանէ այս կէտը, նշանակելով նաեւ որ այս կամ նման բաներ չեն պակսիր ընդհանրապէս արեւելեան զրոյցներու մէջ: Օրինակի համար այն կէտը թէ՝ հին ատեն թագաւորներն իրարու հանելուկներ կը խաւրէին, որոնց պատասխանել չկրցողը կը տուժէր, շատ հին է արդէն: Յովսեպոս (Հնախ. Ը, 5) կը պատմէ նոյնը Քիրամայ եւ Սողոմոնի մասին: Յովսեպոսի քով Սողոմոն է միշտ յաղթողն ու հանելուկները լուծողն. ընդհակառակն Մենանդէր կը պատմէ որ Քիրամայ իմաստունը Աբդեմոնոս (Ἀβδήμονος) յաղթող կ'ելլէր Սողոմոնի հանելուկները լուծելով. նոյնպէս կը պատմէ Դիոս՝ յաւելլով որ Սողոմոն չկարենալով լուծել Աբդեմոնոսի հանելուկները՝ շատ տուգանք վճարել ստիպուած էր: Իրաւամբ կրնայ հետեւցուիլ ասկէ որ "Եսովպ-Խիկարի„ նման զրոյց մ'ալ կար, ուր Քիրամ, Սողոմոն ու Աբդեմոնոս այն դերն ունէին[3], զոր ունին Լիգերոս, Նեկտե-

---

1 Յամբլիքոսի գործքէն (Jamblichusի Βαβυλωνιακά) գետնափորի զրուցին առնուած ըլլալուն դէմ են ուրիշ գիտնականներ ալ, այսպէս Rohde, der gr. Roman p. 367.

2 Սովորական ձեւն է "Նեկտանեբոս„ (տես Կալլիսթ. էջ 1–14 եւն). հոս ալ միայն C ձեռագիրն է որ "Նեկտենաբոս„ (Νεκτεναβώ) ձեւն ունի: Յայտնապէս յետոյ աւելցուած է, ուստի լաւագոյն է Խիկարու պարզ "Փարաւոն„ ըսելն՝ առանց անուան:

3 Յոյն բնագիրքն տես Մայսներ, էջ 189—190, ուրիշ տեղեկութիւններով: Աբդեմոնոսի զրուցէն ծագած

նաբոս եւ Եսովպ՝ Խիկարայ “Եսովպեան„ խմբագրութեան մէջ[1]։ Օդեղէն աշտարակին զրոյցն ալ անսովոր չէ. Նոյնը կը գտնենք պարսկական առասպելեալ արքայի Կայ-Կաւոսի մասին պատմուած, որուն համար դեւերը քաղաք մը կը շինեն ութ հարիւր փարսախ երկայնութեամբ՝ օդոյ մէջ կախ, զրոյց մը զոր կը յիշեն նաեւ Էլ-Թաբարի (Ա, 602) եւ Համզա (էջ 35)։ Ֆիրդուսի (1, 411 եւն) Կայկաւոսի օդոյ մէջ թռչիլն ալ գիտէ՝ ճիշդ Աղեքսանդրի վարքին պատմածին պէս։ Արդէն աւելի հնագոյն է այս զրոյցը, բաբելոնական Ետանայի զրոյցին մէջ ալ գտնուելով նոյն թռիչքն[2]։

Ամենալաւ մեկնութիւնն այն է որ թէ “Եսովպոս„ - Խիկարն եւ թէ բուն Խիկարն կամ անոր արդի խմբագրութիւնքն իրարմէ անկախ են, այս մտօք որ մէկը միւսէն անմիջաբար թարգմանուած չէ։ Բայց երկուքն ալ միակերպ աղերս մ՚ունին Խիկարի պատմութեան նախնականին հետ. այն տարբերութեամբ որ “Եսովպայ„ քով այս նախնականը մեծ փոփոխութիւն մը կրած է՝ յունացած ըլլալով։ Դժբախտաբար որոշ գաղափար մը չունինք, թէ երբ եւ ինչպէս Յունաց անցած է Խիկարու զրոյցը։ Բայց անցած է արդէն բաւական

---

կ՚ըսէ Մայսներ միջինդարեան Մարդոլֆեան զրոյցը, զոր արդէն ԺԱ. դարուն կը յիշեն Նոտկեր Լաբէօ († 1022) եւ ուրիշներ։

1 Մայսներ ուրիշ տեղ մը (էջ 194) պարզ ընթերցման սխալ մը կը համարի “Լիկերոս„ (*ΛΥΚΗΡΟΣ*) անունը, զոր կը համարի Տովբիթայ գրոց “Ասուերոսն„ (*ΑΣΥΗΡΟΣ*) արդեամբք ալ դիւրաւ կրնար այս շփոթութիւնն յառաջ գալ։ Նեկտանեբոսի մեկնութիւնը յայտնի է, յետոյ առնուած ըլլալով Կալլիսթենեսէ։ Մեկնելի կը մնայ ուրեմն միայն այն կէտն որ Խիկար “Եսովպոս„ եղած է Յունաց քով։

2 Տես Մայսներ, էջ 191, ուր յիշուած են այս մասին եղած քննութիւնքն եւն։

կանուխ ժամանակաւ, ինչպէս կը ցուցընեն դասական յունական մատենագրաց քանի մը յիշատակութիւնք։ Ասոնց մասին կ'արժէ քիչ մ'աւելի ընդարձակ խօսիլ, ինչպէս նաեւ այն ազդեցութեան մասին, զոր ունեցած է Խիկար ընդհանուր գրականութեան վրայ։

## 5.

Արդէն այն պարագայն որ Խիկար մէկ կողմանէ Տովբիթայ գրոց՝ միւս կողմանէ Եսովպայ վարուց հետ կապ ունէր, ինչպէս տեսանք, ապացոյց է որ մեծ ազդեցութիւն ունեցած է ընդհանուր գրականութեան վրայ։ Յատկապէս Եսովպայ առթիւ յիշեցինք որ Խիկարի զրոյցը Պղանուդէսէն շատ յառաջ յունական գրականութեան մէջ մտած ըլլալու է։ Այս կէտիս համար յայտնի ապացոյցներ կան, այնպիսի յիշատակութիւններ՝ որ սպասուածէն ալ աւելի խորագոյն հնութեան կը տանին զմեզ։ Արդէն Մայսնէր ամփոփ կերպով յիշատակած էր Կղեմայ Աղեքսանդրացւոյ („Օթոցք„ Ա. 69) այն յիշատակութիւնն՝ ուր կ'ըսէ թէ Դեմոկրիտոս իւր իմաստութիւնն Բաբելացիներէ քաղած է եւ „Ակիկարի ստէլէն„ կամ արձանը (τὴν Ἀχικάρου στήλην) թարգմանած։ Ստրաբոն (ԺԶ. 762) կը յիշէ Բոսդրացի „մարգարէ„ մը „Աքայիկարոս„ (Ἀχαΐκαρος) անուն, իսկ Դիոգենէս Լայերտացի իւր փիլիսոփայից վարուց մէջ (Ե, գլ. 50) մինչեւ անգամ Թէոփրաստի Լեսպացւոյ մէկ երկասիրութեանն անունը Ἀχίχαρος կ'ըսէ։ Վերջապէս ի Տրիէր գտնուած հին միւսէոնի վրայ ալ կը տեսնուի իմաստուն մը ձեռքը գրութեան գալարով, որուն անունը Acicarus կը կարդացուի։[1] Եթէ մատագրու-

---

1 Տես Meissner ի ZDMG, 1894, էջ 196։ Տրիէրի նկարը՝ Antike Denkmäler des archeol. Instit. I., 57 ff.

թեամբ փնտռուի՝ Խիկարայ զրուցին մէջ հիւսուած առածներէն ու խրատներէն ալ կրնան գտնուիլ հնութեան մէջ, ինչպէս մէկ երկու կտոր պիտի յիշենք յետոյ:

Այսչափն ալ կը բաւէր ցուցընելու՝ որ Խիկար շատ կանուխ ծանօթացած է Յունաց: Ի մասնաւորի Կղեմայ Աղեքսանդրացւոյ խօսքը շատ կարեւոր է, վասն զի կարծես կրնայ ցուցընել թէ ինչ ճամբով եղած է այս անցքն դէպ ի Յունաստան: Հարրիս մինչեւ անգամ յատուկ գլուխ մը նուիրած է այս կէտին[1]: Դժբախտաբար խօսքը մթին է, եւ պէտք է սրբագրութիւններ ընել՝ պայծառ իմաստ մը հանելու համար: Կղեմէս ծաղրելով Յունաց փիլիսոփայից մեծամտութիւնը՝ ի միջի այլոց կը յիշէ Դեմոկրիտոս. որ կը պարծէր Բաբելոն, Պարսկաստան եւ Եգիպտոս գացած ըլլալով՝ աշակերտած Մոգերու եւ Քրմերու, կը գրէ՝ ներկայ մթին բնագրին համեմատ[2]. «Իսկ Դեմոկրատէս արար խօսս բարոյականս բաբելոնականս. քանզի ասի զարձան Ակիկարու թարգմանեալ՝ յիւր իսկ գիրսն կցել. եւ այս անտի իսկ յայտ է՝ յորժամ գրէ՝ Այսպէս ասէ Դեմոկրիտոս: Վասն որոյ եւ զանձնէ եւ զմեծ գիտութենէ իւրմէ հպարտացեալ ուրեք ասէ» եւն: Մթին խօսքս պայծառ կ'ըլլայ եւ Կղեմայ պարսաւն աւելի հասկանալի, եթէ «բարոյա-

ուղիղ ընթերցումն գտած՝ Studemund, Archeol. Jahrb. V., 4 ff., որ եղծուած տառերը լրացուց այսպէս՝ [Ac]icar[us].

1 Հարրիս՝ էջ ԼԹ—ԽԴ:

2 Աղեքսանդրացւոյ Stromata I, ed Potter, p. 356 այսպէս է բնագիրը. *Δημόκριτος γὰρ τοὺς Βαβυλωνίους λόγους ἠθικοὺς πεποίηται. λέγεται γὰρ τὴν Ἀκικάρου στήλην ἑρμηνευθεῖσαν, τοῖς ἰδίοις συντάξαι συγγράμμασι. κἄστιν ἐπισημήνασθαι παρ' αὐτοῦ, Τάδε λέγει Δημόκριτος* եւն: Առաջարկուած սրբագրութիւնն է *ἠθικοὺς*ի տեղ *ἰδικούς* կարդալ կամ գոնէ այս բառն ալ կցել: Կղեմայ այս գործքն հայերէն թարգմանուած չկայ:

կան„ բառին միայն սրբագրութեամբ՝ Հարրիսի հետ համկընանք այսպէս. Դեմոկրիտոս բաբելական ճառերն իրեն սեպհականեց, վասն զի Ակիկարու արձանն իւր գրութեանց մէջ խառնեց, եւ սկիզբն աւելցուց թէ Այսպէս կ'ըսէ Դեմոկրատէս„ ելն։ Եթէ դժուարութիւն մը կայ՝ այն է որ արդէն Եւսեբիոս այսպէս մթին՝ կամ եթէ ուզուի աղաւաղ՝ տեսած է այս խօսքն, որով մթարութիւնը շատ հին է։[1] Ցամենայն դէպս՝ Խիկարայ իմաստութիւնը այնչափ հռչակուած էր արդէն հին Ցունաց քով որ նաեւ Դեմոկրիտոսի տրուած՝ — ճիշդ թէ սուտ՝ այն խնդրէն դուրս կրնայ մնալ — գրոց մէջ ալ մուտք գրած էր. մանաւանդ թէ՝ եթէ հաւատանք Կղեմայ՝ Խիկարայ իմաստութիւնն գրուած ալ էր բաբելական շատ մ'արձանագրութեանց պէս՝ "սեան„ կամ արձանի վրայ, եւ թէ այսպիսի բեւեռագիր գլանէ մը թարգմանած է զայն Դեմոկրիտոս։ Այսչափ հնութիւն ի հարկէ քիչ մը դժուար է։ Դեմոկրիտ՝ Լեւկիպպոսի աշակերտը, հին փիլիսոփայութեան հիւլէական դրութեան գլխաւոր պաշտպաններէն մին, ծնած կը համարուի իբր 460ին (Ն. Ք.) յԱբդերա,[2] ուստի այսպիսի հնութիւն մը կ'ունենայ Խիկար Ցունաց

---

[1] Տես Եւսեբեայ՝ "Պատրաստութիւն Աւետարանի„ Գիրք Ժ, գլ. 4. "Եւ Դեմոկրիտոս ասի նախ զառաջինն խօսս բարոյականս Բաբելացւոց առնել„ ելն՝ ճիշդ նոյն դարձուածով։ Եւսեբեայ այս ընդարձակ երկասիրութեան ալ հայերէն թարգմանութեան չենք հանդիպած։

[2] Դեմոկրիտոս մեռած կ'ըսուի իբր 361ին Ն. Ք. իւր գործքերէն շատ բան կորսուած՝ մաս մը հասած է՝ մեծաւ մասամբ հատակոտորներով, զորոնք հաւաքած է Mullach (տպ. 1843, հմմտ. Mullach, Quaestionum Democratearum spec. I—II. Բերլին 1835—43) իւր փիլիսոփայական դրութեան՝ հիւլէականութեան մասին՝ բազմաթիւ գրութիւնք լոյս տեսած են, հմմտ. A. Stöckl, Lehrbuch der Geschichte der Philosophie. Mainz 1875, p. 53—56 եւ յլն։

*քով, որ դժուար է ընդունիլ։ Ի հարկէ քիչ հնութիւն չունին նաեւ միւս յիշատակութիւնքն, զոր վերը յիշեցինք, այսպէս Դիոնեսեայ Լայերտացւոյ այն տեղեկութիւնն որով Թէոփրաստի կ'ընծայէ "Ակիքարոս" անուն գործ մը։ Վասն զի Թէոփրաստ Լեսպացի ալ, որ հնոց ամէնէն նշանաւոր փիլիսոփաներէն է, ծնած կը համարուի 390ին (Ն. Ք.), աշակերտ նախ Պղատոնի, յետոյ Արիստոտէլի եւ վերջնոյս կողմանէ իրեն յաջորդ նշանակուած, թողուցած է բազմաթիւ գրքեր՝ թուով մինչեւ 200 ըստ աւանդութեան, որոնց նշանաւորն է "Նկարագիրք բարոյականք"։[1] Ոչ այսչափ հնութիւն՝ բայց նաեւ աննշան չէ Ստրաբոնի (ծն. 60 Ն. Ք. Ամասիա) յիշած հռչակաւոր "մոգ" իմաստուն՝ "Աքայիքարոս առ Բոսփորացիս"* (παρὰ τοῖς Βοσπορανοῖς Ἀχαίκαρον.)[2] — *Ցամենայն դէպս այս ամէն տեղ յիշատակուած իմաստունն ուրիշ անձ չէ, բայց մեր Խիկարն՝ որ ըստ այսմ արդէն կանուխ ժամանակ մուտք գտած էր Յունաստան։*

---

1 *Թէոփրաստ մեռած կը համարուի 287ին Ն. Ք.։ Իւր բազմաթիւ գործերուն մեծագոյն մասը կորսուած է. Մնացածները յաճախ հրատարակուած են, ի միջի այլոց՝ իւր* Ethici Characteres, ed Petersen, 1859. *բովանդակ գործերն որ հասած են՝ հրատարակեց* Wimmer 1842—1866, *երեք հատոր. հմմտ. նաեւ* H. Usener, Analecta Theophrastea, *Լայպցիգ* 1858։ — *Հայերէն՝ "Թէոփրաստի Նկարագիրք Բարուց", Թրգ. Հ. Արսէն Կոմիտաս Բագրատունի։ Վեննա.* 1830. 12° *էջք* 120։

2 *Հարրիս (էջ ԽԱ, Ծան.) այն առարկութեան որ* Βοσπορανὸς *անյատուկ կերպով միայն կրնայ վերաբերիլ Աքիկարու՝ կը պատասխանէ թէ այս բառն առ Ստրաբոնի անշուշտ աղաւաղութիւն մըն է. իսկ միւս առարկութեան որ Խիկարու արեւելեան զրոյցին մէջ "սեան" մը վրայ գրութեան ակնարկութիւն անգամ չկայ՝ կը պատասխանէ յիշեցընելով "Եսովպ"-Խիկարու մէջ անոր գտնուիլը։ Սակայն եւ այնպէս՝ չ'ուզեր Հարրիս այսչափ խորին հնութիւն մը տալ Խիկարու զրուցին։*

Դեմոկրիտոսի թարգմանած "սիւնն" ալ արդէն կը յիշեցընէ Նադան-Խիկարի զրոյցը, որուն համեմատ պատգամին պահանջելովը Դեղփիացիք "սիւն կանգնեցին" (στήλην ἀνέστησαν) "Նադանայ", ինչպէս վերը նշանակեցինք Պղանուդէսի պատմածին համեմատ։

Հարկիս չի կրնար ընդունիլ որ սուտ-գիւ Դեմոկրիտոս ծանօթացուցած ըլլայ Յունաց Խիկարու իմաստութիւնը։ Նախ որ Դեմոկրիտոսի անուամբ ցայսօր ալ շրջող բազմաթիւ առածներ ու բարոյական վճիռները հարազատ չեն համարիր նաեւ ուրիշ գիտնականք (հրատարակիչք Natorp, Müller եւն։) Մէկ կողմանէ Դեմոկրիտոս՝ իբրեւ հռչակաւոր առածաբան՝ շատ անգամ կ'երեւայ առածներու հաւաքման մէջ, ուր ստութեամբ իրեն (երբեմն նաեւ Սոկրատէս ձեւով[1]) ընծայուած են բազմաթիւ առածներ, միւս կողմանէ ալ Խիկար նոյն հռչակն ունէր արեւելքի մէջ. եւ այսպէս՝ արեւելեան առածներուն Յունաստան անցնելով՝ Խիկարի առածներն ալ միասին գացած են եւ Դիոկրիտի անունն առած, որով Կղեմէս Աղեքսանդրացի վերջնոյս կրնար ընծայել Խիկարի իմաստութեան թարգմանութիւնն. եւ ճիշդ այսպիսի առածներու հաւաքումն մըն է որուն կ'ակնարկեն Թէոփրաստ եւ Ստրաբոն։ Հարկիս այս ճամբով կ'ուզէ մեկնել մէկ կողմանէ Դեմոկրիտի անուան Խիկարի հետ կապ ունենալը, միւս կողմանէ այն երեւոյթն որ Խիկարու առածներէն կը գտնենք յունական առածներու հաւաքմանց մէջ։ Այսպէս հռչակաւոր եթովպական "Բանք իմաստասիրացն" զոր յիշեցինք արդէն եւ որ առածներու հաւաքումն է, ունի իւր մէջ Խիկարը— 15

1 Հմմտ. օրինակի համար Cornill ("Բանք իմաստ.") էջ 34, ուր մի եւ նոյն առածը՝ ձեռագիր մը Սոկրատի, ուրիշ մը Դեմոկրատեայ կ'ընծայէ։ Երկու անունները դիւրաւ կրնային շփոթուիլ։

առածներ՝ որ կան Խիկարու բոլոր խմբագրութեանց մէջ ալ։ Արդ ասոնց երկրորդը (— Հայերէնին մէջ՝ "Ագին շան հաց տայ եւ բերան՝ բիր„ —) կը գտնուի Դէմոկրատէսի տրուած¹։ Ցիշելոց երեքտասաններորդ առածն ալ — որուն իմաստն է մերձաւորապէս՝ Լաւ է գթել ոտքով քան գթել լեզուով, — Սողոնի անուն կրող վճռոց մէջ կը գտնուի, մինչդեռ միեւնոյնը Մաքսիմոս՝ Սոկրատայ կ'ընծայէ²։ Մայսներ աւելի յառաջ ալ երթալով՝ Խիկարի ուրիշ մէկ խրատը՝ (— "Որդեակ՝ մի՛ լինիր որպէս նշենի որ յառաջ ծաղկի եւ յետոյ հասանի պտուղն իւր, այլ լեր որպէս թթենի որ յետոյ ծաղկի եւ յառաջ հասանի պտուղ իւր„ —) համեմատելի կը դնէ Բաբրիոսի մէկ տեղւոյն հետ. բնական է նաեւ որ Եսովպայ առակաց մէջ ալ համեմատելիքներ գտնուին³, եւ նմաններ։

Ինչպէս Յունական՝ նոյնպէս միւս գրականութեանց մէջ ալ մուտք գտած է Խիկար, արեւելեանց մէջ աւելի եւս՝ քանի որ նոյն լեզուներով խմբագրուած զրոյցն ալ ամբողջութեամբ կը գտնուի։ Օրինակի համար Բար-Բահլուլ իւր հռչակաւոր ասորական-արաբական բառգրքին մէջ կը ցու-

¹ Տես Schahrestâni, ed. Cureton, p. 306.

² Սողոնի կ'ընծայէ յիշեալ Schahrastani, p. 298. Սոկրատի՝ Մաքսիմոս (տես Migne, Patrol., Ser. Graec. XCI, Nr. 940, հմմտ. Cornill, p. 40, 43.) Հարրիս (էջ ԽԳ, Ծան.) կը յիշէ նաեւ շատ նման առած մ'ալ Սողոմոն Իբն Գաբիրոլ Օսարիի "Մարգարտաց„ հաւաքման մէջ (թիւ 357) "Լեզուի գայթելն աւելի վտանգաւոր է քան ոտքին գայթելն„ եւն։

³ Հմմտ. Մայսներ՝ էջ 183—184։ Բաբրիոսի համեմատական տեղը տես Babrius, ed. Gitlbauer, 254։ Մայսներ կը համեմատէ արաբական բնագրին առածներն "Հիւսն ու ծառ„ եւ "Խաղք ու թռչունն„՝ Եսովպայ առակներուն հետ (171 եւ 46). վերջինը յատուկ զրոյց մ'եղած է Արաբաց քով, տես Salhani, Contes arabes, p. 91ff, եւ այլուր։

ցընէ որ իրեն անծանօթ չէր Խիկարու զրոյցը, երբ "Աղիկամ" (այլ օրինակ "Աղիկամ") անուան դիմաց կը նշանակէ որ էր "այր հռչակաւոր երկրորդ ("վեզիր") արքայի, եւ "շատ իմաստուն" եւն[1]: Նոյն Բար-Բահլուլի բառգրքին ուրիշ մէկ օրինակն, — որ այնու ալ նշանաւոր է որ նաեւ հայերէն մեկնութիւններ ունի աւելցուցած եւ այն օտարերէն տառերով հայերէնը[2], — արդէն քիչ մ'այլակերպած կը ցուցընէ զրոյցը. վասն զի հոն կ'ըսուի թէ "Աղիկամ" երկրորդ կամ "վեզիր" էր "Խայկամ" կամ "Խիկար" արքային[3]: Զրուցին հետքեր չեն պակսիր նաեւ ուշ ժամանակի հրէական կամ ռաբունական գրութեանց մէջ ալ. օրինակի համար երբ Յեսուա բէն Խանանիա ռաբունին՝ որուն համար կ'ըսուի թէ Ադրիանոս կայսեր օրերը կ'ապրէր, վէճի կը բռնուի հելլենական իմաստնոց հետ, եւ երբ իմաստունք իրեն կ'ըսեն՝ "Շինէ մեզի տուն մը օդոյ մէջ", ռաբունին "արտասանեց Շէմը (դիւթական չորեքգրենին), օդը բարձրացաւ եւ կախուեցաւ երկնից ու երկրի մէջտեղ: Այն ատեն պոռաց անոնց. Բերէք ինծի աղիւս ու կիր": Ասի ճշդիւ Խիկարի օդեղէն աշտարակ շինելու զրոյցն է: Նոյն տեղ կայ նաեւ Խիկարու զրուցին "աւազեայ պարան" հիւսելու սրամտութիւնը. վասն զի երբ իմաստունք ռաբունւոյն կ'առաջարկեն թէ "Ջրհոր մ'ունինք դաշտի վրայ, քաղաք բեր զանիկա", կը պատասխանէ՝ "Կաւէ պարան մը մանեցէք, այն

1 Bar-Bahlul, Lexicon, ed. Duval, p. 103. Տես Մայաներ, էջ 194 որ արաբական բնագիրն յառաջ կը բերէ:

2 Այս շատ կողմանէ հետաքրքրական "Ասորատառ Հայերէն բառգրքին" վրայ տեղեկութիւն տուած ենք ուրիշ տեղ մը. տես "Հանդէս Ամս." 1899, էջ 22—23:

3 Տես Հարրիս, էջ ԽԴ: Նշանակելի է հոս արքային [illegible] անունը, որ մեր "Խիկար" ձեւը կը յիշեցընէ ճշդիւ. թէեւ "Խայկար" ալ կրնայ կարդացուիլ: "Աղիկար" ճիշդ նոյն ուղղագրութեամբ է՝ զոր տեսանք վերը:

ժամանակ Ջրհորը կը բերեմ„ եւ նմաններ[1]։ Զարմանք չէ ըստ այսմ որ մէկ կողմանէ Եւրոպա ալ անցած է Խիկարու զրոյցն նաեւ ուշ ժամանակներն[2], միւս կողմանէ մինչեւ Հնդկաց քով համապատասխանող զրոյցներ կը գտնուին։ Այսպէս Խիկարի հետ կապ ունենալու է Çukasaptatiի 48—49երորդ գիշերուան մէջ պատմուած զրոյցն Նանդա արքային եւ Սակատալա վեզիրին[3]։ Վերջինս ալ ճիշդ Խիկարի բախտը կ'ունենայ, նոյնպէս հոր մը կը ձգուի եւ նոյնպէս վերջէն անկէ կ'ազատի՝ Վանդալա թագաւորին հանելուկները լուծելու համար։ Նմանութիւնն այնչափ է որ հռչակաւոր հնդկագէտ առածաբանն Բէնֆէյ յիշեալ հնդկական զրոյցը նախագաղափար կը համարի Խիկարի զրուցին, հնդկական գրականութենէ Արաբացւոց անցած եւ յետոյ յունարէնի թարգմանուած։ Վերջին կէտս ի հարկէ բոլորովին անընդունելի է՝ Խիկարի զրուցին բնագրաց արդի քննութեանց հանդէպ։ — Ս. Հարց քով ալ չեն

1 Ասոնց եւ նմանեաց վրայ երկար կը խօսի Մայսնէր՝ էջ 194—195, յառաջ բերելով նաեւ եբրայական բնագիրները։

2 Հմմտ. Հարրիս էջ Զ։ Խիկարու այն առածը թէ "Զգայլոյ ձագն յուսումն տվին եւ ասեն՝ Ասա Այբ, Բէն, Գիմ, եւ նա ասէր՝ Այծ, Բուծ, Գառն„, կը գտնուի հին գաղղիական բանաստեղծութեանց մէջ տաղաչափուած Մարի տը Ֆրանսէն (տես Roquefort, Poésies de Marie de France, vol. II, Nr. 82)։

3 Հմմտ. Մայսնէր, էջ 196. Benfeyի գրածը կը գտնուի ի թերթին Aussland, 1859, Nr. 20, ասոր մասին նաեւ R. Schmidt, die Çukasaptati, p. 68։ Այս զրոյցը տիբետական խմբագրութիւն մ'ալ ունի, որուն մէջ մինչեւ անգամ Սողոմոնի վճիռը (Գ. Թագ. Գ, 16—28) մուտք գտած է, զոր Մայսնէր զօրաւոր ապացոյց մը կը համարի այս պատմութեանց արեւելքէն Հնդկաստան անցնելուն եւ ոչ թէ Հնդկաստանէն Հրէից եւն։

պակսիր ակնարկութիւններ. այսպէս երբ Որոգինէս իւր առ Ափրիկանոս՝ թղթին մէջ (Migne, XI, 48—85) ի պաշտպանութիւն Դանիէլի գրոց Շուշանայ պատմութեան վկայ կը բերէ զԱքիաքարոս եւ Տուբիթ։ Սակայն այսպիսի տեղեր սովորաբար չեն ցուցըներ թէ այն հեղինակներուն ծանօթ էր Խիկարի զրոյցն, այլ Աքիկարու կամ Խիկարի պատմութիւնն այնչափ՝ որչափ կայ արդէն Տովբիթայ գրոց մէջ. ուստի վերջինս է աղբիւր յիշեալ տեղեկութեանց[1]։

Աւելի ծանրակշիռ է այն կապն որ կայ Արաբաց հռչակաւոր "Եսովպին„ կամ Լօքմանին հետ, եւ Խիկարայ զրուցին այն աղդեցութիւնն զոր կը տեսնենք Լոկմանի վրայ եղած աւանդութեանց մէջ. պարագայ մ'որ Խիկարայ քննչաց յատկապէս մտադրութեան արժանի եղած է։[2] Արդէն երբ "Եսովպ„ գտանք իբրեւ ուրիշ այլակերպութիւն մը Խիկարի, բնական էր որ Լոկման ալ կապ մ'ունենար. վասն զի "Եսովպ„ եւ "Լոկման„ իրարմէ անբաժան են։ Լոկմանի անուամբ Արաբաց քով գտնուած առակներն[3] այնպէս մեծ նմանութիւն՝ կրնանք ըսել

1 Այսպէս մօտերս հրատարակուած Inventiones nominum գործ մը (Ս. Գալլէնի ձեռագրէն թիւ 130 Ը. դարէն) կ'ըսէ՝ "Երկու հատ են Նադաբ, մէկը Նադաբ որդի Ահարոնի, միւսը Նադաբ [ի] Տուբիա որ թաղեաց կենդանի զԱքիաքարոս (Achia Caroneum ուղղելու Achiacarum) որ սնոյց զնա„։ Յայտնապէս միայն Տովբիթայ գրքէն է տեղեկութիւնս, ինչպէս արդէն ամբողջ խօսքը Տովբիթայ Վուլգատայի բացատրութիւններն գործածած է։ Տես Հարրիս՝ էջ ԽԵ։

2 Տես յատկապէս Հարրիս՝ էջ ՀԲ—ՁԱ։ Անկէ կը քաղենք գլխաւոր կէտերը յաջորդիւ։

3 Բազմաթիւ հրատարակութիւններէն, թարգմանութիւններէն եւ քննութիւններէն յիշենք միայն մէկ քանին. Locmani Sapientis Fabulae ... cum interpr. lat. et notis Thomae Erpenii. Լայդէն 1615, այլ տպ. անդ՝ 1636. — Locmani fabulae et plura loca ex codd.

*նոյնութիւն՝ ունին Եսովպեան առակաց հետ, որ արդէն շատոնց գիտնոց քով վէճի նիւթ եղած է թէ որը համարելու է աղբիւր. Լոկմա՞ն առած է Եսովպէն թէ Եսովպ յունական խմբագրութիւն է արեւելեան առակացն՝ որ ի միասին ամփոփուած են արաբացի "իմաստնոյն„ անուամբ: Բայց մեզի կարեւոր են գլխաւորաբար այն աւանդութիւնքն որ կը պատմուին Լոկմանի վրայ, եւ զորոնք շատ մասամբ նոյն կը գտնենք "Եսովպ„-Խիկարի հետ: Արաբացւոց "Եսովպի„ մասին հնագոյն տեղեկութիւնքն կու տայ արդէն Կուրանն, որուն 31 երրորդ-սուրան "Լոկման„* (لقمان) *խորագիրը կը կրէ, եւ բազմաթիւ խրատներ կամ առածներ յառաջ կը բերէ նոյն իմաստնէն: Խիկարի պէս աս ալ իմաստուն մըն է, որ ճիշդ նոյն ոճով խրատներ կու տայ իւր որդւոյն: Խրատներուն կամ առածներուն առաջինն է՝ "Որդեակ, մի՛ առներ զոք ընկեր Աստուծոյ, զի կռապաշտութիւն անօրէնութիւն մեծ է„: Ի միջի այլոց կայ նաեւ վճիռս՝ "(Որդեակ) լեր ցածուն ի գնացս քո եւ կակղացո զբարբառ քո, զի անհաճոյ յամենայն բարբառս է ապաքէն ձայն իշոց„: Արդ հա-*

---

selecta, ed. G. W. Freytag, Բոն 1823. — Locmani fabulae 40 . . . ed. Er. Rask, 1831. — Locmani fabulae . . . annot. critic. et glossar. explanatae ab Aem. Roedigero, Հալլէ 1830, այլ տպ. 1839. — Loqmân, surnommé le Sage, Fables, ed. arabe . . . avec une trad. franç. et accomp. de remarques et d'un vocabulaire arabe-français par Ch. Schier, Լայպցիգ 1831, այլ տպ. 1839. — Les fables de Locman, avec. trad. par J. Derenbourg, Բերլին 1850, եւ բազմաթիւ ուրիշներ, օրինակի համար Loqman, fables, version berbère, transcription franç. et glossaire, par R. Basset, Պարիս 1889: Հմմտ. J. G. Wenrich, De auctorum Graecorum Versionibus etc. Լայպցիգ 1842, p. 78—85, ուր յիշուած են նաեւ հին քննութիւնք Եսովպ-Լոկման խնդրոյ մասին. G. Flügel, de arabicis scriptorum graecorum interpretibus, 1841 եւն:

պակսիր ակնարկութիւններ. այսպէս երբ Որոգինէս իւր առ Ափրիկանոս՝ թղթին մէջ (Migne, XI, 48—85) ի պաշտպանութիւն Դանիէլի գրոց Շուշանայ պատմութեան վկայ կը բերէ զԱքիաքարոս եւ Տուբիթ։ Սակայն այսպիսի տեղեր սովորաբար չեն ցուցըներ թէ այն հեղինակներուն ծանօթ էր Խիկարի զրոյցն, այլ Աքիկարու կամ Խիկարի պատմութիւնն այնչափ՝ որչափ կայ արդէն Տովբիթայ գրոց մէջ. ուստի վերջինս է աղբիւր յիշեալ տեղեկութեանց[1]։

Աւելի ծանրակշիռ է այն կապն որ կայ Արաբաց հռչակաւոր “Եսովպին„ կամ Լոքմանին հետ, եւ Խիկարայ զրուցին այն ազդեցութիւնն զոր կը տեսնենք Լոկմանի վրայ եղած աւանդութեանց մէջ. պարագայ մ'որ Խիկարայ քննչաց յատկապէս մտադրութեան արժանի եղած է։[2] Արդէն երբ “Եսովպ„ գտանք իբրեւ ուրիշ այլակերպութիւն մը Խիկարի, բնական էր որ Լոկման ալ կապ մ'ունենար. վասն զի “Եսովպ„ եւ “Լոկման„ իրարմէ անբաժան են։ Լոկմանի անուամբ Արաբաց քով գտնուած առակներն[3] այնպէս մեծ նմանութիւն՝ կրնանք ըսել

---

1 Այսպէս մօտերս հրատարակուած Inventiones nominum գործ մը (Ս. Գալլէնի ձեռագրէն թիւ 130 Ը. դարէն) կ'ըսէ՝ “Երկու հատ են Նադաբ, մէկը Նադաբ որդի Ահարոնի, միւսը Նադաբ [ի] Տուբիա որ թաղեաց կենդանի զԱքիաքարոս (Achia Caroneum ուղղելու Achiacarum) որ սնոյց զնա„։ Յայտնապէս միայն Տովբիթայ գրքէն է տեղեկութիւնս, ինչպէս արդէն ամբողջ խօսքը Տովբիթայ Վուլգատայի բացատրութիւնները գործածած է։ Տես Հարրիս՝ էջ ԽԵ։

2 Տես յատկապէս Հարրիս՝ էջ ՀԲ—ՁԱ։ Անկէ կը քաղենք գլխաւոր կէտերը յաջորդիւս։

3 Բազմաթիւ հրատարակութիւններէն, թարգմանութիւններէն եւ քննութիւններէն յիշենք միայն մէկ քանին. Locmani Sapientis Fabulae ... cum interpr. lat. et notis Thomae Erpenii. Լայդէն 1615, այլ տպ. անդ՝ 1636. — Locmani fabulae et plura loca ex codd.

նոյնութիւն՝ ունին Եսովպեան առակաց հետ, որ արդէն շատոնց գիտնոց քով վէճի նիւթ եղած է թէ որը համարելու է աղբիւր. Լոկմա՞ն առած է Եսովպէն թէ Եսովպ յունական խմբագրութիւն է արեւելեան առակացն՝ որ ի միասին ամփոփուած են արաբացի “իմաստնոյն” անուամբ։ Բայց մեզի կարեւոր են գլխաւորաբար այն աւանդութիւնքն որ կը պատմուին Լոկմանի վրայ, եւ զորոնք շատ մասամբ նոյն կը գտնենք “Եսովպ”-Խիկարի հետ։ Արաբացւոց “Եսովպի” մասին հնագոյն տեղեկութիւնքն կու տայ արդէն Կուրանն, որուն 31 երրորդ սուրան “Լոկման” (لقمان) խորագիրը կը կրէ, եւ բազմաթիւ խրատներ կամ առածներ յառաջ կը բերէ նոյն իմաստնէն։ Խիկարի պէս աս ալ իմաստուն մըն է, որ ճիշդ նոյն ոճով խրատներ կու տայ իւր որդւոյն։ Խրատներուն կամ առածներուն առաջինն է՝ “Որդեակ, մի՛ առներ զոք ընկեր Աստուծոյ, զի կռապաշտութիւն անօրէնութիւն մեծ է”։ Ի միջի այլոց կայ նաեւ վճիռս՝ “(Որդեակ) լեր ցածուն ի գնացս քո եւ կակղացո զբարբառ քո, զի անհաճոյ յամենայն բարբառս է ապաքէն ձայն իշոյ”։ Արդ հա-

selecta, ed. G. W. Freytag, Բոն 1823. — Locmani fabulae 40 . . . ed. Er. Rask, 1831. — Locmani fabulae . . . annot. critic. et glossar. explanatae ab Aem. Roedigero, Հալլէ 1830, այլ տպ. 1839. — Loqmân, surnommé le Sage, Fables, ed. arabe . . . avec une trad. franç. et accomp. de remarques et d'un vocabulaire arabe-français par Ch. Schier, Լայպցիգ 1831, այլ տպ. 1839. — Les fables de Locman, avec. trad. par J. Derenbourg, Բերլին 1850, եւ բազմաթիւ ուրիշներ, օրինակի համար Loqman, fables, version berbère, transcription franç. et glossaire, par R. Basset, Պարիս 1889։ Հմմտ. J. G. Wenrich, De auctorum Graecorum Versionibus etc. Լայպցիգ 1842, p. 78–85, ուր յիշուած են նաեւ հին քննութիւնք Եսովպ-Լոկման խնդրոյ մասին. G. Flügel, de arabicis scriptorum graecorum interpretibus, 1841 եւն։

Մեմատենք այս վճիռը Խիկարի սա առածին հետ՝ "Որդեակ ցածոյ զաչս քո եւ կակղացո զբարբառ բերանոյ քո եւ նայեա ընդ ակամբ, զի մի երեւեացիս մարդկան անզգամ, զի եթէ աղաղակաւ տաճար շինէր՝ էշն ամէն աւր (այսպէս) Է ապարան շինէր„ ըսեն։ Կը տեսնենք որ Խիկար անծանօթ չէր "Լոկմանի„ կամ անոր տուած առածներուն գրողին, թէ Լոկման ալ Խիկարու պէս առածաբան իմաստուն մը կը համարուի, որուն առածներն ալ ճիշդ նոյն ձեւն ունին, սկսելով նոյնպէս "Որդեակ„ ըսեն։ Համեմատութեան կէտերը կը շատնան, երբ աչքէ անցրնենք Կուրանի մեկնիչներն՝ որ ի հարկէ վերոյիշեալ "սուրան„ բացատրել ստիպուած էին։ Ոմանք Յոբայ քեռորդին կը դնեն զԼոկման, ուրիշներն Աբրահամու եղբօրորդին որ մինչեւ Յովնան մարգարէի ժամանակն ապրած է, ճիշդ ինչպէս Նադան Աքիկարայ եւ վերջինս Տուբիթայ քեռորդի է որ կ'ապրի մինչեւ Յովնանու ժամանակ կամ Նինուէի կործանումը։ Ուրիշները զինքն Ափրիկեցի սեւամորթ գերի մը կ'ըսեն, ճիշդ ինչպէս կ'աւանդուի Եսովպի համար։ Այս արաբական աւանդութիւնքն կ'ամփոփէ Ալ-Մասուդի (գլ. դ) հետեւեալ կերպով.[1] "Այլահ եւ Միդիան աշխարհը կար իմաստուն մը Լոկման անուամբ, որդի Մեզիդի, որդի Սարունի. Նուբիացի էր, ազատագիր Լոքայնի որդւոյ Եսրի։ Ծնաւ Դաւթի թագաւորին տասներորդ տարին. առաքինի գերի մըն էր որուն Աստուած իմաստութեան պարգեւը շնորհեց. ապրեցաւ եւ չդադրեցաւ աշխարհի իմաստութեան եւ բարեպաշտութեան օրինակ տալէն, մինչեւ Յովնանու որդւոյ Մատտայի օրերը, որ խաւրուեցաւ Նինուէի ժողովրդեան՝ Մոսուլի գաւառին մէջ։„ Այստեղ հաւանօրէն "Միդիա„ ըսուածն "Մեդիա„ կամ Մարաստան կարդալու է։ Ուրիշները զինքը Ս. Գրոց Բա-

1 Տես Հարրիս՝ էջ ՀԵ։

ղաամուն հետ նոյնացուցած են.[1] խնդիր ալ յարուցած են թէ արդեօք լոկ իմաստո՞ւն էր թէ “մարգարէ„, որ զարմանալի ալ չէ. վասն զի հնոյքով “մարգարէ„ կը կոչուէին նաեւ իմաստուն առածախօսք եւն:[2] Այսպէս Մուստաֆա իբն Աբդուլլահ իւր կենսագրական բառգրքին մէջ նշանաւոր մարգարէներն, որոնց շնորհուած էր “արուեստ մարգա-

---

1 Այսպէս Հարրիս (անդ) յառաջ կը բերէ Պետրոսի Ալփոնսոսի Disciplina Clericalis գործքին (Migne, Patr., Ser. Lat. 157) սա վճիռը. “Բաղաամ որ Արաբացւոց լեզուաւ Լոքման կը կոչուի, կ'ըսէր իւր որդւոյն. Որդեակ, մրջիւնը քեզմէ իմաստնագոյն չըլլայ„ եւն: — Կը նշանակէ այն տեղ միանգամայն որ Բրիտանական Թանգարանի Արաբական ձեռագրի մը մէջ կը գտնուի “Կտակ Լոքմանի իմաստնոյ առ որդին„ (Ms. Arab. 644, fol. 189—193. Testamentum Lukmani sapientis ad filium.) բայց նմանութիւն չի տեսնուիր Խիկարի առածներուն հետ:

2 Նոյնը կը տեսնուի նաեւ Ս. Գրոց մէջ. Հմմտ. “որդւոց մարգարէից„ եւն՝ որոնց մասին արդէն մեծ գրականութիւն կայ: Հարրիս (էջ ՀԶ) կը յիշէ Առակաց Լ եւ ԼԱ գլուխներն՝ որոնց մէջ երկու իմաստնոց առածները “մարգարէութիւն„ (տեսիլ, visio եւն) կը կոչուին. այսպէս Վուլգատա Prov. c. XXX ըստ Եբր. Verba Agur filii Jage (կամ թարգմանելով անուններս՝ Verba Congregantis filii Vomentis) Visio quam locutus est vir, cum quo est Deus եւն, եւ cap. XXI. Verba Lamuelis regis, visio qua erudivit eum mater sua եւն. ուստի այն գլուխներն յիշեալ իմաստնոց առակներն են: Հայերէն թարգմանութեան մէջ՝ ընդհանրապէս յունարէնի համեմատ՝ բոլորովին այլակերպ են գլուխներն եւն, նաեւ այս անունները անճանաչելի եղած են: Յունարէնին պէս հայերէնն ալ ունի առաջնոյն տեղ (տպ. Վենետ, 1805, հրտ. Զօհրապ, հտր. Գ., 182) “Զայս ասէ այր ցհաւատացեալս Աստուծոյ„ եւն. երկրորդին տեղ (էջ 185) “Իմ բանք յԱստուծոյ խօսեցեալ են, հրաման թագաւորին զոր խրատեաց զնա մայր իւր„ եւն: Առօրին ի հարկէ Վուլգատայի համաձայն է, առաջինը՝ “Բանք Ագուրայ որդւոյ Եագէի„, երկրորդը՝ “Բանք Մովուէլի արքայի մարգարէէն„,

*ըեանալոյ. հրաշքներով եւ որոնք գրաւոր թողուցեր են, վեց հատ կը դնէ, "այսինքն Ադամ, Իդրիս (= Ենովք), Լոքման (=Խիկար), Երեմիա, Շայա (Եսայի) եւ Դանիէլ"։ Նաեւ քրիստոնեայ մատենագրաց քով մուտ գտած են այս աւանդութիւնք, որոնք զԼոկման կ'ուզեն Դաւթի ժամանակակից ընել. այսպէս նաեւ Աբուլ-Ֆարաջ կամ Բարհեբրէոս իւր "Հարստութեանց Պատմութեան" մէջ կը գրէ[1]. "Անոր (Դաւթի) ժամանակն էր Եմպիդոկղէս իմաստուն, փիլիսոփայութեան հինգ սիւներէն մին. այսինքն՝ ինքը, Պիւթագորաս, Սոկրատ, Պղատոն եւ Արիստոտէլ...։ Ուրիշ մը կ'ըսէ թէ՝ Պիւթագորան էր որ ամենէն յառաջ փիլիսոփայութեան հետամուտ եղաւ։ Իսկ Իսլամաց ոմանք կը հաստատեն թէ առաջինն՝ որուն իմաստութիւն շնորհուեցաւ՝ էր Լոքման, որ Դաւթի ժամանակ ծաղկեցաւ, եւ անկէ առաւ Եմպիդոկղէս" իւր իմաստութիւնը։ Կը տեսնուի որ ճիգ մը կայ Լոկմանի՝ հին կտակարանի մարգարէից շարքին մէջ տեղ մը պատշաճեցընելու. որով կամ կը նոյնացուի Բաղաամու հետ, կամ կը շեշտուի այն պարագան թէ՝ Դաւթի թագաւորութեան ճիշդ [illegible] տարին կ'իյնայ անոր ծաղկիլն։ Այս վերջին պարագայն ծանրակշիռ է, որուն մեկնութիւնը կը գտնենք, եթէ բանանք Եւսեբեայ Քրոնիկոնի կանոնները, ուր ճշդիւ Դաւթի տասներորդ տարին նշանակուած կը գտնենք[2]. "Մարգարէանոյին Գադ, Նաթան եւ Ասափ։" Յայտնի կը տեսնուի որ արեւելեանք ջանք ունեցած են "Լոկման-Խիկար-Եսօփ"ն՝ նոյնացընել "Ասափ" մարգարէի հետ։ Անշուշտ իրաւունք*

---

1 Տես Mustafa ibn Abdullah, *Հրտ. Թրգմ.* Flügel III, 478, *իսկ* Abulfaradj, Hist. Dynast., ed. Pococke, p. 33. Տես Հարրիս՝ էջ ՀԶ—ՀԷ։

2 "Եւսեբի Պամփիլեայ ժամանակականք" եւն։ Մասն Բ. "Քրոնիկոն կանոն", տպ. Վենետ. 1818, Բ, էջ 146։

ունի Փաբրիկիոս[1] երբ կ'ըսէ թէ "յիմարութիւն" է ոմանց ըրածն որ անուան նոյնութեան պատճառաւն "Եսովպ" ու "Ասափ" նոյնացուցած են։ Սակայն մտածելու ենք որ հիներն ուրիշ գաղափար ունէին յաճախ. առածաբան "Լոկման", "Խիկար" կամ "Եսովպ" այնչափ մեծ ճոխութիւն ունէին որ ի հարկէ տեղ մը գտնել պէտք էր անոր՝ "մարգարէից" կարգին մէջ. անգամ մը որ Լոկման՝ ինչպէս վերը տեսանք, ամենէն հռչակաւոր "վեց մարգարէից" շարքը դասուած էր։ Այն ատեն բնական էր "Ասափին" ու "Եսովպին" նոյնացընել եւ Լոկմանն ալ Դաւթի տասներորդ տարին դնել։ Արդէն՝ ինչպէս Եսովպի առակաց վրայ խօսած ժամանակ նշանակեցինք, "Եսոփոս" Ասորւոց ալ քով յաճախ "Յովսեփոս" կը կոչուի, ինչպէս միւս կողմանէ նաեւ "Սոփոս"։

Այս տեսակէտն ի հարկէ անոնցն է միայն, որոնք զԼոկմանը "մարգարէ" կը համարէին. ուրիշները որ կը ժխտէին անոր մարգարէ ըլլալն՝ այլ միայն իմաստուն մը կ'ընդունէին, աւելի շեշտած են անոր "Նուբիացի գերի" ու "սեւ" ըլլալն, ինչպէս Ալ-Մասուդի (վերը յիշուած տեղը.) ճիշդ այնպէս՝ ինչպէս Պղանուդէս ներկայացուցած էր իւր յունական Եսովպոսը։ Թէ նաեւ այս տեսակէտը հանրածանօթ էր Արաբացւոց, կը տեսնենք ուրիշ վկայութիւններէն։ Այսպէս Իբն-Խալլիկան իւր կենսագրական բառագրոց մէջ կը յիշէ թէ Ալ-Կադի ար-Ռաշիդ սեւագոյն էր, անոր համար վերջնոյս վրայ երգիծական տողեր գրած է Աբուլֆաթ Մահմուդ Իբն Կարգուս՝ հետեւեալ կերպով. "Ո՛վ դու, որ կը նմանիս Լոկմանի, բայց ոչ յիմաստութեան։ Դու որ կորսընցուցեր ես ուսումդ ու չես պահած։ Դու գողցեր ես ամէն մարդու տողերն, Եւ պէտք ես կոչուիլ՝

---

[1] Fabricius, Bibl. Graec., II, c, 9.

ուէ-գող։„[1] — Այսչափն ալ կարծենք բաւական է Խիկար-Լոկմանի մասին։

Վերը՝ Եւոփպայ վրայ խօսած ատեն՝ յիշեցինք նաեւ վէպ մ'ալ՝ "Սինտիպաս իմաստասէրի„ կամ Սինդբատի պատմութիւնը, որ բազմաթիւ լեզուներով կը գտնուի, եւ որուն մասին ուրիշ տեղ խօսուած ալ է[2]։ Արդ նաեւ այս գրոց վրայ՝ ըստ Հարրիսի (էջ ՀԹ) ազդեցութիւն ըրած կ'երեւայ Խիկարու զրոյցը։ Արդեամբք ալ յիշեալ գրոց արաբերէն թարգմանութիւնն որ իբր 956ին եղած է, կը սկսի պատմութիւնն այսպէս. "Կար երբեմն թագաւոր մ'որուն անունն էր Կէ-րուս։ Եօթը կին ունէր, բայց ծերացաւ եւ որդի չունեցաւ։ Այն ատեն ելաւ ու աղօթեց, ուխտեց ուխտ եւ օծեց ինք զինքը։ Եւ Աստուած հաճեցաւ անոր որդի մը տալու։ Մեծցաւ տղան եւ հասակ նետեց մայր ծառի պէս։ Այն ատեն տուաւ զանի իմաստութիւն սորվելու, եւ երեք տարի կեցաւ իւր ուսուցչին հետ առանց բան մը սորվելու„ եւն։ Ակնյայտնի է հոս Խիկարի զրոյցը, անոր վաթսուն կին, որդի չունենալն, աղօթելն ու աղաչելն դից, "Նադան„ի ուսումն առնուլն ու "անուսումն„ մնալն, եւն։ Մինչեւ անգամ բացատրութեանց մէջ նոյնութիւն կայ, զոր օրինակ երբ Խիկարու արաբականը կ'ըսէ՝ "Նաթան աճեցաւ ու զարգացաւ, հասակ նետեց մայր ծառի պէս„։ Նոյն իսկ Սինդբատի "Կէ-րուս„ անունը չի կրնար դժուարութիւն պատճառել, երբ նկատուի որ Խիկար՝

1 Հմմտ. Հարրիս՝ էջ ՀԸ։

2 Հմմտ. ի միջի այլոց F. Baethgen, Sindbad oder die Sieben weisen Meister, Լայպցիգ 1879 (ասոր. եւ գերմ.) — Paulus Cassel, Mischle Sindbad, Secundus-Syntipas etc. Բերլին 1888, եւ նմաններ։ Հայերէն թարգմանութեան մասին "Հանդէս„ 1891, էջ 37—38, եւ այլուր։ Տես մեր "Ցուցակ„, էջ 1094 եւ "Մատենագր. մանր Ուսումն. Ա. (Վիեննա 1895), էջ 181—189։

յունարէնէ բղխած սլաւականին մէջ՝ “Ակի-րոս„ ձեւով (Akyrios) կ'երեւայ։ Վերջապէս չեն պակսիր նաեւ ուրիշ նմանութիւններ[1]. սակայն կը թողունք, բաւ համարելով մինչեւ այժմ ըսուածները։

Զենք կրնար փակել ուսումնասիրութեանս այս մասն առանց յիշելու Հարրիսի մէկ խօսքն (էջ ԶԱ) թէ “Մասամբ իւիք զարմանալի է, որ՝ նկատելով այս գրքին Հայոց մէջ շատ ալ տարածուած ըլլալը, ուրիշ որ եւ է հետք չի տեսնուիր հայ գրականութեան մէջ. թերեւս ասոր պատճառն է նոյն թարգմանութեան ուշ ժամանակ կատարուած ըլլալը։„ Թէ այս խօսքը ճիշդ չէ, յայտնի է արդէն մեր ուսումնասիրութեան ներածութենէն, ուր նշանակեցինք Խիկարի զրուցին հայ գրականութեան վրայ ըրած ազդեցութիւնն եւ թէ արդէն Ն. Շնորհալւոյ ծանօթ է այն, եւն։ Քանի մը բան ալ յաջորդիւս պիտի նշանակենք։ Սակայն նախ քան հայերէնի մասին խօսիլն՝ հարկ է տեսնել այն կարեւոր պարագան որ Խիկարի առածները գործածուած կը գտնուին նաեւ Հին ու Նոր Կտակարանի մէջ։

---

1 Սինդիբասի մէջ ալ երիտասարդը բարոյական հանելուկները կը լուծէ եւն։ Հոս կայ Խիկարէն հետք մը՝ սա առածը “Անյագ աչքն որչափ որ հարստութիւն կը տեսնէ՝ այնչափ անյագ է անոր որ զԱստուած ալ չի տեսներ, մինչեւ որ մահուամբ հողը ծածկէ իւր աչքերը„։ Խիկարի քով այսպէս՝ “Ակն մարդոյ աղբիւր է, որ ոչ յարգի մեծութեամբ՝ մինչեւ լցցի հողով„. Հայերէնն աղաւաղ լեզուով՝ “Ագահ մարդոյ աչքն ոչ լցւի գանձով, մինչեւ լցւի հողով„։ Բայց արդէն՝ ինչպէս նաեւ Դիլլոն (Dr. Dillon) միտ դրած է, այս առածն ալ Կուրանի հռչակաւոր ասացուածներէն մին է. Հմմտ. Սուրա 102՝ “Անյագ ցանկութիւնունիք դիզելու (հարստութիւն), մինչեւ տեսնէք գերեզմանը„։ Եթէ ուղիղ է համեմատութիւնս՝ փոխառութիւն մ'ալ այս կ'ըլլայ, Լոկմանի պէս՝ ազդեցութեան ալ նշան Խիկարի զրուցին։ Տես Հարրիս՝ էջ Զ։

## 6.

Բաւական երկարեցաւ մեր ուսումնասիրութիւնն յատկապէս այն խնդրոյ մասին թէ ինչ դիրք եւ դեր ունեցած էր Խիկարայ Իմաստութիւնն ընդհանուր գրականութեան մէջ։ Եսովպ եւ Լոկման երկու գլխաւոր անուններն էին, որոնց կապը Խիկարի հետ մանրամասն քննութեան արժանի էր. յետոյ կը մնար ընդհանրապէս արեւելեան եւ արեւմտեան գրականութեան մէջ Խիկարի կատարած դերն եւ ըրած ազդեցութիւնը կշռել։ Այս ամէնը նիւթ էին նախընթաց բաժիններու մեր ուսումնասիրութեան, զոր եթէ չենք ուզեր կիսակատար թողուլ՝ լրացընելու ենք նոյն կարգի, բայց ծանրակշռութեան տեսակիտով ամենակարեւոր մէկ խնդրով։ Այս խնդիրը կը կայանայ յայնմ որ ա՞րդեօք եւ ի՞նչ կապ կայ ու կրնայ ըլլալ Աքիկարի պատմութեան նախնականին եւ առածներուն՝ մէկ կողմանէ, եւ Հին եւ Նոր Կտակարանի այլեւայլ տեղերուն մէջ՝ միւս կողմանէ։

Թիւրիմացութեան տեղի չտալու համար կրկնենք հոս դարձեալ, ինչ որ Տովբիթայ գրոց վրայ խօսած ժամանակն ըսինք, թէ նախ երբ խօսք կ'ըլլայ Աքիկարու եւ Ս. Գրոց այլեւայլ տեղերու համեմատութեանց մասին, բնականապէս չեն հասկըցուիր Խիկարայ արդի օրինակներն եւ ոչ ընդհանրապէս "Խիկարայ„ զրոյցը, այլ անոր նախնական սկզբնագիրն՝ Աքիկարու պատմութեան։ Այս նախնականը մասամբ պատմութիւն էր Աքիկարու եւ Նադանայ, զոր կը յիշէ արդէն Տովբիթ, եւ մասամբ խրատներ ու առածներ։ Երկուքն պէսպէս ձեւակերպութեամբք եւ այլակերպութեամբք փոփոխուած հասած են ներկայ ձեւին՝ Խիկարայ զրոյց մը կազմելով մեր ձեռագրաց մէջ։ Յատկապէս առածներէն շատերն անշուշտ նորամուտ են, ուրիշները յընթացս ժամանակաց փոփո-

խուած, բայց գոնէ մաս մը, յէականս թերեւս մեծ մաս մ'արդէն Նախնականին կը վերաբերէր։ Արդ այսպիսի գրուածք մը՝ սիրուն պատմութիւն եւ գեղեցիկ առածներ ու խրատներ՝ բնական էր տարածուած ըլլար եւ ընդունելութիւն գտած եբրայական շրջաններու մէջ։ Եւ եթէ՝ ինչպէս խնդրոյ տակ չէ՝ Տովբիթայ գրոց հեղինակին ձեռքն էր այս Նախնականը, դժուարութիւն չկայ որ նոյնն ուղղակի կամ միջնորդաբար (— առածները յատկապէս կրնային դիւրաւ շրջիլ յետոյ նաեւ բերնէ բերան, —) գտնուէր նաեւ հին ու նոր կտակարանի ուրիշ հեղինակաց ձեռքն ալ։ Սակայն երկրորդ՝ շատ անգամ այսպիսի համեմատութիւնք եւ զուգադիպութիւնք կրնան նաեւ քիչ շատ պատահական ըլլալ, անգամ մ'որ այս կամ այն առածը սովորական եղած էր շրջանի մը։ Բայց նաեւ այս մեզի համար կարեւոր կէտ մըն է, ցուցընելով գոնէ որ Աքիկարու պատմութիւնն ու առածները ծանօթ էին այն եբրայական շրջանին. եւ այն կարգի ծագումն ունէին զոր կը գտնենք շատ մ'ուրիշ անվաւերական գրուածքներու վրայ ալ, որոնք նոյնպէս՝ գիտենք՝ կը շրջէին նոյն եբրայական շրջաններու մէջ. (պատմութիւնք եւ զրոյցք Նախահարց, Ենովքայ, Կտակք Նահապետաց, պատմութիւն Յովսեփայ եւ Ասանեթի, եւ բազմաթիւ ուրիշներ։) Եւ վերջապէս երրորդ՝ այս համեմատութեանց մէկ մասն ստուգիւ հաստատուն կռուան մ'ունի եւ դժուար է այլազգ մեկնել, բայց մեծ մաս մ'ալ տակաւին աւելի կամ նուազ խընդրական է, թերեւս մասամբ շատ ընդհանուր նմանութեամբ եւ զուտ պատահական, ուստի շատ ծանրակշռութիւն դնելու չէ. սակայն ամբողջութեան համար ասոնք ալ անտես ընելու չէ։

Այս խնդրով, Աքիկարու եւ Ս. Գրոց այլեւայլ տեղերու համեմատութեամբք, զբաղած են յատկապէս Խիկարու նոր քննիչները, յաճախ

ընդարձակ քննելով ամէն նաեւ դոյզն կէտերը։[1] Մենք պիտի ջանանք համառօտիւ ամփոփել գլխաւոր կէտերը։

Սկսելու ենք դարձեալ Տովբիթայ գրքէն։ Վերջնոյս ծանօթ էր Աքիկարու պատմութիւնը։ զոր համառօտիւ յառաջ բերած է, ինչպէս մանրամասն խօսեցանք վերը։ Այս արդէն բաւական էր մեր խնդրոյն համար, քանի որ ասով ակներեւ պարզ է որ Տովբիթայ աստուածաշունչ հեղինակն առջեւն ունեցած է Աքիկարու պատմութիւնն ու առածները։ Կրնայ այժմ միայն՝ աւելի լուսաւորութեան համար՝ խնդիր յուզուիլ որ ուրիշ նմանութիւններ ալ չե՞ն գտնուիր երկուքին մէջ։ Եթէ ուզուի՝ կրնայ նշանակուիլ երկուքին ընդհանուր նկարագրին նմանութիւնը, քանի որ Տովբիթայ գրոց նիւթն ալ մասամբ պատմութիւն է Տովբիթայ, մասամբ հրամաններ՝ որ հոս հոն հիւսուած են. երկուքն ալ ուղղուած են շատ նման խրատ մը հաստատելու, Տովբիթայ նպատակն ըլլալով ցուցնել որ Ընկերին եղած Ողորմութիւնն աստուածահաճոյ առաքինութիւն մըն է որ անվարձ չի մնար, Աքիկարու պատմութեան եւ առածներուն գլխաւոր նպատակը՝ ցուցնելու որ ընկերին չարիք ընելն անպատիժ չի մնար կամ Ով որ ուրիշին որոգայթ կը փորէ ինք մէջը կ'իյնայ։ Ասոնք ընդհանուր գծեր են միայն, որ առանձինն՝ եթէ չըլլար Տովբիթայ քով Աքիկարու պայծառ եւ աներկբայելի յիշատակութիւնը, շատ մեծ արժէք մը չէին կրնար ունենալ. բայց այժմ միայն շնորհիւ այն պարագային՝ արժանի են նշանակուելու. բայց չեն պակսիր նաեւ ուրիշ մանրամասնութիւններ։ Երբ Տուբիա Մա-

1 Այսպէս ի միջի այլոց երկու ընդարձակ գլխով կը քննէ Հարրիս այս կէտերը, նաեւ Աքիկարի եւ Տովբիթայ գրոց աղերսը (Գլ. Ե. էջ՝ ԽԶ-ԾԲ) եւ երկրորդ՝ Աքիկարու եւ հին ու նոր Կտակարանի աղերսը (Գլ. Զ, էջ ԾԳ-ՀԱ։)

րաստան երթալու վրայ էր, կը կանչէ զինքն հայրը եւ խրատներ կու տայ։ Հոս (Տովբ. Դ, 5—20) կը գտնենք խրատներու խումբ մ'որ կը սկսի (Դ, 5) "Ցիշեա դու զՏէր Աստուած քո զամենայն աւուրս կենաց քոց եւ մի՛ մեղանչիցես դու եւ կամ անցանիցես զպատուիրանօք նորա" եւն, եւ կ'աւարտի (Դ. 20) վերջաբանովս՝ "Եւ արդ, որդեակ իմ. յիշեսցես դու զամենայն պատուիրանս իմ զոր պատուիրեմ ես քեզ. մի՛ ջնջեսցին նոքա ի սրտէ քումմէ" եւն։ Արդ կրնայ համեմատութեան բերուիլ Խիկարու ալ խրատներու վերջաբանը՝[1] "Որդեակ ի միտս քո առ զխրատս եւ մի՛ մոռանար։" Բայց աւելի անձուկ աղերս կը գտնենք նոյն իսկ Տովբիթայ յիշեալ խրատներուն մէջ, այսպէս հետեւեալը.

| Տովբ. Դ, 17: | Աքիկար (Հայ՝ էջ 128): |
| --- | --- |
| Սփռեսցես դու զհացն [եւ զգինի[2]] քո ի՛ վերայ գերեզմանաց արդարոց, եւ մի՛ տացես զայն մեղաւորաց։ | Որդեակ, հեղցես զգինի քո ի վերայ գերեզմանաց արդարոց[3] եւ մի՛ ըմպել ընդ անզգամս եւ անաւրէնս։ |

Հոս համեմատութիւնը ստուգիւ համոզիչ է. երկուքին նոյնութիւնը պատահական չի կրնար ըլլալ, եւ որովհետեւ Տովբիթայ գրոց ծանօթ է Աքիկար՝ բնականապէս վերջնոյս նախնականին մէջ

1 Հայերէնին մէջ վերջաբան է խրատներու, որ լաւագոյն է եւ համեմատ Տովբիթայ գրոց. միւսներուն մէջ խրատներու սկիզբն դրուած է, Ասորականին համեմատ այսպէս. "Եւ արդ, որդեակ, յիշեա զպատուիրանս իմ եւ մի ջնջեսցին նոքա ի սրտէ քումմէ", որ աւելի նման է Տովբիթայ խրատուն. նոյնպէս Արաբականը՝ "Որդեակ, լուր զբանս իմ եւ գնա զհետ խրատու իմոյ եւ յիշեա զոր ինչ ասեմ քեզ։"

2 Այս "եւ զգինի" չունին Հայուն հետ այլեւայլ ուրիշ օրինակներ ալ. սակայն կարեւոր է, եւ ունի Եբրայական սկզբնագիրը։

3 "ի վերայ գերեզմանաց արդարոց" չունի Հայերէնը, սակայն անհրաժեշտ է, եւ ունին Ասորին ու Արաբը։

կար առածս, որմէ անցած է Տովբիթայ։ Բայց արդէն Տովբիթայ յիշեալ խրատներուն մէջ կայ նաեւ հետեւեալը. (Դ, 10.) "Ողորմութիւնք փրկեն ի մահուանէ եւ ոչ տան մտանել ի խաւարն։„ Ի՞նչ կը հասկընայ Տուբիա այս վճռով։ Ոչ այլ ինչ՝ բայց Աքիկարու եւ Նադանայ պատմութենէն հանուած հետեւութիւնն, ինչպէս բացորոշ կ'ըլլայ Տովբիթայ քով Աքիկարու հռչակաւոր տեղէն զոր արդէն յառաջ բերինք, այսինքն (ԺԴ, 12)՝ "Այլ Աքիաքարոս ապրեցաւ... եւ էջ նա (Նադան) փոխանակ նորա ի խաւարն. եւ Մանասէ (Աքիկար) արար ողորմութիւնս եւ ապրեցաւ յորսոյ մահու (յորոգայթէ) զոր թաքոյց նմա, եւ Ադամ (Նադան[1]) անկաւ յորոգայթ եւ կորեաւ։„ Հոս ալ Տուբիայի վճիռն իմաստ կ'ունենայ՝ միայն երբ նկատենք զայն Աքիկարու պատմութենէ հանուած առած մը։[2] Եւ այսպէս երկու գրոց կապը կը հաստատուի նաեւ առածներովն։ Միայն թէ հոս դժուարութիւն մը կրնայ հանուիլ։ Տովբիթայ քով կը շեշտուի միշտ "ողորմութիւնք„ ընելու լաւութիւնն, ինչպէս նաեւ յիշեալ տեղն Աքիկարի համար ալ յատկապէս կը հաստատուի թէ "արար ողորմութիւնս„ եւ անով փրկուեցաւ մահուանէ։ Բայց արդ Խիկարու քով չենք գտներ "ողորմութիւն„ ընելու մասին բան մը, ոչ ալ առած մը։ Միայն թէ մեկնութիւնը դիւրին է, եւ այս մեկնութիւնը գաղափար մը կու տայ նախնականին էական կէտին։ "Ողորմութիւն„ Ս. Գրոց մէջ յատուկ իմաստ մ'ունի զոր Յոյնք ալ ἐλεημοσύνη բացատրութեամբ յայտնել ջանացած են. այս բառերը սովորական թարգմանութիւն եղած են ա-

[1] Տես վերը՝ էջ 30—1։

[2] Նոյնն աւելի ընդհանրացած կը գտնենք առ Սիրաքայ ԻԹ, 12 (տպ. Վենետ. 1833, ԻԹ, 15) "Գումարեա ողորմութիւն ի շտեմարանս քո, եւ այն փրկեսցէ զքեզ յամենայն չարչարանաց։„

բամէական צדקה յատուկ բացատրութեան[1] որ կը նշանակէ թէ «Ողորմութիւնք» (տուրք ողորմածութեան) եւ թէ «Արդարութիւն» ընդհանրապէս. (Հմմտ. այսպէս նաեւ Մատթ. Զ. 1 «Զգոյշ լերուք ողորմութիւն ձերում մի՛ առնել առաջի մարդկան» եւն։) Այս կը տեսնենք Ս. Գրոց մէջ շատ տեղեր, նաեւ Տովբիթայ մէջ[2]. եւ կը տեսնենք որ յոյն եւ ըստ հետեւորդի նաեւ հայ թարգմանք այս մէկ բառին երկդիմի իմաստը բացատրելու համար կրկին բառով ստիպուած են թարգմանել, օրինակի համար Տովբ. ԺԲ, 9՝ «Որք առնեն ողորմութիւնս եւ արդարութիւնս (յոյն՝ οἱ ποιοῦντες ἐλεημοσύνας καὶ δικαιοσύνας)՝ լցցին կենօք» եւ նմաններ,[3] ուր բնագիրը յիշեալ նոյն միակ բառն է։ Այժմ նկատելով իրն այս տեսակիտով, այսինքն որ հնոց քով «ողորմութիւնք» եւ «արդարութիւն» յարակից գաղափար մըն էին միեւնոյն բառով բացատրուած, կը գտնենք որ Ախիկարու քով ալ չէր պակսեր այս մասին առած մը. նաեւ արդի Խիկարի մէջ կայ օրինակի համար սա խօսքը՝ հայերէնին համեմատ՝[4] «Որդեակ, արդարութիւն էմ եւ անմեղու-

---

[1] Հմմտ. ասորական ܙܕܩܐ (արդարութիւն) եւ ուրիշ ձեւով ܙܕ̈ܩܬܐ (ողորմութիւնք, տուրք)։ Նոյն կարգի թարգմանութիւնք յաճախ են նաեւ ասորականէն եղած մեր թարգմանութեանց մէջ, այսպէս Զգօնի եւն քով։

[2] Այսպէս օրինակի համար նոյն իսկ Սղմ. ՃԺԱ, 4 խօսքին մէջ՝ «Ողորմած, գթած եւ արդար է Տէր» այս իմաստով է ըստ բնագրին «արդար» բառը։ Տովբիթայ քով Հմմտ. Դ, 6–7 «...եւ ամենեցուն որոց գործեն զարդարութիւն. յընչից քոց առնիցես զողորմութիւնս» եւն. Դ, 8, 11, ԺԲ, 8 եւն եւն. տես նաեւ յաջորդը։

[3] Ուրիշ օրինակներ՝ Տովբ. ԺԲ, 8 «Բարի են աղօթք պահօք եւ ողորմութեամբ եւ արդարութեամբ.» ԺԴ, 11՝ «Էր դու ողորմած եւ արդար։» Հմմտ. Բ, 14 «Ո՞ւր են ողորմութիւնք քո եւ արդարութիւնք» ըստ յունին. (Հայերէնին մէջ կը պակսին հոս Բ, 10–17 համարները։).

[4] Տես էջ 157։ Ասորերէնն, ուրիշ խօսքի մը մէջ

ըէ–ն էմ (Համմտ. "ողորմութիւն եւ արդարութիւն„) ֆըքէ–ոց դէօ եւ ապրեցոյց զիս„ եւն։ Ցայտնապէս Ախիկարու նախնականին մէջ ալ կար հոս միայն յիշեալ արամեական բառը։

Երկրորդ կէտ մ'որ նոյնպէս առերեւոյթ դժուարութիւն մըն է, կրկին առիթ կու տայ նախ-նականին ուրիշ մէկ կէտը պարզելու։ Տովբիթ կ'ըսէ (Բ, 18) որ Ախիկար դարմանեց զինքն իւր կուրութեան ատեն երկու տարի "մէնչէ– ըոֆոա– նա յեղէմոյէդա„։ Արդի ձեւը (Խիկար) չի նշանակեր այսպիսի ճամբորդութիւն մը։ Այս հակառակու-թիւնը կրնայ մեկնուիլ նաեւ անով, եթէ ուզուի, որ նախնականին փոխուելով արդի "Խիկարին„ ձեւ առնելու ատեն դուրս մնացած է այս պարագան։ Սակայն շատ աւելի լաւ է ուրիշ մեկնութիւն մը, զոր կու տայ Դիլլոն գիտնականը։ Այսինքն՝ որ հոս սրբագրելու է Տովբիթայ գրոց օրինակներուն ըն-թերցումն։ Աքիկար Թոտօփոցէ կամ գետնափորի մէջ պահուեցաւ, ինչպէս գիտենք։ Արդ Տովբիթ ալ նոյնը կ'ըսէ հոս ըստ Դիլլոնի, այսինքն՝ "մինչեւ չո-քաւնա է Բոտօփոցն„ (կամ ի գետնափորն։) Իսկ արդ-բնագրին עלם (թաքչել) բառը շատ նման կը հնչէ "Եըէմ„ (Եղիմայիդա) անուան, որ անուանն ըստ այսմ յիշեալ "Թաքստոց„ բառին յոյն թարգմանչին սխալ հասկընալէն յառաջ եկած ըլլալու է։ Եթէ ուղիղ է կարծիքս (— վասն զի դժուարութիւններ կրնան հանուիլ, եւ ընդհանրապէս աւելի պարզ մեկնութիւն ալ կրնայ տրուիլ,[1] —) կապակցու-

---

ունի նոյնը, այսպէս՝ "Որդեակ, յաթոռ փառաց նստուցի զքեզ եւ դու յաթոռոյ իմոյ կործանեցեր զիս (— Հայ՝ էջ 156)․ Բոյջ օրդօրօ–ըէ–ն էմ ֆըքէ–ոց դէօ„ եւ նման խօսք մ'ալ այլուր։

[1] Այսպէս Ախիկարու պատմութեան այն կէտը, որ Նա-դան կը սկսի անկարգութիւններ ընել ծառայից եւ աղախ-նեաց հետ՝ բնականապէս կ'ենթադրէ որ Աքիկար այն միջո-ցին բացակայ էր ճամբորդութեամբ, եւն։

*թեան կէտ մ'ալ այս կ'ըլլայ։ — Սակայն անցնինք այժմ ուրիշ կէտերու։*

*Տովբիթէն ետքը՝ ինքնին յառաջ կու գայ այն հարցումը թէ արդեօք նոյնպիսի համեմատութիւններ չե՞ն կրնար գտնուիլ Ս. Գրոց միւս մասերուն մէջ այլեւայլ տեղեր։ Անկարելիութիւն չկայ, ինչպէս բացատրեցինք, Ախիկարի նախնականին համար. եւ արդեամբք կը գտնուին այլեւայլ կէտեր։ Բնական է որ նախ համեմատելի կէտեր փնտռենք Իմաստութեան գրքերու մէջ, ուր նոյնպէս առածներու եւ վճիռներու հրաշալի հաւաքումներ կան ամենայն ճոխութեամբ, Գիրքն Առակաց, Ժողովող եւ Սիրաք, եւ ուր նոյն ոճը կը գտնենք վարդապետութեանց մէջ՝ սկսելով առհասարակ "Որդեա՛կ„ եւն (յատկապէս Սիրաքայ քով), որ Հրէից քով ալ հին ժամանակի վարդապետութեան սովորական ձեւն էր։ Սիրաքայ գրքէն ահա համեմատութեան կէտեր.*

*Սիրաք, Դ, 26:*

1. "Մէ բռնադատեր ըհոաատնա գետոյ (= μὴ βιάζου ῥοῦν ποταμοῦ), եւ մի՛ սատանար առն յիմարի զանձն քո։„ (Այսինքն՝ "Մէ՛ կոյյեւ ընդդէմ յորդանոյ գետոյ„ եւն։)[1]

*Ախիկար (Հայ էջ 137):*

1. Որդեակ ընդ առն ունեւորի եւ ընդ գետոյ յաւրացելոյ մի հոլանոյէլ։ (Ասորին. Մի կալ ընդդէմ յորձանաց գետոյ։) — Էջ 135՝ "Որդեակ, ընդ սառուցեալ եւ ընդ յարուցեալ գետ(ոյ) մի՛ անցանիցես„ եւն։

*Սիրաք ԻԲ, 17—8 (Հայ՝ 14—5):*

2. Քան զկապար զի՞նչ ծանր լինիցի, եւ զի՞նչ ա-

*Ախիկար (Հայ՝ 136):*

2. [Որդեակ, կերայ դառնիճ եւ արբի լեղի. եւ ոչ

---

[1] Այսպէս ուրեմն հոս յոյնն ու հայը լիովին համաձայն են։ Տարբեր է միայն Ասորին, որ կը կարդայ արդի օրինակին համեմատ՝ "Մի՛ կալ ընդդէմ ջեմաջէ„. բայց այս սխալ մ'ըլլալու է։ Քննիչք կ'ուզեն "յիմար„ բառին տեղ՝ դայզն փոփոխութեամբ արամէական բնագրին՝ կարդալ "գետ„, որով համաձայնութիւնը լիակատար կ'ըլլայ։

նուն նորա՝ թէ ոչ յիմար։ Զաւազ եւ զաղ եւ զշանթս երկաթոյ դիւրին է կրել՝ քան զմարդ անմիտ։

= Առակ, ԻԷ, 3. Քար ծանր է, եւ աւազ դժուարին առ ի բառնալ, բայց բարկութիւն անզգամի ծանրագոյն է քան զերկոսեան։

էր լեղի քան զաղքատութիւն։1] Բարձի աղ եւ արճիճ (կապար) եւ ոչ էր ծանր քան զպարտոն...։ Բարձի երկաթ եւ քարինս ի վերայ ուսոց իմոց, եւ լաւագոյն էր ինձ քան զբնակիլն ընդ անգիտի եւ անմտի։ — (Ասորին՝ "Որդեակ, բարձի աղ եւ շարժեցի զկապար, եւ ոչ էր ծանր քան հատուցանել զպարտոն զոր չէ ուրուք ի փոխ առեալ։ Որդեակ, կրեցի երկաթ, եւ շարժեցի քարինս, եւ ոչ էր ծանր քան բնակել ի տան աներոյ։)

Համեմատութեան կէտերը բաւական ակներեւ են. սակայն արդեամբք փոխառութիւն մ'եղա՞ծ է, եւ ո՞րը որմէ, Սիրա՞ք Ախիկարէն թէ հակառակը. այսպիսի տեղերը դժուար է առաջնութիւնը որոշել, մանաւանդ որ արդի օրինակներն ալ ա՛յնպէս պէսպիսութեամբ հաղորդած են առածներս։ Միտ դրուի գաղափարաց նմանութեան ոչ միայն Սիրաքայ, այլ նաեւ Առակաց գրոց մէջ։ Ցատկապէս վերջնոյն հետ ալ մէկ երկու նմանութիւններ կը նշանակեն քննիչք Ախիկարու առածներէն, եւ կարծես հոս հայ թարգմանութիւնը մթին կէտ մը լուսաւորել կրնայ։ Ահա համեմատութիւն մը՝ Ափո–րէ առակներէն։

*Առակք, Լ, 21 եւն։*

"Երիւք շարժի երկիր, եւ չորրորդին ոչ կարէ հանդարտել. եթէ ծառայ թագաւորեսցէ․„ եւն։

*Ախիկար (Ասորին)։*

"Չորք իրք են, որոց ոչ կարէ արքայ կալ ընդդէմ„....։

---

1 Փակագծեալս՝ զոր Հայերէնն ունի, կայ միայն նաեւ Արաբերէնին մէջ, ճիշդ նոյն կերպով։ Արաբերէնը միայն սաւիկս ունի, չունի միւս յաջորդ մասերը։ Սլաւա–

| | |
|---|---|
| — (Լ, 24) „Չորք են որ փոքր են յերկրի, եւ նոքա իմաստնագոյնք են քան զիմաստունս. մրջիւն„ եւն եւն: | „Չորք իրք են որ ոչ կարեն թաքչել„ եւն: |

Ինչպէս կը տեսնուի՝ համեմատութիւնն առածներու ընդհանուր ձեւին նոյնութեան վրայ է գլխաւորաբար. երկուքին մէջ նկարագիրք, անձինք եւ իրք թուական խմբերու բաժնուած՝ յառաջ կը բերուին: Հայերէնին մէջ Խիկարու յիշեալ առածները չկան: Աստ փոխարէն կայ հատուած մը յատուկ վերնագրով ալ, որուն մեծ նշանակութիւն կու տայ ի մասնաւորի Հարրիս:[1] Այս հատածն ու խորագիրն է հետեւեալը (էջ 140—141):

Հարցումն Նաթանայ որդւոյ, եւ պատասխանի Խիկարայ: Հարցայ եւ Նաթանայն հարցումն ի Խիկարէն, եւ ասէ Խիկար ի Նաթան: Չորս բան զմարդոյն աչաց լոյսն շատացընէ՝ ի վերայ ծաղկանց նայիլն. բոբիկ զկանանչ կոխիլն. եւ ի հետ ջրի վերայ գնալն. եւ զիւր բարեկամն տեսնուլ: — Չորս բան զմարդն գիրացնէ եւ առողջ պահէ. վուշ հագնելն, եւ լսել հանց բան որ իւրն զիւր թվի, ի տանէն սիրտն հեշտ եւ առողջ [լինայ], եւ զիւր հեռաւորն բարով տեսնուլ: — Եւ չորք իրք է որ զմարդոյն հարկիկն աւելցեն ամենայն ժամու, զբարի խաւսիլն, ամէն բանի ջուապ չտայ, խոնարհ կենալն, պակաս խաւսիլն, ամաչէ ի փոքրէ եւ ի մեծէ: — Եւ. Դ. իրք է որ զմարդոյն երեսին ջուրն տանի, սիրոյ տէրութիւնն, շատախաւսիլն, եւ զոր ոչ գիտենայ՝ պարծենայ, ամէն բան թաքուցանելն. յարել ի ներս ընկնելն եւ զոր ոչ գիտէ ի ներս ընկնի եւ ասէ թէ գիտեմ. եւ ստախօսութիւն: — Հարցին Պիտարխոսին եւ ասեն՝ եթէ յերկրի զի՞նչ կայ քաղցր: Ասէ. Ամաւթ երեսաց. որ ամաւթ ունի քաղցր է նա. զի ամենայն չարիք ի լրբութենէ եւ անմտութենէ ծնանին: — Եւ այս էր խրատն զոր ուսուցի Նաթանա:„

---

կանոն ունի երկուքն ալ, բայց աւելի պարզ ձեւով. Աստուածաշնչեան տես վերը:

[1] Տես էջ ԾԽ–ԾՁ:

*Մենք այս կտորին մեծ նշանակութիւն չենք տար, անոր համար որ յայտնապէս յետսամուտ է. նաեւ միայն լռվին ռամիկ եւ աղաւաղ լեզուն սոսր ապացոյց է, վասն զի թէեւ Խիկարի արդի Հայերէնին մէջ ալ ռամկաբանութիւնք չեն պակսիր (— որոնք նոյնպէս ուշ ժամանակի արդիւնք են ըստ մեզ, քուն թարգմանութիւնը շատ ընտիր եւ առոյգ լեզու մ'ունի, ինչպէս կը վկայէ նաեւ արդի բնագրին մեծ մասը. —) բայց այնչափ աղաւաղութիւն այլուր չի գտնուիր։ Դարձեալ անկապ է ամբողջը։ Խիկարի խրատներուն լմնալէն ետքն, երբ կրկին պատմութիւնը պիտի շարունակուէր, յանկարծ նոր շարք մը կը սկսի յոփոէ ալ խորագրով՝ "Հարցումն Թագաւորաց որդւոց" եւն։ Եւ վերջապէս յայտնապէս առակաւորաց հաւաքման մը մուծուած է, եւ այն՝ ըստ երեւութին ուրոջոլոն բնագրէ մը։ Առակաւոր հաւաքման նշան մըն է որ նախ "Հոփայ եւ Բողէայն"ի հարցումն եւ Խէկորէ պատասխաններ կը գտնենք, բայց յետոյ նաեւ հարցումն եւ պատասխանի "Պէփորխոսէն"։ Արդ դժուար չէ ճանչնալն որ "Պիտարխաս" է "Պէ-Նոգորսո", ուստի արաբական բնագրէ մը փոխանցած։ Այս կէտին, ուստի յիշեալ կտորին նորամուտ ըլլալուն որեւէ տարակոյս չունինք. եւ եթէ հայ ձեռագիրք ունին՝ նշան մ'աւելի է իրենց բնագրին աղաւաղութեան. եւ արդէն ձեռագիրք մեծ հնութիւն մը չունին, ինչպէս պիտի տեսնենք։*

*Սակայն Հարրիս գիտնականը նշանակութիւն կու տայ այս կտորին ուրիշ տեսակէտով։ Հոս կան երկու "Թագաւորաց որդիք"՝ անուամբ "Հուտայ եւ Բաղխայն" որ հարցումներ կ'ընեն եւ պատասխան կ'առնուն առածներով։ Արդ այս կէտս կրնայ լոյս մը սփռել Առակաց Լ. գլխուն, ուր նոյնպէս երկու անուն կը գտնենք "Իթէէլ" (Ithiel) եւ "Ո-խոլ" (Uchal), որոնց կ'ուղղէ Աֆոոր որդի*

Եաքէի իւր առածները։ Ի հարկէ Առակաց յոյն եւ հայ թարգմանութեանց մէջ հետք չկայ ոչ աստնց եւ ոչ նոյն գլխոյ հեղինակին Ակո—րէ մասին, ինչպէս արդէն վերն առիթ եղաւ նշանակելու. բայց ունին նոյներն եբրայականն (ու Թարգումն), ասորականն ու Վուլգատան՝ թէեւ վերջինս անունները թարգմանելով. այսպէս Եբր. (Առակք, Լ, 1 իբր խորագիր) "Բան+ Ակո—րէ որդւոյ Եաքէի, զվերանալն ասաց այր առ Իթիէլ, —— Իթիէլ Ե— Ու-խալ." Նոյնպէս Թարգումն եւ Ասորին՝ "Բանք Ագուրի, որդւոյ Եաքէի, որ ընկալաւ զմարգարէութիւն, եւ ասէ այր առ Իթիէլ, Իթիէլ եւ Ուխալ." (Ասորին միայն "ասէ առ Աբ—մէէլ։") Վուլգատան յիշեցինք արդէն, այսինքն՝ անունները թարգմանելով՝ "Բանք Ժողովողի որդւոյ Փսխողի, Տեսիլ զոր խօսեցաւ այր ընդ որում է Աստուած"[1] եւն։ Արդ վերոյիշեալ բաղդատութենէն կը տեսնուի որ հոս ալ Իթիէլ եւ Ուխալ իբր "Թագաւորաց որդիք" կամ առածներս հարցընողներ ըլլալու են, որոնց պատասխան կու տայ Ագուր։ Այս մեկնութիւնն որով նոր լոյս մը կը սփռի Ս. Գրոց մթին մէկ տեղւոյն վրայ,[2] կրնայ շատ լաւ ըլլալ, եւ ուրախ կրնանք ըլլալ որ Խիկարի հայերէնին նաեւ եկամուտ մէկ կտորը կը նպաստէ համեմատութեամբ այս լուսաւորութեան։ Բայց անկէ աւելի բան մը հետեւցընել չենք

1 Տես վերը, ուր յիշեցինք բնագիրը՝ Verba Congregantis filii Vomentis, Visio եւն։ Վուլգատայի տպագրութեանց մէջ լուսանցքի վրայ միշտ կը նշանակուի որ բնագիրն է Ակուր եւն։

2 Այս տեղւոյ, ընդհանրապէս "Առակաց" գրոց ալ-եւայլ հաւաքմանց եւ յարակից խնդիրներուն՝ Առակք "Իմաստնոց", Ագուրի, Լամուէլի, "Առակք Սողոմոնի անքնինք, զոր գրեցին բարեկամքն Եզեկիայ արքայի Հրէաստանի" (ԻԵ, 1) եւ նմանեաց՝ տես Ս. Գրոց ներածութիւնքն, այսպէս՝ F. Kaulen, Einleitung եւն 1876, p. 268—70, եւ այլուր։

կրնար, ինչպէս կ՚ընէ Հարրիս, հետեւցընելով որ Ագուր տեսակ մ՚Ախիկար ըլլալու է եւ երկուքին միջեւալ առածները նոյն կարգի մէջ դնելու է, թէ Աքիկարու նախնականին մէկ բեկորն ըլլայ միջեւալ հայերէնն, եւն։ Անժխտելի է ըսինք որ հայերէնին միջեւալ կտորն եկամուտ է եւ այն՝ արաբական աղբիւրէ իւր "Պիտարխաս"ով եւն։ — Անցնինք ուրիշ համեմատութեան։

Քննիչք խնդիր յարուցած են թէ չկա՞յ արդեօք ուրեւէ համեմատութեան կէտ մ՚այս առածներու եւ Սաղմոսաց վճիռներուն մէջ։ Կ՚ենթադրուի որոշ բան մ՚ըսել կարելի չէ. եւ եթէ ընդհանրապէս խօսք անգամ ըլլայ համեմատութեան՝ միայն Սաղմոսարանի այն կտորներուն վրայ կրնայ խօսք ըլլալ, որ աւելի ուշ են ծագմամբ[1]. եւ ընդհանրապէս գաղափարաց նմանութենէն միայն այն կրնայ հետեւցուիլ որ Ախիկարու նախնականն ալ եբրայական կազմուածք մ՚ունէր, ուստի այն լեզուաւ եւ այն շրջանէն ըլլալու է սկզբնագիրը։ Հարրիս կը նշանակէ հետեւեալ համեմատութիւնն, ուր դժբախտաբար Սաղմոսի բնագիրք իրարմէ բաւական կը շեղին. հայերէնը՝ զոր յառաջ կը բերենք՝ յունարէնին համեմատ է։

---

1 Սաղմոսը, թէեւ մեծ մաս մը Դաւթէ իսկ, յօրինուած է այլեւայլ հեղինակներէ եւ այլեւայլ ժամանակ, քանի մ՚ալ խմբագրութիւն ունեցած է մինչեւ ներկայ վիճակին հասնիլը, ինչպէս կը համարուի՝ Նէեմեայ ձեռօք։ Թողլով մեկնչաց եւ քննչաց կարծիքներն (վերջնոցս երբեմն չափազանց բացասական ուղղութեամբ), միայն սաղմոսաց վերնագիրք բազմաթիւ հեղինակներ կը յիշեն՝ այսինքն 73 հատ Դաւթի անուամբ են, երկու հատ (ՀԲ, ՃԻԷ) Սողոմոնի, 11 հատ "որդւոց Կորխայ" (ԽԲ, ԽԴ—ԽԹ եւն), 12 հատ Ասափայ (Ծ, ՀԳ—ՁԳ), մէյ մէկ հատ Եմանայ եւ Եթանայ (ՁԸ, ՁԹ), հատ մը Մովսիսի (Ղ) եւ նմաններ. շատ Սաղմոսներ Բաբելոնի գերութենէ ետքն են։ Տես ի միջի այլոց Kaulen, Einleitung, p. 260—62, եւ այլուր։

*Սղմ. ԾԽ. (այլք՝ ԾԽԱ.) 4–5:*

1. Մի խոտորեսցի սիրտ իմ բանիւ չարութեան (Յոյնն՝ Մի խոտորեցուսցես զսիրտ իմ ի բանս չարս) պատճառել զպատճառս մեղաց ընդ մարդս որ գործեն զանաւրէնութիւն: Ոչ եղէց կցորդ ընտրելոց (Եբր. փափկութեանց) նոցա:

2. — ԾԽ. 5. Խրատեսցէ զիս արդարն ողորմութեամբ. եւ ակնյանդիման արասցէ զիս (այսինքն՝ յանդիմանեսցէ զիս.) իւղ մեղաւորի մի օծցէ զգլուխ իմ:

3. — ԾԽ. 10. Անկցին ի ցանցս նոցա (ե—չեանց) մեղաւորք. միայն եմ ես մինչեւ անցից. (Լտ. անկցին մեղաւորք միանգամայն ի ցանցս իւրեանց, մինչեւ անցից ես„:)

*Ախիկար:*

1. (Արաբ. վճիռ ԺԹ.) "Որդեակ, մի՛ լինի մերձաւոր յիմարի եւ մի՛ ուտեր հաց ընդ նմա, եւն: — (Հայ՝ էջ 129) "... ընդ աներկիւղի ի ճանապարհ մի՛ երթալ, եւ ընդ անսգամի հաց մի՛ ուտել„. եւ նմաններ:

2. (Ասոր. վճիռ ՀԳ.)՝ "Որդեակ, հարցէ զքեզ իմաստունն գաւազանաւ. մի՛ օծցէ անմիտն իւղով անուշիւ զգլուխ քո.„

3. (Հայ եւ Ասոր.) "Որդեակ որ բարի առնէ՝ բարի գտանէ. եւ որ այլոց (Աս.՝ եղբօր) խորխորատ փորէ՝ ինքն անկանի ի նմա. (այլ ձգար = Աս. "անձամբ իւրով լինի„) — (Արաբ.) "Զի որ եղբօր իւրում խորխորատ փորէ, ինքն անկանի ի նմա. եւ որ ցանցս արկանէ՝ ինքն ըմբռնեսցի ի նոսա:„

Համեմատութիւնքս նշանակելէն ետքը, որ՝ ինչպէս ըսինք, շատ շատ կրնայ ցուցընել Ախիկարու նախնականին եբրայական նկարագիրն ու ոճը, կրնան քանի մը լեզուական եւ նման համեմատութիւններ բերուիլ նաեւ ուրիշ գրքէ մը: Ախիկարու պատմութիւնը Նինուէ կը դառնայ. ուստի շատ մը բացատրութիւններ կան ասորեստանեայ կեանքը պատկերացընող, որոնք կրկին կը գտնուին Դանիէլի գրոց մէջ, որ կը նկարագրէ բաբելական կեանքը: Սակայն, ինչպէս կը տեսնուի՝ ասոնք լոկ պատահական են յաճախ եւ արդէն քիչ շատ ամէն արեւելեան պատմչաց յատուկ: Այսպէս՝ օրինակի

համար՝ "Արքայ, յաւիտեան կեաց„ (Հայ՝ էջ 145) կամ (Հայ՝ էջ 126) "Ագուցի նմա բեհեզս եւ ծիրանիս եւ մանեակ ոսկի ի պարանոց նորա կապեցի„. (Համմտ. Դան. Ե, 16 "Եթէ կարիցես... զմեկնութիւն դորա ցուցանել ինձ, ծիրանիս զգեցցիս եւ մանեակ ոսկի ի պարանոցի քում:„) Երբ Փարաւոն թուղթ գրելով կը պահանջէ Սենեքերիմէ որ օդեղէն աշտարակ մը շինէ, Սենեքերիմ նեղ մտած "առաքեաց կոչեաց զնախարարսն„ որ խորհուրդ մը չկրցան տալ, կը կանչուի Նաթան ալ, որ "իբրեւ կարդաց զթուղթն ի ձայն բարձր աղաղակեաց եւ ասէ, Զայր բանր ես դէն ու չոքէն վճոքէլ կամ տալ պատասխանի, ես զիա՞րդ կարացից տալ պատասխանի.„ (Համմտ. Դան. Բ, 11 "Զի բան զոր արքայ հարցանէ՝ ծանր է. եւ այլ ոք չէք որ պատմէ զայդ առաջի արքայի, բայց եթէ դիքն որոց ոչ է բնակութիւն ի մէջ ամենայն մսեղեաց:„) Երբ Ախիկար դետնափորէն կ'ելլէ՝ "էին երեսք... այլագունեալ եւ գլուխ ...թաղկեալ, եւ ըղընկունք... իբրեւ զարծուոյ աճեցեալ.„ (Համմտ. Դան. Դ, 30 "վարսք նորա իբրեւ զառիւծուց մեծացան, եւ եղնգունք նորա իբրեւ զթռչնոց:„) Կրնան նաեւ բացատրութեանց ուրիշ նմանութիւններ ալ գըտնուիլ,[1] բայց նաեւ միայն այսչափ: Նոյն իսկ Հար-

---

[1] Այսպէս Հարրիս (էջ ԾԸ) յառաջ կը բերէ Խիկարի արաբերէնին այն տեղն ուր կ'ըսուի թէ "մոգք՝ գէտք (աստեղագէտք) եւ իղձք„ ծանուցին Խիկարայ որ որդի պիտի չունենայ, կամ երբ Սենեքերիմ Փարաւոնի թուղթն առնելով խորհրդի կը կանչէ "զիշխանս, զիմաստասէրս, զիմաստունս եւ զաստեղագէտս„ եւն, որոնց հետ կրնայ համեմատուիլ Դան. Բ, 2 "Ասէ թագաւորն. կոչեցէք զգէտս եւ զմոգս եւ զկախարդս եւ զքաղդեայս„, կամ Դան. Բ, 27՝ "զխորհուրդդ զայդ զոր արքայ հարցանէ, ոչ է իմաստնոց եւ մոգուց եւ գիտաց եւ ըղձից՝ պատմել առաջի արքայի„ եւն: Սակայն նաեւ այս ընդհանուր նմանութիւնը միայն Արաբացւոյն յատուկ է, միւս օրինակները չունին,

րիս (էջ ԾԷ—Կ) որ Հաւանական կը գտնէ երկու գրոցս մէկուն միւսին ծանօթ ըլլալն եւ Ախիկար աւելի հնագոյն կը դնէ քան Դանիէլի գիրքը, ի վերջոյ կը ստիպուի յայտարարել որ այսպիսի սերտ աղերս մը կրնայ խնդրոյ տակ ըլլալ, նկատելով այն պարագան որ ի վերջոյ Ախիկարի նախնական բնագրին մասին որոշ տեղեկութիւն չունինք։

Այսչափս՝ Հին Կտակարանի մասին։ Անցնինք Նոր Կտակարանի, որմէ չեն պակսիր նոյնպիսի համեմատութիւններ, մանաւանդ Աւետարանի մէկ երկու տեղեր։ Այս բանս ստուգիւ անհնար չէ։ Ախիկարի նախնական պատմութիւնն ու առածներն, որ Տովբիթայ ծանօթ էին, բնականապէս կը շրջէին ի Հրէաստան, նաեւ բերնէ բերան. եւ այս կամ այն ճամբով կրնային աւետարանչաց եւ առաքելոց ընտելական ու ծանօթ ըլլալ։ Առակներ նոյն իսկ Տեառն մերոյ սիրելի էին, որոնցմէ բազմաթիւ քանակութեամբ աւետարանաց մէջ կը գտնենք. այսպէս առակ Սերմանացանին եւ Որոմանց, (Մատթ. ԺԳ. Մարկ. Դ, 1 եւն.) Ծառայից թագաւորի (Մատթ. ԺԸ, 23 եւն.) Առն տանուտեառն (Մտթ. Ի, 1 եւն.) Երկու որդւոցն եւ Այգւոյն տանուտեառն (Մատթ. ԻԱ, 28 եւն, Մարկ. ԺԲ, 1 եւն.) Հարսանեաց թագաւորի (Մատթ. ԻԲ, 1 եւն.) Տասն կուսանաց (Մատթ. ԻԵ, 1 եւն.) Ծառայից (անդ՝ ԻԵ, 14—30.) Թզենւոյն (Մարկ. ԺԱ, 13 եւն.) Սամարացւոյն եւ Ղեւտացւոյն (Ղուկ. Ժ, 29 եւն.) Մեծատան (Ղուկ. ԺԲ, 16 եւն.) Չար ծառային, (Ղուկ. ԺԲ, 45 եւն,) Անպտուղ թզենւոյն (Ղուկ. ԺԳ, 6,) Կորուսեալ ոչխարին (Ղուկ, ԺԵ. 3,)

---

օրինակի համար հայն առաջին տեղը կ'ըսէ. «Զայն եղեւ ի չասատուածոցն» թէ Խիկար զաւակ պիտի չունենայ, եւ երկրորդ տեղը՝ թէ «առաքեաց ժողովեաց զնախարարսն իւր» (տես էջ 126, 148)։ Նոյնպէս Սլաւականը՝ հայուն նման՝ «յայտնեցաւ ինձ յԱստուծոյ» եւ «ժողովեաց զիմաստունս»։

Դատաւորին (Ղուկ. ԺԸ, 3 եւն.) եւ բազմաթիւ ուրիշներ։ Աւետարանիչք յաճախ կը հաստատեն որ Տէր մեր "առանց առակի ոչինչ խօսէր", բայց նաեւ "այնպիսի առակօք խօսէր ընդ նոսա զբանն, որպէս կարող լինէին լսել." եւ դարձեալ յետոյ աշակերտաց "մեկնէր զամենայն" (տես Մարկ. Դ, 33, եւ նմաններ։) Բնական էր արդ որ կրնային գտնուիլ, եւ ինչպէս Մեկնչաց ծանօթ է՝ կը գտնուին, առակաց մէջ նիւթեր որ ժողովրդեան ծանօթ պատմութիւններ էին, առածի կարգ անցած դէպքեր եւ նմաններ, զորոնք նոյն իսկ Տէր մեր գործածեց իւր վարդապետութիւնն "առակաւ" ուսուցանելու համար։ Եւ երբ այսպիսեաց աղբիւրը գտնենք նախաքրիստոնէական եբրայական յիշատակարանի մը մէջ, բնական է որ այն աւելի լուսաւորութիւն մ'ալ տայ յիշեալ առակին եւ առածին։ Այս կերպով ոչ անհնար եւ ոչ զարմանալի է, եթէ Աւետարանի առակաց մէջ ակնարկութիւն գտնենք Ախիկարու նախնական պատմութեան, ինչպէս գտանք Տովբիթայ քով։

Ամենէն աւելի մտադրութիւն ըրած են քննիչք Չար կամ Անհաւատարիմ ծառային առակին, որուն նմանութեան՝ կրնայ ըսուիլ նոյնութեան Ախիկարու պատմութեան հետ՝ նախ միտ դրաւ Ջէմս գիտնականը. եւ անկէ ետքը կ'ընդունին ամէն քննիչք, ինչ կարծեաց եւ ուղղութեան ալ տէր ըլլան[1]։ Այս առակն որ կրկին ձեւով կայ Աւե-

---

[1] Մատթ. ԻԴ, 48–51. "Ապա թէ ասիցէ ծառայն չար՝ ի սրտի իւրում, Տէր իմ յամէ գգալ, եւ սկսանիցի հարկանել զծառայակիցս իւր, ուտիցէ եւ ըմպիցէ ընդ արբեցողս. գայցէ տէր ծառային այնորիկ՝ յաւուր յորում ոչ ակն ունիցի, եւ ի ժամու յորում ոչ գիտիցէ. եւ կտրեսցէ զնա ընդ մէջ, եւ զբաժին նորա ընդ կեղծաւորս դիցէ. անդ եղիցի լալ եւ կրճել ատամանց"։ — Ղուկ. ԺԲ, 45—46. "Ապա թէ ասիցէ ծառայն այն ի սրտի իւրում. յամէ տէր իմ ի գալ. եւ սկսանիցի հարկանել զծառայսն

տարանի մէջ, կը պատմէ թէ անհաւատարիմ ծառայ մը յուսալով որ "յամէ տէր... ի գալ", կը սկսի "Հարկանել զծառայսն եւ զաղախնայսն, ուտել եւ ըմպել եւ արբենալ." սակայն յանկարծ կու գայ տէրն "յաւուր յորում ակն ոչ ունիցի" եւ ծառայն կ'առնու իւր պատիժը՝ "ընդ մէջ կտրեսցէ զնա" եւն։ Արդ ի՞նչ դէպք կ'ակնարկէ այս առակը։ Յայտնապէս Ախիկարու եւ Նաթանայ պատմութիւնը։ Վերջնոյս հնարիւքն Ախիկար մահուան դատապարտուած, Նաթան ապահով է որ ա՛լ տէրը պիտի "յամէ ի գալ", եւ "փոխանակ լալոյն՝ ժողովեաց զգուսանս եւ արար ուրախութիւն մեծ, եւ զծառայս եւ զաղախնեայս չարչարէր. տանջէր տառապանօք յոյժ", նաեւ Ախիկարու կինը կ'ուզէր յափշտակել, եւն։ Սակայն մեռած համարուած Աքիկարը չկարծուած օրն ու ժամը յանկարծ եկաւ՝ կրկին լոյս ելլելով գետնափորէն, եւ Նաթան առաւ իւր պատիժը, բաց ի անկէ որ հրաման եղաւ "գան հարկանել ի թիկունս եւ ի փոր նորա", այլ նաեւ որ ի վերջոյ "ի նմին ժամու ուռեցաւ Նաթան եւ պատառեցաւ" (հմմտ. "ընդ մէջ կտրեսցէ զնա"։) Վերջաւորութեան եւ պատժին նմանութիւնը կը մեծնայ, եթէ Մատթէի բացատրութիւնն "կտրեսցէ զնա ընդ մէջ, եւ զբաժին նորա ընդ կեղծաւորս (անհաւատս) դիցէ, անդ եղիցի լալ եւ կրճել ատամանց" համեմատենք մէկ կողմանէ ուրիշ մէկ բացատրութեան հետ (Մատթ. ԻԵ, 30) "Եւ զծառայդ անպիտան հանէք ի խաւարն արտաքին, անդ եղիցի լալ եւ կրճել ատամանց." (Հմմտ. նաեւ Մատթ. ԻԲ, 13,) եւ միւս կողմանէ Տովբիթայ գրոց Աքիկարու եւ Նադանայ մասին բանին հետ՝ "Եւ էջ նա փոխանակ նորա ի խաւարն" եւն, որով հաւանական

---

եւ զաղախնայս, ուտել եւ ըմպել եւ արբենալ. եկեսցէ տէր ծառային այնորիկ՝ յաւուր յորում ակն ոչ ունիցի, եւ ի ժամու յորում ոչ գիտիցէ. ընդ մէջ կտրեսցէ զնա, եւ զմասն նորա ընդ անհաւատս դիցէ։"

կ'ըլլայ թէ այսպէս էր նաեւ Ախիկարու նախնականին մէջ վերջաւորութիւնը, թէեւ արդի փոփոխեալ ձեւը ("Խիկար") քիչ մ'այլայլած է. ոմանք աւելի մեղմած են մահուան ձեւը[1]:

---

1 Այսպէս "Եսովպայ" - Խիկարի քով "Ենոս" (Նադան) որուն ցաւէն կը մեռնի. ուրիշ խմբագրութեան մը համեմատ՝ (տես Benfey, Kleine Schriften, p. 191) խղճի խայթէն գնաց կախուեցաւ: — Հարրիս (էջ ԿԳ–ԿԴ) Նադանայ մահուան որ "ուռեցաւ եւ պատառեցաւ" համեմատութեան կ'ուզէ բերել նաեւ Յուդայի մահուան պարագաները, որ սակայն ընդունելի չէ: Յուդայի մահը կը պատմէ Մատթ. ԻԷ, 3–9, որուն համեմատ Յուդայ զղջալով ըրածին վրայ՝ "ընկեց զարծաթն ի տաճարին, եւ չոգաւ խեղդեցաւ", իսկ քահանայապետք այն ստակով գնեցին "զագարակն բրտի ի գերեզման օտարաց", եւ "կոչեցաւ ագարակն այն՝ ագարակ արեան մինչեւ ցայսօր:" Երկրորդ տեղեկութիւնն է Պետրոսի առաքելոյ խօսքը (Գործք Առաք. Ա, 18–19), "Սա ստացաւ գեաւղ ի վարձուց անիրաւութեան. եւ ասաստեցեալ (այսպէս հայն՝ ըստ ոմանց, յոյնը՝ πρηνὴς γενόμενος, "անկեալ գահավէժ", բայց անշուշտ ուղղելու է πρησθεὶς "ասաստեցեալ") հերձաւ ընդ մէջ. եւ հեղաւ ամենայն փոր նորա. եւ յայտնի եղեւ ամենեցուն որ բնակեալ են յԵրուսաղէմ, մինչեւ կոչել գեաւղջն այնմիկ բարբառով իւրեանց Ակեղդամա, այսինքն է՝ գեաւղ արեան:" Որչափ ալ ասոնք մանրամասնութեանց մէջ տարբեր երեւան, յատկապէս Մատթէի "խեղդեցաւն" ու Պետրոսի "ուռուցեալ հերձաւ ընդ մէջ", դժուար չէ համաձայնցընելը: Աւելի դժուար է՝ համաձայնցընել Ս. Գրքէն դուրս եղած աւանդութիւնն առ Պապիասայ, որ կը պատմէ թէ Յուդայի "այնչափ ուռեցաւ մարմինն որ շրջիլ չէր կրնար, կառքի մ'ալ անհոգութեամբ անցած ժամանակ՝ կառքին տակն ինկաւ, այնպէս որ փորոտիքն դուրս թափեցաւ:" Եւ սակայն այս ամէնը պատճառ մը չէ, որ ընդունինք թէ Յուդայի "մահուան պատմութիւնը նմանութիւն է մահուան Նադանայ", եւ սոսկ Ախիկարու պատմութիւնը բանալի մ'ըլլայ յիշեալ պարագաները պարզաբանելու, ինչպէս կ'ընդունի Հարրիս, թէեւ նաեւ իբր պարզ "հաւանական":

*Ուրիշ համեմատութիւններ ալ եղած են գիտնականներէն, բայց այնպէս հաստատուն կռուան մը չունին շատերը[1]: Զանց առնելով զանոնք՝ յիշենք ուրիշ առակ մ'որուն համեմատութիւնը շատ աւելի հաւանական է: Այս առակն է Անպտուղ թզենւոյն առակն, ինչպէս յաջորդէս կը տեսնուի:*

| Ղուկ. ԺԳ. 6—9: | Ախիկար (Հայ՝ էջ 160—1 = Ասոր.): |
| --- | --- |

Ասաց եւ զառակս զայս. Որդեակ եղեր ինձ որ- Թզենի մի էր ատրուՄն տրն- պէս արմատենի (Արաբ.

---

[1] Այսպէս գիտնական մը (ի թերթին Revue biblique 1898 Ապրիլ) կը համեմատէ Փարիսեցւոյն մտածածն Մագդաղենացւոյ զՅիսուս օծելուն առթիւ (Ղուկ. Է, 39)՝ որ "ասէր ի միտս իւր՝ Սա թէ մարգարէ ոք էր, ապա գիտէր թէ ո՞վ կամ որպիսի՞ ոք կին մերձենայ ի սա, զի մեղաւոր է"։ Փարիսեցին ըստ այսմ միտքը բերած էր վճիռ մը թէ արդար մը մեղաւորի մը պէտք չէ որ մերձենայ եւ իւղով օծէ, ինչպէս Աքիկարի վճիռը՝ "Որդեակ, հարցէ զքեզ իմաստուն գաւազանաւ, մի՛ օծցէ անմիտն իւղով անուշահոտով"։ Բայց այսպիսի համեմատութիւն մը բռնազբօսիկ է։ — Հարրիս (էջ ԿԷ) կը յիշէ ուրիշ համեմատութիւններ ալ, որ նոյն կարգի են։ Օրինակի համար Ախիկարու առածս՝ "Աստուած ընդ ակարին է զի զարմացուսցէ զհզօրն" (զոր Հայերէնին եւ Ասորւոյն մէջ չենք գտներ), հմմտ. Ա. Կորնթ. Ա, 27՝ "Եւ զտկարս աշխարհիս ընտրեաց Աստուած, զի յամօթ արասցէ զհզօրս"։ — Կամ առակս՝ "Այց եւ աղքատին ի նեղութեան եւ խօսեաց զնմանէ առաջի Արքայի եւ ջանա կալ փրկել զնա ի բերանոյ առիւծուն" ըստ Արաբականին, ուր Հայերէնն (էջ 135) ունի՝ "Որդեակ, առաջի թագաւորաց եւ առաջի դատաւորաց, աւգնական լեր ընկերին քո, զի որպէս ի բերանոյ առիւծոյ զերծուցես զնա"։ (Ասորին աւելի համառօտ)։ Արդ շատ լաւ պարզաբանութիւն մըն է առածս Պաւղոսի առաքելոյն մէկ խօսքին (Բ. Տիմ. Դ, 17) "յառաջինում պատասխանիս ոչ ոք ինձ ի թիկունս եկաց ... այլ Տէր օգնեաց ինձ եւ զօրացոյց զիս ... եւ ապրեցայ ես ի բերանոյ առիւծուն"։ — Աքիկարու առածին (Հայ՝ էջ 129) "Ընդ անօրէնս հաց մի՛ ուտեր" կը գտնենք համեմատական մը Պաւղոսի քով ալ (Ա. Կորնթ.

կեալ յայգւոջ իւրում. եւ եկն խնդրել պտուղ ի նմանէ՝ եւ ոչ եգիտ: Ասէ ցայգեգործն. Ահա՛ երեք ամք են՝ յորմէ հետէ գամ խնդրել պտուղ ի թզենւոջդ՝ եւ ո՛չ գտանեմ. արդ՝ կտրեա զդա, ընդէ՞ր եւ զերկիրդ խափանէ: Նա պատասխանի ետ եւ ասէ. Տէր, թող զդա՛ այս ամ եւս, մինչեւ շուրջ զդովաւ բրեցից՝ եւ արկից աղբ. թերեւս արասցէ պտուղ. ապա թէ ոչ՝ յամէ եւս հատցես զդա:

«ծառ»)՝ որ բուսեալ էր յեզր գետոյն. [յորժամ պտուղն հասանէր՝ նա ի գետն անկանէր[1]:] Եկեալ տէրն ծառոյն առ ի կտրել զնա, եւ ասէ ծառն՝ թող զիս յայամ տեղւոջս[2], զի միւս ամի բերից պտուղս: Ասէ տէր ծառոյն՝ Մինչեւ ցայսաւր չեղեր ինձ պիտանի. այլ ո՛չ պիտանացիս:

Վերջապէս համեմատութիւն մ'ալ կը մնայ որ նոյնպէս հաւանական է, առած մ'որ յամենայն

---

Ե, 11) «Եթէ ոք եղբայր անուանեալ կամ պոռնիկ իցէ, կամ կռապաշտ, կամ ագահ, կամ բամբասող, կամ արբեցող, կամ յափշտակող, ընդ այնպիսեաւն հաց մի՛ ուտել»:

1 Միայն Հայերէնն ունի փակագծեալս, զոր ջնջելու է, վասն զի անյարմար է եւ ամբողջին իմաստն ալ կը խանգարէ:

2 Այսպէս Հայերէնը «յայամ տեղւոջ», որ շատ լաւ չէ. լաւագոյն կ'ըլլար «այս ամ» կարդալ: Ասորին այսպէս ունի՝ «Որդեակ եղեր ինձ որպէս արմաւենի որ կայր (տընկեալ) առ գետով, եւ իբրեւ եկն տէր նորա կտրել զնա, ասէ ցնա՝ «Թող զիս միայն զայս ամ, եւ բերից քեզ պտուղ զեղջերս.» (κεράτιον, եղջիւրենի:) Եւ տէր նորա ասէ ցնա՝ «Չեղեր դու պիտանի յայնմ որ քեզ անկ էր, զիա՞րդ եղիցես պիտանի յայնմ որ չէ քեզ անկ:» Իսկ Արաբացին այսպէս ունի՝ «Որդեակ եղեր որպէս զծառն որ անպտուղ էր՝ առ ջրով. եւ իբրեւ կամէր տէր նորա կտրել զնա, ասէ ցնա՝ «Տուր զիս յայլ տեղի, եւ եթէ ոչ բերից պտուղ, կտրեա զիս»: Եւ տէր նորա ասէ ցնա՝ Դու որ առ ջրովդ էիր ոչ բերեր պտուղ, զիա՞րդ բերիցես եթէ յայլում տեղւոջ իցես»: — Ահա օրինակ մ'ալ պէսպիսութեան օրինակաց եւ խմբագրութեանց արդի Խիկարի պատմութեան եւ առածներուն:

դէպս Աքիկարու նախնականին կը վերաբերի եւ զոր յառաջ բերուած կը գտնենք ի Թղթին Պետրոսի առաքելոյ (Բ. Պետր. Բ, 22) այսպէս՝ "Եկեալ է ի դէպ նոցա ճշմարիտ առակն զգօնութեան եթէ Շուն դառնայ անդրէն ի փսխած իւր եւ խոզ լուացեալ՝ ընդ տիղմ թաթաւել." (ὗς λουσαμένη εἰς κυλισμὸν βορβόρου.) Հոս բուն երկու առակ յառաջ կը բերուին իրարու կից. առաջինը "զգօնութեան" գրքէն է (Առակք ԻԶ, 11.) բայց երկրորդն ուրիշ առած մըն է, որուն նոյն իսկ իմաստը լաւ հասկընալու համար համեմատելու է Աքիկարու առածն, որուն առածներէն մին է։ Միայն թէ վերջնոյս արդի օրինակները պէսպիսութեամբ ունին։ Հայերէնը (էջ 160) այս ձեւով է՝ "Որդեակ զխոզն է ի բաղանիսն տարան, եւ նա անկեալ ի մուրատն (Թ. 92 "մաւրատն." Ven. "մուրտն") թաւալէր ասելով՝ Դուք ի ձերդ լուացէք եւ ես յիմս։" Ասորին այսպէս կը բացատրէ՝ "Որդեակ, եղեր ինձ որպէս զխոզ, զոր տարան ի բաղանիս, եւ իբրեւ ետես տղմուտ ինչ՝ անկեալ ի նա լուացաւ եւ գոչէ ցընկերսն՝ Եկայք լուացարուք։" Հոս ամէնէն լաւ պահած է նախնականն Արաբացին, որուն քով այսպէս է առակը՝ "Որդեակ, արարեր որպէս զխոզն, որ չոքաւ ի բաղանիս ընդ ազնուականս, եւ ելեալ արտաքս՝ ետես տիղմ չարահոտ՝ անկեալ թաւալէր ի նմա։" Ասկէ նախ կը հետեւի "խոզ լուացեալ" (ὗς λουσαμένη) պէտք չէ հասկընալ՝ "խոզ լուացուած", այլ "...որ լուացուելու կ'երթայ" (յունարէնն այսպէս ալ կրնայ հասկցուիլ։) Արդ այս առակը, որ այնպէս կը լուսաւորէ Պետրոսի առաքելոյ յիշած "ճշմարիտ առակն" (— որով անոր ուրիշ տեղէ մը առնուած ըլլալը կը հաստատուի որոշ կերպով, —) յամենայն դէպս Աքիկարու նախնականներէն էր։ Հետաքրքրական պարագայ մըն ալ է որ, ինչպէս վերն երկար խօսեցանք, Աքիկարու առակները Յունաց թարգմանութեամբ ծանօթա-

*ցուցած կ՚ըսուի Դեմոկրիտոս. եւ ճիշդ Դեմոկրիտոսի անուամբ կը յիշէ համանման առակ մը նոյն* **Կղեմէս Աղեքսանդրացի** (Clem. Alex. Protrept. p. 75.) *այսպէս՝ “Ջի ասեն թէ խոզից առաւել դիւր լինի ի տղմի քան ի ջուր սուրբ, եւ մոլեգնեալ դիմեն յաղբեւս որպէս ասէ Դեմոկրիտոս,„* (*ὕες γὰρ φησιν ἥδονται βορβόρῳ μᾶλλον ἢ καθαρῷ ὕδατι καὶ ἐπὶ φορυτῷ μαργαίνουσι κατὰ Δημόκριτον.*) *Միայն թէ կրնայ ըսուիլ որ առոր առաջին մասը թերեւս սովորական առած մըն էր, եւ միայն վերջինը յատուկ է Դեմոկրիտի, ինչպէս որ միայն վերջինը կը յիշէ Պղուտարքոս* (Plutarch, De Sanitate p. 14), *այսինքն՝ “խոզից մոլեգնելոց յաղբեւս, որպէս ասէ Դեմոկրիտոս„* (*συσὶν ἐπὶ φορυτῷ μαργανούσαις, ὥς ἔφη Δημόκριτος.*) *Առածս այնուհետեւ յունական մատենագրութեան մէջ ուրիշ տեղ ալ կը կրկնուի: Ըստ այսմ Աքիկարու առածն ստուգիւ նոյն հնութիւնն ունի, եւ կապ ունի Պետրոսի առաքելոյ յիշած առածին հետ: Միայն թէ կրնայ շատ լաւ ըլլալ որ առաքելոյն ծանօթ ըլլայ այն ուրիշ տեղէ մը, ժողովրդեան բերնէն եւն, եւ ոչ ուղղակի Աքիկարու նախնականէն, թէեւ վերջինս ալ անհնար չէ:*

*Այսչափ բաւական համարինք Աքիկարու նախնականին եւ Ս. Գրոց այլեւայլ տեղերուն համեմատութեանց մասին: Նմանութիւններ գտանք նաեւ Տովբիթայ քով, որ ստուգիւ գործածած է զԱքիկար, նմանութիւն Անհաւատարիմ ծառային առակին հետ՝ որ նոյնպէս ապահովապէս Աքիկարու հետ կապ ունի, իսկ Թզենւոյն առակը միայն հաւանօրէն: Նմանութիւններ գտանք դարձեալ Սիրաքայ, Առակաց, Սաղմոսի, Դանիէլի եւ Պետրոսի Բ. Թղթոյն եւն այլեւայլ տեղեաց հետ, որոնք սակայն աւելի կամ նուազ խնդրական կը մնան փոխառութեան եւ առաջնութեան տեսակէտով: Քանի մը բան ալ յաջորդաւս կը նշանակենք:*

# 7.

"Սախընթացներով ամէն տարակուսէ ազատ կը մնայ Աքիկարու պատմութեան նախնականին հնութիւնը, որ կանխագոյն՝ գոնէ համաժամանակեայ՝ ըլլալու է Տովբիթայ գրոց. բնականապէս նախաքրիստոնէական գրուածք մ՚որ եբրայական շըրջանին կը վերաբերէր. այնչափ սերտ կապ գաղափարաց գտանք ասոր եւ Ս. Գրոց այլեւայլ տեղեաց մէջ: Ասով նաեւ հաւանական կ՚ըլլայ որ նախնականն եբրայերէն կամ գոնէ արամերէն գրուած էր, եւ ասով վերջնականապէս ջրուած կ՚ըլլայ այն գիտնոց կարծիքն (Մայսնէր եւն), որոնք "Եսովպի" աւելի առաջնութիւն կարծեցին տալ՝ զայն համարելով Աքիկարու պատմութեան հնագոյն ներկայացուցիչը: Բայց արդ, ինչպէս արդէն տեսանք, "Եսովպ"-Խիկար բոլորովին այլափոխ եղած է, դէպքը Նինուէէն Բաբելոն փոխադրուած, շատ մասամբ յունացած եւ այն ձեւին բերուած որ ջնջուած են անկէ բոլոր յիշեալ նմանութիւնք նիւթի եւ գաղափարաց Տովբիթայ եւ այլ Ս. Գրոց յիշեալ տեղերուն հետ. օրինակի համար անհաւատարիմ ծառայի առակն, թզենւոյն առակն եւ բոլոր նմաններն անհետ եղած են հոն: Փարաւոնի տեղ անցած է "Նեկտենաբոս"՝ վերջին փարաւոնն, որ ինքնին աւելի ուշ ժամանակ մը կը ցուցընէ, եւ այլ այսպիսի բազմաթիւ պարագաներ:

Ըստ այսմ կարեւոր է յատկապէս աչքի առջեւ ունենալ այն կէտը, որ Աքիկարու նախնականն ապահովապէս Եբրայեցւոց արտաքին մատենագրութեան արգասիք մըն էր, այն բազմաթիւ նախաքրիստոնէական արտադրութիւններէն հրէից, որոնց շատը կորսուած, բայց փոքր մաս մ՚ալ՝ թէեւ յաճախ այլեւայլ փոփոխութեամբ՝ հասած է մեզի. Ասոնց հետ Աքիկար ալ նոյն նկարագիրն ունէր: որչափ ալ արտաքին նիւթերով՝ միշտ առգորուած

եւ ազդուած Աստուածաշունչ մատեաններու գաղափարներով, բացատրութիւններով, նաեւ ուր ուղղակի փոխառութիւն չկրնայ ապացուցուիլ: Թէ ստուգիւ այս նկարագիրն ունէր Աքիկարու նախնականը, ապահով է. եւ նոյն իսկ արդի այլակերպեալ խմբագրութիւնքն եւ օրինակները պահած են շատ բան, ինչպէս տեսանք: Սակայն եթէ ուզուի՝ կրնան այս կարգի ապացոյցներ կրկնապատկուիլ: Առնունք օրինակի համար միայն Հայերէնին առածներու առաջին շարքը, կամ Խիկարի վարդապետութիւնն, եւ կը տեսնենք չափազանց մեծ նմանութիւն գաղափարաց՝ յատկապէս Ս. Գրոց առակաշատ գրութեանց հետ, գաղափարներ եւ առակներ որոնք ի հարկէ ժողովրդեան ալ բերանն ըլլալու էին յաճախ ի Հրէաստան: Ահա շարք մ'այսպիսի նմանութեանց, յաճախ այնպէս լիակատար նոյնութեամբ որ յայտնապէս փոխ առնուած են՝ այս անգամ անշուշտ Ս. Գրքէն. վասն զի նախ որ՝ խնդիր է թէ այս ամէնը կա՞ր նախնականին մէջ, եւ երկրորդ որ՝ արդի խմբագրութիւնք (հոս Հայերէնը) յաճախ ճոխացած են նոր տարրներով, եւ յատկապէս առածները բնական էր որ ճոխանային Ս. Գրոց առածներէն եւ վճիռներէն: Այս կարգի խնդրոց մէջ միշտ զանազանելու է նախնական բնագիրն եւ յետագայ խմբագրութիւնքն իրենց զարգացումներով: Ահա քանի մը համեմատութիւնք:

| Ս. Գիրք: | Աքիկար (Հայերէնը): |
| --- | --- |
| 1. (Ժողովողի Է, 3.) Բարի է երթալ ի տուն սգոյ՝ քան երթալ ի տուն արբեցութեան, զի այն ինքն է կատարած ամենայն մարդոյ: | 1. (Էջ 131.) Որդեակ, մի թողուլ զլալիսն եւ երթալ ի հարսանիսն. զի ամենեցուն մահ առաջի կայ եւ պատուհաս մեծ է: |
| 2. (Առակ ԺԸ, 24.) Լաւ է բարեկամ մերձաւոր քան եղբայր հեռաւոր: — Հմմտ. ԻԷ, 11 "Լաւ է բարեկամ մերձաւոր քան եղբայր ի հեռաստանէ բնակեալ:" | 2. (Էջ 136.) Որդեակ լաւ է բան իմաստնոյ յարբեցութեան՝ քան զբան անմտի ի ծարաւութեան կամ լրջութեան. լաւ է ծառայ ուղիղ (ձագր. |

«ղորդ»)՝ քան աղատ եւ սուտ. լաւ է բարեկամ մաւտեւոր՝ քան եղբայր (ձեռագր. «եղբայր») հեռաւոր:

3. (Առակք ԻԳ., 13.) Մի խնայեր խրատել զտղայ քո. զի թէ հարկանես զնա գաւազանաւ ոչ մեռանի. դու հարկանես զնա գաւազանաւ, բայց զանձն նորա փրկեսցես ի մահուանէ:

3. (Էջ 129 ըստ Bod.)[1] Որդեակ զգան որդւոյ քո մի խնայեր, զի գան մանկան այնպէս է որպէս աղբն ի պարտիզի . . . զի եթէ հարկանես գաւազանաւ մի կամ երկուս հանդարտի, բայց ոչ մեռանի. բայց եթէ թողուս զնա ի կամս իւր՝ գող լինի եւ տանեն զնա ի կախումն եւ ի սպանումն եւ լինի քեզ նախատինք եւ բեկումն:

4. (Առակք ԻԴ, 17.) Եթէ կործանեսցի թշնամին քո՝ մի՛ ոտն հարկանիցես, եւ ի գայթագղել նորա մի՛ հպարտանար:

4. (Էջ 129.) Որդեակ եթէ տեսանես զթշնամին քո գլորեալ՝ մի՛ ծաղր առնել զնա. զի եթէ կանգնի նա՝ չար հատուցանէ քեզ: (Ասոր. «Որդեակ մի՛ նախանձիր ընդ յաջողութիւն թշնամւոյ քո եւ մի՛ ուրախ լինիր ընդ թշուառութիւն նորա:)

5. Առակք ԻԵ, 17.) Մի՛ կարի յաճախեր ոտիւք քովք

5. (Էջ 138.) «Որդեակ մի՛ յաճախեր երթալ (ձեռագր.

[1] Այս առածը լաւ օրինակ մըն է՝ ի միջի այլոց՝ այս կարգի առածներու փոփոխուելուն, զարգանալուն եւ ռամկանալուն: Մենք գրինք ըստ Բոդլեան ձեռագրին: Վենետկոյն (Ven.) այսպէս ունի ռամկացած եւ աճած՝ «Որդեակ զորդիդ ի ծեծ մի խնայեր, զի ծեծ մանկան այնպէս է որպէս աղբն ի պարտիզի, եւ որպէս կապն եւ մատնեհար ի քսակի. եւ որպէս կապն ի իշուն ոտքն՝ այնպէս աւգուտ է ծեծ տղային. զի թէ ծեծես գաւազանաւ մի կամ երկուս՝ նայ խելաւքանայ հանդարտութեամբ, ոչ մեռանի. բայց եթէ թողուս» եւն: Ի հարկէ Բոդլեանն ալ ճոխացած է, վասն զի մեր կարծեօք «աղբն ի պարտիզի», «մատնեհար ի քսակի» եւ «կապն յիշոյն ոտքն» (զորոնք ունի Bod. ալ) լեզուի աղաւաղութիւն կրած են:

տա բարեկամ. գուցէ յա-
գիցի քեւ, եւ ատիցէ զքեզ։

6. (Առակ ԻԶ, 27.) "Որ
փորէ խորխորատ ընկերի
իւրում, ինքն լցցէ զնա.
եւ որ գլէ վէմ՝ յանձն իւր
գլեսցէ։" — Հմմտ. Սիրաք,
ԻԷ, 29 "Որ փորէ խորխո-
րատ՝ ի նոյն անկցի. որ դնէ
որոգայթ՝ ի նոյն ըմբռ-
նեսցի։"

7. (Առակ Լ, 17) Ակն
որ արհամարհէ զհայր եւ
անարգէ զծերութիւն մօր,
խլեսցեն զնա ագռաւք ձո-
րոց։ — (Միւսներու նման-
ներ ալ այլուր։)

8. (Սիրաք ԺԲ, 10.)
Լուար ինչ բան՝ մեռցի
անդէն ի սրտի քում. պինդ
կաց որ ոչ հերձու եւ ար-
տաքս ելանէ։

9. (Սիրաք ԺԳ, 26—27.)
Ի սխալել մեծատանն՝ բա-
զում են պաշտպանք, իսկ
աղքատին եւ ոչ մի։ Խօսե-
ցաւ մեծատունն անար-
ժանս, եւ ետուն նմա իրա-
ւունս։ Խօսեցաւ տառա-
պեալն եւ սաստկակոծ ա-
րարին զնա. բարբառեցաւ
իմաստութիւն, եւ ոչ
տուաւ նմա տեղի, եւն։

10. (Սիրաք Ի, 20.) Լաւ
է յոտից գայթագղել քան
ի լեզուէ, եւն։

"երթայր") ոտիւք ի տուն
բարեկամի քո. գուցէ ա-
տիցէ զքեզ։

6. (Էջ 161.) "Որդեակ
որ բարի առնէ՝ բարի
գտանէ. եւ որ այլոց խոր-
խորատ փորէ՝ ինքն անկանի
ի նմա. (Ծագր. Canon եւ
որ փորէ խորխորատ ընկերի՝
անձամբ իւրով լնու." =
Ասոր.) կատարի բարին ի
բարի եւ չարն ի չար։" (Ա-
րաբ. աւելինման՝ տեսվերը։)

7. (Էջ 158.) Որդեակ.
շունն որ զորսն ինքն ուտէ՝
կերակուր գայլոց եղիցի։
Աչք որ ինձ լոյս ոչ տայ՝
ագռաւք փորեն (Bod., այլք՝
"ծեծեն") զնա։ Ձեռք որ
ինձ ոչ աւգնեն՝ ուսովք
հատցեն զնա։

8. (Էջ 184.) Որդեակ
եթէ լսես բան չար զու-
մեքէ, թաքո զնա ի սրտի
քում կանգուննս է, զի այն
չարն մեռանի եւ բարին
կատարի։ — (Նմաններ՝
յաճախ։)

9. (Էջ 136.) Որդեակ,
մարդ որ ստացուածս եւ
ինչս բազում ունի, կոչեն
զնա իմաստուն եւ առա-
քինի. եւ որ ինչս պակաս
ունի՝ կոչեն զնա անմիտ եւ
անարգ, եւ ոչ ոք պատուէ
զնա. — (Նմաններ այլուր,
զոր օր. էջ 128՝ "Որդեակ,
մեծատան որդին աւձ կե-
րաւ՝ ասեն դեղ է նմա.
աղքատին որդին եկեր՝ եւ
ասեն ի սովու կերաւ։")

10. (Եթովպ. ԺԳ.) "Որ-
դեակ, լաւ է գայթակղել
ոտիւք քան լեզուաւ, եւ
մի հաներ բան ի բերանոյ

| | |
|---|---|
| | քումմէ մինչեւ նախ մտեալ ի խորհուրդ ընդ անձին քում:„[1] |
| 11. (Սիր. ԻԷ, 28.) Որ ձգէ քար երկնապօղ՝ ի գլուխ իւր ընկենու: | 11. (Էջ 157.) “Որդեակ եղեր ինձ որպէս այն որ ձգեաց նետ յերկինս եւ ոչ կարաց հանել ի վեր. այլ զանաւրէնութիւն իւր շահեցաւ. զի դարձաւ նետն ի գլուխ իւր:„ |
| 12. (Սիր. ԻԹ. 29.) Լաւ են կեանք աղքատի ընդ յարկաւ գերանաց իւրոց՝ քան թէ կերակուրք պայծառք ի տունս այլոց: | 12. (Էջ 131.) Որդեակ՝ թէպէտ եւ քաղցեալ իցես՝ որ հաց չէ քո՝ մի ուտիցես„: — (Եւ նմաններ, զոր օր. էջ 135 “Որդեակ՝ չկոչեն զքեզ՝ մի երթալ ի պատիւ„ եւն:) |
| 13. (Սիր. Լ, 20.) Մի տար այլում զինչս քո, զի մի զղջացեալ կարօտասցիս նորօք: | 13. (Էջ 137.) “Որդեակ, զինչս քո առանց մուրհակի եւ վկայի մի տալ. գուցէ ուրանայ եւ դու ապաշաւես„: |
| 14. (Սիր. Լ, 31.) Եթէ իցէ քո ծառայ՝ եղիցի իբրեւ զքեզ, զի արեամբ ստացար զնա: Եթէ իցէ քո ծառայ, կալ զնա իբրեւ զեղբայր. զի որպէս անձին քո, այնպէս կարօտասցիս նմա: | 14. (Էջ 132—133.) “Որդեակ. մի սիրել զորդին քո առաւել քան զծառայն քո. զի ոչ գիտես եթէ ո ի նոցանէ պիտանի լինի քեզ: |
| 15. (Սիր. ԽԱ, 15—16.) Հոգ տար վասն անուան, զի այս միայն առ քեզ առաւել քան զհազար մեծամեծ գանձս ոսկւոյ: Բարի կենաց թիւ ոչ գոյ աւուրց, եւ բարի անուն միայն յաւիտեան: | 15. (Էջ 134.) “Որդեակ, լաւ է անուն բարի, քան զտեսակ ցանկալի. զի գեղեցկութիւն ապականի. եւ անուն բարի միայն յաւիտեան: |

Ահա մեծ շարք մ՚առածներու, որոնք նոյն գաղափարներով կը ներկայանան՝ զորոնք սովոր ենք

1 Վերն արդէն առիթ եղաւ խօսելու ասոր մասին, որ Հայերէնին մէջ կը պակսի, եւ որ առածներու հաւաքմանց մէջ մտած է Սողոնի եւ Մաքսիմոսի անուամբ:

գտնել Ս. Գրոց առածներուն մէջ, ինչպէս համեմատելու տեղերը նշանակեցինք։ Եթէ ուզէինք այս համեմատութիւնքը կրնայինք կրկնապատկել[1]։ Մեր նպատակին համար այսչափն ալ բաւ է՝ ցուցընելու որ Ահիկարու նախնականը ստուգիւ եբրայական գրուածք մըն էր։ Վերը նշանակուածներէն ոմանք Ս. Գրքէն փոխառեալ են յայտնապէս (զոր օր. Թիւ 2, 3 եւն.) կան նաեւ ուրիշ դէպքեր ուր նոյն երեւոյթը կը տեսնուի[2]։ Եւ այս բնական է։ Հայերէնին (— նոյնպէս Ասորերէնին եւ Արաբացւոյն եւն —) առածներէն մաս մը միայն նախնականին կը վերաբերէր. միւսները յետսամուտ են, որոնց մէջ բնական է որ Ս. Գրոց առածներն առատութեամբ գտնուէին։ Առածներուս եւ ոչ կէսը հաւասարապէս կը գտնուի Հայոյն, Ասորւոյն, Արաբացւոյն եւ Սլաւականին քով. որով գրաւական մ'ունենանք անոնց հնութեան եւ նախնականին վերաբերելուն. միւսները մասամբ միոյն, մասամբ միւսին քովն են, եւ դիւրաւ ուրիշ տեղերէ կրնային գալ մտնել Ահիկարու առածներու շարքին մէջ։

---

1 Օրինակի համար (էջ 128) “Որդեակ. կցորդ լեր առն իմաստնոյ որ իմաստուն լինիս որպէս զնա, եւ մի լինիր կցորդ անզգամի եւ անմտի” եւն. — (Էջ 130.) “Որդեակ, սիրեա զհայրն որ ծնաւն զքեզ, եւ զանէծս հաւր եւ մաւր քո մի առցես” եւն. — (Էջ 131) “Որդեակ, մի առնուլ կշռով մեծ եւ մի տալ փոքր կշռով”. — (անդ) “Որդեակ, մի երդնուլ սուտ, զի մի յաւուրց քոց պակասեսցին” եւ բազմաթիւ ուրիշներ, որոնց հետ կրնան համեմատուիլ Ս. Գրոց շատ տեղերը։

2 Օրինակի համար՝ ի միջի այլոց՝ շատ լաւ նախնականին կրնայ ըլլալ այն խրատը թէ “Որդեակ, մի համբառնալ ի վեր զաչս քո տեսանել զկին գեղեցիկ յունեալ եւ ծարուրեալ” եւն։ Սակայն Հայերէնին արդի վերջաբանը՝ թէ այն կինը “նման է գերեզմանի որ ի վերայ գեղեցիկ լինի եւ ի ներքս լի է ժահահոտութեամբ եւ ոսկերաւք մեռելոց”՝ յայտնապէս կը յիշեցնէ Մատթ. ԻԳ, 27. եւ նմաններ։

Միւս կողմանէ ոչ ամէն բան այնպէս դիւրաւ փոխառութիւն ըսելու է։ Օրինակի համար "Որ այլոց խորխորատ փորէ՝ ինքն անկանի ի նմա„ առածը նոյնութեամբ կը գտնենք Ս. Գրոց մէջ ալ (տես վերը Թիւ 6, նոյնը կը գտնուի այլուր ալ.) սակայն անշուշտ յետասամուտ չէ եւ ոչ Ս. Գրքէն մուծուած. վասն զի Աքիկարու պատմութեան էական վերջաբանն է. այս բանս ապացուցանելու կը ծառայէ բովանդակ պատմութիւնը։ Անշուշտ նախնականին հեղինակը՝ որ մեզի անծանօթ է՝ կրնար փոխառած ըլլալ նոյնը, եւ զայն հիմն առած իւր պատմածին. սակայն կրնայ նաեւ անկախ ըլլալ։ Այսպիսի առածներ դիւրաւ սովորական ըլլալով ժողովրդեան բերանը, երկու եւ այլ հեղինակներ կրնան գործածել առած մ'առանց ուղղակի իրարմէ կախում ունենալու։ Կան նշաններ ալ, որ արդէն նախնականին գրողը գործածած էր այսպիսի գրաւոր եւ ժողովրդական նիւթեր[1]։

· Էական կէտը կը մնայ եւ պիտի մնայ միշտ Աքիկարու նախնականը գտնել, եւ կամ՝ եթէ անհնար է այս, գոնէ հնագոյն օրինակներ եւ խմբագրութիւններ արդի "Խիկարի„, եւ համեմատութեամբ ասոնց ջանալ գոնէ մերձաւոր եւ լաւագոյն գաղափար մ'ունենալ նախնականին բովանդակութեան մանրամասնութեանց վրայ։ Նաեւ մեր արդի անբաւական միջոցներով բաւական բան կրնանք որոշել համեմատութեամբ արդի օրինակաց, "Եսովպի„ վարուց եւն, ինչպէս ցայս վայր նշանակե-

1 Այսպէս յաճախ կը գտնենք պատմութեան մէջ եւ այլուր առածներ յառաջ բերուած ի վկայութիւն, յատկապէս ասորականին մէջ։ Հայերէնին մէջ քիչ կան, բայց կան. օրինակի համար երբ Նադան կը սկսի զեղծանիլ, կ'ըսէ Խիկար (էջ 142) "Ի բաց կաց յընչից իմոց, եւ մի՛ մերձենար, չէ՞ գրեալ է յօրէնսն՝ եթէ Զէրդ որ ոչ վաստակեցաւ՝ ոչ նորա ոչ խնայէր„. եւ նմաններ։ Յարւոյ հանելուկն նաեւ "Ասորւոց հորթարածներն գիտեն„ եւն։

ցինք իրենց տեղը։ Քանի մը բան ալ հոս կը նշանակենք։ Այսպէս նախնականին սեմական լեզուաւ գրուած ըլլալուն շատ լաւ նշան մըն է Գայլոյ ուսման առակը, զոր ամէնէն լաւ պահած է հայերէնը։ Այս առակն է (էջ 160) “Որդեակ, զգայլոյ ձագն յուսումն տուին եւ ասեն՝ Ասա այբ. բեն. գիմ։ Եւ նա ասէր՝ Այծ. բոյծ. գառն։„ Ինչպէս արդէն Մայանէր (անդ՝ էջ 185) եւ Դիլլոն մտադիր եղած էին, առակիս էութիւնը յայնմ կը կայանայ որ գայլու ձագն այբուբենքի առաջին երեք գրերով սկսող այնպիսի բառ կ'արտասանէր, որ իւր նկարագրին յայտարար են։ Հայը շատ յաջողութեամբ յարմարցուցեր է՝ “այծ, բոյծ, գառն„։ Ասորին միայն երկուքը (ա, գ) կրցեր է յաջողցընել, վասն զի երբ գայլուն կ'ըսեն թէ “Ասա Ալեփ բեթ„ (այբուբեն), կը պատասխանէ “գառ, այծ„, որոնց սկզբնատառք ասորերէնի մէջ միայն ա եւ գ տառերով կը սկսին (ܐܠܦ ܒܝܬ). իսկ “բ„ տառով սկսող չկայ։ Սակայն յայտնի է որ Ասորին գոնէ հասկըցած է առակին էութիւնը, եւ թերեւս այն պակասը պատահական է։ Արաբացին ամենեւին չէ յաջողած, վասն զի իւր “գառն, ուլ եւ այծ„ բառերը (خروف عنز جدی) բոլորովին ուրիշ տառերով կը սկսին[1]։

Ասկէ կրնայ միանգամայն հետեւցուիլ, որ Աքիկարու նախնականի առածներն ալ այբուբենական կարգ մ'ունեցած ըլլան, իւրաքանչիւր առած կարգաւ սեմական այբուբենի տառերովն սկսելով։ Այս այբուբենական դասաւորութիւնն առածներու կը գտնենք թէ Ս. Գրոց մէջ, օրինակի համար՝ Լա-

[1] Տես նաեւ Հարրիս՝ էջ ԶԴ, որ կը նշանակէ թէ հին գաղղիական զրուցին մէջ ալ կայ այսպիսի բան մը. երբ Գայլն ձանձրացած ուսման երկարութենէն՝ միշտ Aignel, Aignel կը պոռայ։ — Այս գայլուն ուսման առակն անցած է նաեւ Հայոց առակաց ժողովածոյից մէջ, ինչպէս յետոյ կը տեսնենք։

*մուէլի առքայի առածքն* (*Առակք*, ԼԱ) *զոր յիշելու առիթ ունեցանք, եւ թէ անկէ դուրս, օրինակի համար Բէն Սիրայի առածները, զորոնք լատիներէնի թարգմանած է Ֆագիոս, եւ որոնք նմանութիւններ ալ ունին Աքիկարու հետ*[1]:

*Անհնար չէ ըստ այսմ որ (— ինչպէս կը կարծէ Հարրիս —) Աքիկարու առածներն ալ այս այբուբենական կարգն ունենային նախնականին մէջ: Ի հարկէ արդի օրինակները շատ աւելի թուով առած ունին. այսպէս հայերէնն իբր հարիւր, Ասորին*՝ 75, *Արաբացին*՝ 67: *Սակայն նշանակելի է այն պարագան, որուն մտադիր կ'ընէ Հարրիս, որ ասոնց մեծագոյն մասը յատուկ են այս կամ այն խմբագրութեան, որով յետասմուտ կրնան ըլլալ՝ այսպէս հայերէնի* 100 *առածներէն հազիւ իբր* 25*ը լիովին համաձայն է ասորւոյն եւ արաբականին, նոյնպէս փոխադարձաբար. որով հաւանական կ'ըլլայ նախնականին միայն* 22 *առած ունենալն՝ սեմական այբուբենքի համեմատ: Այս կէտը ստուգիւ կարեւոր է, բայց տակաւին կարօտ անդրագոյն հետազօտութեանց, որոնք թերեւս կարենան օր մը հնագոյն նախնականին ձեւը վերակազմել:*

*Առ այժմ կրնանք միայն ենթադրութիւններ ընել՝ ինչպէս այս նոյնպէս ուրիշ շատ կէտերու մասին: Օրինակի համար հաւանական չ'երեւար որ նախնականին մէջ գտնուէր օդեղէն աշտարակ շինելու զրոյցը՝ արծուեաց կռնակը թռչող տղաներով, Փարաւոնի եւ Աքիկարու մէջ եղած հարցուպատասխանները: Այս ամէնը չ'երեւար որ գտնուէր Տովբիթայ գրոց հեղինակին ձեռքն եղած օրինա-*

[1] *Հմմտ.* Sententiae morales Ben Syrae . . . ex Hebraeo in Latinum per Paulum Fagium. Իսնա 1542. *մանրամասն տես Հարրիս՝ էջ* ԶԵ—ԶԶ, *ուր կը հաղորդուին քանի մ'առածներ ալ: Բէն Սիրայ իւր ուսուցչին կը ստիպուի պատասխան տալ Ալեփ-Բեթի կարգաւ առածներով:*

կին մէջ. եւ սակայն կայ այս ամէնը "Եսովպի" զրուցին մէջ ալ դոյզն փոփոխութեամբ, ուստի դժուար է զանոնք բաժնել միացեալ մասերէն։ Նոյնն ըսելու ենք նաեւ Տարւոյ հանելուկին մասին՝ սիւն մը վրան 12 մայրք, որոնց իւրաքանչիւրը 30 ճիւղով (Հայը՝ 30 անիւներով) եւն, հանելուկ մը, որուն համար Խիկար կ'ըսէ թէ "զայդ Ասորւոց հորթարածներն գիտեն". ըսել է սովորական հանելուկ մըն էր։ Եւ արդեամբք նոյնը կը գտնենք այլուր ալ[1]. եւ դարձեալ հնութեան նշան մըն է որ՝ խմբագրութեան մը համեմատ՝ նոյն հանելուկին մէջ տարին 364 օր կը դրուի, զոր կը գտնենք Ենովքայ գրոց մէջ, որ ըստ այսմ նախաքրիստոնէական ժամանակի կը վերաբերի[2]։ Ուստի այս մասն ալ

---

1 Այսպէս այն վէպին մէջ, զոր Burton կ'անուանէ "Լեզուանի Ցիկին", եւ որ Հայերէն ալ կայ խորագրով՝ "Պատմութիւն Աղջկան Եւ Մանկան եւ Հարցմունք նոցա ընդ միմեանս", սովորաբար Խիկարի կից՝ լոյս տեսած նոյնպէս "Պղնձէ քաղաքի" տպագրութեանց մէջ, այսպէս տպ. 1807 էջ 106—129։ Այստեղ ալ կայ հանելուկս (անդ՝ էջ 116, "Ասէ Աղջիկն. Այն է՞նչ ծառ է որ ունի ԺԲ ճիւղ, եւ ամէն ճիւղ Լ տերեւ, եւ պտուղ նորա սեւ եւ սպիտակ։ Ասէ Մանուկն. Ծառն՝ տարին է. ԺԲ ճիւղն՝ ամիսն է. տերեւն՝ Լ օրն է. պտուղն սեւ ու սպիտակ՝ տիւ եւ գիշերն է։"

2 Ընդարձակ տես Հարրիս էջ ԶԷ—ԶԸ։ Լիցբարսկի գիտնականին հրատարակած խմբագրութեան համեմատ հանելուկս այսպէս է՝ Սիւնը շինուած է 8736 քարէ որ իրարու կը կապուին 365 (պէտք է ուղղել 364) աղիւսով, սեան վրայ տնկուած 12 մայր ծառ, իւրաքանչիւրը 30 ճիւղով եւն։ Կը տեսնուի որ 8736 քարի թիւը տարւոյ ժամերու գումարն է (364×24) ուստի "աղիւսներ" (կամ օրերը) 364 պէտք են ըլլալ։ Արդ այսպիսի 364 օրով տարի մը հնութեան նշան է. վասն զի ո՛չ մեր սովորական տարին է 365 օրով եւ ո՛չ լուսնականը 354 օրով։ Արդ 364 օրով տարի գիտէ նաեւ Ենովքայ գիրքը (տես գլ. 74, 75, 82), ուր վերջին տեղը որոշ ալ կ'ըսուի "Տարին կը լրանայ 364 օրերով", երկրորդ տեղը աշխարհքիս ընթացքը "364

չենք կրնար բաժնել վէպին միւս մասանց ամբողջութենէն։ Եւ այսպէս մի առ մի միւս ամէն կէտերը քննութեան պէտք են առնուիլ, մանրամասն պէտք են համեմատուիլ խմբագրութիւնքն որ կան, նախնականին պարունակութիւնը կարելւոյն չափ ճշդըրտելու համար։

Այս խմբագրութեանց կամ թարգմանութեանց մէջ յատկապէս քննութեան առնուելու են միայն յունականն, ասորականն եւ հայերէնը. վասն զի եթովպականն (որմէ միայն քանի մ'աւանդք գտնուած են առ այժմ) իրեն հիմն ունի արաբականը, վերջինս ալ յառաջ եկած է ասորականէն, ուստի ասոնք երկրորդական աղբիւրի նշանակութիւն ունին։ Յունականն ալ որ կ'ըսուի՝ պէտք չէ հասկընալ "Եսովպի„ վարքն Պղանուդէսէն գրուած, այլ այն յունարէն Խիկարն՝ որ թէեւ այժմ կորսուած է, բայց ծառայած է իբրեւ հիմն սլաւական թարգմանութեան։ Իսկ երբ խնդիր ըլլայ թէ որն է արդեօք արդի խմբագրութեանց հնագոյնն որ ուղղակի թարգմանուած ու խմբագրուած ըլլայ նախնական եբրայականին վրայէն, հաշուի առնելու ենք միայն ասորականն ու յիշեալ յունականը. վասն զի հայերէնը՝ թէեւ անկախ օրինակ մը ներկայացընէ՝ յամենայն դէպս թարգմանութիւն է, հաւանօրէն կորսուած ասորի օրինակի մը[1]։

---

աշխարհի օթեւաններու„ կը բաժնուի, եւ առաջին տեղը կ'ըսուի "ամէն օրերը՝ որ կը վերաբերին մէկուն այն հինգ լի տարիներէն՝ 364 օրերու մէջ։„ Ըստ այսմ այսպիսի հաշիւ մ'անծանօթ չէր, եւ եթէ Խիկարու քով ալ գտնուի՝ նշան է որ Ենովքայ գրոց շրջանին, այսինքն նախաքրիստոնէական ժամանակաց կը վերաբերէր այն։

1 Հարրիս (էջ ԶԲ) կը յիշէ Կոնիբիր հայագիտի կարծիքը հայերէն խմբագրութեան մասին թէ "վէպին հնագոյն ձեւերուն մէջ՝ զոր ինքը քննած է, մեծ համաձայնութիւն մը կայ Հայերէնին եւ Ասորերէնին, բայց նաեւ քանի մը նշաններ՝ յունական ազդեցութեան։„

Սակայն այս խնդիրն առ այժմ որոշել չենք կրնար, թէեւ աւելի հակամէտ ենք ատորականը հնագոյն կարծելու, ինչպէս քանի մը նշաններ ալ կարծես կ'ուզեն հաստատել[1]։ Մեր կարծեօք դժուարաւ արդի խմբագրութեանց մէն ուղղակի թարգմանութիւն կրնանք համարիլ նախնականին։ Բովանդակ գործն՝ ինչպէս տեսանք, շատ փոխուած՝ վէպի վերածուած է. ուստի յայտնապէս այլեւայլ փոխանցման շրջաններէ անցած է՝ մինչեւ ներկայ դիրքն. ըստ այսմ արդի ատորականին աւելի նախապատուութիւն մը պէտք չենք տալ քան կորսուած յունականին, եւ հայկականին, որ թէեւ թարգմանութիւն՝ անկախ է արդի միւս երկուքէն ալ. եւ երրորդ հնագոյն խմբագրութիւն մը կը ներկայացընէ։ Սակայն թողլով այս ամէնն, ուր միայն ենթադրութիւններ կրնանք ընել, անցնինք մեզի համար կարեւորագոյն խնդրոյն՝ հայերէն խմբագրութեան։

---

1 Տես Հօֆման՝ էջ ԶԳ, որ այս նշաններէն կը համարի ատորական երբայաբանութիւնքն (զոր օր. «դատանելով եդիտ, յիշելով չյիշէ, լսելով չլուա՞ց» եւն,) որ սակայն սովորական է նաեւ ուրիշ ինքնագիր ատորական գրութեանց։ Երկրորդ նշան կ'առնու Հօֆման որ օրինակի համար սա տեղը թէ Փարաւոն հրամայեց «Ծածկեցէք զզրուճս փոճարչէս (պալուփոնս) կարմիր վարագուրօք» ատորին կը գործածէ ܦܘܠܛ բառը (էջ 60), որ բուն «մեհեան» կը նշանակէ (= «տաճար»), սակայն հոս միայն թագաւորի պալատը կրնայ նշանակել։ Արդ ճիշդ այսպէս նոյն արամէական բառը «պալատ» նշանակութեամբ գործածուած կը գտնենք ի Ս. Գիրս Գ Թագ. ԻԱ, 1. Դ Թագ. Ի, 18. Դան. Դ, 1, Ջ, 18 եւն (այս ամէն տեղը հայ թարգմանութիւն «տուն Նաբուքոդոնոսորի», կամ պարզ «տունն» ունի). ուստի հոս ալ նոյն բառը գործածուած էր նախնականին մէջ զոր ատորի թարգմանը նոյնութեամբ պահած ըլլայ՝ առանց միտ դնելու որ իւր նոր լեզուին մէջ այն բառը միայն «մեհեան» կը նշանակէ սովորաբար։

# Ց.

Մ՛եր ուսումնասիրութեան վերջը հասած՝ կը մնայ միայն մէկ կէտ մը քննութեան առնուլ, որ սակայն մեզի համար ամէնէն կարեւոր կէտը համարուելու է. այսինքն՝ հայերէն թարգմանութիւնը։ Մինչեւ մօտ ժամանակներս երբ Խիկարայ զրուցին հայերէն թարգմանութեան մասին խօսք ըլլար՝ միակ բնագիր մը կար որ ծանօթացած էր տպագրութեամբ, այն՝ զոր վերն առիթ ունեցանք յիշելու, "Պղնձէ քաղաքի„ կից տպագրուած քանի մ'անգամ, աղաւաղ լեզուաւ եւ փոփոխեալ բնագրով։ Այժմ ընտրելագոյն բնագիր մ'ալ ունեցանք՝ հայագէտ Կոնիբերի հրատարակութեամբ, այլեւայլ ձեռագրաց համեմատութեամբ, ինչպէս արդէն յառաջ յիշեցինք։ Հոս պէտք էինք ըստ այսմ միայն վերջինս առնուլ քննութեան, թողլով առաջին աղաւաղեալն. սակայն ամբողջութեան համար աւելորդ չենք համարիր քանի մը խօսք ալ ըսել նաեւ առաջնոյն մասին։

Յիշեցինք "Պղնձէ քաղաքին„ բազմաթիւ տպագրութիւնքն այսինքն՝ Կ. Պ. 1708, 1731 եւ հատուած մը հին տպագրութեան ($B^1$), 1807 ($B^2$), 1834 [1] ($B^3$), 1850 ($B^4$) եւ 1861. իսկ հայագիտին հրատարակութիւնը կը նշանակենք A տառով։ Հարեւանցի համեմատութիւն մ'այս երկու խմբերուն (A եւ B) կը ցուցընէ որ տարբեր բնագիր մը չէ նաեւ տպագրուածը, եւ ո՛չ նոր թարգմանու-

---

[1] Վերը՝ ուսումնասիրութեանս ներածութեան մէջ՝ ուր յիշած էինք "Պղնձէ քաղաքին„ եւ յարակից Խիկարայ տպագրութիւնքն, մոռցած էինք նշանակել այս 1834ի տպագրութիւնն՝ "Պատմութիւն Պղնձէ Քաղաքին, յորում են բանք խրատականք եւ օգտակարք Խիկարայ իմաստնոյ եւ այլ բանք պիտանիք . . . տպեալ վերստին 1834 յՕրթագիւղ ՌՄՁԳ, ի տպարանի Պօղոսի Արապեան Ապուչեխցւոյն„։ 8° էջք 202. Խիկար՝ էջ 72–105։

*թիւն մը՝ ըսենք արաբերէնէ, ինչպէս կրնար թերեւս կարծուիլ, եթէ մէջտեղ չըլլար հնագոյն հայերէնը։ Ընդհակառակն* B *ուրիշ բան չէ, բայց եթէ հնագոյն հայերէն բնագիրը, ծայրէ ծայր ռամկացած լեզուաւ եւ աւելի կամ նուազ համառօտուած. միւս կողմանէ նաեւ այնպիսի տարբերութիւններով տեղ տեղ՝ որ մեր ձեռք եղածներէն քիչ մը տարբեր հայ ձեռագիր մը կ'ենթադրէ իբրեւ նախագաղափար գործածուած։ Նոյն իսկ տպագրութիւնքն իրարու հետ բոլորովին նոյն չեն. եւ եթէ ուզենք կրնանք երկու խմբի բաժնել. առաջինները* ($B^{1-2}$) *իրարու հետ նոյն են՝ աննշան տարբերութեամբ. իսկ վերջինները* ($B^{3-4}$ *եւն*) *բաւական կը շեղին միւսներէն։ Այս զանազանութիւնը որ կը տեսնուի յաճախ նաեւ մանրամասնութեանց մէջ,*[1] *գլխաւորաբար յայնմ է որ վերջինքը քիչ մը մեղմած են չափազանց խորթ օտարաբանութիւնքն. քանի մը կտոր ալ դուրս թողած։*

*Փոխանակ երկար բացատրութեանց՝ լաւագոյն կը համարինք հոս դէմ առ դէմ դնել քանի մը կտոր երկու բնագիրներէն* (A *եւ* B), *որով աւելի պայծառ կը տեսնուին երկուքին տարբերութիւնքն խմբագրութեան, ռամկացման լեզուի, եւ աղաւաղմանց երկու կողման ալ։ Տպագրութեանց տարբերութիւնքն ալ նշանակած ենք՝ միայն գաղա-*

---

[1] *Այսպէս նոյն իսկ վերնագիրը՝* B1—2 "*Խրատք պիտանիք եւ օգտակարք զոր ասացեալ է Խիկարայ իմաստնոյ.*" B3—4 "*Խրատք Խիկարայ զոր ետ որդւոյն իւրոյ Նաթանայ։*" *Դից անուանքն՝* B1—2 "*Բելշիմ եւ Շահմիմ.*" B3—4 *Բելշիմ եւ Շահիմ.*" (A *Բելշիմ եւ Շիմիլ եւ Շամին։*) *Խրատներէն ի միջի անթիւ այլոց՝* B1—2 "*զմարդոյ կապած եւ մօհրածն*" (B3—4 *եւ կնքածն*) *մի՛ արձակեր.*" — "*Լաւ է իմաստուն մարդոյն հետ* (B3—4 *ընկեր*) *քար կրելն.*" — "*Մի լինիր լեղէ* (B3—4 *դառն*) *որ թքանեն զքեզ*", *եւն եւն։ Անհնար է մանրամասնութիւնքն յառաջ բերել. այնչափ բազմաթիւ են։*

փար մը տալու համար անոնց զանազանութեանց։ Առնուած են հոս քանի մը կտոր Խրատներէն կամ Խիկարայ “Իմաստութենէն„[1]։

A (Հին բնագիր։)

1. Որդեակ՝ եթէ [բարձր են չեմք տան քո եւ[2]] ընկերն քո հիւանդանայ, մի ասեր թէ զի՞նչ տանիմ նմա. այլ երթ ոտիւք եւ տես աչաւք. զի լաւ է նմա քան զհազար քանքարս ոսկոյ եւ արծաթոյ։

2. Որդեակ, ի կոչնատանէ եւ ի հարսանեաց յառաջ ել (ձռգր. “յառաջել„) քան զընկերն քո, եւ այլ մի դառնալ յետս. զի անուն քո բարի առնուս եւ չառնուս վէրք ի գլուխ քո[3]։

$B^{1-4}$ (տպագիրք։)

1. Որդեակ, եթէ ընկերն քո հիւանդ է, մի ասեր ի միտ քում ($B^{1-2}$ ի միտքդ) թէ տանձ կամ խնձոր գտանեմ ($B^{1-2}$ գտնում) եւ ապա երթամ ի տես, այլ երթ ոտիւք եւ տես աչօք. զի զհիւանդն դատարկ տեսանել շատ լաւ է քան զբազում միրգս տանել ($B^{1-2}$ քան զբազում կամակս ուտելոյ։)

2. (Միայն $B^{1-2}$) Որդեակ, ի կնոջէ յօտարէ եւ ի հարսնետանէ ($B^{2}$ հարսնատընէ) քան զընկերան յառաջ ել եւ գնա, եւ այլ մի դառնայր որ հարկեւոր լինիս. ապա թէ դառնաս՝

---

1 Պատմական մասերը համեմատաբար աւելի մեծ նմանութիւն ունին. թէեւ այն ալ նոր խմբագրուած է ի B. եւ դարձեալ աւելի համառօտուած է հոն քան հնագոյն բնագրին մէջ։

2 Փակագծեալն անյարմար է եւ պէտք է ջնջել, որդէն չունին զայս երեք ձեռագիր Bod., 58 եւ Canon. եւ կրկնութիւն է ուրիշ առածի մը սկզբան. Հմմտ. (էջ 131) “Որդեակ՝ եթէ բարձր են չեմք (Ven. չէնի, Bod. 58 չեմք փոն քօ) ցերկկինան կարեւ կանկուն Է, յորժամ մտանիցես՝ խոնարհեցոյ զգլուխ քո։„

3 Ven. չունի “քան զընկերն քո„, եւ փոխարէն կը կարդայ “մի դառնալ յետս„ (ուրիշներ չունին “յետս։„) Ամէնքը կը կարդան “զի անուն բարի„ եւն. միայն Canon, “Հեռացեալ որ անուշ իւղով օծեցիր զգլուխ քո„։ Կոնիբիր (էջ 32 եւ 136) կը նախընտրէ կարդալ՝ “զի անուշ քո բարի առնուս„ եւն, վերջինս աւելի համեմատ ընդլալով Արաբայն (էջ 63, թիւ 43)՝ “Որդեակ, դարձիր յետ առաջին բաժա-

*փոխարէն հարկացդ առնուս անարգութիւն.* — (B³—⁴ *չունի*[1]*:*)

3. *Որդեակ, լաւ է կող մի ի ձեռին քո քան զգէր բուծ մի յայլոց ձեռին. լաւ է ճնճղուկ մի ի ձեռին քո՝ քան զհազարս յերկինս թռուցեալ. լաւ է ուլ մի* [*ի*] *պատարագ ի տան քում քան զուարակ մի ի տան այլոց*[2]*:* — *Որդեակ լաւ է աղքատութեամբ ժողովել՝ քան կմեծութեամբ ցրուել:*

3. (*Միայն* B¹—²) *Որդեակ, լաւ է կողմ ի՛ ձեռին քում քան թէ շորէկ* (B² *շարիք*) *ի յայլոց ձեռքն: Որդեակ լաւ է ուլ մի ի ձեր տան զենած քան եզ մի ի տունս այլոց:* — (B³—⁴ *չունի:*)

4. (*Ազաւաղ.*) *Որդեակ, մի խնամխաւսութիւն մի առնել. զի զբարին յԱստուծոյ եւ յուզակէ* (*ձոգր.* "*յուջա-*

4. (B³—⁴) *Որդեակ, մի պատճառ լինիր հարանա-ցուցանելոյ զդուստր ուրուք ընդ առն օտարի. զի թէ*

*կին, եւ մի յամենար յանոյշ ըմպելիս* (*կրնայ ուղղուիլ ա-սորին՝* "*յանոյշ օծանելիս*"*.*) *ապա թէ ոչ ունիցիս վերս ի ձեռին*"*:*

1 *Ասոր փոխարէն* B³—⁴ *ունին հետեւեալը՝* "*Որ-դեակ, եթէ գնաս ի հրաւիրեալ տեղիս յորում գտանի քան զքեզ մեծ եւ յարգի, մի նստիր ի վերին կողմն, զի յետոյ սակաւ առ սակաւ իջանես ամօթով ի ստորին կողմն.*" — *Սլաւականն այսպէս ունի* (*էջ* 6, *թ.* 52) "*Որդեակ, եթէ կոչէ ոք զքեզ ի հանդէս, մի երթար յետ առաջին հրաւիրանացն. եթէ կոչիցէ զքեզ երկրորդ անգամ՝ տես-ցես եթէ մեծարոյ համարի զքեզ եւ մտցես առաջի նորա պատուով:*"

2 Ven. *եւ* Canon *ունին* "*յերկինս թռուցեալ.*" *միւսներն՝* "*ընդ յաւդս թռուցեալ:*" Bod. *եւ* Canon "*ուլ մի պատարագ ի տան քում.*" Ven.՝ "*ուլ մի ի տան քում պորպորփ*"*:* — *Ասորին այսպէս ունի* (*էջ* 62, *թիւ* 51) "*Որ-դեակ, լաւ է գաւազան թմբկի ի ձեռին քում քան թեւ մի յաման այլոց. լաւ է ոչխար մի ի ձեռին քան երինջ որ հեռի է. լաւ է աղքատութիւն որ ժողովէ քան մեծութիւն որ ցրուէ* (— *Հայուն քով առանձինն առած է.* —) *լաւ է ճնճղուկ մի ի ձեռին քում քան զհազարս թռուցեալս. լաւ է զգեստ բրդեայ ի թիկունս քո քան զկերպաս աղնիւ եւ զմետաքս ի թիկունս այլոց:*"

կէ„) տեսանուն, եւ զչարն ի քէն է եւ ասեն զքո դէմ հանողն։[1]

յետոյ այրն վատ լինի՝ անիծանեն զքեզ. եւ թէ աղէկ լինի՝ ոչ յիշեն բնաւ զքեզ։ — (B¹⁻²) Որդեակ, ընդ մարդոյ կնոջ մի խնամախօսիր, զի թէ գէշ լինի՝ անիծանեն զքեզ. եւ թէ աղէկ լինի՝ ոչ յիշեն զքեզ։

5. Որդեակ, որ զաւրաւոր է քան զքեզ մի հակառակիլ ընդ նմա. զուցէ սպանանիցէ զքեզ։

5. Որդեակ, ով ոք քան զքեզ պինդ երես է, մի հակառակեր ընդ նմա։

6. Որդեակ, մինչդեռ կաւշիկդ ի յոտսդ է (ձռգր. "ի յոտտ է„), կոխեա զփուշն եւ արա ճանապարհ որդոց (այլք՝ "ոտից„) քոց։[2]

6. Որդեակ, մինչդեռ կօշիկդ յոտս քո է, կոխեա զփուշն, եւ արա ճանապարհ ընկերի քում որ ընդ քեզ գնալոց (B¹⁻² գալոց) է։

7. Որդեակ, յաւուր զոհից մի խոտորիր, զուցէ ոչ հաճեսցի Տէր ի զոհս քո։

7. (Միայն B¹⁻²) Որդեակ, յաւուր զոհից քոց առատ բռնէ զձեռքդ որ աչք մարդոյն ի ձեռն քո չմնայ. քանզի ոչ հաճի Աստուած. եւ դու ի մարդկանէ անարգիս։ (B³⁻⁴ չունին։)

8. Որդեակ, եղեր ինձ որպէս կարիճ՝ որ եհար զասեղն. ասէ ասեղն՝ ահա խայթոց որ չար է քան զքոյդ։ Դարձեալ եհար զթաթն ուղտուն, եւ նա եհար զթաթն ի վերայ նորա եւ ճմլեաց զնա եւ ասէ՝ գերի, ո՞չ գիտէիր եթէ

8. Եղեր ինձ, որդեակ, որպէս կարիճն այն որ եհար զասեղն, որ ասղան (B¹⁻² ասղին) ծայրն չար էր քան զիւրն։ Եւ դարձեալ եհար զոտից ուղտուն (B¹ "եւ գահեալ եհար զնա թանոտից ըղտուն.„ B² "եւ դարձեալ իբրեւ զայն որ

---

1 Յայտնապէս նոր խմբագրուած է առածս եւ աղաւաղած, որով մթին եղած է իմաստը։ Իմաստն ամէնէն լաւ պահած է B₁₋₂, որուն հետ ճիշդ նոյն է նաեւ Ասորին (էջ 65, թիւ 68։)

2 Ամէն ձեռագիրք ունին "արա ճանապարհ ոտից քոց.„ միայն Canon պահած է ուղիղ ընթերցուածն՝ "որդւոց քոց„ համեմատ Ասորւոյն (էջ 61, թիւ 13 "... որդւոց քոց եւ թոռանց քոց։„)

փոխարէն հարկացդ առնուս անարգութիւն. — (B³—⁴ չունի[1]:)

3. Որդեակ, լաւ է խող մի ի ձեռին քո քան զգէր բուծ մի յայլոց ձեռին. լաւ է ճնճղուկ մի ի ձեռին քո՝ քան զհազարս յերկինս թռուցեալ. լաւ է ուլ մի [ի] պատարագ ի տան քում քան զուարակ մի ի տան այլոց[2]: — Որդեակ լաւ է աղքատութեամբ ժողովել՝ քան պմեծութեամբ ցրուել:

3. (Միայն B¹—²) Որդեակ, լաւ է խոզ ի ձեռին քում քան թէ չորէկ (B² չարիք) ի յայլոց ձեռքն: Որդեակ լաւ է ուլ մի ի ձեր տան զենած քան եզ մի ի տունս այլոց: — (B³—⁴ չունի:)

4. (Ազաւաղ.) Որդեակ, խնամիխաւսութիւն մի՛ առնել. զի զբարին յԱստուծոյ եւ յաղակէ (ձռգր. "յաջա-

4. (B³—⁴) Որդեակ, մի պատճառ լինիր հարսնացուցանելոյ զդուստր ուրուք ընդ առն օտարի. զի թէ

կին, եւ մի՛ յամենայն յանոյշ ըմպելիս (կրնայ ուղղուիլ աւտրին՝ "յանոյշ օծանելիս„.) ապա թէ ոչ ունիցիս վէրս ի ձեռին„:

1 Աստ փոխարէն B³—⁴ ունին հետեւեալը՝ "Որդեակ, եթէ գնաս ի հրաւիրեալ տեղիս յորում գտանի քան զքեզ մեծ եւ յարգի, մի՛ նստիր ի վերին կողմն, զի յետոյ սակաւ առ սակաւ իջանես ամօթով ի ստորին կողմն.„ — Սլաւականն այսպէս ունի (էջ 6, թ. 52) "Որդեակ, եթէ կոչէ ոք զքեզ ի հանդէս, մի՛ երթար յետ առաջին հրաւիրանացն. եթէ կոչիցէ զքեզ երկրորդ անգամ՝ տեսցես եթէ մեծարոյ համարի զքեզ եւ մտցես առաջի նորա պատուով:„

2 Ven. եւ Canon ունին "յերկինս թռուցեալ.„ միւսները՝ "ընդ յաւդս թռուցեալ:„ Bod. եւ Canon "ուլ մի պատարագ ի տան քում.„ Ven.՝ "ուլ մի ի տան քում ղարարփ„: — Ասորին այսպէս ունի (էջ 62, թիւ 51) "Որդեակ, լաւ է գաւազան թմբկի ի ձեռին քում քան թէ մի յաման այլոց. լաւ է ոչխար մի ի ձեռին քան երինջ որ հեռի է. լաւ է աղքատութիւն որ ժողովէ քան մեծութիւն որ ցրուէ (— Հայուն քով առանձինն առած է. —) լաւ է ճնճղուկ մի ի ձեռին քում քան զհազարս թռուցեալս. լաւ է զգեստ բրդեայ ի թիկունս քո քան զկերպաս աղնիւ եւ զմետաքս ի թիկունս այլոց:„

կէ„) տեսանուն, եւ զչարն ի քէն է եւ առեն զքո դէմ հանողն։[1]

յետոյ այրն վատ լինի՝ անիծանեն զքեզ. եւ թէ աղէկ լինի՝ ոչ յիշեն բնաւ զքեզ։ — (B¹⁻²) Որդեակ, ընդ մարդոյ կնոջ մի խնամախօսիր, զի թէ գէշ լինի՝ անիծանեն զքեզ. եւ թէ աղէկ լինի՝ ոչ յիշեն զքեզ։

5. Որդեակ, որ զաւրաւոր է քան զքեզ մի հակառակիլ ընդ նմա. գուցէ սպանանիցէ զքեզ։

5. Որդեակ, ով որ քան զքեզ պինդ երեւ է, մի հակառակեր ընդ նմա։

6. Որդեակ, մինչդեռ կաւշիկդ ի յոտսդ է (ձռգր. "ի յոտտ է„), կոխեա զփուշն եւ արա ճանապարհ որդոց (այլք՝ "ոտից„) քոց։[2]

6. Որդեակ, մինչդեռ կօշիկդ յոտս քո է, կոխեա զփուշն, եւ արա ճանապարհ ընկերի քում որ ընդ քեզ գնալոց (B¹⁻² գալոց) է։

7. Որդեակ, յաւուր զոհից մի խոտորիր, գուցէ ոչ հաճեսցի Տէր ի զոհս քո։

7. (Միայն B¹⁻²) Որդեակ, յաւուր զոհից քոց առատ բռնէ պձեռքդ որ աչք մարդոյն ի ձեռն քո չմնայ. քանզի ոչ հաճի Աստուած. եւ դու ի մարդկանէ անարգիս։ (B³⁻⁴ չունին։)

8. Որդեակ, եղեր ինձ որպէս կարիճ՝ որ եհար զասեղն. ասէ ասեղն՝ ահա խայթոց որ չար է քան զքոյդ։ Դարձեալ եհար զթաթն ուղտուն, եւ նա եհար զթաթն ի վերայ նորա եւ ճմլեաց զնա եւ ասէ՝ գերի, ո՞չ գիտէիր եթէ

8. Եղեր ինձ, որդեակ, որպէս կարիճն այն որ եհար զասեղն, որ ասղան (B¹⁻² ասղին) ծայրն չար էր քան զիւրն։ Եւ դարձեալ եհար զոտից ուղտուն (B¹ "եւ դահեալ եհար զնա թանոտից ըղտուն.„ B² "եւ դարձեալ իբրեւ զայն որ

---

1 Յայտնապէս նոր խմբագրուած է առածս եւ աղաւաղած, որով մթին եղած է իմաստը։ Իմաստն ամէնէն լաւ պահած է B₁₋₂, որուն հետ ճիշդ նոյն է նաեւ Ասորին (էջ 65, թիւ 68։)

2 Ամէն ձեռագիրք ունին "արա ճանապարհ ոտից քոց.„ միայն Canon պահած է ուղիղ ընթերցուածն՝ "որդւոց քոց„ համեմատ Ասորւոյն (էջ 61, թիւ 13 "... որդւոց քոց եւ թոռանց քոց։„)

շունչ եւ հոգի քո ի յոտս իմ էր։

եհար զոտից ըղտուն.„) որ հարեալ զթաթն կարճին՝ սատակեաց զնա. (B[1-2] եւ նա հարեալ զթաթն ի վերայ կարճին սատակեաց զնա.„ B[1] ... "սատակեցոյց ...„։)

Այսչափն ալ բաւ համարինք անթիւ ուրիշներուն մէջէն քաղելով. վասն զի՝ եթէ լիակատար համեմատել ուզէինք՝ պէտք էինք բովանդակ վէպը յառաջ բերել։ Այս համեմատութիւնքն արդէն գաղափար մը կու տան այն աղերսին մասին զոր ունին նախ տպագիրք իրարու հետ, երկրորդ՝ հնագոյն հայերէնին հանդէպ, երրորդ՝ վերջնոյս ալ ձեռագրաց պէսպիսութիւնքն եւ վերջապէս չորրորդ՝ հայերէնին միւս բնագրաց (յատկապէս ասորերէնին) հետ ունեցած կապը։

Միտ դնելու է միայն որ երբեմն նաեւ աղաւաղ տպագիրքն աւելի լաւ ընթերցուածներ պահած են քան հնագոյն բնագրին ձեռագիրները։ Շատերուն մէջէն ահա քանի մ'օրինակ։ Խիկար կ'ըսէ որ լաւ է աչքով կոյր քան մտօք. վասն զի աչօք կոյրը կրնայ սորվիլ "զերթեւեկ ճանապարհին, իսկ կոյր մտաւքն թողու զուղղորդ ճանապարհն եւ երթայ ըստ կամս իւր„. (ըստ ձեռագրաց։) Հոս տպագիրք ունին՝ "եւ կոյրն մտօք գնայ կամակոր։„ Վերջինս ("կամակոր„) շատ աւելի լաւ կը բացատրէ իմաստը քան հնագունին "ըստ կամս„ գրելը. բայց սակայն նոյնը կը հաստատէ Արաբացին (Թիւ 44 "...երթայ խոտորնակ„) եւ Ասորին (Թիւ 48 "երթայ մոլորեալ։„) Կամ՝ ուրիշ օրինակ մը բերելու համար՝ յիշեցինք արդէն Խիկարի այն խրատը թէ "ցածոյ ղաւչ քո եւ կակղացո զբարբառ բերանոյ քո„՝ պոռալով խօսիլն անզգամութեան նշան ըլլալով. "զի (— կ'ըսեն ձեռագիրք —) եթէ աղաղակաւ տաճար շինէր՝ էշն ամէն աւրն է. դարբաս շինէր եւ չարտախ։„ Արդէն այս տողը կը ցուցընէ թէ որչափ աղաւաղած եւ ռամկացած է տեղ տեղ նաեւ մեր

“հնագոյն„ կոչած հայ բնագիրը։ Աղաւաղութեան հետ թերութիւնն ալ բացորոշ կ՚ըլլայ՝ եթէ համեմատենք տպագրին ընթերցուածը (— զոր ունին միայն $B^{1-2}$ —,) այսինքն՝ “Որդեակ թէ կանչելով մարդ տուն չինէր, նա էշն օրն ութ դարպաս կու չինէր. Եւ թէ է սաստիկ զօրութենէ եղէն վարէ լաւծն՝ նա ($B^4$ լաւն) է պարանոցէն ու ելանէր։„ Վերջին համեմատութիւնս ըստ այսմ պահած է միայն $B^{1-2}$՝ ի հարկէ դարձեալ աղաւաղ. վասն զի Ասորւոյն համեմատ (Թիւ 8) այսպէս ըլլալու է՝ “եւ թէ ի սաստիկ զօրութենէ վարէր արօր, ոչ ելանէր լուծն (բուն “խոփ„) ի պարանոցէն ուղտուն.„ Նոյնպէս Արաբացին (Թիւ 11։) Կ՚երեւայ թէ $B^1$ օրինակին “լաւն„ անհնար ընթերցումն՝ աղաւաղ մնացորդ մըն է “ուղտուն„ բառին։ Ցամենայն դէպս կը հաստատուի տպագրին ընթերցումը, որ ըստ այսմ հնագոյն ընթերցուած մը պահած է, մինչ արդի ձեռագիրք կորսնցուցած են նոյն խօսքը։

Ըստ այսմ Խիկարի հայ բնագիրը վերակազմելու համար այնպէս բոլորովին անտես ընելու չէ տպագիր ու ձեռագիր որեւէ օրինակ, որչափ ալ աղաւաղ ըլլան. քանի որ ի հարկէ կը պակսի բոլորովին վստահելի բնագիր մը մեծ հնութեամբ։ Այս վերջին պարագային բնականապէս ա՛լ պէտք չէր մնար աղաւաղ ու պղտոր աղբիւրներու դիմելու։ Սակայն առ այժմ երբ ձեռքերնիս չունինք այնպիսի հնութեամբ օրինակներ, ստիպուած ենք կշռել ամէն կէտ՝ որչափ ալ աղաւաղ կերպարանօք ներկայանայ մեզի։ Այս մասին կարեւոր պարագայ մըն ալ այն է՝ որ տպագիրք բաւական քանակութեամբ նոր նիւթեր ալ կը մատակարարեն, զորոնք չենք գտներ հայագիտին հրատարակած ընտրելագոյն բնագրին մէջ, յատկապէս նոր խրատներ կամ առածներ Խիկարու իմաստութեան շարքին մէջ։ Անշուշտ ոչ ամէն բան ապահովապէս հին ժամանակէ մըն է, ընդհակառակն շատ բան յետսամուտ

ալ ըլլալու է, բայց գոնէ ինչ ինչ բան ալ կրնայ հնագոյն հայ թարգմանութեան վերաբերիլ ըստ իմաստին (— արդի լեզուն ու ձեւը՝ ըսինք՝ ռամկացած եւ աղաւաղ է։—) Մաս մ՚այս նորնիւթերու կայ միայն $B^{1-2}$ խմբին մէջ, որ ըստ այսմ միայն պահած է զանոնք, մաս մ՚ալ բոլոր տպագրաց մէջ։ Ահա այս կարգի առածներէն՝ որ կը պակսին ի A, քանի մը հատ իբր օրինակ։

1. Որդեակ, անմիտ մարդոյ խրատ տալն այնպէս է, որպէս թէ ոք փոշի ցանէ ի գնացս գետոց. ($B^{1-2}$ ի գնացման գետոյ։)

2. ($B^{3-4}$) Որդեակ՝ եթէ առաքեսցեն զքեզ ի տեղի ինչ վասն բանի, լաւ ի միտ առ զբանն զոր ասելոց ես եւ ապա գնա. զի մի գուցէ յետոյ լինիցիս ծաղր առաջի այլոց։ ($B^{1-2}$ Որդեակ, մի լիցի զի առաքեսցեն զքեզ ի բան եւ դու ոչ իմանաս զբանն եւ երթաս, յետոյ այլ ոք ուղարկեն որ երթայ ի բանն եւ դու ծաղր լինիս։[1]

3. Որդեակ, լաւ է աղջիկ որ ծնանի եւ շուտ մեռանի, քան թէ ապրի եւ ազգին իւրոյ լինի նախատինք։

4. Որդեակ, ի յապարանս թագաւորաց մի մտաներ եւ ընդ կնոջ դատաւորի մի՛ խօսիր[2]։

5. Որդեակ, եթէ զմարդն ի կախել ($B^{1-2}$ մարդն որ ի կախել) տանին՝ մի՛ յառաջ նորա ընթանայր, զի մի մատնեսցէ զքեզ եւ ասասցէ

---

[1] Նման՝ բայց ոչ նոյն առած մը կը գտնենք նաեւ յA. (էջ 135), այսինքն՝ “Որդեակ, եթէ զայր իմաստուն առաքես ի բան՝ մի՛ ինչ պատուիրել. ինքն կատարէ զբանն։ Ապա թէ զանմիտն առաքես՝ առաջի բազում մարդկան պատուիրեա (ձռգր. “պատուիրէ.„) եւ կամ դու գնա եւ մի՛ յղեր.„ (ձռգր. “յըղեր։„) Այսպէս նաեւ Ասորին (էջ 63, թիւ 41), որ սակայն վերջին մասն այսպէս ունի՝ “ապա թէ զանմիտն առաքել կամիս՝ դու գնա եւ մի յղեր։„

[2] Այս առածը հնագոյն հայերէնին մէջ ալ անհրաժեշտ գտնուելու էր։ Հնագոյն առածներէն է, ինչպէս կը վկայէ Ասորին ալ. (էջ 65, թիւ 58) “Որդեակ, ի բուրաստանս իշխանաց մի՛ մտաներ, եւ առ դստերս իշխանաց մի՛ մերձենար։„

($B^{1-2}$ առէ) թէ Նա եւս իմ ($B^{1-2}$ նա այլ իմ) ընկեր է։

6. Որդեակ, յորժամ երթաս ի հարսանիս կամ ի մեռելոյ տուն ($B^{1-2}$ մահատուն), յառաջ հաց կեր ի տունդ եւ ապա գնա. զի թէ հարսանիս է՝ ի շատ խնդութենէն մոռանան զքեզ ($B^{1-2}$ հոգ չանեն զքեզ), եւ թէ մեռելոյ տուն ($B^{1-2}$ մահատուն) է՝ ի շատ տրտմութենէն մոռանան զքեզ, եւ դու մնաս քաղցեալ ($B^{1-2}$ անօթի։)

7. Որդեակ, կամուրջ մի հեռի գնալ անցանել լաւ է քան մտանել ($B^{1-2}$ մտնուլ) ի ջուր մօտիկ։

8. Որդեակ, եթէ տեսանես զերիտասարդն թռուցեալ յօդս՝ մի հաւատար գործոց նորա, զի բան ծերոցն հաստատ է, բայց երիտասարդին ոչ։ — $B^{1-2}$ վերջը՝ "բայց երիտասարդ որդւոյն ($B^{1}$ բայց յեսս որդին) ոչ, ահա օրինակ սորա տասցեալ է թէ իբր բերան առիւծու որ զերծուցանէ զնա։"

9. Որդեակ, լաւ է ստանալ ձի ծոյլ եւ պղերգ ($B^{1-2}$ ձի սմակել) եւ էշ ըստ (խիստ) վարուք քան թէ ծառայ փախչօղ եւ ստասաց ($B^{1}$ սուտասաց[1])

10. Որդեակ, որպէս լերինք շտեմարանք սառացն են, նոյնպէս եւ նենգաւորք՝ բնակարան չարեացն են,

11. Որդեակ, տեսի զգազան կատաղեալ որ [յ]արձակեցաւ ի վերայ իմ, ոչ երկեայ ($B^{1-2}$ վախեցայ) ի նմանէ. եւ հանդիպեցայ թշնամւոյ իմոյ, ոչ յաղթեցայ ի նմանէ ($B^{1-2}$ ոչ յաղթեաց զիս). բայց հանդիպեցայ կնոջ լեզուանւոյ, յաղթեցայ ի նմանէ։

12. (Միայն $B^{1-2}$) Որդեակ, յորժամ լինիցիս այլոց տան հիւր՝ եթէ օձ եւ կարիճ բերեն առաջի քոյ՝ մի քամահեր ($B^{2}$ մի քալեջեւան) եւ մի գանկատեր։

13. (Միայն $B^{1-2}$) Որդեակ, մին ապրանք որ քո չէ՝ մի ստանար եւ տար այլոց։

---

[1] Այս ալ կը հաստատուի Ասորականովն (էջ 62, թիւ 24) "Որդեակ, ստացիր եզն [յոյր եւ] որ անկանի յերկիր, եւ էշ որ ունիցի սմբակս խիստս, բայց մի ստանար ծառայ (գերի) որ փախչի եւ աղախին որ գողանայ. զի մի կորուսցեն զամենայն զոր ստացեալ է քո։"

14. Որդեակ եղեր ինձ որպէս վայրենացեալ եզն որ էարկ զտորգն (B[1–2] զտոճն) եւ անկաւ վարոցն, եւ վիրաւորեցաւ իւր ոտքն։

Այս օրինակներէն կը տեսնուի որ տպագիրք բաւական տարբեր ձեռագիր մը կ'ենթադրեն իբրեւ գաղափար, որ նաեւ պահած էր ինչ ինչ բան հնագոյն, որ արդի ձեռագիրներուն մէջ կորսուած է, ինչպէս վերոյիշեալ Թ. 4 եւ 9 կտորները, որոնք Ասորւոյն վկայութեամբ կը հաստատուին։ Միւս կողմանէ կայ բան ալ որ յետոյ աւելցած է, զոր կրնանք տեսնել եթէ համեմատենք ձեռագիրներն իրարու հետ։ Անցնինք վերջինոյս։

Կոնիբերի իր հրատարակութեան համար գործածած է ութ ձեռագիր[1], որոնց էական տարբերութիւնքն ալ նշանակուած են ծանօթութեանց մէջ։ Այս ձեռագիրքն են՝ ա. (Bod.) Բոդլէեան Մատենադարանին մէկ ձեռագիրը՝ տակաւին չցուցակագրուած, թղթեայ նոտրգիր։ Խիկարի զրուցին սկզբան թուղթը պակասուած է։ — բ. (Ven.) Վենետկոյ հաւաքման Թ. 482 ձեռագիր մագաղաթեայ՝ բոլորգիր, անթուական, մերձաւորապէս ԺԵ. դարու վերջերէն կամ ԺԶ. դարու սկզբէն։ — գ. (Paris 92) Պարիսի Ազգային Մատենադարանի ձեռագիրն (Anc. fonds 92) թղթեայ, ինքնուրոյն տառաձեւերով։ Խիկարի զրուցին միայն վերջին կէսը (տպ. էջ 141 եւն) կը գտնուի ձեռագրիս մէջ (Թղ. 179 եւն.) պակսելով առաջին կէսը։ Վերջը դրուած յիշատակարանէն կ'իմանանք որ գրուած է ՌԿԸ (= 1619) թուականին[2]։ — դ. (Paris Sup. 58)

---

1 Ձեռագրաց մասին Կոնիբերի տուած տեղեկութիւնքն տես առ Հարրիս՝ էջ ԻԴ–ԻԶ։

2 Ձեռագրիս վերջը յիշատակարանն (տես էջ 161) այսպէս է՝ "Գրեցաւ Խիկարս եւ խրատ եւ պատմութիւնս Խիկարայ իմաստութիւն ի Թվ. ԶՃԿԷ. յուլիս ամսոյ ԺԲ.„ ուստի 1518 տարին գրուած է։ Հայագէտը նախամեծար համարած կ'երեւայ ՌԿԸ կարդալ։

Պարիսի ուրիշ մէկ ձեռագիրն (fonds Arm. Supplément 58) թղթեայ, նոտրգիր, ԺԷ. դարու յոռի գրչութիւն մը։ Այս ալ պակասաւոր է. սկզբէն հասնելով մինչեւ տպագրութեան էջ 141 կ'ընդհատի. (Թղ. 253 եւն։) — ե. (Paris 131) Նոյն գրատան երրորդ մէկ ձեռագիրն (Anc. fonds 131), թղթեայ, յոռի նոտրգիր, հաւանօրէն ԺԷ. դարէն. (Թղ. 213—228.) — զ. (Paris 69) չորրորդ օրինակ Պարիսի (Anc. fonds 69) թղթեայ, գեղեցիկ բոլորգիր, ԺԷ. դարէն։ Խիկարի պատմութեան սկիզբը կը պակսի, սկսելով միայն խրատներովն։ — է. (Bod. Canon.) ձեռագիր Բոդլեեան գրատան (Ms. Canon. Orient. 131) թղթեայ, գեղեցիկ բոլորգիր, սկիզբը՝ Խիկարայ զրոյցը (Թղ. 1—36։) Ձեռագիրս գրուած է 1697ին ի Նոր Ջուղայ՝ Հազրապետ երիցուէ Իսրայէլ անուն անձին համար։ Ցետոյ կու գայ վէպն Եօթն իմաստասիրաց եւ պատմութիւն Բարղամայ եւ Յովասափայ։ — ը. (Edjm.) ձեռագիր Էջմիածնի մատենադարանին, ըստ նոր ցուցակի Թ. 2048, թղթեայ, նոտրգիր, գրուած իբր 1600ին։ Ասոր միայն սկզբան յառաջաբանական մասն եւ առաջին ութ խրատները համեմատել կրցած է հայագէտը՝ 1891ին Էջմիածին այցելելուն։

Ասոնք են հրատարակութեան համար գործածուած ձեռագիրները։ Ի հարկէ կան շատ ուրիշներ ալ այլեւայլ հաւաքմանց մէջ ցրուած։ Հայագէտը նշանակած է չորս օրինակ Էջմիածնի հաւաքման մէջ, ըստ "Մայր Ցուցակի" (տպ. Տփղ. 1863) Թ. 1633, գրուած 1604ին. — Թ. 1995, գրուած 1605ին. — Թ. 1986, գրուած 1623ին, եւ Թ. 51, գրուած 1642ին. ամէնն ալ թղթեայ նոտրգիր[1]։

---

1 Տես "Մայր Ցուցակ", էջ 4 (Թ. 51) Լիմ՝ անապատ գրուած Սարգիս Երիսացի գրչէն, հաւաքածոյ մ'որուն "Ա. Վարք եւ Խրատք Եւագրի. Գ. Պատմութիւն եւ խօսք Խիկար իմաստասիրի ... Ը. Խօսք եւ Խրատք իմաստասիրաց" եւն. — էջ 181 (Թ. 1633) հաւաքածոյ, ուր կայ "Ա. Խօսք եւ

*Բրիտանական Թանգարանը նոր մտած է Թղթեայ նոտրգիր ձեռագիր մը՝ ԺԸ. դարէն։ Բերլինի Հաւաքումն ունի օրինակ մը 1698 տարին գրուած, որ ունի միայն Խրատները*[1] ։ *Ուրիշներ կրնան գտնուիլ կարծենք քիչ շատ ամէն կողմ։ Խիկար Հայոց մէջ սիրուած գրութիւններէն ըլլալով՝ ցանցառ չեն գրչութիւնք։*

*Պակասածն է հնագոյն օրինակ մը, վստահելի բնագրով՝ որուն համար կարենանք ըսել թէ մերձաւորապէս այն ընթերցումները պահած է, զոր ունէր հայերէն սկզբնագիրը կամ թարգմանչին գրչէն ելածը։ Ծանօթ բոլոր օրինակները խմբագրութիւններ կ'երեւան, քիչ կամ շատ այլայլած, լեզուն յաճախ ռամկացած, որչափ ալ յետականս “հնագոյն„ ձեւն ու հնոյն առոյգ լեզուն պահուած ըլլալով՝ հիմնապէս տարբերի “Պղնձէ Քաղաքին„ բոլորովին նոր խմբագրութենէն։ “Հնագոյն„ բնագիր մը փնտռելու պէտք չէր ըլլար, եթէ ընդունէինք որ առջեւնիս եղածն* (A) *թարգմանչին ալ գրածն ըլլայ, մերձաւորապէս ԺԲ—ԺԳ. դարու գործ, ժամանակին լեզուաւ՝ բնականապէս նախնեաց ռամկօրէնով փոխադրուած, ուստի տեսնուած ռամկաբանութիւնք նախնական ըլլան։ Սակայն անհնար է այս կարծիքն ունենալ։ Ռամկաբանութիւնք համեմատաբար քիչ են, եւ աւելի աղաւաղութիւնք կ'երեւան ձեռագրէ ձեռագիր տարբե-*

---

*Խրատք Խիկարայ առացեալ քեռորդւոյ իւրում„* — *էջ* 209 (*Թ.* 1986) *Ցօմար գրուած Մկրտիչ սարկաւագէ, այլեւայլ ուրիշ կտորներով, որոնց “Բ. Պատմութիւն Խիկարայ իմաստասիրի„ եւ “Ե. Պատմ. Գոգայ եւ Մագոգայ„ եւն.* — *էջ* 210 (*Թ.* 1995) *գրուած յիլով՝ “Թորոս գրչէ վահկացւոյ„ եթէ սխալ չենք հասկընար, պարունակելով ի միջի այլոց “ա. Պատմ. Ադամայ եւ Եւայի. Բ. Պատմ. եւ խօսք Խիկարայ իմաստասիրի„ եւն։*

[1] Ms. Or. Petermann I, 147, *տես* N. Karamianz, Verzeichnis etc. p. 65 (*Թիւ* 83, *Թղ.* 1–26.)

րելով, մեծագոյն մասն ընտիր եւ առոյգ գրական լեզու մը կը ցուցընէ։ Բաց աստի Թարգմանութիւնը ԺԲ. դարէն շատ յառաջ է, նոյն իսկ Ժ. դարէն կանուխ դարերով անգամ։ Այս խնդրոյն մասին կ'արժէ քիչ մ'երկար խօսիլ։

Հայերէն Թարգմանութեան հնութեան մասին հետեւեալ կարծիքը կը յայտնէ Կոնիբեր հայագէտը[1]. "Դժուար է հայ Թարգմանութեան ժամանակը ճշդիւ որոշել։ Վենետկոյ Թ. 482 ձեռագիրն ինծի ծանօթ ամենահինն է, եւ կրնանք իբր 1500ի գրուած համարիլ։ Սակայն բուն Թարգմանութիւնը շատ աւելի հին պէտք է որ ըլլայ։ Վասն զի այս ձեռագիրն արդէն այնպիսի բնագիր մը կը ցուցընէ՝ որ երկար պատմութիւն մ'ունեցած ըլլալու է։ Ընտիր յայտարար մըն է այն խումբ մը ձեռագրաց, մեծաւ մասամբ ԺԷ. դարու գրուած, եւ ամէնն ալ հասարակաց նախագաղափարէ մը յառաջ եկած։ Բայց արդէն այն նախագաղափարը բնագրի մեծամեծ փոփոխութիւններ կը պարունակէր, որոնցմէ ազատ էր այն օրինակը՝ որմէ յառաջ եկած է Բոդլէեան կանոն 131 (Bod. Canon. 131) գրչագիրը։ Ուստի բնագրին համար 1500էն յառաջ բաւական երկար ժամանակաւ պատմութիւն մ'ենթադրելու ստիպուած ենք։ Լեզուաբանական պատճառներով Թարգմանութիւնը կ'ուզէի վերագրել ԺԲ. կամ ԺԳ. դարուն։ — Թերեւս գտնուին հայ գրականութեան մէջ այս գրքին յիշատակութիւններ, որոնք Թարգմանութիւնն աւելի կանխագոյն ժամանակ մը դնել պահանջեն, բայց ինծի ծանօթ չէ հատ մ'ալ։ Արդարեւ Ղազար Փարպեցի՝ որ կը գրէ Ե. դարու վերջը, կ'երեւայ թէ կը ճանչնայ Խիկարայ Իմաստութեան մէկ առածը, բայց անհրաժեշտ չէ որ հայ Թարգմանութեան ծանօթ ըլլայ։ Միջագետաց Ամիթ քաղքէն կը գրէ. եւ

1 Տես Հարրիս՝ էջ ՁԱ։

յիշատակելով "Հայոց աշխարհի աղանդ" մը՝ յառաջ կը բերէ առածս թէ Խողի պէս հարսնացողին կը վայելէ կոյաջուր բաղնիք[1]։"

Հայագիտիս այս կարծեաց շատ կէտերուն լիովին համամիտ ենք, յատկապէս անոր՝ որ մեր առջեւն եղած հայ բնագիրն երկար պատմութիւն մ'ունեցած է՝ այլեւայլ խմբագրութիւններ եւ փոփոխութիւններ կրած ըլլալով մինչեւ նաեւ ԺԵ. դարուն վերջը, երբ արդի ծանօթ ձեռագիրները կը սկսին։ Այն լեզուական պատճառներն՝ որոնց համար ԺԲ—ԺԳ. դարերուն կը կարծէ վերագրել Հայ Թարգմանութիւնը, ըստ մեզ՝ ինչպէս արդէն յառաջ ալ ըսինք, պէտք են այլազգ մեկնուիլ, այսինքն այս ամէն ռամկաբանութիւնք եւն յիշեալ նոր խմբագրութեանց ու փոփոխմանց արդիւնքն համարելու է, եւ ոչ բուն Թարգմանչին գրչէն ելած։ Այս կէտս խնդրէ դուրս է անոր համար ալ՝ որ յիշեալ դարերէն շատ յառաջ ալ գոյութիւն ունէր Հայ Թարգմանութիւնը, ինչպէս դիւրին է ցուցընել։ Լաւագոյն է անոր համար Հայագէտին այն ըսածը թէ Հայ գրականութեան մէջ կրնան գտնուիլ յիշատակութիւններ որ Հայ Թարգմանութեան ժամանակը շատ աւելի հին ժամանակները հանել ստիպեն։ Յաջորդաւս քանի մ'այսպիսի յիշատակութիւններ յառաջ կը բերենք։

Փարպեցւոյն այն խօսքը, զոր Հայագէտը կը յիշէ, ամէնէն յառաջ արժանի է մտադրութեան։ Իւր առ Վահան գրած Թղթին մէջ Հայոց աբեղաներուն մասին կը գրէ.[2] "Իսկ Հայոց աշխարհի աղանդ՝ զոր ասեն, եւ անանուն է ըստ վարդապետի եւ անգիր ըստ բանի։ Ի հաւատոյ եւ յուսմանէ ոգէաք

---

1 Հայագէտն ի վերջոյ կը նշանակէ որ հոս "բնականապէս ակնարկութիւն եղած է այն նախամեծարութեան զոր Հայ մկրտողք կու տային աւազանին վրայ ջուր հոսեցընելուն." — խնդիր մ'որ մեր ծրագրէն դուրս է։

2 Փարպ. տպ. Վենետ. 1891—2. էջ 659։

երեւին, եւ ի գործս ծոյլք եւ անժոյժք. յորոց՝ ըստ անգիտութեանն՝ որ է ի նոսա, եւ ըստ անկարգ վարուց, այդպիսի իսկ արդարեւ աղանդոց վայել էր բուսանել, ըստ յօդուածոյ առաքելաբանութեանն թէ Ըստ խոզն հարանացելոյ՝ կոյաձոր բաղանիս:„ Ծանօթ է որ՝ ինչպէս վերն երկար բացատրեցինք, Խիկարայ այս առածին նման առած մ'ալ կը գտնուի Պետրոսի առաքելոյ թղթին մէջ: Սակայն հոս յայտնի է որ Փարպեցին Ս. Գրքէն չէր կոչեր, այլ "առասպելաբանութեան„ մը կամ Խիկարայ մէկ "յօդուածէն„, թէեւ իրեն անծանօթ չէր կրնար ըլլալ Ս. Գրոց ալ խօսքը: Ի հարկէ առածն ինքնուրոյն ձեւ մ'ունի Փարպեցւոյ քով, որով կրնայ խնդիր ըլլալ թէ արդեօք ստուգիւ հայ թարգմանութիւնն առջեւն ունէր՝ թէ ուրիշ բնագիր մը: Սակայն անհնար ալ չէ. եւ Փարպեցւոյ ուրիշ մէկ տեղը կարծես աւելի նմանութիւն մը կը ցուցընէ հայ բնագրին, որ դարձեալ կրնար նախնաբար Փարպեցւոյ ընթերցուածն ալ ունեցած ըլլալ[1]:

Պէտք չէ զարմանալ որ այսչափ մեծ հնութիւն կ'ուզենք տալ հայ թարգմանութեան: Եթէ նաեւ արդի օրինակները մաքրենք յետսամուտ ռամկաբանութիւններէն եւ աղաւաղումներէն — որ լիովին կը յաջողի ապահովապէս, եթէ բախտ ունենանք հնագոյն ձեռագիր մը գտնել, — այնպիսի ընտիր եւ մաքուր գրական եւ առոյգ լեզուաւ բնագիր մը կը տեսնենք որ չենք վարանիր նաեւ մինչեւ Է. կամ Զ. դար հանել նախնական թարգմանութիւնը: Նոյնն ծանօթ է արդէն նաեւ Եղիշէի, որ

---

1 Հմմտ. Փարպ. Պատմ., տպ. Վենետ. 1891, էջ 200 (Լ՜Բ) "Ընկալ զմեզ որպէս զորդին ուրացող որ ծախեալ աղտեղեցաք զհանդերձ սուրբ մկրտութեանն, զոր զգեցուցեր մեզ աւազանին լուացմամբ, անառակ անօրէնութեամբ խառնակեցաք ի գուբ ուրացութեանց իբրեւ զդաստակս խոզաց:„ Հմմտ. Խիկար (էջ 160) "զխոզն ի բաղանիս տարան, եւ նա անկեալ ի մօրասին խառնակէր„ եւն:

իւր Բ. յեղանակին մէջ կը գրէ[1]. “Կոյր զըկի ի ճառագայթից արեգական եւ ագիտութիւն զըկի ի կատարեալ կենաց։ Լաւ է կոյր աչօք քան կոյր մտօք„ եւն, բառ առ բառ նոյն Խիկարայ նաեւ արդի օրինակներուն ընթերցման հետ. (տես էջ 134։) Եղիշէի քով կան ուրիշ առածներ ալ, որոնք սակայն մասամբ խնդրական կը մնան[2], մասամբ ուրիշ աղբիւր մը կ'ենթադրեն։ Օրինակի համար առած (անդ՝ էջ 42.) “Նոյա էր փորեալ զխորխորատն, դուք ընդէ՞ր լցէք յառաջագոյն„, թէեւ Խիկարայ ալ առածներէն է, սակայն՝ ինչպէս վերը նշանակեցինք, նաեւ Ս. Գրոց մէջ կայ պէսպէս ձեւով. ուստի թէ Եղիշէի եւ թէ ուրիշ հայ մատենագրաց քով, որ յաճախ կը գործածեն նոյնը[3], պէտք չկայ որ անհրաժեշտ հայ թարգմանութենէն ծանօթ ըլլայ. այլ Ս. Գրքէն կրնան ըլլալ այն կոչմունքը։

Թերեւս այս կարգէն ըլլայ, սակայն Խիկարայ հետ իւր մեծ նմանութեանն համար մտադրութեան

---

1 Եղիշէ, տպ. Վենետ. 1889, էջ 13. տպ. Մոսկ. էջ 19։

2 Համմտ. այսպէս՝ էջ 13 “Եթէ կարի ոք առաւելեալ իցէ աշխարհական մեծութեամբ եւ մտօքն աղքատագոյն, այնպիսին ողորմելի է քան զքաղցեալս.„ եւ նմաններ, որոնք անշուշտ ուրիշ աղբիւրէ են։

3 Համմտ. Առակք ԻԶ, 27. Ժող. Ժ, 8 եւ նմաններ։ Հայ մատենագիրներէն համմտ. Խոր. Բ, ղբ (տպ. Վենետ. 1865 էջ 182) Տրդատայ դեղման առթիւ՝ “Վասն այսորիկ եկեսցէ ձեզ որոգայթ զոր ոչ ծանեայք եւ որսն զոր որսայցէք՝ ըմբռնեսցէ զձեզ եւ նովին որոգայթիւն անկջիք„ եւն (տես Սղմ. ԼԴ, 7—8, եւ նմաններ։) Յովհ. կթղ. (տպ. Երուսաղ. 1867, էջ 241) պատմելով Հասանայ Արծրունւոյ դաւն Աշոտայ Արծրունւոյ դէմ կը գրէ. “Եւ այսպէս գուբն զոր եւ փորեաց եւ պեղեաց Հասան, ի նոյն ընկլուզաւ զոր եւ գործեաց.„ (Համմտ. Սղմ. Է, 16, եւ նմաններ։) Նոյնը կը գրէ Ուխտանէս (Ա, ծե, տպ. Էջմ. 1871, էջ 74) Անակայ մասին գրելով՝ “Գուբն զոր փորեաց եւ պեղեաց՝ ինքն անկցի ի խորխորատն.„ եւ յաճախ այլուր։

արժանի է նոյն իսկ Եզնկայ մէկ վկայութիւնը, որ կը դրէ[1] "Եւ արդարեւ ոչինչ ընդ վայր տարացեալ է քան զիմաստնոյն՝ թէ Ծառայ որ ընդ ունկն ոչ լսէ՝ ընդ ողնաանան գան լսել նմա,„ նոյն Խիկարայ մէկ առածին հետ, որ նաեւ իւր արդի աղաւաղ օրինակներումն ալ ունի՝ (էջ 156)՝ "Որ ընդ ականջն ոչ լսէ՝ ընդ Թիկունսն լսեցուցանէն„ (Canon կցէ՝ "եւ ընդ լանջսն լսեցուցանեն:„) Բայց արդեօք Եզնիկ Խիկա՞ր կը հասկընայ այն "իմաստունն„, որմէ առած է խօսքս, խնդիր է՝ զոր չենք համարձակիր հաստատել. Թէեւ յայլուստ չենք գիտեր թէ ինչ աղբիւրէ քաղած է Եզնիկ[2]: Աւելի խնդրական կը մնայ հայ թարգմանութեան նկատմամբ. վասն զի ապահով չենք թէ Եզնկայ գրչէն ըլլայ այն եւ ոչ փոխառութիւն որեւէ՝ այժմ մեզի անծանօթ՝ գրքի, ինչպէս այնտեղէն քիչ մը յառաջ եղած բոլոր մասերը (Եզն. էջ 19—58) քաղուածոյ թարգմանութիւն են Մեթոդիոսէն: Նոյն առածը յետոյ Վարդան իւր Ծննդոց Մեկնութեան մէջ կը գործածէ այս ձեւով՝ "Լուիցեն թիկամբք զոր ոչ լուան ականջօք[3]:„

---

1 Եզնիկ, տպ. Վենետ. 1850, էջ 61 (Ա, ժե:)

2 Նման իմաստով խօսքեր՝ համմտ. Առակք ԻԹ. 19 "Բանիւք ոչ խրատի ծառայ խիստ. թէպէտ եւ իմանայցէ՝ չդնէ յունկան:„ — Սիրաք, Լ, 25 "Բուտ եւ բիր եւ բեռն՝ իշոյ. հաց եւ գան եւ գործ՝ ծառայից.„ Սիրաք, Լ, 27 "Լուծ եւ սանձտիք զպարանոց խոնարհեցուցանեն, եւ ծառայի չարագործի՝ ըկանք եւ տանջանք„ եւ նմաններ: Սակայն ճշդիւ Եզնկայ բացատրութեամբ առած մը չկրցանք գտնել Ս. Գրոց մէջ, ուստի իւր յիշած "իմաստունն„ ուրիշ անձ մ'ըլլալու է: Եզնկայ գերմ. թարգմանիչը (Schmid, Eznik, Վիեննա 1900, ընդ մամլով՝ էջ 56, ծան. 201) նոյնպէս չէ կրնար Ս. Գրքէն նոյն առածը գտնել, եւ նշանակած է միայն որ Գերմանացիք ալ նոյնպիսի առած մ'ունին՝ Wer nicht hören will, muss fühlen.

3 Տես նաեւ Հայկազն. Բառ. ի բառն "Մկանունք„

Աչ.քի կը զարնէ այն պարագան որ շօշափման կէտեր չենք գտներ Խիկարայ առածներուն եւ այն առածներուն մէջ, որ հաւաքուած են "Բանք իմաստասիրաց„ անուամբ[1], հաւաքում մ'որ յամենայն դէպս Է. դարէն շատ յառաջ թարգմանուած էր հայերէնի, ինչպէս ուրիշ տեղ մը ցուցուցինք։[2] Մէկ երկու բան որ կրնան համեմատութեան բերուիլ՝ այնպէս որոշ եւ ամէն տարակուսէ զերծ ալ չեն[3]։ Սակայն նոյն հաւաքումն առաւելապէս յոյն իմաստասիրաց վճիռները կը պարունակէ, եւ այնպիսի յոյն հաւաքման մը թարգմանութիւնն է, թէեւ մէջը մտած ըլլան սասրի եւ անտի առածներ։ Արեւելեան Խիկար դիւրաւ կրնար տեղ չգտնել այն առածաբաններուն շարքին մէջ։

Թ. դարէն Թովմաս Արծրունի բացայայտ կը գործածէ Խիկարայ առածները, ի միջի այլոց հետեւեալ տեղը[4]. "Որպէս եւ Դաւիթ ասէ՝ Պատապարեցայ եւ ոչ խռովեցայ. եւ այլ ոմն յարփարէն իմաստնոց ասէ՝ Ընդ աներկիւղի ի ճանապարհ մի երթար„ (ուրիշ օրինակ մը՝ "Ընդ աներկիւղի ի ճանապարհ մի երթայցես.„) բառ առ բառ Խիկարայ առածը յառաջ բերելով, որ է՝ (էջ 129) "Ընդ աներկիւղի ի ճանապարհ մի երթալ„[5] — Յաջորդ Ժ. դարէն

---

1 "Սոփերք Հայկականք„, Ա (Վենետ. 1853) էջ 9–59։

2 "Մատ. մանր Ուսումն.„ Ա (Վիեննա 1895), էջ 213—8։

3 Օրինակ համար (էջ 57) "Լաւ է ընդ առիւծու ի լերինս բնակել քան ընդ կնոջ անզգամի ի տուն։... Կարիճ մի սաէ ցկինն թէ՝ խայթոցս չար ոչ է քան զքո լեզուդ„ եւն (Հմմտ. Խիկ. էջ 157 Կարիճ եւ Ասեղ.) — Անդ՝ էջ 59 "Ցեսի կին մի պառաւ՝ ծարուրեալ եւ զարդարեալ եւ օծեալ„ եւն (Հմմտ. Խիկ. 127 "կին գեղեցիկ յունեալ եւ ծարուրեալ„ եւն։) եւ այլ ընդհանուր նմանութիւններ։

4 Թովմ. Արծր. Գ.ի (տպ. Պետրբ. 1887, էջ 228։)

5 Հմմտ. Նաեւ Թովմայի սա խօսքը (անդ՝ Ա, Ժ, էջ 64) "Զի մի հօտն առանց հովուի յանապատս եւ ի վէհս կորստեան թափառական յածիցին գայլոցն գահավիժու-

Ուխտանէս ալ քանի մ'առածաւոր խօսքեր ունի, որ նման են Խիկարայ առածներուն. սակայն ընդհանրապէս իւր յիշած "իմաստնոյն" խօսքերը Ս. Գրքէն ըլլալով՝ խնդրական կը մնան։[1] Նոյնպէս չենք կրնար ճշդիւ ըսել թէ Մովսիսի Կաղանկատուացւոյ ծանօթ էր արդեօք Խիկար. թէպէտ շատ նման բացատրութիւն մ'աչքի կը զարնէ, սակայն նոյնը սովորական է նաեւ Ս. Գրոց հեղինակներուն[2]։ Բայց յաջորդ ԺԱ. դարէն Արիստակէս Լաստիվերտացի գիտէ մեր "իմաստունը", բառական կոչում ալ ընելով Խիկարայ ինքնուրոյն մէկ առածը, Անւոյ առման առթիւ (յամի ՆՂԹ=1050) իւր հիւսած խորհրդածութեանց մէջ յիշելով առած-

---

թեամբ։" Տես Խիկար (էջ 133) "Խաշինք որ գիհէն ի զատ գնան՝ գայլոց մասն լիցին։" Ուրիշ տեղ մը (էջ 287) "իմացեալ է իմաստնոյն ասացեալն թէ՝ իմաստնոյ սուգ աւուրս է, իսկ անմտի՝ զամենայն ժամանակս կենաց", առնուած է Սիրաքէն. (ԻԲ. 13։)

[1] Տես Ուխտանէս, պատմ. Բ, ԺԹ (տպ. Էջմ. 1871) էջ 39՝ "Եւ ոչ գիտէր եղկելին թէ՝ Լաւ է թշնամի իմաստուն քան սիրելի անմիտ։ Եւ դարձեալ՝ Եթէ արդարն հարկանէ զքեզ, երթ զհետ նորա. զի նա է որ սիրէ զքեզ." (Հմմտ. Խիկար, էջ 128, Աստրին՝ վճիռ ՀԳ, եւն։) Ս. Գրքէն են ուրիշ վճիռներ, այսպէս՝ (Բ. կա, էջ 112) "Ըստ իմաստնոյն բանի... թէ՝ Որ ձգէ քար ի բարձունս՝ ի գլուխ իւր անկցի." (= Սիրաք, ԻԷ, 28. նման՝ Խիկար, էջ 157.) — Բ, կբ, էջ 116 "Քանզի ասաց ոմն յիմաստնոց թէ Ջալխս պատուեցի եւ առաջի ծերոց յոտն կացի. (տես Ղեւտ. ԺԹ, 32)... եւ այլ ոմն թէ՝ Ծերութիւն պատուականագոյն է" (Իմաստ. Դ, 8), եւ ուրիշ նմաններ։

[2] Կաղանկատուացի (Բ, ժդ, տպ. Մոսկ. 1860, էջ 134) Վարազ-Շապհոյ բերանը կը դնէ՝ Կաւատայ արքայի Բ. տարւոյ (629ին) դէպքը պատմելով՝ սա բացատրութիւնը. "Հոսեսցես զնոսա որպէս փոշի առաջի հողմոյ" եւն. (Հմմտ. Խիկար, էջ 141 "Հոսեաց որպէս զփոշի ընդդէմ հողմոյ"։) Սակայն նոյն բացատրութեան այլեւայլ ձեւերը տես Սղմ. Ա, 4. ԼԴ, 5. Իմաստ. Ե, 24. Եսայի, ԽԱ, 16, եւն եւն։

ներս՝[1] "Քանզի իմաստունն երգոյն, անմիտն հաւա-տոյ, որպէս իմաստոյն (օրինակ մը՝ "իմաստնոյն.) բերին բանք. եւ դարձեալ թէ՝ Բանք սորա պարարտ են իբրեւ զլոր, եւ անմիտք կլանեն զնա:" Համեմատենք Խիկարայ առածը (էջ 130) թէ՝ "Բան սորա որպէս լոր պարարտ է, բայց որ անմիտ է, նա կլանէ զնա." ինչպէս բառ առ բառ ունի նաեւ Ասորին. (Հարրիս՝ էջ 62, թիւ 25.) որ սակայն "լոր" բառին տեղ "ճնճղուկ պարարտ" կ'ըսէ, աւելի եւս հաստատելով թէ Լաստիվերտացի ստուգիւ հայ բնագրէն միայն գիտէր առածս:

Հասանք արդէն այնպիսի ժամանակ մ'երբ առածներս կը յիշուին ոչ միայն "Իմաստնոյ" մ'անուամբ, ինչպէս մինչեւ հիմայ տեսանք, այլ նաեւ իւր բուն "Խիկար" անուամբ: ԺԲ. դարուն Ն. Շնորհալի արդէն այնպէս ընդհանրացած գիտէ՝ որ նոյնը նաեւ իբր ածական կը գործածէ, գրելով՝ "Խելօքն ծով է ու խիկար"[2]. եւ այնպէս մնացած է անկէ վեր, ինչպէս արդէն առիթ ունեցանք յիշելու: Կը յաճախեն նաեւ հայ անձինք "Խիկար" անուամբ, որոնցմէ անձ մը 1455ին եւ ուրիշ մը 1627ին յիշեցինք արդէն, նոյնպէս "Խիկար-Մուրատ" բանաստեղծը (տես վերը ներած.:) ԺԵ. դարէն կը սկսին արդէն մեր արդի ձեռագիրներն, որով աւելորդ ալ է այս ժամանակներէն յիշատակութիւններ փնտռելն անգամ: Շատանանք յիշելով միայն Առաքելի Դաւրիժեցւոյ մէկ տեղն[3], ուր խօսելով Էջմիածնի պարտուց եւ Սահակ կաթողիկոսի փախստեան վրայ, իւր ձեռօքն օրինակի մը մէջ աւելցուցած է "ի բնագրին իբրեւ ծանօթութիւն" Խիկարայ՝ նոյն խնդրոյն շատ յարմար այս

[1] Լաստիվ. Պատմ. գլ. Ժ (տպ. Վենետ. 1844. էջ 41.)

[2] Ն. Շնորհ. տպ. Վենետ. 1830, էջ 562:

[3] Առաքել Դաւրիժեցի, Պատմ. գլ. ԺԹ, տպ. Էջմ. 1896, էջ 237, Ծան.:

առածը՝ "Կերայ դառնիճ եւ արբի լեղի, ոչ էր դառն քան զաղքատութիւն. բարձի աղ եւ զնարճիճ ի վերայ, ոչ էր ծանր քան զպարտս մարդոյն:" Յայտնապէս Դուրիժեցի գործածած է Էջմիածնի մէկ ձեռագիրն որ մեր ձեռքն եղածներուն կարգէն էր եւ ոչ հնագոյն. (տես Խիկար, էջ 136:) Այս ծանօթութիւնն յետոյ աւելցուցած է. միւս օրինակներուն մէջ կը պակսի: — Թողլու ենք յիշել այն յիշատակութիւնքն ալ, որոնք թարգմանական գրութեանց մէջ գտնուելով՝ հայ բնագրին հետ կապ չունին[1]:

Միւս կողմանէ Շնորհալիէն ետքն ալ կը տեսնենք հին սովորութիւնը շարունակուած, յիշատակութիւններ նաեւ առանց որեւէ անուան: Ս. Ներսէսի Նշխարաց յայտնութեան պատմողը[2], որ ամէնէն կանուխ ԺԲ. դարու վերջերէն է[3], կը գրէ օրինակի համար հետեւեալը՝ "Ջի ճնճղուկ որքան ի ձեռին ունիս զգուշաւջիր պահել, ապա թէ զերծեալ թռիցէ՝ դժուարին է ըմբռնել" եւն, որ Խիկարայ մէկ առածին այլակերպութիւնն է. (հմմտ. Խիկար՝ էջ 135 "Լաւ է ճնճղուկ մի ի ձեռին քո՝ քան զհազարս յերկինս թռուցեալ" եւն:) Ի միջի այլոց յիշելու արժանի է Վարդանայ Խրատներուն մէկ խօսքն ալ՝ "Տղայի միտքն որպէս կակուղ մոմ է, զբարի խրատն եւ զիմաստութեան ուսումն

1 Այսպէս "Բանք վասն խաբող Աղուէսուն" վէպին սկիզբը՝ գտնուած տաղին սա վերջին խօսքերը՝ "Եւ էր նա միաստակար չար, եւ հնարագէտ եւ իմաստուն մտօք զէտ Խիքար," ճշդիւ Ն. Շնորհալւոյ համեմատ՝ աղուեսու մասին գործածուած: Տես Ն. Մառ, "Ժողովածոյք Առակաց Վարդանայ" (Պետրբ. 1894—9), Հտր. Գ, էջ 180:

2 "Պատմ. Յայտնութեան Նշխարաց Ս. Ներսէսի" ի "Սոփ. Հայկ." Է (տպ. Վենետ. 1853), էջ 31—78:

3 Նշխարաց գիւտն եղած կ'ըսուի 1275ին Յ. Ք. Երզնկայի Սարգիս եպիսկոպոսի օրով. տես անդ՝ էջ 44–46, — Մեր վկայութիւն բերած տեղն է՝ էջ 50:

դիր ի վերայ մատնէհոր„ եւն [1] (Հմմտ. Խիկար՝ 129։) Թողլով ուրիշ նմաններն, շատանանք միայն Վարդանայ Առակներովն։ Ն. Մառ հայագէտը գեղեցիկ հրատարակութիւն մ՚ըրաւ բոլոր Վարդանեան առակաց, լուսաբանելով անոնց ծագումն ու զարգացումը, Վարդանայ ունեցած մասն եւ այն Վարդանայ գրական գործունէութիւնը լիովին երեւան հանելով եւ ճանչցընելով բուն առակագիրն՝ Վարդան Այգեկցի ԺԲ—ԺԳ. դարէն, որուն մասին այլուր ընդարձակ խօսուեցաւ [2]։ Նոյն առակաց հաւաքմանց աղբիւրներուն՝ զորոնք այնպէս մանրամասն ուսումնասիրած է յիշեալ հայագէտը, (հտր. Ա, § 268—296,) աւելցընելու ենք Խիկար ալ։ Եւ այս շատ բնական էր։ Խիկարայ առածներէն մաս մը (յատկապէս պատմութեան վերջը՝ երկրորդ շարքը) արդէն լիակատար առակի ձեւ ունէր. միւսները դիւրաւ կրնային առակի վերածուիլ, ինչպէս եղած ալ կը գտնենք։

Մեզի համար կարեւոր են բնականաբար նախ այն առակներն որ բուն Վարդանայ Այգեկցւոյ են,

---

1 Հմմտ. "Հայկազն. Բառ.„ ի բառն՝ "Մատնեհար։„ — Նոյն Բառգրքին մէջ կը գտնենք Խիկարէն ի միջի այլոց հետեւեալ վկայութիւններն. (Անտառախիտ)՝ "անփառախէփ լինել բազմութեամբ որդւոց. ճճ.„ (= ճառընտիրք. տես Խիկար՝ էջ 130.) — (Նշի) "Մի լինիր փոյթ իբրեւ գնշենի, որ յառաջն ծաղկի եւ ապա ուրեմն լինի ուտելի։ Ոսկեփորիկ.„ (տես Խիկար՝ էջ 128 աղաւաղ.) — (Հարսնատուն) "ի հարսնատանէ քան զընկերս յառաջ ել եւ գնա. Ոսկեփորիկ.„ (տես Խիկար՝ էջ 135–36) եւ նմաններ։ Չենք գիտեր ինչ գործքերէ առնուած են կոչմունքս, որ ճառընտրի եւ Ոսկեփորիկի մէջ կը գտնուին. սմանք թերեւս նոյն իսկ Խիկարայ իմաստութեան ձեռագրէն կրնան ըլլալ։ Բայց այս դէպքիս մէջ արժանի է այն ուշադրութեան. վասն զի ընթերցման կարեւոր տարբերութիւններ կան։

2 Հմմտ. "Ժողովածոյք Առակաց Վարդանայ՝ ըստ Ն. Մառի.„ ("Հանդէս„ 1899, Թ. 2 եւն, եւ առանձինն՝ յատկապէս էջ 20 եւն, 43–75 եւն։

որ իւր առակագրութեան սկիզբն ըրած է ի Դրազարկ իբր 1220ին։ Արդ թէ Այգեկցւոյ բուն առակներուն մէջ եւ թէ միւս հաւաքմանց մէջ ալ կը գտնենք Խիկարայ առածները գործածուած, որոնցմէ ոմանք կը դնենք հոս դէմ առ դէմ։ Առաջին երկուքն Այգեկցւոյ են։

*Խիկար (էջ 157—158։)*

1. Որդեակ, եղեր ինձ որպէս կացին՝ որ կտրէր զծառն։ Ասէ ծառն. Եթէ յինէն չէիր՝ ոչ յաղթէիր դու[1]։ (Canon. Որդեակ եղեր ինձ որպէս զծառն զոր կտրէին. ասէ ծառն՝ Եթէ ոչ էիր յինէն որ ի ձեռինդ է, ոչ կարէիր յաղթել ինձ։)

2. Որդեակ, եղեր ինձ որպէս կարիճ որ եհար զասեղն, եւ ասէ ասեղն՝ Ահա խայթոց որ չար է քան զքոյդ։ Դարձեալ եհար զթաթն ուղտուն, եւ նա եհար զթաթն ի վերայ նորա եւ ճմլեաց զնա եւ ասէ. գերի՛, ո՞չ գիտէիր եթէ շունչ եւ հոգի քո ի յոտս իմ էր։ (Canon . . . եւ ասէ՝ Ո՞չ գիտէիր չար կարիճ թէ զօրութիւնք քո յոտս իմ է։)

*Վարդան (Այգեկցի)*
*(Հտր. Գ, 99 եւ 101։)*

1. Հիւսունք մտան ի մայրիս եւ սկսան կոտորել զծառ եւ զտունկ. եւ նոքա հառաչելով ասեն՝ Զի՞նչ է այս զոր գործեն ընդ մեզ։ Եւ նոճին ասէ. Վա՜յ է մեզ, ով եղբարք. զի ի մեզանէ [է]՝ որ կտրէ զմեզ. զի կոթն ի մայրոյս է։ Ցուցանէ թէ, եւն[2]։

2. Մու[կն] մի հպարտացաւ . . . գայ առ ուղտն եւ ասէ. Տուր ինձ հրաման, որ ի յետս քո դնեմ զբոյնս իմ եւ առնեմ դադար։ Ասէ ուղտն՝ Արիւն քո ի գլուխ քո, մի՛ խորհիր զմահու գործդ զայդ։ Եւ նա ասէ՝ Կակուղ է սմբակ քո եւ ոչ փխասէ զիս։ Եւ եդ զբոյն իւր ի հետ ոտին։ Եւ եկն ուղտն ծանր բեռամբն եւ կոխեաց զնա. եւ նա ճխլեալ եղեւ. եւ վազեաց ճրագունն ընդ յե-

---

1 Ven. եւ 92 ձեռագիրք վերջը բոլորովին աղաւաղեր են գրելով՝ “. . . ասէ՝ չէիր ինձ յաղթել ոչ կարէիր դու։„

2 Այգեկցւոյ՝ Առակ ԺԴ։ Նոյնն անցած է Վարդանեան միւս հաւաքմանց մէջ ալ դոյզն տարբերութեամբ. տես առակն ՃԷ կամ “Փայտահատք եւ Ծառք„ (անդ՝ Հտր. Բ, 123) ըստ VI հաւաքմանց, ուստի Աղուեսագրոց մէջ մտած։

տոյոն նորայ, եւ զայն տե-սեալ ըղտուն ասէ՝ Եղբայր, դայ է որ՝ նեղէ զքեզ, մին-չեւ ելաւ ի քէն։ — Յու-ցանէ, եւն[1]։

3. (էջ 160) Որդեակ, զգայլոյ ձագն յուսումն ե-տուն (ձռգր. "տվին") եւ ասեն՝ Ասա Այբ. Բեն. Գիմ (92 Գիմ.) եւ նա ասէր՝ Այծ, Բոյծ, Գառն։

3. (ՑԽԵ.) Ասէ առակս թէ Գայլին ձագն բռնեցին եւ գրեցին գիր թէ կար-դայ։ Եւ ասեն՝ Ասա Ա՛յբ. եւ նա ասէ թէ՝ Այծ. եւ ասեն թէ՝ Ասա Բեն. եւ նա ասէ թէ՝ Բուծ. եւ ասեն թէ՝ Ասա Գիմ. եւ նա ասէ՝ Գառն. եւ ասեն թէ Ասա Դայ. եւ ասէ՝ Դմակ. եւ ասեն՝ Ասա Ե՛չ. նա ասէ՝ Ես կու երթամ, գիհ անցաւ, այլ չեմ ի հանիլ[2]։

4. (էջ 159—60.) Որ-դեակ, ասացին ցաքիսն եթէ Թող զսովորական բարս[3], եւ համարձակ լինի քեզ՝ յարքունիս մտանել եւ ելանելն. ասաց աքիսն՝ Եթէ եղիցին աչք իմ ոսկի եւ թաթ իմ արծաթի՝ զսովորական բարս իմ ոչ թողից։

4. (ԽԵ[2]) Դարձեալ զկա-տուն լուսակալ դրին թա-գաւորին ի վերայ ոսկէկար բարձին։ Նոյնպէս եւ ա-րարին զաքիսն, եւ տային նոցա ի կերակրոյ թագաւ-որին. եւ ասացին նոցա թէ Թողէք զբարս ձեր. եւ նոքա ասեն՝ Թէ ոսկով եւ մար-գարտով ծածկէք զմեզ, մեք ոչ կարեմք թողուլ

---

1 Այգեկցւոյ Առակ ԻԳ։ Նոյնը միւս հաւաքմանց մէջ ալ՝ "Մուկն եւ Ուղտ" (Հտր. Բ, 25–26 առակ ԻԱ) կրկին խմբագրութիւն, մին ըստ VI, միւսը՝ D ձեռագրին։

2 Տես "Գայլ յուսումն" առակն՝ Հտր. Բ, 321 ըստ G ձեռագրին։

3 Ven. 92 եւ Canon "զսովորական բանն", Bod. "զսովորութիւնդ." Յաջորդն ալ Ven. "համարձակ լինի բանն քեզ՝ յարքունիս" եւն. Bod. "համարձակեալ են ի քեզ՝ յարքունիս" եւն. Նոյնպէս վերջը միայն Canon ունի ուղիղ "զսովորական բարս իմ ոչ թողից." միւսները՝ "զսո-վորական բանն ոչ թողից."

*զսովորական բարս մեր. զի կատուին բնութիւն է, եւն:*[1]

*Բաւական կը համարինք այսչափն ալ, որոնց մանաւանդ երկու առաջինները կարեւոր են՝ բուն Այգեկցւոյ վերաբերելով: Մենք Խիկարայ առակներուն գործածութիւնը այնպէս բնական կը գտնենք, որ աւելի կը զարմանանք Խիկարայ շատ մ'ուրիշ լիովին զարգացած ընտիր առակները չգտնելով մեր հաւաքմանց մէջ. այսպէս Խիկարայ առակն՝ Ծիծառն եւ Աքիս, Այծ եւ Տորոն, Ճնճղուկ եւ Որոգայթ, Էշ եւ Գայլ, Շուն եւ Բրուտ, Աւձ եւ Գայլ, Խլուրդ եւ Արծիւ եւ նմաններ, զորոնք գոնէ հայագէտ Ն. Մառի հրատարակած հաւաքմանց մէջ չգտանք համողիչ նոյնութեամբ*[2]*: Բայց թերեւս ուրիշ տեղեր գտնուին: Ընդհակառակն հանրածանօթ առակ մը կը գտնենք մուծուած Խիկարայ աղաւաղեալ բնագրին տպագիր մէկ օրինակին մէջ, որ կը պակսի հնագունին ուստի եւ յետսամուտ է*[3]*:*

1 *Տես "Կատու եւ Աքիս" առակն՝ Հտր. Բ,* 64–65 *ըստ* VIag *եւ* B *ձեռագրաց:*

2 *Տես Խիկար՝ էջ* 156–61*: Ի հարկէ նմաններ կը գտնուին Վարդանեան հաւաքմանց մէջ ալ: Այսպէս Խիկարայ աղաւաղած լեզուաւ առակս (էջ* 159*)՝ "Որդեակ տացին Գայլուն թէ բաց կաց ի գեհէտ. սաէ՝ Եթէ ի բաց կենամ՝ կուրանամ* (Canon, Bod. Ven. *կոր կուրանամ.) զի փոշին աչացս դեղ է եւ շահ."* (Bod., 92 *ունին "եւ շահ." իսկ* Canon՝ *"... աչաց շահ է եւ փորուս օգուտ:") Աւելի լաւ պահուած է Խիկարայ առածը (էջ* 133*) "Որդեակ, խաշինք որ գիհէն ի զատ գնան՝ գայլոց մասն լինիցին:" Հմմտ. առակ ՄԽԴ (Հտր. Բ,* 270*) "Ասի ի յառակաց թէ Գայլն յայնժամ անկանի ի գեհն, յորժամ հովիւն զպայլուն աչն մոռանայ." — առակ ՄԺԳ "Գայլ եւ ոչխարք" (Հտր. Բ,* 238*) եւ նմաններ:*

3 *Տես* $B^3$ *(տպ. Կ. Պ.* 1834*), էջ* 103–104 *Շուն եւ շուք: "Որդեակ, զի եղեր ինձ որպէս շունն այն ագահ, որ*

կարծենք մինչեւ հիմայ յառաջ բերուածները բաւական են ապացուցանելու մեր կարծիքը։ Նախ՝ Խիկարայ հայ թարգմանութիւնը ստուգիւ շատ հին է, եւ հայ մատենագրութեան վրայ ալ ազդեցութիւն ըրած։ Ի սկզբան միշտ լոկ “Իմաստնոյ„ անուամբ յիշուած ըլլալով՝ կրնայ թերեւս կարծուիլ, որ “Խիկար„ անունը խորագրին մէջ յետոյ մտած ըլլայ։ Բայց այս լոկ ենթադրութիւն միայն կը մնայ։ Երկրորդ՝ կը հաստատուի այն կէտն ալ որ նաեւ հայագէտ Կոնիբիրի հրատարակած բնագիրը ստուգիւ “երկար պատմութիւն„ ունեցած է, շատ փոփոխութիւններ եւ թերեւս նաեւ խմբագրութիւններ կրած ըլլալով։ Այնպէս՝ ինչպէս որ առջեւնիս ունինք, ռամկաբանութեամբք խճողուած, աղաւաղութեամբք լի եւ անհամար պէսպիսութեամբ ձեռագրաց, չի կրնար այն բնագիրն ըլլալ, զոր առջեւն ունէր՝ եթէ նաեւ ոչ Փարպեցի՝ ստուգիւ Եղիշէ, եւ ո՛չ այն՝ զոր տեսած էին Թովմաս Արծրունի եւ Լաստիվերտացի։

Այս կէտը զմեզ կը ստիպէ ընդհատել մեր ուսումնասիրութիւնքն ալ՝ մինչեւ հնագոյն եւ ընտրելագոյն բնագրի մը յայտնուիլն։ Առանց ատոր շատ մը խնդիրներ՝ որ լուծման կը սպասեն, չեն կրնար նաեւ ձեռնարկուիլ՝ առանց ապարդիւն աշխատութեանց. եւ ո՛չ հանուած եզրակացութիւնք հաստատուն հիմ կրնան ունենալ։ Այսպէս ապագային թողուլ կը ստիպուինք նոյն իսկ այն էական խնդիրը թէ ի՛նչ բնագրէ թարգմանուած էր նախ-

---

ունէր հաց մի ի բերանն, երթայր յեզեր գետոյն, եւ տեսեալ շուն մի այլ ի մէջ ջրոյն եւ հաց մի ի բերան նորա, ձգեալ զիւր հացն ի բերանոյն, եւ անկաւ ի ջուրն զի առցէ յայնմանէ հացն. եւ իբրեւ եհաս ի մէջ գետոյն՝ ոչ զշունն եգիտ եւ ոչ զհացն, այլ խեղդեցաւ, եւ զրկեցաւ յիւր հացէն։„ — Այս առակը յարմարցուած է Խիկարայ հետեւեալ վերջաբանութեամբ՝ “Նոյնպէս եւ դու զհացն իմ խլել կամեցար, եւ զրկեցար դու ի քո հացէն։„

նական Հայերէնը։ Այս կէտը լուծելու համար ալ պէտք էր՝ նախ մանրամասն համեմատելով Հայերէնը միւս բնագիրներուն հետ՝ որոշել թէ ինչ աղերս ունի հայն ասորւոյն եւ յունականին հետ։ Վասն զի այս երկուքը միայն կրնան ի նկատի առնուիլ. միւսներն անոնցմէ յառաջ եկած են։ Յունականն ալ կորսուած է. իսկ անկէ ածանցած սլաւականն այնպէս կը տարբերի Հայերէնէն՝ որ խնդրէ դուրս կը մնայ։ Եթէ չենք ուզեր բոլորովին տարբեր յոյն բնագիր մ'ենթադրել, որ կորսուած ըլլայ, կը մնայ միայն ասորականը։ Եւ այս վերջնոյն հետ արդեամբք մեծաւ մասամբ կը համընթանայ Հայերէնը։ Սակայն գոնէ արդի ասորականը՝ որ ինքնին անվթար մնացած ալ չէ (— այսպէս բոլորովին ուրիշ խմբագրութիւն է Բրիտ. Թանգարանի Թ. 7200 հատակտորը. տես Հարրիս՝ էջ 56—58) —, չի կրնար նոյն ըլլալ այն բնագրին հետ, որմէ Հայը թարգմանուեցաւ։ Վասն զի համաձայնութեան հանդէպ կան նաեւ անթիւ անհամաձայնութիւններ՝ մանր ու մեծ, աւելի ու պակաս կտորներ երկու կողմանէ ալ, ընթերցմանց մեծամեծ տարբերութիւններ՝ նաեւ ուր միաբան են երկուքն։ Օրինակներ բերել աւելորդ կը համարինք. վասն զի յընթացս ուսումնասիրութեանցս առիթ ունեցանք յաճախ նշանակելու այսպիսի երեւոյթներ։ Ուստի այժմու Հայերէնն՝ որ ուրոյն խմբագրութիւն մը կը ցուցընէ, անդէպ է համեմատել այժմու ասորերէնին հետ. քանի որ նոյն իսկ չենք գիտեր թէ հայոյն աւելի կամ պակաս ունեցածներն արդեօք նախնակա՞ն Հայ թարգմանութենէն են թէ յետոյ եղած փոփոխութեանց արդիւնք։

Հայերէնը յամենայն դէպս ասորերէն բնագրէ մը թարգմանուած ըլլալու է, որ այժմու ասորերէնէն բաւական կը շեղէր։ Սակայն Հայ բնագրին կրած փոփոխութիւնքն անհետ ըրած են որեւէ հետք, որով ասորի բնագիր մը գտնել կարենանք

ինչպէս միւս թարգմանութեանց մէջ յաճախ կը գտնենք: Քանի մը մանր բաներ կամ աննշան են[1] կամ խնդրական: Օրինակի համար սխալ թարգմանութեան մ'երեւոյթ ունի՝ ի միջի այլոց՝ սա առածը (էջ 158) "Ոչէլ հոյց. էկէր շմարմին Նախատաւորէ, բայց ինքն ումեք ոչ էր աւգուտ եւ ո՛չ պիտանի:" Յունականը կամ սլաւականը չունի այսպիսի բան. միայն ասորին ունի այսպէս (բնագիր էջ 88)՝ "Որպէս ատրէճ ցորենոյ (ܕܟܘܡܪܐ, ܡܠܟܐ) որ ուտէ շշորէմարանս (ܠܗܘܢ) Նախատաւորաց" եւն: Դժուար է մեկնել հոս Նախ ցորենոյ ուտիճին "ոչէլ հացի" թարգմանուիլը. բայց աւելի եւս ցորենի շորեմարանին՝ "մարմին" թագաւորի: Կրնար սխալ թարգմանութիւն համարուիլ եւ ասորի բնագրինս խալ ընթերցմամբ մեկնուիլ, եթէ ապահով ըլլար ընթերցուածը, որ սակայն. պարզ աղաւաղութիւն կ'երեւայ[2]: Ուրիշ օրինակ մը բերելու համար՝ յայտնի ասորաբանութիւն կը տեսնուի սա տեղը (էջ 134) "Որդեակ, քննեա զբանն ի սրտի քում եւ ապա ի վէր հանիցես (ձռգր. "ի վերայ հասանիցես" սխալ.) զի եթէ փոխէս զբանն՝ քաղցր լինիս":

---

[1] Հմմտ. էջ 131 "Որդեակ, որ (Bod. մարդ որ) զաւրաւոր է քան զքեզ՝ մի հակառակիլ ընդ նմա." — էջ 144 "ի վերայ ամենայն գործոց իմոց հաստատրէմ կացուցից զքեզ" (սակայն արդի ասորին հոս այսպիսի խօսք չունի.) — էջ 145 "Հրամանաւ փանն Ասորւոց եւ Նինուէացւոց" — էջ 135–136 "ի կոչնատանէ ... յառաջ եւ ... զի անուաղ քո բարի առնուս" եւն (տես վերն ուր խօսեցանք այս տեղւոյ մասին.) — էջ 134 կոյրն մոօք "Թողու զուղղորդ ճանապարհն եւ երթայ ըստ կամս." (Ասորին "...մոլորեալ") որ կրնար սխալ թարգմանութիւն մը համարուիլ, եթէ ընթերցուածն ապահով ըլլար. սակայն տպագիրք կը կարդան հոս "կամոկորց", ինչպէս տեսանք, եւ ուրիշ նմաններ:

[2] Այս յայտնի է անկէ որ Նախընթաց խօսքն է "Թէ լինի սար նորա որպէս ծիրանի՝ մարմնոյ Նախատաւորէ ոչ կարէ նմանել." ուստի "մարմին" շփոթմամբ կրկին գրուած ըլլալու է:

Նոյն բառացի կը գտնենք ասորւոյն քով՝ (Թ. 52) "Որդեակ, պահեա զբանն ի սրտի քում եւ բարի լիցի քեզ. զի եթէ փոխես զբան քո (ܐܢ ܡܫܚܠܦ ܡܠܬܟ)՝ կորուսանես զբարեկամ քո:" Հայոյն քով նախ անսովոր բացատրութեան կերպ մ'ունի, եւ երկրորդ՝ ամբողջին իմաստն անկապ է. վասն զի "եթէ փոխես զբան քո՝ քաղցր լինիս" ստուգիւ անյարմար է, մինչ ասորին յարմար խօսք մըն է՝ թէեւ ուրիշ իմաստով: Ցամենայն դէպս հայը հոս ասորի բնագիր կ'ենթադրէ. սակայն նաեւ ամբողջն այնպէս աղաւաղ է, որ գոնէ "քաղցր լինիս" խնդրական կը մնայ: Հայերէնէ եղած թաթար թարգմանութիւնը հաստատելով "քաղցր լինիս" բառերը, բոլորովին ուրիշ ընթերցուած ունի՝ միւս ճիւղ կարեւոր "եթէ փոխես զբանն քո" խօսքին համար[1]: Բայց թերեւս անյարմար իմաստն յարմար ընելու ճիգէն յառաջ եկած ըլլայ այն: Թաթարերէնին մասին յետոյ: — Ասոր փոխարէն հայագէտն Կոնիբիր տեղ մը յայտնի նշան կը գտնէ յոյն բնագրի ազդեցութեան, կամ ընթերցում մ'որ յոյն բնագիր կ'ենթադրէ[2]: Ասով պէտք կ'ըլլայ ըսել որ հայ բնագիրն որչափ

1 Մեր ձառ. Թ. 468, Թղ. 58ա "Աւշլում դէրկակին սէնինկ սողունկնու. իւրաքինկ պիլայ. տայ անտան սոնկրայ չխար սոզունկնու աղզընկտան. էչոր գօր էչնէ գօւլայէգօանչ, պարչասընայ գօրը պօլուրսէն:"

2 Այս խօսքն է (էջ 126) "Առցես զնաթան քեռորդին քո եւ սնուցես զնա քեզ որդի եւ հատուսցէ քեզ զհատուցս քո:" Հայագէտն (անդ՝ Ծան.) կ'ընդունի Canon. ձեռագրի այն ընթերցումն, ուր պահուած է յունաբանութիւնս ἐκτίσει σοι τὰ τροφεῖα, զոր յայտնապէս թարգմանել ուզած է հայը: Հայ գրիչ մը չհասկընալով յունաբանութիւնը "զհատուցս" փոխած ըրած է "զանուն", որով Ven., 58 եւ Bod. կը կարդան՝ "հատուսցէ քեզ զանուն քո." որ անտեղի է: Էջմ. Թ. 2048 փորձեր է անտեղութիւնը վերցընել գրելով՝ "եւ նա լցուսցէ զտեղի անուան քո:" — Հայագիտուս այս կարծիքն ստուգիւ գոնէ հաւանական կրնայ ըսուիլ: Մտադիր ալ ըլլալու է որ ասորին չունի այս խօսքն:

ալ ըստ երեւութին ասորի բնագրէ մը ծագած ըլլայ, կրած է յունական ազդեցութիւն մ՚ալ։ Սակայն այս ամէն մեկնութիւնք կը մնան խնդրական՝ աւելի կամ նուազ, մինչեւ որ ապահով ու ստուգիւ հին հայ բնագիր մը ի լոյս գայ։ Հայ բանասիրաց առաջին գործքն ըլլալու է՝ այսպիսի բնագիր մը գտնել։

Ներկայ հայ բնագիրը խճողուած է ռամկաբանութիւններով[1], որոնք չեն միաբանիր թարգմանութեան առ հասարակ ընտիր եւ հին գրական լեզուին հետ, եւ բաց աստի նոյն իսկ ձեռագրէ ձեռագիր կը փոխուին[2]։ Ընդհանրապէս՝ եթէ նաեւ

1 Բազմաթիւ ուրիշներու մէջէն՝ էջ 125 “Վաթսուն կին առի ... վաթսուն տարու եղայ.” — 126 “հագուցի” (131 “մի հագանիր.”) 144 “հալեւոր.” — 129 “հեփ անագամի հաց մի ուտել.” — անդ՝ “ծեծ տղայի մանկան ... կապն եւ մատնեհարն ի քսակի, եւ որպէս կապն ի իշուն ոտքն ...նայ խելաքանայ” եւն. — 131 “մի հեծնուլ ձիա” (Bod. հեծեր, Canon հեծներ.) — 131 “ըռըզակիս կամաւքն Աստուծոյ” (137 “ըռջակ”). — 137 “. . եւ ասենքգքո դէմ հանաւղն.” — 131, 132 “չէմք տան.” անդ՝ “որ գողանայ ոսկի կամ այլ փոքր իրք.” — 133 “էշն ամէն աւրն Է դարպաս չինէր եւ չարտախ” (ձռգր. պէսպէս.) — 134, 136 “արճիճ” (կապար.) 134 “յետ սակաւ աւուրց ի վերայ ջրին գայ որպէս տերեւ ծառոց.” — 135 “գրգռէ զնա եւ անարգէ”. 135 “պատուիրէ”, 153 “հանէ զայս խաւսս”՝ եւն հրամայականներ։ — 137 “մարդ որ էրէնն Աստուած յաջողէ.” անդ՝ “ընդ առն ունեւորի ...ագահ մարդոյ աչքն ոչ լցվի քաւեւլ թէ հողով”. — 154 “չեն լսել.” 143 “իբր լսեց ... Զի՞նչ մեղանք եմ արարեալ ես Խիկարին” եւն. — 145 “ասէ ցԱբուսմաք նայիպին իւրոյ.” — 147 “ես այլ ի հետ լայի.” — 146 “յիշեա զաղուհացն որ ի միասին կերեալ եմք.” 143 “ես զաղուհացս զոր կերեալ եմ ի տան քո” եւն. — 147 “չինեալ ապարանս ընդ երկինքն եւ ընդ երկրիս ի մէջ ի կախ.” — 152 “որոտայ եւ կայնու զճառագայթս.” — 153 “զայդ Ասորւոց հորթարածներն գիտեն.” — 155 “ի ծագել արեւուն ցայթեց ի տանն”, եւ անթիւ ուրիշներ։

2 Անհնար է յիշել անթիւ պէսպիսութիւնքն ձե-

Հարեւանցի ակնարկ մը ձգենք Հայագիտին նշանակած գլխաւոր տարբերութեանց վրայ, կը տեսնենք որ շատ անմիաբան են ձեռագիրներն ալ. ի միջի այլոց Ven. եւ Canon. իրարմէ էապէս տարբեր են. առաջինն առհասարակ մէտ բնագիրը ռամկացընելու, վերջինն աւելի ազատ բազմաթիւ փոփոխութիւններէ՝ թէեւ ոչ նուազ աղաւաղ ինքն ալ[1]: Բնագիրն առհասարակ լի է ծայրէ ծայր աղաւաղութիւններով, սխալ ընթերցումներով, եւն[2]: Ասոնցմէ

ռադրաց: Իբրեւ օրինակ ահա մէկ քանին՝ էջ 135 "զի մի յանկարծամահ լինիցի" խօսքին տեղ՝ Ven. "զի մի անընկ-մահ լինիս." — անդ՝ "չկոչեն զքեզ՝ մի երթալ ի պատիւ" խօսքին տեղ՝ Bod. "որ չէ կոչէր՝ ի պատիւ մի երթայր." — 138 Ven. "Հալածեա զնա որ ոչ գոյ", Bod. "...որ չի գայ." միւսները՝ չունին լաւ եւս. — 138 "ի չարէն մի երկնչիր", Ven. "...մի վախել." — 136 "ծառայ ղօրդ" եւն, 139 "որ ողորդ է մտաւք" (58 խօրթ, Canon զուարթ եւն.) — 150 "Ճարտարքս կան խափան." Ven. "Ճարտարքս խաբ անկան." — էջ 127 Canon "ականջ արայ որդի իմ խօսքին եւ խրատն իմ գրիր ի մատանին քում եւ մի մոռացիս" եւն, միւսները չունին. եւ այլ նմաններ:

1 Պատմութեան մասէն զատ՝ ուր Canon յաճախ կը շեղի եւ աւելի կը մօտենայ Ասորւոյն (տես Հարիս՝ էջ 36–46) նաեւ առածները պէսպէս թուով ու ընթերցուածով ունին ձեռագիրք. ոմանք նոր մասեր ունին (Canon տես էջ 159–160, երկու հատ. Թ. 58՝ տես էջ 137), ընդհակառակն նաեւ պակասներ (Bod. տես էջ 134, Թ. 58՝ տես էջ 130) եւն: Նշանաւոր է Պարիսի Թ. 58 որ շարք մ'առածներ կ'աւելցընէ՝ Կ–ԿԷ, զորոնք Հայագէտն ուրոյն դրած է. (տես էջ 139–140) եւ որոնք լաւ օրինակ են փոփոխութեան բնագրի եւ այլափոխման: Ցիշեցինք նշանաւոր յետաամուտ կտորն "Հարցումն թագաւորաց" եւ յարակիցքն (էջ 140–1.) որուն մասին երկար խօսեցանք:

2 Մաս մ'ակնյայտնի սխալագրութիւնք են. զոր օր. էջ 125–6 "եթէ որդի յերէ տասուրն քանքար տասն ծախեսցէ (Թ. 58 ...որդի՝ աւուրս քանքարս տասն ...) ոչ կարէ օգտել (Ven. օգուր) զինչս իմ. այլ զի արկցէ հող ձեռօք իւրովք (Ven. յետոյ ձմոց) ի վերայ իմ" եւն.

դիր ի վերայ մատնեհար„ եւն[1] (Հմմտ. Խիկար՝ 129։) Թողլով ուրիշ նմաններն, շատանանք միայն Վարդանայ Առակներուն։ Ն. Մառ Հայագէտը գեղեցիկ հրատարակութիւն մ'ըրաւ բոլոր Վարդանեան առակաց, լուսաբանելով անոնց ծագումն ու զարգացումը, Վարդանայ ունեցած մասն եւ այն Վարդանայ գրական գործունէութիւնը լիովին երեւան հանելով եւ ճանչցընելով բուն առակագիրն՝ Վարդան Այգեկցի ԺԲ—ԺԳ. դարէն, որուն մասին այլուր ընդարձակ խօսուեցաւ[2]։ Նոյն առակաց հաւաքմանց աղբիւրներուն՝ զորոնք այնպէս մանրամասն ուսումնասիրած է յիշեալ Հայագէտը, (հտր. Ա, § 268—296,) աւելցընելու ենք Խիկար ալ։ Եւ այս շատ բնական էր։ Խիկարայ առածներէն մաս մը (յատկապէս պատմութեան վերջը՝ երկրորդ շարքը) արդէն լիակատար առակի ձեւ ունէր. միւսները դիւրաւ կրնային առակի վերածուիլ, ինչպէս եղած ալ կը գտնենք։

Մեզի համար կարեւոր են բնականաբար նախ այն առակներն որ բուն Վարդանայ Այգեկցւոյ են,

---

1 Հմմտ. "Հայկազն. Բառ.„ ի բառն՝ "Մատնեհար։„ — Նոյն Բառգրքին մէջ կը գտնենք Խիկարէն ի միջի այլոց հետեւեալ վկայութիւններն. (Անտառախոտ)՝ "անտառախոտ լինել բազմութեամբ որդւոց. Ճճ.„ (= Ճառընտիրք. տես Խիկար՝ էջ 130.) — (Նշի) "Մի լինիր փայտ իբրեւ զնշենի, որ յառաջն ծաղկի եւ ապա ուրեմն լինի ուտելի։ Ոսկեփորիկ.„ (տես Խիկար՝ էջ 128 ադաւաղ.) — (Հարսնատուն) "ի հարսնատանէ քան զընկերս յառաջ ել եւ գնա. Ոսկեփորիկ.„ (տես Խիկար՝ էջ 135–36) եւ նմաններ։ Չենք գիտեր ինչ գործքերէ առնուած են կոչմունքս, որ Ճառընտրի եւ Ոսկեփորիկի մէջ կը գտնուին. ոմանք թերեւս նոյն իսկ Խիկարայ իմաստութեան ձեռագրէն կրնան ըլլալ։ Բայց այս դէպքիս մէջ արժանի է այն ուշադրութեան. վասն զի ընթերցման կարեւոր տարբերութիւններ կան։

2 Հմմտ. "Ժողովածոյք Առակաց Վարդանայ՝ ըստ Ն. Մառի.„ ("Հանդէս„ 1899, Թ. 2 եւն, եւ առանձինն՝ յատկապէս էջ 20 եւն, 43–75 եւն։

որ իւր առակագրութեան սկիզբն ըրած է ի Դրազարկ իբր 1220ին։ Արդ թէ Այգեկցւոյ բուն առակներուն մէջ եւ թէ միւս հաւաքմանց մէջ ալ կը գտնենք Խիկարայ առածները գործածուած, որոնցմէ ոմանք կը դնենք հոս դէմ առ դէմ։ Առաջին երկուքն Այգեկցւոյ են։

*Խիկար (էջ 157—158:)*

1. Որդեակ, եղեր ինձ որպէս կացին՝ որ կտրէր զծառն։ Ասէ ծառն. Եթէ յինէն չէիր՝ ոչ յաղթէիր դու[1]։ (Canon. Որդեակ եղեր ինձ որպէս զծառն զոր կտրէին. ասէ ծառն՝ Եթէ ոչ էիր յինէն որ ի ձեռինդ է, ոչ կարէիր յաղթել ինձ։)

2. Որդեակ, եղեր ինձ որպէս կարիճ որ եհար զասեղն, եւ ասէ ասեղն՝ Ահա խայթոց որ չար է քան զքոյդ։ Դարձեալ եհար զթաթն ուղտուն, եւ նա եհար զթաթն ի վերայ նորա եւ ճմլեաց զնա եւ ասէ. գերի, ո՞չ գիտէիր եթէ շունչ եւ հոգի քո ի յոտս իմ էր։ (Canon . . . եւ ասէ՝ Ո՞չ գիտէիր չար կարիճ թէ զօրութիւնք քո յոտս իմ է։)

*Վարդան (Այգեկցի)*
*(Հտր. Գ, 99 եւ 101:)*

1. Հիւսունք մտան ի մայրիս եւ սկսան կոտորել զծառ եւ զտունկ. եւ նոքա հառաչելով ասեն՝ Զի՞նչ է այս զոր գործեն ընդ մեզ։ Եւ նոճին ասէ. Վա՜յ է մեզ, ով եղբարք. զի ի մեզանէ [է]՝ որ կտրէ զմեզ. զի կոթն ի մայրոյս է։ Յուցանէ թէ, եւն[2]։

2. Մու[կն] մի հպարտացաւ . . . գայ առ ուղտն եւ ասէ. Տուր ինձ հրաման, որ ի յետս քո դնեմ զբոյնս իմ եւ առնեմ դադար։ Ասէ ուղտն՝ Արիւն քո ի գլուխ քո, մի խորհիր զմահու գործդ զայդ։ Եւ նա ասէ՝ Կակուղ է սմբակ քո եւ ոչ փնասէ զիս։ Եւ եդ զբոյն իւր ի հետ ոտին։ Եւ եկն ուղտն ծանր բեռամբն եւ կոխեաց զնա. եւ նա ճխթեալ եղեւ. եւ վազեաց ճրագուն ընդ յե-

---

1 Ven. եւ 92 ձեռագիրք վերջը բոլորովին աղաւաղեր են գրելով՝ "... ասէ՝ չէիր ինձ յաղթել ոչ կարէիր դու։"

2 Այգեկցւոյ՝ Առակ ԺԴ։ Նոյնն անցած է Վարդանեան միւս հաւաքմանց մէջ ալ դոյզն տարբերութեամբ. տես առակն ՃԷ կամ "Փայտահատք եւ Ծառք" (անդ՝ Հտր. Բ, 123) ըստ VI հաւաքմանց, ուստի Աղուեսագրոց մէջ մտած։

տոյան նորայ, եւ զայն տեսեալ ըղտուն ասէ՝ Եղբայր, դայ է որ՛ նեղէ զքեզ, մինչեւ ելաւ ի քէն։ — Յուցանէ, եւն[1]։

3․ (էջ 160) Որդեակ, զգայլըս ձագն յուսումն ետուն (ձռգր․ “տվին„) եւ ասեն՝ Ասա Այբ․ Բեն․ Գեմ (92 Գիմ․) եւ նա ասէր՝ Այծ, Բայծ, Գառն։

3․ (ՑԽԵ․) Ասէ առակս թէ Գայլին ձագն բռնեցին եւ գրեցին գիր թէ կարդայ։ Եւ ասեն՝ Ասա Ա՛յբ․ եւ նա ասէ թէ՝ Այծ․ եւ ասեն թէ՝ Ասա Բեն․ եւ նա ասէ թէ՝ Բուծ․ եւ ասեն թէ՝ Ասա Գիմ․ եւ նա ասէ՝ Գառն․ եւ ասեն թէ Ասա Դայ․ եւ ասէ՝ Դմակ․ եւ ասեն՝ Ասա Ե՛չ․ նա ասէ՝ Ես կու երթամ, գիհ անցաւ, այլ չեմ ի համնիլ[2]։

4․ (Էջ 159—60․) Որդեակ, ասացին ցաքիսն եթէ Թող զսովորական բարս[3], եւ համարձակ լինի քեզ՝ յարքունիս մտանել եւ ելանել․ ասաց աքիսն՝ Եթէ եղիցին աչք իմ ոսկի եւ թաթ իմ արծաթի՝ զսովորական բարս իմ ոչ թողից։

4․ (ԽԵ[2]) Դարձեալ զկատուն լուսակալ դրին թագաւորին ի վերայ ոսկէկար բարձին։ Նոյնպէս եւ աբարին զաքիսն, եւ տային նոցա ի կերակրոյ թագաւորին․ եւ ասացին նոցա թէ Թողէք զբարս ձեր․ եւ նոքա ասեն՝ Թէ ոսկով եւ մարգարտով ծածկէք զմեզ, մեք ոչ կարեմք թողուլ

1 Այգեկցւոյ Առակ ԻԳ։ Նոյնը միւս հաւաքմանց մէջ ալ՝ “Մուկն եւ Ուղտ„ (Հտր․ Բ, 25–26 առակ ԻԱ) կրկին խմբագրութիւն, մին ըստ VI, միւսը՝ D ձեռագրին։

2 Տես “Գայլ յուսումն„ առակն՝ Հտր․ Բ, 321 ըստ G ձեռագրին։

3 Ven․ 92 եւ Canon “զսովորական բանն„, Bod․ “զսովորութիւնդ։„ Յաջորդն ալ Ven․ “համարձակ լինի բանն քեզ՝ յարքունիս„ եւն․ Bod․ “համարձակեալ են ի քեզ՝ յարքունիս„ եւն․ Նոյնպէս վերջը միայն Canon ունի ուղիղ “զսովորական բարս իմ ոչ թողից․„ միւսները՝ “զսովորական բանն ոչ թողից։„

*զտովորական բարս մեր. զի կատուին բնութիւն է, եւն:*[1]

*Բաւական կը համարինք այսչափին ալ, որոնց մանաւանդ երկու առաջինները կարեւոր են՝ բուն Այդեկցւոյ վերաբերելով: Մենք Խիկարայ առակներուն գործածուիլն այնպէս բնական կը գտնենք, որ աւելի կը զարմանանք Խիկարայ շատ մ՚ուրիշ լիովին զարգացած ընտիր առակները չգտնելով մեր հաւաքմանց մէջ. այսպէս Խիկարայ առակն՝ Ծիծառն եւ Աքիս, Այծ եւ Տորոն, Ճնճղուկ եւ Որոգայթ, Էշ եւ Գայլ, Շուն եւ Բրուտ, Աւձ եւ Գայլ, Խլուրդ եւ Արծիւ եւ նմաններ, զորոնք գոնէ հայագէտ Ն. Մառի հրատարակած հաւաքմանց մէջ չգտանք համոզիչ նոյնութեամբ*[2]*: Բայց թերեւս ուրիշ տեղեր գտնուին: Ընդհակառակն հանրածանօթ առակ մը կը գտնենք մուծուած Խիկարայ աղաւաղեալ բնագրին տպագիր մէկ օրինակին մէջ, որ կը պակսի հնագոյնին ուստի եւ յետսամուտ է*[3]*:*

1 *Տես* "*Կատու եւ Աքիս*" *առակն՝ Հտր. Բ.* 64–65 *ըստ* VIag *եւ* B *ձեռագրաց:*

2 *Տես Խիկար՝ էջ* 156–61: *Ի հարկէ նմաններ կը գտնուին Վարդանեան հաւաքմանց մէջ ալ: Այսպէս Խիկարայ աղաւաղած լեզուաւ առակս (էջ* 159)*՝* "*Որդեակ ասացին Գայլուն թէ բաց կաց ի գեհէտ. ասէ՝ Եթէ ի բաց կենամ՝ կուրանամ* (Canon, Bod. Ven. *կու– կուրանամ.*) *զի փոշին աչացս դեղ է եւ շահ.*" (Bod., 92 *ունին* "*եւ շահ.*" *իսկ* Canon՝ "*. . . աչաց շահ է եւ փորուս օգուտ:*") *Աւելի լաւ պահուած է Խիկարայ առածը (էջ* 133) "*Որդեակ, խաշինք որ գիհէն ի զատ գնան՝ գայլոց մասն լինիցին:*" *Հմմտ. առակ ՄԽԴ (Հտր. Բ.* 270) "*Ասի ի յառակաց թէ Գայլն յայնժամ անկանի ի գեհն, յորժամ հովիւն զգայլուն ահն մոռանայ.*" *— առակ ՄԺԳ* "*Գայլ եւ ոչխարք*" *(Հտր. Բ.* 238) *եւ նմաններ:*

3 *Տես* B[3] *(տպ. Կ. Պ.* 1834)*, էջ* 103–104 *Շուն եւ շուք:* "*Որդեակ, զի եղեր ինձ որպէս շունն այն ագահ, որ*

Կարծենք մինչեւ հիմայ յառաջ բերուածները բաւական են ապացուցանելու մեր կարծիքը։ Նախ՝ Խիկարայ հայ թարգմանութիւնը ստուգիւ շատ հին է, եւ հայ մատենագրութեան վրայ ալ ազդեցութիւն ըրած։ Ի սկզբան միշտ լոկ “Իմաստնոյ” անուամբ յիշուած ըլլալով՝ կրնայ թերեւս կարծուիլ, որ “Խիկար” անունը խորագրին մէջ յետոյ մտած ըլլայ։ Բայց այս լոկ ենթադրութիւն միայն կը մնայ։ Երկրորդ՝ կը հաստատուի այն կէտն ալ որ նաեւ հայագէտ Կոնիբիրի հրատարակած բնագիրը ստուգիւ “երկար պատմութիւն” ունեցած է, շատ փոփոխութիւններ եւ թերեւս նաեւ խմբագրութիւններ կրած ըլլալով։ Այնպէս՝ ինչպէս որ առջեւնիս ունինք, ռամկաբանութեամբք խճողուած, աղաւաղութեամբք լի եւ անհամար պէսպիսութեամբ ձեռագրաց, չի կրնար այն բնագիրն ըլլալ, զոր առջեւն ունէր՝ եթէ նաեւ ոչ Փարպեցի՝ ստուգիւ Եղիշէ, եւ ո՛չ այն՝ զոր տեսած էին Թովմաս Արծրունի եւ Լաստիվերտացի։

Այս կէտը զմեզ կը ստիպէ ընդհատել մեր ուսումնասիրութիւնքն ալ՝ մինչեւ հնագոյն եւ ընտրելագոյն բնագրի մը յայտնուիլն։ Առանց ասոր շատ մը խնդիրներ՝ որ լուծման կը սպասեն, չեն կրնար նաեւ ձեռնարկուիլ՝ առանց ապարդիւն աշխատութեանց. եւ ո՛չ հանուած եզրակացութիւնք հաստատուն հիմ կրնան ունենալ։ Այսպէս ապագային թողուլ կը ստիպուինք նոյն իսկ այն էական խնդիրը թէ ի՛նչ բնագրէ թարգմանուած էր նախ-

---

ունէր հաց մի ի բերանն, երթայր յեզեր գետոյն, եւ տեսեալ շուն մի այլ ի մէջ ջրոյն եւ հաց մի ի բերան նորա, ձգեալ զիւր հացն ի բերանոյն, եւ անկաւ ի ջուրն զի առցէ յայնմանէ հացն. եւ իբրեւ եհաս ի մէջ գետոյն՝ ոչ զշունն եգիտ եւ ոչ զհացն, այլ խեղդեցաւ, եւ զրկեցաւ յիւր հացէն։” — Այս առակը յարմարցուած է Խիկարայ հետեւեալ վերջաբանութեամբ՝ “Նոյնպէս եւ դու զհացն իմ խլել կամեցար, եւ զրկեցար դու ի քո հացէն։”

նական հայերէնը։ Այս կէտը լուծելու համար ալ պէտք էր՝ նախ մանրամասն համեմատելով հայերէնը միւս բնագիրներուն հետ՝ որոշել թէ ինչ աղերս ունի հայն ասորւոյն եւ յունականին հետ։ Վասն զի այս երկուքը միայն կրնան ի նկատի առնուիլ. միւսներն անոնցմէ յառաջ եկած են։ Յունականն ալ կորսուած է. իսկ անկէ ածանցած սլաւականն այնպէս կը տարբերի հայերէնէն՝ որ խնդրէ դուրս կը մնայ։ Եթէ չենք ուզեր բոլորովին տարբեր յոյն բնագիր մ՚ենթադրել, որ կորսուած ըլլայ, կը մնայ միայն ասորականը։ Եւ այս վերջնոյն հետ արդարեւ մեծաւ մասամբ կը համընթանայ հայերէնը։ Սակայն գոնէ արդի ասորականը՝ որ ինքնին անվթար մնացած ալ չէ (— այսպէս բոլորովին ուրիշ խմբագրութիւն է Բրիտ. Թանգարանի Թ. 7200 հատակոտորը. տես Հարրիս՝ էջ 56—58) —, չէր կրնար նոյն ըլլալ այն բնագրին հետ, որմէ հայը թարգմանուեցաւ։ Վասն զի համաձայնութեան հանդէպ կան նաեւ անթիւ անհամաձայնութիւններ՝ մանր ու մեծ, աւելի ու պակաս կտորներ երկու կողմանէ ալ, ընթերցմանց մեծամեծ տարբերութիւններ՝ նաեւ ուր միաբան են երկուքն։ Օրինակներ բերել աւելորդ կը համարինք. վասն զի յընթացս ուսումնասիրութեանցս առիթ ունեցանք յաճախ նշանակելու այսպիսի երեւոյթներ։ Ուստի այժմու հայերէնն՝ որ ուրոյն խմբագրութիւն մը կը ցուցընէ, անդէպ է համեմատել այժմու ասորերէնին հետ. քանի որ նոյն իսկ չենք գիտեր թէ հայոյն աւելի կամ պակաս ունեցածներն արդեօք նախնակա՞ն հայ թարգմանութենէն են թէ յետոյ եղած փոփոխութեանց արդիւնք։

Հայերէնը յամենայն դէպս ասորերէն բնագրէ մը թարգմանուած ըլլալու է, որ այժմու ասորերէնէն բաւական կը շեղէր։ Սակայն հայ բնագրին կրած փոփոխութիւնքն անհետ ըրած են՝ որեւէ հետք, որով ասորի բնագիր մը գտնել կարենանք

ինչպէս միւս թարգմանութեանց մէջ յաճախ կը գտնենք։ Քանի մը մանր բաներ կամ աննշան են[1] կամ խնդրական։ Օրինակի համար սխալ թարգմանութեան մ'երեւոյթ ունի՝ ի միջի այլոց՝ սա առածը (էջ 158) "Ոչիլ հաց՝ եկեր զմարմին թագաւորի, բայց ինքն ումեք ոչ էր աւգուտ եւ ոչ պիտանի։" Յունականը կամ սլաւականը չունի այսպիսի բան. միայն ասորին ունի այսպէս (բնագիր էջ 88)՝ "Որպէս ուտիճ ցորենոյ (ܕܚܛܐ, ܡܠܟܐ) որ ուտէ զշտեմարանս (ܠܚܡܐ) թագաւորաց" եւն։ Դժուար է մեկնել հոս նախ ցորենոյ ուտիճին "ոչիլ հացի" թարգմանուիլը. բայց աւելի եւս ցորենի շտեմարանին՝ "մարմին" թագաւորի։ Կրնար սխալ թարգմանութիւն համարուիլ եւ ասորի բնագրինս խալ ընթերցմամբ մեկնուիլ, եթէ ապահով ըլլար ընթերցուածը, որ սակայն. պարզ աղաւաղութիւն կ'երեւայ[2]։ Ուրիշ օրինակ մը բերելու համար՝ յայտնի ասորաբանութիւն կը տեսնուի սա տեղը (էջ 134) "Որդեակ, քննեա զբանն ի սրտի քում եւ ապա ի վեր հանիցես (ձեռգր. "ի վերայ հասանիցես" սխալ.) զի եթէ փոխես զբանն՝ քաղցր լինիս"։

---

1 Հմմտ. էջ 131 "Որդեակ, որ (Bod. մարդ որ) զաւրաւոր է քան զքեզ՝ մի հակառակիլ ընդ նմա." — էջ 144 "ի վերայ ամենայն գործոց իմոց հաստատեցի կացուցից զքեզ" (սակայն արդի ասորին հոս այսպիսի խօսք չունի.) — էջ 145 "Հրամանաւ փառն Ասորւոց եւ Նինուէացւոց" — էջ 135–136 "ի կոչնատանէ ... յառաջ եւ ... զի անուն քո բարի առնուս" եւն (տես վերն ուր խօսեցանք այս տեղւոյ մասին.) — էջ 134 կայրն մօտ "Թողու զուղղորդ ճանապարհն եւ երթայ ընդ ճամա." (Ասորին "...մոլորեալ") որ կրնար սխալ թարգմանութիւն մը համարուիլ, եթէ ընթերցուածն ապահով ըլլար. սակայն տպագիրք կը կարդան հոս "ճամա-ճոր", ինչպէս տեսանք, եւ ուրիշ նմաններ։

2 Այս յայտնի է անկէ որ նախընթաց խօսքն է "Թէ լինի առ նորա որպէս ծիրանի՝ մարմնոյ թագաւորի ոչ կարէ նմանել." ուստի "մարմին" շփոթմամբ կրկին գրուած ըլլալու է։

Նոյնը բառացի կը գտնենք ասորւոյն քով՝ (Թ. 52) "Որդեակ, պահեա զբանն ի սրտի քում եւ բարի լիցի քեզ. զի եթէ փոխես զբան իմ (ܐܠܐ ܣܟܠܐ ܐܢܬ ܗܘ)՝ կորուսանես զբարեկամ քո։" Հայոյն քով նախ անստվոր բացատրութեան կերպ մ'ունի, եւ երկրորդ՝ ամբողջին իմաստն անկապ է. վասն զի "եթէ փոխես զբան քո՝ թողցը լինիս" ստուգիւ անյարմար է, մինչ ասորին յարմար խօսք մըն է՝ թէեւ ուրիշ իմաստով։ Ցամենայն դէպս հոյը հոս ասորի բնագիր կ'ենթադրէ. սակայն նաեւ ամբողջն այնպէս աղաւաղ է, որ գոնէ "քաղցր լինիս" խնդրական կը մնայ։ Հայերէնէ եղած թաթար թարգմանութիւնը հաստատելով "քաղցր լինիս" բառերը, բոլորովին ուրիշ ընթերցուած ունի՝ միւս ճիշդ կարեւոր "եթէ փոխես զբանն քո" խօսքին համար[1]։ Բայց թերեւս անյարմար իմաստն յարմար ընելու ճիգէն յառաջ եկած ըլլայ այն։ Թաթարերէնին մասին յետոյ։ — Ասոր փոխարէն հայագէտն Կոնիբիր տեղ մը յայտնի նշան կը գտնէ յոյն բնագրի ազդեցութեան, կամ ընթերցում մ'որ յոյն բնագիր կ'ենթադրէ[2]։ Ասով պէտք կ'ըլլայ ըսել որ հայ բնագիրն որչափ

1 Մեր մատ. Թ. 468, Թղ. 58ա "Աւղլում դերկակին սէնինկ սողունկնու. խւրաքինկ պիլայ. տայ անատան սոնկրայ չխար սոզունկնու ադզընկտան. իչոր դու– իչնէ դու–լայերդանէ, պարչասընայ դուդը պօլուրսէն։"

2 Այս խօսքն է (էջ 126) "Առցես զՆաթան քեռորդին քո եւ սնուսցես զնա քեզ որդի եւ հատուսցէ քեզ զանուանդս քո։" Հայագէտն (անդ՝ Ծան.) կ'ընդունի Canon. ձեռագրի այն ընթերցումն, ուր պահուած է յունաբանութիւնս ἐκτίσει σοι τὰ τροφεῖα, զոր յայտնապէս թարգմանել ուզած է հայը։ Հայ գրիչ մը չհասկընալով յունաբանութիւնը "զանուանդս" փոխած ըրած է "զանուն", որով Ven., 58 եւ Bod. կը կարդան՝ "Հատուսցէ քեզ զանուան քո." որ անտեղի է։ Էջմ. Թ. 2048 փորձեր է անտեղութիւնը վերցընել գրելով՝ "եւ նա լցուսցէ զտեղի անուան քո։" — Հայագիտիս այս կարծիքն ստուգիւ գոնէ հաւանական կրնայ ըսուիլ։ Մտադիր ալ ըլլալու է որ ասորին չունի այս խօսքն։

*ալ ըստ երեւութին ասորի բնագրէ մը ծագած ըլլայ, կրած է յունական ազդեցութիւն մ'ալ։ Սակայն այս ամէն մեկնութիւնք կը մնան խնդրական՝ աւելի կամ նուազ, մինչեւ որ ապահով ու ստուգիւ հին հայ բնագիր մը ի լոյս գայ։ Հայ բանասիրաց առաջին գործքն ըլլալու է՝ այսպիսի բնագիր մը գտնել։*

*Ներկայ հայ բնագիրը խճողուած է ռամկաբանութիւններով*[1]*, որոնք չեն միաբանիր թարգմանութեան առ հասարակ ընտիր եւ հին գրական լեզուին հետ, եւ բաց աստի նոյն իսկ ձեռագրէ ձեռագիր կը փոխուին*[2]*։ Ընդհանրապէս՝ եթէ նաեւ*

---

1 *Բազմաթիւ ուրիշներու մէջէն՝ էջ* 125 “*Վաթսուն կին առի . . . վաթսուն տարու եղայ.*” — 126 “*հագուցի*” (131 “*մի հագանիր.*”) 144 “*հալեւոր.*” — 129 “*հետ անօգամի հաց մի ուտել.*” — *անդ՝* “*ծեծ տղայի մանկան . . . կայն եւ մատնեհարն ի քաակի, եւ որպէս կայն ի իշուն ոտքն . . . նայ խելաւքանայ*” *եւն.* — 131 “*մի հեծնուլ զնա*” (Bod. *հեծեր*, Canon *հեծներ.*) — 131 “*ըռըզակիս կամաւքն Աստուծոյ*” (137 “*ըռջակ*”). — 137 “. . *եւ սանենչգքս գէմ հանաւղն.*” — 131, 132 “*չէմք տան.*” *անդ՝* “*որ գողանայ ոսկի կամ այլ փոքր իրք.*” — 133 “*էշն ամէն աւրն Է դարպաս չինէր եւ չարտախ*” (*ձռգր. պէսպէս.*) — 134, 136 “*արճիճ*” (*կապար.*) 134 “*յետ սակաւ աւուրց ի վերայ ջրին գայ որպէս տերեւ ծառոց.*” — 135 “*գրգռէ՛ զնա եւ անարգէ՛*”. 135 “*պատուիրէ*”, 153 “*հանէ՛ զայս խաւսս*”՝ *եւն հրամայականներ.* — 137 “*մարդ որ էչէնն Աստուած յաջողէ.*” *անդ՝* “*ընդառն ունեւորի . . . ագահ մարդոյ աչքն ոչ լցվի քաւեղ թէ հողով*”. — 154 “*չեն լսել.*” 143 “*իբր լսեց . . . Զի՞նչ մեղանք եմ արարեալ ես Խիկարին*” *եւն.* — 145 “*ասէ ցԱբուսմաք նայիպին իւրոյ.*” — 147 “*ես այլ ի հետ լայի.*” — 146 “*յիշեա զաղուհացն որ ի միասին կերեալ եմք.*” 143 “*ես զաղուհացս զոր կերեալ եմ ի տան քո*” *եւն.* — 147 “*չինեալ ապարանս ընդ երկինքն եւ ընդ երկրիս ի մէջ ի կախ.*” — 152 “*որոտայ եւ կայնու զճառագայթս.*” — 153 “*զայդ Ասորւոց հորթարածներն գիտեն.*” — 155 “*ի ծագել արեւուն ցայթեց ի տանն*”, *եւ անթիւ ուրիշներ։*

2 *Անհնար է յիշել անթիւ պէսպիսութիւնքն ձե-*

*Հարեւանցի ակնարկ մը ձգենք Հայագիտին նշանակած գլխաւոր տարբերութեանց վրայ, կը տեսնենք որ շատ անմիաբան են ձեռագիրներն ալ. ի միջի այլոց* Ven. *եւ* Canon. *իրարմէ էապէս տարբեր են. առաջինն առՀասարակ մէտ բնագիրը ռամկացընելու, վերջինն աւելի ազատ բազմաթիւ փոփոխութիւններէ՝ թէեւ ոչ նուազ աղաւաղ ինքն ալ*[1]: *Բնագիրն առՀասարակ լի է ծայրէ ծայր աղաւաղութիւններով, սխալ ընթերցումներով, եւն*[2]: *Ասոնցմէ*

---

ռադրաց: Իբրեւ օրինակ ահա մէկ քանին՝ էջ 135 “զի մի յանկարծամահ լինիցի” խօսքին տեղ՝ Ven. “զի մի անընկմահ լինիս.” — անդ՝ “չկոչեն զքեզ՝ մի երթալ ի պատիւ” խօսքին տեղ՝ Bod. “որ չէ կոչէօ՝ ի պատիւ մի երթայր.” — 138 Ven. “Հալածեա զնա որ ոչ գոյ”, Bod. “. . . որ չի գայ.” միւսները՝ չունին լաւ եւս. — 138 “ի չարէն մի երկնչիր”, Ven. “. . . մի վախեւ.” — 136 “ծառայ զորդ” եւն, 139 “որ ողորդ է մտաւք” (58 խորք, Canon զուարթ եւն.) — 150 “Ճարտարքս կան խափան.” Ven. “Ճարտարքս խաբ անկան.” — էջ 127 Canon “ականջ արայ որդի իմ խօսքին եւ խրատն իմ գրիր ի մատանին քում եւ մի մոռացիս” եւն, միւսները չունին. եւ այլ նմաններ:

[1] Պատմութեան մասէն զատ՝ ուր Canon յաճախ կը շեղի եւ աւելի կը մօտենայ Ասորւոյն (տես Հարիս՝ էջ 36–46) նաեւ առածները պէսպէս թուով ու ընթերցուածով ունին ձեռագիրք. ոմանք նոր մասեր ունին (Canon տես էջ 159–160, երկու Հատ. Թ. 58՝ տես էջ 137), ընդՀակառակն նաեւ պակասներ (Bod. տես էջ 134, Թ. 58՝ տես էջ 130) եւն: Նշանաւոր է Պարիսի Թ. 58 որ շարք մ՚առածներ կ՚աւելցընէ՝ Կ–ԿԷ, զորոնք Հայագէտն ուրոյն դրած է. (տես էջ 139–140) եւ որոնք լաւ օրինակ են փոփոխութեան բնագրի եւ այլափոխման: Յիշեցինք նշանաւոր յետսամուտ կտորն “Հարցումն թագաւորաց” եւ յարակիցքն (էջ 140–1.) որուն մասին երկար խօսեցանք:

[2] Մաս մ՚ակնյայտնի սխալագրութիւնք են. զոր օր. էջ 125–6 “նթէ որդի յետէ ––րն քանքար տասն ծախեսցէ (Թ. 58 . . . որդի՝ աւուրս քանքարս տասն . . .) ոչ կարէ տպառել (Ven. տպար) զինչս իմ. այլ զի արկցէ Հող ձեռօք իւրովք (Ven. յետոյ էմոյ) ի վերայ իմ” եւն.

շատերը դիւրին է ուղղել. բայց նաեւ այնու կը մնայ մեծ զանգուած մը խնդրական ընթերցմանց[1], մթին տեղերու եւն[2]։

---

— 128 "կաւշիկք ի յօտից" (յոտսդ է.) — 129 "զմասն քո կեր տաղաղութեամբ (ամէնքն այսպէս, միայն Bod. եւ 58 չունին, փխ. "խաղաղութեամբ") եւ տօ ընկերին ղօւշ մի տրկաներ" (Ասորին՝ եւ դրացիդ մի արհամարհեր.) — 132 "եւ այլքն շնանան" (շնացին.) — 136 "բարձի երկաւ" (երկաթ.) — 144 "վիճարեացեն" (վճարեցին.) — 145 "տար սպանանեա զանաստուած խիկարդ." — 150 "բնակիչք փախան." 151 "թռան ի վեր." — 154 "պարան աւազէ." — 160 "տվին", եւ նմաններ՝ մինչեւ անգամ "տէրք" (էջ 125), ըստ Bod. "մինչեւ եղեւ (Նաթան) եօթն ամաց տարկան" (էջ 126), եւն. — Նաեւ յայտնի լեզուական սխալներ՝ ինչպէս "Նշենի որ յառաջ ծաղկի եւ յետոյ հասանի զպտուղ իւր . . . թթենի որ յետոյ ծաղկի եւ յառաջ հասանի զպտուղ իւր" (էջ 128.) "եւ զամենայն գործք արքունեաց քեզ վիճարեցին ճարտարութեամբ" (էջ 144), եւն։

1. Ի միջի այլոց՝ էջ 127 "կին գեղեցիկ յօտնեալ եւ ծարիւրեալ", ուղղելի՝ "գօտնեալ եւ ծարուրեալ" (նոյնպէս Ասորին.) — 132 "Եթէ վրէժ հասցէ քեզ՝ ա՛յ մի խռովիր եւ [illegible]." — 152 (Փարաւոն) "զգեցաւ զգեստ [illegible]" (Ven. [illegible].) Ասորին՝ աղնագործուած. — 148 "ի խաւսս [illegible] կորուսի զքեզ". ուղղելի՝ "ի խաւսս մանկան միոյ (Նաթանայ) կորուսի զքեզ" (նոյնպէս Ասորին.) — 153–4 "լուան ծօտոտնտ մեր զխրխնջիւն երիվարաց ձերոց եւ վրէժեցան", կրկին անգամ, ուր Canon "ծօտոտնո" կը դրէ. ըստ Ասորւոյն՝ մօտօններ լսեցին արուձիոց խրխնջիւնը եւ վիժեցին. — 157 "գէրէ՛, ո՞չ գիտէիր", կ'ըսէ ուղտն կարճին. (Հայ առակներն ալ "գէրէ" կը գործածեն այսպիսի իմաստով. տես Ն. Մառ.) — 160 "աւձն որ փոխանեցաւ ի մօրենին", ուր Ասորին (էջ 70) ունի ܣܢܝܐ, զոր Հայ թարգմանք (տես Գործք Առաք. Է, 30. Լ, 35, եւն) կը փոխադրեն "մօրենի". ուստի ուղղելի "... ի մորենին." եւ շատ ուրիշներ։ Ընդհակառակն՝ թէեւ աղաւաղութեան երեւոյթ ունի, ուղիղ թարգմանութիւն է առածս (էջ 136) "Որդեակ, եթէ առաքէ տէրն քո թէ բեր [illegible] խաղող. մի բերել նմա, զի ղխաղողն ուտէ եւ

Բնագրին այս վիճակն եւ այն պարագան որ մեր մատենադարանը չունինք օրինակ մը Խիկարայ՝ ստիպեց զմեզ ետ կենալու մեր դիտաւորութենէն, զոր ունէինք հրատարակել Հայ բնագիրն՝ համեմատութեամբ միւս բնագիրներուն. վասն զի ստիպուած էինք՝ բնագիրը ծայրէ ծայր սրբագրել, որ քիչ շատ միշտ կամայական կը մնայ, քանի որ վստահելի աղբիւր մը կը պակսի։ Եւ այսպէս կը սպասենք ընտրելագոյն օրինակի մը։

9.

Ամէնէն վերջը հայ թարգմանութեան մասին մեր ըսածները կնքելու համար՝ հարկ է որ քանի մը խօսք ալ ըսենք Ն–Ն–րէրէ՞ թարգմանութեան մասին, որ հայերէնէ թարգմանուած՝ ամէնէն ուշ ԺԶ. դարուն, կրնայ նոյն իսկ գործածուիլ հայ բնագիրը վերակազմելու տեւն։ Վասն զի բնական է որ՝ համեմատելով թաթարերէնը հայ ձեռագրաց ընթերցուածներուն հետ՝ կարելի է ճանչնալ թէ ինչ կարգի ձեռագիր մը հիմն եղած է այն թարգմանութեան։ Երբ խնդիր ըլլայ այս կամ այն տեղւոյ ընթերցուածին մասին, կրնայ թաթարերէնին ալ ընթերցուածն համարժէք վկայութիւն մ'ըլլալ

---

զպատուհասն սպտուրին ու թողու.„ Ասորին չունի. բայց Սլաւականը կը հաստատէ նոյնը (առած Թ. 72, տես Հարրիս՝ էջ 32 "աղքատ խաղող„ եւ "աղբ„ կամ սպտուր։)

² Էջ 142։ Իբրեւ օրինակ առածս (էջ 156) "Որդեակ, ես ուսուցի զքեզ որպէս ձագս աղուեսու, եւ ակն քո ի ծակ քո եւ մատն իմ կոկեր ի բերան քո. եւ մատունք քո սրեցեր յաչս իմ.„ Canon՝ "Որդեակ, սնուցի զքեզ որպէս ձակս արծուի. եւ մատունք քո սրեալ էին ի յաչս իմ. քանզի ակն քո չար էր տեսանել զիս։„ Ասորին (էջ 69) "Որդեակ մատն իմ բերան քո եւ մատն քո յաչս իմ. ընդ այնր զի սնուցի զքեզ, չնագայլ, այդպէս խեթիւ հայիս„ (վերջինս բառական՝ աչքերդ բբերուդ վրայէն կը նայիս։) Թողունք յիշել բազմաթիւ ուրիշներ։

միւս ձեռագրաց հետ, ինչպէս արդէն վերն առթիւ մը տեսանք։ Կը ցաւինք միայն որ Թաթարերէնը համառօտուած է, կամ լաւ եւս ըսելու համար՝ մինչեւ առածներու վերջն իբրեւ ճշգրիտ Թարգմանութիւն ներկայանալէն ետքը՝ մնացեալ կէսը լոկ համառօտ ամփոփում մըն է, եւ ոչ բուն Թարգմանութիւն, գոնէ մեր ձեռագրին համեմատ՝ զոր առջեւնիս ունինք։

Միակ ձեռագիր մ՚ունինք Թաթարերէնին, այն է մեր Մատ. Թ. 468, Թղթեայ Նօտրգիր, մաքուր գրչութիւն մը՝ ՌԻԴ (= 1575) տարին գրուած Խաչերես Տէր Օգսէնտեան անձէն ի Կամենից[1]։ Ձեռագրին պարունակութիւնն է բուն Լեհահայոց դատաստանագիրքն Թաթարերէն, բայց անկէ յառաջ Գօշի դատաստանագրոց մէկ մասին հետ այլեւայլ ուրիշ կտորներ ալ, այլեւայլ խրատականներ եւ Պատմութիւնք Ս. Գէորգայ եւ Աբգարու, եւ սոնց շարքին մէջ Խիկարայ իմաստնոյ բանք[2], որ ձեռագրին ճիշդ ութը Թուղթը կը բռնէ։ Ասկէ դուրս ալ օրինակներ անշուշտ կը գտնուին, բայց առ ժամս մեզի անծանօթ եւ անմատչելի են։ Մեր նպատակին համար՝ որ ամբողջութեան համար համառօտ տեղեկութիւն մը տալ է Թաթարերէն Թարգմանութեան մասին, բաւական է մեր ձեռք եղածն ալ։

Թարգմանչին անձն ու Թարգմանութեան ժամանակը մեզի անծանօթ են։ Ցամենայն դէպս Խաչերես գրիչ է միայն ինչպէս Դատաստանագրոց,

---

[1] Ձեռագրիս մասին ընդարձակ տես "Ցուցակ,, էջ 943–5։

[2] Անդ՝ Թղ. 54բ–62ա, Խորագիրն այսպէս՝ "Ուսլու Խիկարնինկ սօզու էսլի ախըլը. Այդքանըյ տայ օկուդուք քի օկուդլանկայլար, ատամ օղլանլարը (= 125 "Խրատք եւ իմաստութիւն Խիկարայ, զոր ուսանին որդիք մարդկան.) Ցայ ադայ օղլունայ օկուդ պէրկայ, տայ էսինայ ալկայլար։ — Էսկի գորայ տայ,, եւն։

նոյնպէս միւս կտորներուն, ուստի եւ Խիկարայ, որ ըստ այսմ 1575էն շատ յառաջ թարգմանուած էր։ Շատ յառաջ ըսինք. վասն զի յայտնապէս Խաչերեսի առջեւ եղած օրինակն ալ նախնական բնագիրը չէր, այլ փոփոխեալ եւ համառօտուած։ Անհնար է մտածել որ բուն թուրգմանիչը վէպին կէսէն աւելի բառ-առ-բառ թարգմանելէն ետքը՝ մնացեալ մասն եւ առակներու վերջին շարքն մէկդի թողուր, եւ միայն քանի մը խօսքով ամփոփէր, այն ալ այնպէս որ վէպին էական կէտերն անգամ դուրս մնան։ Յայտնապէս գրչի մը համառօտութիւնն է այն, եւ այսպիսի օրինակ մը գտած էր Խաչերես։ Ասով յիշեալ օրինակն իբր ԺԶ դարուն ըլլալու է, իսկ թարգմանութիւնն աւելի ալ կանուխ։

Թաթարախօս հայ դաղութներու համար եղած թարգմանութեանս մերձաւոր պարագայք մեզ անծանօթ են։ Միայն թէ կ'երեւայ որ աւելի արեւմտեան, ըսենք Լեհահայոց՝ կողմանէ ըլլալու էր թարգմանիչը։ Թարգմանութեան մէջ գտնուած մէկ երկու եւրոպական բառերը կարծես հաստատել կ'ուզեն այս կէտը[1]։ Բաց ի ատոնցմէ առատ են հայ բառեր, ընդհանրապէս պարզապէս պահելով հայ բնագրին գործածած բառերն, զորոնք թաթարախօս ժողովուրդն ալ կը գործածէր[2]։ Ուստի կան

---

1 Այսպէս՝ Թղ. 59բ «Դոզումլուք ֆանթազիէնդէ տըր խարդլարընընկ» (= էջ 138 «Համբերութիւն հէծ է գործոց։») — Թղ. 55ա «Պարտըմ Բալըմըրմայ» (= էջ 127 «առեալ տարայ զՆաթան յապարանս իմ»։)

2 Ի մէջի այլոց՝ Թղ. 54բ «Խիկար ուսլու ճարթար օլտի» (= էջ 124 «Խիկար իմաստուն եւ ճարտար մտաւ».) Համմ. 55a «Ճարտարլըխ պիլայ» (= 126 «Ճարտարութեամբ».) — 54բ «դէք մանկայ Ա. օղուլ յէշտալ պօլկիյէտի» (= 125 «զի մի մնացից անյիշատակ».) — 55բ «խադըն գիշի օխշար Ա. քօրքըլու ֆէրէշթանէյա» (= 127 «Նման է նա գերեզմանի» եւն.) — 55բ «քի սէնի տայ էասիզ անդխամ ունուտակյըլար» (= 128 «զի որպէս զնոսա անծիր կո-

նաեւ այնպիսի հայերէն բառեր, որոնք հայ բնագրին համեմատ չեն, եւ սակայն թարգմանիչը գործածած է զանոնք, վասն զի ժողովրդեան ընդելական էին[1]: Բայց նաեւ կան դէպքեր, ուր յայտնապէս թարգմանիչը չէր կրցած աղաւաղ հայ բնագրէն իմաստ մը հանել. ուստի կամ դուրս թողուցած է զանոնք (— այսպէս կ'երեւայ մեկնելու է այլեւայլ աղաւաղ առածներու պակսիլը, —) եւ կամ բառաբառ օրինակած է հայ բառը: Այսպէս Խիկարայ հետեւեալ (Հարրիս՝ էջ 132) խօսքին մէջ՝ "Որդեակ, եթէ վրէժ հասցէ քեզ [յ]Աստուծոյ մի՛ խոտորիր եւ ճըճգօրէր„ եւն թարգմանելու ստիպուելով՝ ուրիշ ելք գտած չէ, բայց եթէ պահել նոյն բառը՝ "ճըճգօ-հէլ„ գրելով[2]: Ուրիշ տեղ մը

չեսցիս.„ թարգմանն "անզգամ„ կարդացեր է հոռ. հմմտ. 55բ "անզգամլար պիլայ իչքայսէն„ (= 128 "մի՛ ըմպել ընդ անզգամս.„) — 55բ . . . տայ նի սարը լէղէ„ (= 128 "եւ մի՛ կարի դառն„ եւն, տպագիրք B հոս "լեղէ„.) — 58բ "օլ սանկայ հայպատ տըր տայ ֆօտօ„ (= 134 "եւ լինի քեզ անուն բարի եւ փառք.„) — 59բ "խընամխօսօտըխըն էդմայ„ (= 137 "խնամխաւսութիւն մի՛ առնել.„) — 59բ "ադահըլը„ (= 138 "ագահութիւն.„) — 60ա "սընկարընկնըյ բօմպօօ էդմայ„ (= 139 "զընկեր քո . . . մի՛ բամբասեր.„) հմմտ. 56ա "բամբասել էդքայլար տայմայ սէնի„ (= 129 ". . . բամբասող„) — 60ա "էօլի ֆօն ստամիկայ„ (= 139 "առն քաջամտի„), եւ նմաններ:

[1] Այսպէս՝ Թղ. 56բ "գօբ դուրլու ախըրմըզկայ օլում պար. սայ գօբ տուրլու ֆօրջանէ„ (= էջ 131 "զի ամենեցուն մահ առաջի կայ եւ պատուհաս մեծ է„.) — 59ա "Աւղլում, խաչան քի սէնի հօրէ կայ ունտայսալար„ (= 135 "ի կոչնատանէ„ եւն, թարգմանը "հարկինք„ բառն ուզած է գործածել.) — 59բ ". . . փախիլլէք էդմայ եա ագահըլլէք„ (Հայը՝ էջ 137 "ընդ առն ունեւորի մի՛ հակառակել„.) եւ նմաններ, այսպէս յաջորդը:

[2] Տես Թղ. 57բ "Աւղլում էկարքի սանկայ Թէնկրիտան նէ դուրլու ֆօրջ-ըն-ըն (Հայ՝ "վրէժ„) եօլուխդուէսայ, պօլմակայ քի եանկըլըրը ճըճգօ-հել պօլկայսէն:„ Հայերէնը տես վերը:

«ՌՌԷՆԻ» ծառին դիմաց կը գտնենք «խաղախ», որ ակամայ կը ստիպէ մտածել թէ թարգմանը «ՏՏՁԷՆԻ» կարդացած ըլլալու է[1], եթէ միայն յիշեալ բառն թաթարական գաւառաբարբառի մը մէջ ուրիշ նշանակութիւն ալ չունենայ։

Միւս կողմանէ յայտնապէս շատ հին ալ ըլլալու չէ թարգմանութիւնը։ Գոնէ այն ձեռագիրն, որ թարգմանչին առջեւն էր, արդէն ճշդիւ մեր արդի ծանօթ ձեռագրաց կարգէն էր, ոչ նուազ աղաւաղ, ըստ երեւութին Պարիսի Թ. 58ի տեսակէն։ Համեմատութեամբ Հայ բնագրին լիովին կը հաստատուի այս կէտը։

Պատմութեան սկիզբը (Թղ. 54բ—55ա) ճշգրիտ թարգմանութիւն է արդի ձեռագրաց նոյն մասին (էջ 125—7). անկէ ետքը նոյնպէս (մինչեւ Թղ. 60բ) Առածները՝ ճիշդ մեր օրինակաց համեմատ (էջ 127—140,) աննշան տարբերութիւններով աստին անդին, որոնք կը մեկնուին մասամբ այն լեզուին կազմութենէն, որ այնչափ տարբեր է Հայերէնէ, մասամբ ալ անշուշտ թարգմանչին անյարմար կամ թարգմանելու դժուար երեւցած ըլլալէն, եւ վերջապէս իւր առջեւ եղած ձեռագրին քիչ մը տարբերելէն։ Այս բաժնիս կ'արժէ ընդհանրապէս բովանդակ թարգմանութեան մասին։ Այսպէս երբ սա վճիռը (էջ 127) «Որդեակ, եթէ լսես բան ինչ ի դրանէ արքունի, մեռո՛ ի-ներքո՛ զնա ի սրտի քում» թարգմանուած կը գտնենք (Թղ. 55բ) «Աւղլում, նէքի իշիդսանկ խան պկյ իշիքինայ, անը է-րտէնկայ թօփրագ» եւն, պէտք չկայ ընդունելու որ «պահեա զնա ի սրտի քում» կարդացած ըլլայ թարգմանը. այլ ընդհակառակն «մեռո՛» անյարմար տեսած ըլլալու է թարգմանելու թաթարերէնի, իսկ «թագո՛» եւն յիշեալ կերպով փոխադրած։ Ուրիշ մէկ քանի

1 Թղ. 55բ «եօխեսայ օխշայ խաղախտա» (= 128 «այլ լեր որպէս ՌՌԷՆԻ», եւն։)

տեղեր աւելի ազատ ալ շարժած կ'երեւայ թարգմանիչը. տեղ տեղ՝ ուր մանաւանդ մթին էր Հայերէնը, իմաստ մը տալ ջանալով, երբեմն ալ փոքրիկ յաւելուած մ'ընելով[1]: Երբ այսպէս կարդացեր է Հայերէնին մէջ սա մթին բացատրութիւնը (էջ 131). "Ճմլէտ էօ մաշէտ չըլարընէ օրթէ թօսմէ եւ բարի լինի քեզ յԱստուծոյ„ եւն, ելք մը գտած է թարգմանելով թէ Ինչ որ բարի ու չար լսես՝ սրտիդ մէջ պահէ, որ Աստուծմէ բարիք ըլլայ քեզի[2]: Սակայն առ հասարակ հաւատարիմ թարգմանիչ մըն է, որ ճշդիւ պահած է եւ փոխադրել ջանացած Հայերէնին նաեւ աղաւաղ ընթերցումները, այնպէս որ դիւրաւ կրնանք իմանալ թէ իւր առջեւն եղած ձեռագիրն ինչ աղաւաղութիւններ ունէր[3]:

---

1 Օրինակի համար 57ա "Օլ ատամ քի սէնտան քուչլու տուր, անընկ պիլայ թօրաշ դօսդմայ, տայ անկար ուդրու պօլմայ.„ (Հայը միայն՝ էջ 131 "Որ զաւրաւոր է քան զքեզ՝ մի հոյատաջէլ ընդ նմա„.) — 58բ "Ալլում, տայմայ պօլուղուչի պօլ խանլար պիյլար ալըննայ, օքէնինէ թըշաթանըլըթէնէյօյ տօղ դէլայ, դայ տէչայ դէլայ. ալայ դուդ քի անըյ սալանընկ„ եւն. (Հայ միայն՝ էջ 134 "առաջի թագաւորաց եւ դատաւորաց աւգնական լեր ընկերի քո, զի ի բերանոյ առիւծոյ„ եւն), եւ նմաններ:

2 Տես Թղ. 57ա "Ալլում. նէքի եախշի եաման իշիդսանկ, անըյ եուրաքինկայ սախլայ. Թէնկրիտան սանկայ եախշի պօլուր„ եւն: — Նոյնպէս Հայոյն սա խօսքը (էջ 131) "եւ [ի] չարէն մի երկնչիր„՝ թարգմանած է (Թղ. 57ա) "եօքէ դօսչմանտան խորխմայ.„ ուստի՝ հին թշնամիէն, անշուշտ "չար„ սատանայ իմաստով առած: — Մթին առածս (էջ 131) "Որդեակ յաւուրս զոհից մի խոտորիր, գուցէ ոչ հաճեսցի Տէր ի զոհս քո„՝ թարգմանուած է (Թղ. 56բ) "Ալլում, խաչան սատաղայ պէրսան՝ եարլընըյ աչըդմայ, պէրկանինկ Թէնկրիկայ խապուլ տուկուլ տուր„, եւ նմաններ:

3 Ահա քանի մ'օրինակ: Թղ. 56ա "եօլ աչ դյօխընէյօյ„, ուստի՝ "Ճանապարհ արա օտէջ քոց„, ըստ բոլոր ձեռագրաց (տես էջ 128) մինչ ուղիղն ունի Canon

Առածները ճիշդ հայերէնին համեմատ եւ նոյն կարգաւ են, զոր կը գտնենք Կոնիբերի հրատարակած բնագրին մէջ: Բայց հոս սա գլխաւոր տարբերութիւնը կայ, որ բազմաթիւ առածներ, թուով 17, կը պակսին. նաեւ այնպիսիններ՝ որոնք Խիկարայ հիմնական առածներէն ըլլալով՝ դժուարաւ կըրնային չգտնուիլ թարգմանչին առջեւ եղած ձեռագրին մէջ[1]: Ասոր փոխարէն մէկ երկու կտոր առածներ աւելի կան, որոնք արդի ծանօթ ձեռագրաց մէջ չեն երեւար[2], եթէ չհաշուենք տպագիրները

"... որդւոյ քոյ,, համեմատ Ասորւոյն. — Թղ. 58ա մտօք կալը "պարըր ջենոփ երջինոյ,,, ուստի՝ "երթայ բոփ չամո իւր,,, ինչպէս ձեռագիրք ալ ունին (էջ 134.) — 59ա "Թէնկրիտան եախշի ող ալըրսէն,,, ուստի՝ "անօան բարի առնուս,, ըստ ձեռագրաց (էջ 136), միայն Canon. "առնուլ,, Ասորւոյն համեմատ. — 59բ "ագահ գիշինինկ գօզըւն նեմայ թոյտուրմաս, դէք թօփրախ.,, ուստի ճիշդ արդի աղաւաղ օրինակաց պէս՝ "ագահ մարդոյն աչքն ոչ լցվի, բաւել թէ հողով.,, (էջ 137.) — 59բ "դաշ ադ տայ ուր քի արդընկտան գելմասին,,, ուստի ըստ Ven. եւ Bod. "քարամբ հալածեա զնա (զշուն) որ չի գայ,, (Bod., իսկ Ven. որ ոչ գոյ,) եւ բազմաթիւ ուրիշներ:

1 Պակաս են հայերէնին կարգաւ հետեւեալ առակներն, որոնց սկզբան բառերը կը դնենք թողլով "Որդեակ,, բացագանչութիւնը. էջ 130՝ "Որդեակ. Յառաջ սիրէ մարդասէր,, եւն. անդ՝ "Որպէս վայելուչ է ծառ,, եւն. անդ "Որդ ոչ գոյ կին,, եւն. — էջ 133 "Խաշինք որ գիհէն ի զատ,, եւն. անդ՝ "Ցածո՛ զաչ քո,, եւն. — էջ 134՝ "Լաւ է կող մի,, եւն. անդ՝ "Մի՛ անիծաներ զորդին քո,, եւն. անդ՝ "Հարց զայր իմաստուն,, եւն. անդ՝ "Եթէ զայր իմաստուն,, եւն. անդ "Եթէ զայր իմաստուն առաքես,, եւն. — էջ 136՝ "Մարդ որ ստացուածք,, եւն. անդ՝ "Կերայ դառնիճ,, եւն. անդ՝ "Սիրեա զմարմին քո եւ զկին քո,, եւն. անդ՝ "Եթէ առաքէ տէրն քո,, եւն. անդ՝ "Լաւ է բան իմաստնոյ յարբեցութեան,, եւն. — էջ 137՝ "Սիրեա զհայր քո,, եւն. անդ՝ "Եթէ դադարեն գետք ի գնացից,, եւն. — էջ 138 "Որ քեզ չար թուի,, եւն:

2 Նոր առած են՝ Թղ. 56ա՝ "Աւղլում. եամա[ն

("Պղնձէ քաղաք„։) Այս երեւոյթը մեկնելու է անշուշտ անով որ նախ մաս մը ստուգիւ թարգմանչին գործածած ձեռագրին մէջ կը պակսէր. մաս մ'ալ ինքը թարգմանիչը կրնար մեկդի թողուցած ըլլալ, մանաւանդ անոնք որ աղաւաղ ու մթին ըլլալով՝ դժուարաւ կը թարգմանուէին. բայց վերջապէս մաս մը՝ եւ թերեւս մեծագոյնը՝ արդիւնք ըլլալու է թաթարերէնին օրինակողներու կամ գրիչներու զանցառութեան։ Կարծենք որ նոյն իսկ ներկայ օրինակութեան մէջ բաւական նշան կայ ընդունելու որ եթէ գտնուին ուրիշ օրինակներ եւ համեմատուին, պիտի տեսնուի որ թաթար բնագիրն ալ նուազ պէսպէս ու աղաւաղ չէ քան հայերէն բնագրին ձեռագիրները։

Վերջին կէտիս վկայ է վէպին երկրորդ կէսին գրեթէ բոլորովին կրճատուած ըլլալը մեր օրինակին մէջ։ Թաթարերէնը հասնելով հայ ձեռագրաց վերջին առածը (էջ 138 "Որդեակ, որ ողորդ է մտօք„), կը շարունակէ՝ ճիշդ Պօրչօֆ Թ. 58 ձեռագրին համեմատ՝ անոր յաւելուածական առածները Կ—ԿԷ. (Հարրիս՝ էջ 139—140. Թաթար՝ Թղ. 60ա—60բ։) Նոյնպէս կը կցուի հաչակաւոր միջանկեալը կտորը, այն "Հարցումն Թագաւորաց որդւոց„. (Հարրիս՝ էջ 140—1, Թաթար՝ Թղ. 60բ—61ա), միայն չկայ ուրոյն խորագիրն եւ "Հուտայ եւ Բաղիայն„ անունները. այլ կը սկսի պարզապէս՝ "Խայտըբ Խիկար„ եւն (= "Հարցան ի Խիկարէն„ եւն.) չկայ դարձեալ հռչակաւոր "Հարցին Պէտրբխտին„ ընթերցումն, որուն տեղ "Խիկար„ կ'ըսէ թաթարը. եւ կ'աւարտի ճիշդ հայերէնին վերջաբանովը՝ "Եւ այս էր խրատն„ եւն։ Ասկէ ետքը կը

---

օղու՛լ] էյլէյլէր քէնտինինկ եամանլըգընայ քօրայ, տայ եախշի օղուլ դուրար քէնտինինկ եախշըլըգընայ քօրայ.„ — Թղ. 60ա՝ "Աւղլում, օլ դուրըլու տիր էսիրէք աստամ, նէ տուրլու քի օխ քիրկայ պուրնաւնունկ իչինայ, օզկակայ դիյմայ դէք քէնտինինկ դէպասինայ։„

*սկսի կրճատումը։ Բովանդակ մնացեալ մասը՝ իբր 15 էջ բան (Հարրիս՝ էջ 141—155) ամփոփուած է Թաթար ձեռագրին իբր երկու էջի մէջ (Թղ. 61ա—62ա), միայն ուղղեւծուծն, այն ալ կիսատ, այնպէս որ Խիկարի գլուխ եկածն անըմբռնելի կը մնայ. ո՛չ նամակները կան եւ ո՛չ Եգիպտոս ըրածները, օդեղէն աշտարակն, եւն։ Բայց եթէ այս մասին գոնէ համառօտ ամփոփում մը կայ, բոլորովին կը պակսին տաղները կամ առածներու երկրորդ շարքն, զոր կ՚ըսէ Խիկար զՆաթան պատժելու ատեն. (Հարրիս՝ էջ 156—161։) Միայն ամէնէն վերջինը պահուած է. եւ ընդհանրապէս վերջաբանին կրկին կը դառնայ Հայ բնագրին՝ բառաբառ թարգմանութիւն ըլլալով այն քանի մը տողերը։ Ասով կրկին կը հաստատուի թէ այս կրճատման հեղինակը, որուն զոհ եղած է վէպին ամբողջ երկրորդ կէսը, թարգմանիչը չէ։ Հոս կը դնենք այս վերջաբանական մասը, միանգամայն իբր օրինակ Թաթար թարգմանութեան, դէմ առ դէմ Հայերէնին։*

Հայ բնագիր (էջ 161)։

*1 Որդեակ, Աստուած ապրեցոյց զիս վասն անմեղութեան իմոյ, եւ զքեզ կորոյս վասն անաւրէնութեան քո։ 2 Աստուած առնէ փոխարէն* [Bod. *դատաստան*] *ընդ իս եւ ընդ քեզ։ 3 Ձի ադին շանն հաց տայ եւ բերանն՝ բիր։*

*4 Ի նմին ժամու ուռեցաւ Նաթան եւ պատառեցաւ* [Bod. *պատառեցաւ ամենայն մարմին նորա.*] *եւ ես ասեմ՝*

*5 Որդեակ, որ բարի առնէ՝ բարի գտանէ. 6 եւ որ այլոց խորխորատ փորէ՝ ինքն անկանի ինմա.* [Bod. *ինքն անկանի ի խորխորատ.* Canon

Թաթարերէն (Թղ. 62ա.)

*1 Այդդըմ. Օղլում, Թէնկրիմ մէնիմ սախլադըմ մէնի՝ մէնիմ անմեղլըմ պիլայ, տայ սէնի դասէդդի սէնինկ եամանլըղնկայ քօրայ։ 2 Թէնկրի էդքայ սէնինկ տայ մէնիմ արամըզկայ եարղունը։ (3 չիք։)*

*4 Աւլ սահադ իշիդդի տայ չադլատըմ, տայ այդդըմ՝*

*5 Օղլում, եախշի խըլընկան եախշի դաբար. տայ եաման խըլընկան եաման դաբար։ 6 Տայ քիմ գիմկայ չուղուր խազսայ, քէնտի*

եւ որ փորէ խորխորատ ըն-
կերի՝ անձամբ իւրով լնու։]
7 Կատարի բարին ի բարի՝
եւ չարն ի չար։
8 Ցայս վայր յառաջաբերեալս — Խի-
կար։

դուշար։ 7 Եախշիլըխ՝ եախ-
շիլըխ պիլայ դուկալընիր,
տայ եամանլըխ՝ եամանլըխ
պիլայ տուկալընիր։
8 Պուկունկայ տիլին
ճահդ եդսին օղուլ աթայ-
նընկ անայնընկ ալղշըն ալ-
կայ տայ քօնուլունկ պիլայ
եուրուկայ. ամէն։

Ինչպէս կը տեսնուի՝ մեծ չէ տարբերութիւնը, բաց ի անկէ որ Թաթարը չունի երրորդ պարբերութիւնը թէ Շան ագին հաց կու տայ, իսկ բերանը՝ բիր. դարձեալը չորրորդը թարգմանուած է իբր թէ բնագիրն ըլլար՝ “ի նմին ժամու ուռեաւ — լցաւ՝ պատառեցաւ.„ վերջապէս ծայրն ութերորդ պարբերութիւն մ'աւելցուած է, իբրեւ վերջնական եզրակացութիւն վէպին, այն թէ Տղաք պատուելու են իրենց հայրն ու մայրը. որ եթէ ոչ գրչին՝ գոնէ թարգմանչին յաւելուածն ըլլալու է՝ Ս. Գրոց ծանօթ խօսքն ըլլալով, զոր Խիկարայ միւս բնագիրները բնականապէս չունին։

Ի վերջոյ աւելորդ է ըսելն որ Թաթարերէն վէպիս անուանք ալ ճիշդ Հայերէն թարգմանութեան համաձայն են. այսինքն՝ “Խիկար„, “Նատան„, “Աբէստան„, “Աբուսմագ„, “Սենեքարէմ„ եւ “Փարաւոն.„ ուրիշ անուն չենք գտներ։ Այլազգ կարելի ալ չէր, քանի որ թաթարագէտ Հայ թարգման մը փոխադրած է, եւ Հայերէն ձեռագրէ մ'որ մեր արդի օրինակաց կարգէն էր, յատկապէս ցեղակից Պարիսի Թ. 58 ձեռագրին։



# Ը.

# ԱԳԱՊԵՏՈՍ ԵՒ ԻՒՐ ՅՈՐԴՈՐԱԿԱՆՔ ԱՌ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ

## 1.

"Աղաբիդոս" անճիշդ ձեւ մըն է՝ ուշ ժամանակի արտաբերութեան համեմատ գրուած՝ փոխանակ հնագոյն Ագապետոս (Ἀγαπητός) անուան, եւ շատ ցանցառ կը գտնուի Հայոց քով: Եթէ աչքէ անցընենք Հայ պատմագիրներն ու ժամանակագիրները, չենք գտներ յիշատակուած այսպիսի անուն մ'անգամ, բայց միայն հազիւ թարգմանական գրութեանց, այսպէս Սոկրատայ Եկեղ. Պատմութեան մէջ, այն ալ բոլորովին աղաւաղած[1]: Թերեւս ըլլան նաեւ մէկ երկու ուրիշ տեղեր՝ որ մեր աչքէն վրիպած ըլլան: Երեւոյթը զարմանալի չենք գտներ անոր համար ալ՝ որ նոյն իսկ Ագապետոսի հայրենակիցները՝ Յոյնք՝ բազմաթիւ համանուն անձանց մէջէն ճիշդ անոր մասին՝ որուն անուամբ փոքրիկ բայց սիրուն գրուածք մը ամէն կողմ տարածուած էր, նոյն իսկ դպրոցական գիրք մ'եղած, գրեթէ ոչինչ կրցած են հաղորդել: Իւր մասին հասած տեղեկութիւնն, որուն մաս մ'ալ վերջնականապէս հաստատուած չէ, այսչափն է միայն որ Ագապետոս Սարկաւագ էր Ս. Սոփիա

---

1 Փռիւգիոյ Սիւնադոն քաղաքին Ագապետոս հակառակաթոռ եպիսկոպոսին անունը (Սոկր. Է, 3) հայ կրկին թարգմանութիւններէն ընդարձակը կը գրէ "Ագոփէդոս", համառօտը՝ "Ագապիոս", Տես Սոկրատ Հրտ. Մ. Վ. Տէր-Մովսիսեան. (Էջմ. 1897) էջ 570 եւ 572:

*եկեղեցւոյ եւ՝ ըստ աւանդութեան՝ դաստիարակ Յուստինիանոս կայսեր, որուն ուղղած է իւր գրուածքը։ Գրքուկը "Հայելի վարուց„ մըն է իշխողներու համար՝ թէ ինչպէս կառավարելու են եւ վարուելու հպատակներուն հետ։ Ուրիշ տեղեկութիւնք կը պակսին։*

*Սակայն եթէ Հայոց քով անսովոր էր անունը, անծանօթ ալ չէր բոլորովին, նոյն իսկ անով որ յիշեալ գրուածքը թարգմանուած էր Հայերէնի, թէեւ չենք գիտեր երբ եւ որմէ։ Հարեւանցի ալ աչքէ անցընելով թարգմանութիւնը՝ կը տեսնենք որ մեր յունաբաններու շրջանէն է թարգմանիչը, այն լեզուաւ որ աւանդաբար երկրորդ թարգմանիչներուն վերագրել սովորած ենք, բայց ո՛չ թէ Անյաղթի կամ Պիտոյից գրոց, Սիւնեցւոյ եւ Նմանեաց ծայրայեղ արուեստակեալ լեզուաւ, այլ այն կարգէն՝ որ բազմաթիւ ուրիշ թարգմանութեանց մէջ ալ կը տեսնուի, ի մասնաւորի Գր. Աստուածաբանի, Բարսղի (վերջին փոխադրութեանց), Աթանասի եւ այլոց գործքերուն։ Իսկ եթէ համեմատենք Հայերէնը յոյն բնագրին հետ՝ կը տեսնենք որ այս գրքոյկը զարմանալի բացառութիւն մը կը կազմէ քիչ շատ մեր բոլոր միւս թարգմանութիւններէն։ Հայ թարգմանութիւններն առհասարակ արդի ծանօթ յոյն բնագիրներէն աւելի կամ նուազ չափով կը տարբերին. եւ այն՝ շատ բնական պատճառաւ որ յընթացս դարուց կրկնապէս փոփոխուած են բնագիրները, մէկ կողմանէ սկիզբնագիրները, միւս կողմանէ Հայ թարգմանութիւնները ձեռագրէ ձեռագիր. եւ երկրորդ՝ որ նոյն իսկ այն սկզբնագիր ձեռագիրներն՝ որոնք հիմն եղած էին Հայ թարգմանութեանց, յաճախ պէտք է որ էապէս տարբերէին արդի ծանօթ օրինակներէն, թողլով նաեւ շատ գործքերու կրած նորագոյն խմբագրութիւնները։ Ներկայ գործն ընդհակառակն ծայրէ ծայր չափազանց նոյնութիւն*

*մ'ունի յոյն բնագրին հետ, այնպէս որ պէտք ենք ընդունիլ որ թարգմանչին առջեւն եղածը ճիշդ այն բնագիրն էր՝ զոր կը ներկայացընեն արդի ծանօթ կրկին յոյն օրինակները։ Աղաւաղութիւն ալ շատ քիչ կայ, մէկ երկու աննշան բան՝ բաց ի երկու տեղ տողի մը՝ գրչին մոռացմամբ՝ դուրս իյնալէն (տես Գ.*[1]*, ԼԴ,*[5]*։) Այս նկատմամբ կ'արժէ համառօտիւ ուսումնասիրել հայ բնագիրը։*

*Հայերէն թարգմանութիւնը յիշուած է նախնեաց թարգմանութեանց շարքին մէջ*[1]*։ Վենետկոյ ձեռագիրն աննշան տարբերութիւն միայն ունենալու է մեր ձեռագրէն։ Յիշեալ տեղը յառաջ բերուած Հ. գլուխը կամ վճիռը ճիշդ նոյն է մերինին ընթերցման հետ՝ միայն դոյզն տարբերութեամբ. (Վենետ. "առ մնացականն.„ մեր ձռգր.՝ "առ մնացականսն։„) Մատենագիտութեան հեղինակը կը յիշէ նաեւ տպագրութիւն մը Ագապետոսի վճռոց ի Կ.Պ. 1808ին*[2]*։ Յիշելու կերպը՝ հարցական նշանով եւ ամբողջը չակերտի մէջ՝ կը ցուցընէ որ անձամբ տեսած չէ այն հրատարակութիւնն, ճիշդ ինչպէս մեզի ալ ցայսօր անծանօթ մնացած է։** *Դժբախտաբար որեւէ տեղեկութիւն չունինք այն 1808ի գրքուկին մասին, որուն՝ եթէ մատենագիտին աւանդածն ուղիղ է, նոյն իսկ խորագիրը փոփոխութիւն կը ցուցընէ։ Հոն կը կարդանք "Բույուրուլտին յորդորական գլխոց.„ մինչ*

---

1 *Հ. Գ. Զարբ. "Մատենադարան Հայկական թարգմանութեանց նախնեաց„ Դ–ԺԳ. դար։ Վենետ.* 1889, *էջ* 292, *ուր ուղղութեամբ նշանակուած ալ է լատինաց քով գրքուկիս* Charta regia *յորջորջումը, որ արդէն յոյն բնագրին ճակատն ալ դրուած է։*

2 *Հ. Գ. Զարբ. "Հայկական Մատենագիտութիւն„. Վենետ.* 1883, *էջ* 16՝ *"Աղոբիտրօս Սուրհանտքի. Բացատրութիւն յորդորական գլխոց?։ Կ.Պոլիս,* ՌՄԾԷ (= 1808), *ի տպ. Յօհաննիսեան Պօղոսի։„*

* *Սակայն տես այժմ էջ 192 եւ § 5։*

ձեռագիրն ունի հնագոյն "Արտադրութիւն (= ἔχθεσις) յորդորական գլխոցն" եւն, եւ այս է թարգմանչին գրածն ալ[1]։ Կը մնայ մեզի իբր հիմն յաջորդ համառօտ ուսումնասիրութեան Մատենադարանիս մէկ ձեռագիրն, որ մեր "Ցուցակին" հրատարակմանէն ետքը մտած է հաւաքման մէջ։

Նոր գրչութիւն մըն է. թուղթը, գիրը (նօտրաձեւ շղագիր), կազմն եւ այլ ամէն հանգամանք ԺԸ. դարու վերջերէն եղած բազմաթիւ ընդօրինակութեանց համեմատ. (թուղթք 115, մեծութիւն՝ 23×18 սնդմ., տողք 30—41.) գիրը պէսպիսութիւն կը ցուցընէ, բայց առ հասարակ մէկ գրչէ է։ Խառնակ հաւաքումն է, մասամբ ընդօրինակութիւն հնագոյն ձեռագիրներէ, մասամբ՝ նոր կտորներու, նոյն իսկ պարզ քաղուածքներ։ Ընդօրինակողն ու հաւաքողն է Գրիգոր անուն ի Կ. Պոլիս, որ քանի մը տեղ կը նշանակէ իւր գրչութեան տարին ալ, այն է 1788, որ տարին աւարտած է հաւաքումը։ Սկիզբը կը գտնենք Յովհ. Երզնկացւոյ "Ցղ. երկնային շարժմանն" ծանօթ գործքը (թղ. 1ա—9ա), որուն վերջը դրուած յիշատակարանը կը ցուցընէ թէ ինչ ձեռագիրներէ եղած է օրինակութիւնը։ Մեր ընդօրինակողն առջեւն ունեցած է հանրածանօթ Գէորգայ Պալատեցւոյ 1777ին օրինակութիւնն, որ փոխադարձաբար գաղափար առած էր 1604ին ի Լով գրուած ձեռագիր մը[2]։ Կը յաջորդէ (թղ. 10ա—բ) "Կարգ

---

1 Հմմտ. Նոյն բառն ի Հյկզն. Բռգ. (Ա, 376), ուր յառաջ բերուած են վկայութիւններ Պարապմանց գրոց, Անյաղթի, Պիտոյից, Մագիստրոսի, Թէոդորի, Եփ. Նչեցւոյ եւն։ "Բացատրութիւն" ալ նոյնիմաստ յունաձեւ կազմութիւն է, որ աւելի սովորական եղած ըլլալով՝ կրնար նախընթացին իբր մեկնութիւն գործածուիլ։

2 Թղ. 9ա "Գրեցաւ սակաւ բանս Յոհաննու Եզնկացւոյն ի թուին ՌՄԻԶ (= 1777.) յամսեանն յունիսի, ի ձեռն ուրումն Գէորգեայ ի Կոստանդնուպօլիս, ի

օրհնութեան որով օծանեն զԻնքնակալ արքայն ի հին քաղաքն Հռոմ,„ յարակից ունենալով քահանայապետաց թղթեր՝ Լուսիոսի առ Գրիգորիս կթղ. (11ա—13ա) եւ Կղեմէսի երեք՝ առ Գրիգորիս եւ Լեւոն (թղ. 13ա—15բ,) որոնց վերջը հետաքրքրական յիշատակարան մ'ալ օրինակուած է[1]: Աստնցմէ զատ կը գտնենք Հաղբատացւոց եւ Սանահնեցւոց թուղթն առ Տէր Գրիգորիս (թղ. 19ա եւն) եւ Գրիգորիսի պատասխանը (թղ. 21ա —29բ) եւ պատասխան Գրիգորի Տուտէորդւոյն թղթոյն (թղ. 29բ—39ա), թղթակցութիւնն Աբրահամու կաթուղիկոսի եւ Վրաց Կիւրիոնի՝ երեք երեք թուղթ (թղ. 40ա—46ա.) վերջին

---

ձեռագիր օրինակէ իմէքէ, որ էր գրեալ ի քաղաքն Իլով ի Լեհաստանի ի թուին ՌԾԳ.ին (= 1604), ի կաթուղիկոսութեան Տէր Մելքիսեդեկին, եւ ի թագաւորութեան երկրորդ Զիկմոնտին արքային Լեհաց: — Իսկ այժմ վերստին գրեցաւ ի թուին ՌՄԼԶ (= 1787) եւ յամսեանն Օգոստոսի ի ձեռն ուրումն Գրիգորի:„

1 Թղ. 15բ. "Ցեառն Ներսէսի աստուածունակ եւ ուսափայլ անձին՝ Թարգմանելու է: — Սակաւ բանքս գրեցան աստ ի հնոտւոյն Մաշտոցէ իմէքէ եկեղեցական արարողութեանց որ առաքեցաւ ի Հայս ի տուն Կիլիկեցւոց առ կաթուղիկոսն Հայոց Գրիգոր Տղայ ի խնդրոյ Նորին ի Լատինաց հայրապետէն եւ պապէն Հռոմայ, յորում լիապէս գոյին պարունակեալ խրատ եւ արարողութեանց կերպք խորհրդոց եկեղեցւոյ եւ այլոց ինչ ինչ իրաց. բայց զի դժուարեալ էին բառք ոմանք եւ խորեալ ամենադժուարին գրոյն, վասն այն գքանի մի գուզնաքեայ բանքս հանեալ անդ, այլ եւ զոմանս Լիտանիայս որք գոյին ի գրքի անդ, ըստ որում ի Լատինացւոց լեզուէ թարգմանեալ էր. եւ Թարգմանիչ սորին եղեալ է շնորհազարդ եւ երջանիկ Ներսէս Լամբրոնացին արքեպիսկոպոսն Տարսոնի Կիլիկեցւոց, հրամանաւ Ցեառն Գրիգորի կաթուղիկոսի Տղայ կոչեցելոյ եղբօր որդւոյ Սրբոյն Ներսէսի Շնորհալւոյ, որոց յիշատակն օրհնութեամբ եղիցի: — (Լամբրոնացի վրայ.) Այս բանք գրչին են, որ գրեաց զգիրքս:„

երրորդ պատասխանը պակասաւոր, վասն զի "յայսմ վայրի պակասի օրինակն, զի թուղթ էր անկեալ:" Բաց ի այլեւայլ հաւաքումներէ՝[1] օրինակուած կը գտնենք Խորենացւոյ ճառն Հռիփսիմեանց վրայ (Թղ. 58ա—70բ), Ներսէսի "Ներբողեան ի վերափոխումն" Աստուածածնի (Թղ. 71ա—86բ,)[2] եւ Գրիգորի Նարեկացւոյ ճառն "Հայեաց յանձն քո" (Թղ. 93ա—102բ:)[3]

Այս ամենէն վերջը՝ նոյն գրչէն եւ նոյնաձեւ բայց աւելի մեծ գրով եւ լայն տողերով՝ օրինակուած է "Աղօթք...", ճիշդ տասը թուղթ (Թղ. 104ա—113բ), որուն վերջին ալ դրուած է ընդ(րինակութեան թուականը՝ "ի թուականիս ՌՄԼԶ o= 1787) Նոյ. 23:" Ըստ այսմ Գրիգոր Երզնկացւոյ գործքին օրինակութենէն անմիջապէս ետքը գաղափարած է Ագապետոսն ալ, եւ անկէ ետքը իւր հաւաքած միւս կտորները:

Ահա այս բնագիրն է որ հիմն կը կազմէ յառաջորդ հրատարակութեան, եւ ուսումնասիրութեան: Կը ցաւինք որ Պոլսոյ 1808ի վերոյիշեալ գրքոյկն անմատչելի ըլլալով մեզի (հաւանօրէն նաեւ մեր շատ ընթերցողաց՝) չկրցանք գործածել նոյնն ալ:*

---

[1] Թղ. 15բ–17ա Ծիսական այլեւայլք, Թղ. 47 կը սկսի կիսատ Պամ. ժողովոց՝ հատած, 48ա Օշնի կանչոյ տեառն ոտանաւոր նամակ առ Տէր Գրիգորիս, 48բ Ներսէսի տաղաչափեալ նամակ առ եղբօրորդին Ապիրատ, 51ա Դամբանագիր գերեզմանին Մխիթարայ Աբբահօր, եւ կէս (Թղ. 51բ–55բ) անոր մեկնութիւնը Մկրտիչ Վարդապետի, եւ վերջապէս Թղ. 87բ–88բ "ի յառակախօսութենէ Ս. Ներսէսի Շնորհալւոյ հաւաքեալ"՝ 17 կտոր:

[2] Վերջը՝ Թղ. 86բ՝ "Գաղափարեցաւ ձեռամբ ուրումն Գրիգորէ 1788, Նոյ. 8:"

[3] Նոյնպէս վերջը՝ Թղ. 102բ՝ "Ընտենական բանս Գրիգորի սրբոյ Նարեկացւոյ, ի հին յիշատակէ օրինակեալ ձեռամբ ուրումն Գրիգորէ, 1788:"

* Տես այժմ էջ 192:

Բնագիրը ճշդիւ ձեռագրին համեմատ է, որ՝ ինչպէս յոյն բնագրին համեմատութիւնէն կը տեսնուի, շատ ընտիր օրինակ մըն է, հազիւ մէկ երկու փոքր խանգարումներ ունենալով։ Ծանօթութեանց մէջ բաց ի ասոնցմէ՝ գլխաւորաբար համեմատուած է հայերէնը յոյն բնագրին հետ։ Բնագրական տարբերութիւնքը շատ քիչ ըլլալով, միտ դրուած է գլխաւորաբար թարգմանչին ոճին, որ աշխատած է կարելւոյն չափ բառական թարգմանութիւն ընել, յաճախ այնպէս նիւթական ալ, որ իմաստը սովորական հայ ընթերցողի մը համար մթագնած է։ Կէտ մը միայն չէ յաջողած, այն ալ շատ բնական էր. յոյն բնագիրը լի է բառախաղերով, զորոնք չէր կրնար միշտ նմանցընել թարգմանիչը։ Ծանօթութիւններն ըստ այսմ՝ ուսումնասիրութեանս, կրնանք ըսել, էական մէկ մասը կը կազմեն։ Բնագրէն ետքը կը կցենք համառօտ ուսումնասիրութիւն մը Ագապետոսի գործոյն եւ հայ թարգմանութեան վրայ։

## Չ.

Արտադրութիւն յորդորական գլխոց

# ԱԳԱՊԵՏՈՍԻ ՍԱՐԿԱՒԱԳԻ

Սրբոյ եւ Մեծի եկեղեցւոյն Աստուծոյ:

---

Աստուածային եւ բարեպաշտ թագաւորին մեր Յուստինիանոս:

Ա. Քան զամենայն պատիւ գերագոյն ունելով արժանապատուութիւն, ով թագաւոր, պատուեա՛[1] զԱստուած ի վեր քան զամենայն, որ արժանի արարեալ է զքեզ այնմ. քանզի ըստ նմա-

---

Չ = ձեռագիր մեր Մատ. Թղ. 104ա—113բ: Ց = յոյն բնագիր՝ առ Migne, Patrol. Ser. Graeca, LXXXVI, 1163—1186: — Խորագիրը Ց. քիչ մը տարբեր՝ Ἔκθεσις κεφαλαίων παραινετικῶν σχεδιασθεῖσα παρὰ Ἀγαπητοῦ διακόνου τῆς ἁγιοτάτης τοῦ θεοῦ μεγάλης ἐκκλησίας πρὸς βασιλέα Ἰουστινιανόν, ὧν ἡ ἀκροστιχὶς ὧδέ πως ἔχει· Τῷ θειοτάτῳ καὶ εὐσεβεστάτῳ βασιλεῖ ἡμῶν Ἰουστινιανῷ, Ἀγαπητὸς ὁ ἐλάχιστος διάκονος այսինքն է՝ "Արտադրութիւն յորդորական գլխոց յԱգապետոսէ սարկաւագէ սրբոյ Մեծին եկեղեցւոյ Աստուծոյ առ Թագաւորն Յուստինիանոս, որոց սկզբնագիրք ունին այսպէս՝ Աստուածային եւ բարեպաշտ թագաւորին Յուստինիանոս՝ Ագապետոս դոյզն սարկաւագ:" Արդեամբք գլխոց յոյն սկզբնատառերը իրարու կցելով յիշեալ խօսքը կը կազմուի: B կը կցէ խորագրին՝ Τὰ λεγόμενα βασιλικὰ σχέδη այսինքն՝ Այսպէս կոչուած թագաւորական Հայելի (բուն՝ Պնակիտ, Ցախտակ գրելու) որուն մասին տես վերը: — Չ կը կարդայ "Աշաբիտոսի" եւ "Իուստինիանոս:" — Ա, Բ, Գ եւն գլխոց տառահամարները մենք դրինք. ձեռագիրն ունէր՝ լուսանցքի վրայ՝ արաբական թուեր (1, 2, 3 եւն:)

‖ Ա. 1 Չ "պատուեա." ուղղելու՝ "պատուեա:" — 2 Հայը համեմատ է B-ի ("Թագաւորութեան"), իսկ A ունի

նութեան երկնաւոր թագաւորութեան՝[2] եւ քեզ զգաւազանն երկրաւոր տիրողութեան.[3] զի մարդկան ուսուսցես զպահպանումն արդարոյն, եւ զընդդէմ նմին կատաղեաց զհաչումն արտալածեսցես.[4] ի ներքոյ օրինաց նորին թագաւորեալ, եւ որոց ընդ քեւ՝ օրինօք թագաւորելով։

Բ. Որպէս նաւավար[1] հսկէ հանապազ բազմաչեայ միտքն[2] թագաւորի, ունելով ապահովապէս զղեկսն լաւօրինութեան,[3] եւ ի բաց հերքելով հզօրեղապէս զկոհակսն անօրէնութեան.[4] զի մի կուրն համաշխարհական քաղաքավարութեան[5] բաղխեսցի ալեօք անիրաւութեան։

Գ. Աստուածային ուսումն եւ առաջին՝ մարդիկս[1], ճանաչել ումեք զիւր ինքն,[2] [ուսանիմք։ Որ ճանաչէ զիւր ինքն[3]] ճանաչէ զԱստուած։ Իսկ

---

"իշխանութեան" (ἐξουσίας.) — 3 Յ. τὸ σκῆπτρον τῆς ἐπιγείου δυναστείας, ուստի "տիրողութիւն" նիւթական թարգմանութիւն է։ — 4 Յոյնը բառախաղ է՝ διδάξῃς τὴν τοῦ δικαίου φυλακὴν (= "պահպանումն արդարոյն"). καὶ τῶν κατ' οὕτου λυσσώντων ἐκδιώξῃς τὴν ὑλακὴν (կատաղեացն հաչումն։) "Արտալածել" = ἐκδιώκω.

‖ Բ. 1 Յոյնը κυβερνήτης (նաւուղիղ։) — 2 Յոյնը ὁ τοῦ βασιλέως πολυόμματος νοῦς. այսինքն՝ "միտք՝ բազմաչեայ թագաւորի"։ — 3 Նիւթական փոխադրութիւն է "լաւօրէնութեան" = τῆς εὐνομίας (բարեկարգութեան։) — 4 Յոյնը բառախաղ կ'ընէ՝ τῆς εὐνομίας τοὺς οἴακας (զբարեկարգութեան զղեկսն) . . . τῆς ἀνομίας τοὺς ῥύακας (զանօրէնութեան զկոհակս.) — 5 "Կուր" եւն ճշդիւ ըստ Յ. τὸ σκάφος τῆς παγκοσμίου πολιτείας, եւն։

‖ Գ. 1 Զ "մարդիկս։" — 2 "Զիւր ինքն" գործածուած է փխ. "զանձն իւր" (յոյնը ἑαυτὸν), ուստի պահեցինք փակագծեալին մէջն ալ. — 3 Փակագծեալս աւելցուցինք, որ հայերէնին մէջ դուրս ինկած ըլլալով իմաստը խանգարած է։ Յոյնն է՝ θεῖον μάθημα καὶ πρῶτον οἱ ἄνθρωποι, τὸ γνῶναί τινα ἑαυτὸν (B τὸ γνῶναι ἑαυτοὺς ,

*որ ծանեաւ զԱստուած, նմանեսցի Աստուծոյ. եւ նմանեսցի Աստուծոյ՝ արժանի եղեալն[4] Աստուծոյ. եւ արժանի լինի Աստուծոյ՝ որ ոչ ինչ անարժան գործէ Աստուծոյ, այլ խորհի զնորայսն. եւ խօսի զորս խորհի, եւ առնէ զորս խօսի:*

*Դ. Ի վերայ ազնուութեան[1] Նախածնողաց մի՛ ոք ամբարհաւաճեսցի, քանզի տիղմ ունին ամենեքեան սեռին[2] Նախահայր, եւ որք ի ծիրանիս եւ ի բեհեզս պարծին, եւ որք յաղքատութեան եւ ի խօթութեան խոշտանկին.[3] եւ որք արքունի խոյրս ի գլուխ դնեն, եւ որք ի սենեակս մեկուսի (անմեկուսի)[4] անկեալ դնին: Մի՛ ուրեմն պարծեսցուք ի տոհմային ազգ, այլ ի վերայ քաղցրութեան բարուց պանծասցուք:*

*Ե. Գիտեա, ո՛վ բարեպաշտութեան աստուածաշէն պատկեր,[1] զի որքանեաւ[2] արժանաւ-*

διδασκόμεθα. Ὃ γαρ ἑαυτὸν γνοὺς, γνώσεται θεόν, այսինքն՝ “Աստուածային ուսումն եւ առաջին՝ մարդիկս /ուսանիմք ճանաչել (իւրաքանչիւր) ունեք զանձն (B ճանաչել զանձինս). զի որ ճանաչէ զանձն՝ ճանաչէ զԱստուած„ եւն: — 4 Բառական՝ ὁ ἄξιος γενόμενος θεοῦ (որ արժանի լինի Աստուծոյ:)

‖ Դ. 1 Զ նախ գրած է “ազնուութեան.„ յետոյ լուսանցքի վրայ ուղղած աւելցընելով “ու„ մըն ալ. (յոյն՝ ἐπὶ προγόνων εὐγενείᾳ.) զարմանք որ թարգմանիչը “բարեծնութիւն„ չէ փոխադրած նիւթապէս, ինչպէս իւր սովորութիւնն է: — 2 Հայը կրնար կարդացուիլ “սեռ+ն.„ բայց ուղիղ է՝ “սեռին„, յոյնը՝ πηλὸν (տիղմ, կաւ) γὰρ ἔχουσι πάντες τοῦ γένους προπάτορα. — 3 Յոյնը բառախաղ՝ καυχώμενοι (պարծին) . . . τρυχόμενοι (“խոշտանգին„, տագնապին:) — 4 “Անմեկուսի„ ջնջելու է իբրեւ գրչութեան սխալ՝ ծագած “մեկուսի անկեալ„ բառերու կրկնութենէն, ինչպէս կը պահանջէ յոյնն ալ, որ բառախաղ է դարձեալ՝ καὶ οἱ διαδήματα περικείμενοι, καὶ οἱ διὰ δόματα προκείμενοι (եւ որք խոյրս դնեն եւ որք ի տունս անկեալ դնին:)

‖ Ե. 1 Յ. θεότευκτον ἄγαλμα (աստուածակերտ ար-

որեցար յԱստուծոյ մեծամեծ պարգեւաց, այնքանեաւ մեծագունի հատուցման պարտական գոն նմա։ Ուրեմն հատոյ բարերարին զպարտս շնորհակալութեան. որ ընդունի զպարտսն որպէս շնորհ. եւ շնորհին փոխարէն շնորհ հատուցանէ։ Քանզի նա միշտ եւ շնորհաց սկիզբն առնէ, եւ որպէս պարտս զշնորհսն հատուցանէ։ Բայց շնորհակալութիւն խնդրէ առ ի մէնջ, ոչ զարտաբերութիւնն որ ի ձեռն բանից բարեաց. այլ զառաջբերութիւնն որ ի ձեռն բարեպաշտ իրողութեանց։[3]

Զ. Ոչինչ այնպէս բարեփորձ[1] գործէ զմարդ որպէս կարել զորս կամի գործել. բայց միշտ որք մարդասիրականք[2] են՝ եւ կամել եւ գործել։ Արդ որովհետեւ յԱստուծոյ քեզ շնորհեալ է իշխանութիւն (որում կարօտէր վասն մեր բարի կամք քո,[3]) զամենայն ինչ եւ կամեաց եւ գործեա որպէս հաճոյանայ այնմ, որ ետ քեզ զնոյն։

Է. Երկրաւոր ընչից անկայուն հարստութիւնն քատակէ[1] ընթացից գետական հոսանաց.

---

ձանս։) — 2 «Որքանեաւ . . . այնքանեաւ» յունաբանութիւն (յոյն՝ ὅσῳ . . . τοσούτῳ) փխ. «որչափ . . . այնչափ» եւն «Գոն» կրնայ թարգմանչէն ըլլալ, յոյնը՝ «գտանիս։» — 3 Ճիշդ յունաբանութիւն, որ բնագրին մէջ բառախաղ մըն է՝ οὐ τὴν διὰ ῥημάτων ἀγαθῶν προφορὰν («արտաբերութիւն», արտասանութիւն եւն), ἀλλὰ τὴν διὰ πραγμάτων (գործոց, Հայը «իրողութեանց» նիւթական եւ ոչ լաւ) εὐσεβῶν προσφορὰν (նուէր, ընծայում, Հայը՝ «յառաջբերութիւն» բառացի։)

‖ Զ. 1 Յոյն՝ εὐδόκιμος (բարեհամբաւ, մեծարոյ, նշանաւոր եւն.) նոյն իմաստով է «բարեփորձ» մեր յունաբանից քով։ — 2 Յ. ἀεὶ δὲ φιλάνθρωπα καὶ βούλεσθαι καὶ πράττειν (բայց միշտ զմարդասիրականս եւ կամել եւ գործել։) — 3 Փակագիծն ունի Զ., բայց պէտք չկայ. վասն զի փակագծեալ խօսքը կայ յոյն բնագրին մէջ ալ։

‖ Է. 1 Այսինքն «նմանի ընթացից գետոց հոսանաց» (յոյն՝ τῶν ποταμίων ῥευμάτων μιμεῖται τὸν δρόμον.)

դոյզն ինչ ուրեմն հոսեալ առ այնս՝ որք ունել վարկանին. իսկ յետ սակաւու յետս հոսելով՝[2] յայլս երթայ։ Բայց միայն գանձն բարերարութեան մնայուն է ստացողաց իւրոց. քանզի շնորհքն բարեաց գործոց վերադառնան[3] առ արարօղսն։

Ը. Անմատչելի գոս[1] մարդկան վասն բարձրութեան ստորին[2] թագաւորութեանս, բայց դիւրամատչելի լինիս կարօտելոց՝ վասն կարողութեան ի վերուստ իշխանութեանն. եւ բանաս զականջադ այնոցիկ որք յաղքատութենէ պաշարեալք են, զի բացեալ գտցես զԱստուծոյ լսելիսն. քանզի որպիսի արդեօք[3] մերոց ծառայակցացն լինիմք, այնպիսի յաղագս մեր գտանելոց եմք զՏէրն։

Թ. Հոգին բազմահոգ թագաւորի՝ գունակ հայելւոյ[1] ջինջ լինել պարտի. զի աստուածային ճառագայթիւք միշտ փայլեսցէ, եւ զդատմունս իրողութեանց[2] անտի ուսանիցի. քանզի ոչինչ այնպէս առնէ տեսանել՝ զորս պարտ է, որպէս պահելն զնոյն (հայելի[3]) հանապազ մաքուր։

---

"քառակ" եւ "քառակել" այս իմաստով յաճախ կը գործածուին հոս եւ միւս յունաբան հեղինակներուն քով։ — 2 "Յետս հոսելով" = Յ. παραῤῥέων. — 3 "Վերադառնան" = Յ. ἐπαναστρέφουσιν.

‖ Ը. 1 "Գոս" տես Ե, 2։ — 2 Այսինքն "թագաւորութեան որ սոփ է խոնարհ է" (ստորին = τῆς κάτω βασιλείας.) տես ԾԹ, 1։ — 3 "Արդեօք" հոս եւ այլուր յաճախ յունաբանութիւն է (οἷοι γαρ ἂν . . . γενόμεθα, եւն) որ հայերէնին մէջ ըստ ինքեան աւելորդ էր։

‖ Թ. 1 "Գունակ հայելւոյ" (= Յ. κατόπρον δίκην ըստ յունաբանից փխ. "իբրեւ զհայելի։" — 2 "Իրողութեանց" հոս ալ "գործոց" իմաստով, (յոյն՝ τῶν πραγμάτων τὰς κρίσεις.) տես Ե, 3։ — 3 "Հայելի" բառը փակագծի մէջ կը դնէ ձեռագիրը, թերեւս վասն զի գրչին յաւելուածն էր՝ խօսքին իմաստն որոշ ընելու համար։ Յոյնը չի կրկներ, այլ միայն "զնոյն" ըսելով կը շատանայ։

Ժ. Որպէս առ նաւարկօղսն, յորժամ նաւորդն[1] սխալէ՝ դոյզն վնաս նաւարկողացն բերէ. իսկ յորժամ ինքն նաւավարն,[2] ամենայն նաւին կորուստ գործէ։ Սոյնպէս եւ ի քաղաքս, եթէ ոք արդեօք յիշխեցելոցն[3] մեղիցէ, ո՛չ այնքան հասարակութեանն, որքան իւրում ինքեան անիրաւէ. իսկ եթէ ինքն իշխանն՝ ամենայն քաղաքական հասարակութեան զվնասն գործէ։ [4]Արդ՝ զի մեծամեծ համարս տալոց է, եթէ ոք անտեսեսցէ զպիտելին, հանդերձ բազում ճշմարտութեամբ եւ ասասցէ[5] եւ գործեսցէ զամենայն։

ԺԱ. Շրջանակ իմն շուրջ թաւալի զմարդկային իրողութեամբք[1], որ երբեք երբեք այլապէս բերէ զնոյնս եւ շրջաբերէ[2], եւ անհաւասարութիւն է այնց՝ ոչ մնալովն միոյ իրիք յառաջիկայիցն[3] ի նոյնութեան։ Պարտ է ուրեմն քեզ, ո՛վ կարող թագաւոր, ի սոցին շուտադարձ փոխարկութեանն՝[4] անփոխարկելի ունել զբարեպաշտ մտածութիւնն։

---

‖ Ժ. 1 Յ. ὁ ναύτης, նաւաստի, որ իմաստով է "նաւորդ։" — 2 Հոս ալ Յ: ὁ κυβερνήτης, տես Բ, 1։ — 3 Նոյնպէս յունաբանութիւն (յոյն՝ ἂν μέν τις τῶν ἀρχομένων, եւն.) տես Ը, 3։ — 4 Հոս ("Արդ" եւն) ձեռագիրն իբր նոր գլուխ կը սկսի, լուսանցքն ալ "11" նշանակելով. սակայն ըստ Յ. նոր գլուխը քիչ մը վարը կը սկսի, ինչպէս դրած ենք։ — 5 Զ. "Հանդերձ բազում ճշմարտութեամբ եւ արասցէ" եւն. յոյնը՝ μετὰ πολλῆς ἀκριβείας καὶ λεγέτω πάντω καὶ πραττέτω (բազում ճշգրտութեամբ եւ ասասցէ եւ գործեսցէ զամենայն։)

‖ ԺԱ. 1 Հոս ալ "իրողութեամբքն" իբր "գործովք." (տես Ե, 3, Թ, 2.) — 2 Յոյն՝ ἄλλοτε ἄλλως φέρων αὐτὰ καὶ περιφέρων, այսինքն՝ "յայլում նուագի այլապէս բերելով զնոյնս եւ շրջելով," եւն։ Հ. "շրջաբերել" ճիշդ περιφέρω. — 3 "Յառաջիկայիցն" = Յ. τῶν παρόντων, այսինքն՝ ներկայ իրաց. (լտ. ex praesentibus.) — 4 Յ. ἐν τῇ τούτων ἀγχιστρόφῳ μεταβολῇ, ἀμετάβλητον κτλ. (յարագ փոփոխման սոցին՝ անփոփոխ պահել եւն.) "շու-

ԺԲ. Ի բաց դարձիր ի պատիր բանից շողոքորթաց որպէս ի յափշտակօղ բարուց ագռաւուց. քանզի սոքա զաչս մարմնոյն բրեն, իսկ նոքա զհոգւոյն մտածմունսն բլշեցուցանեն.[1] ո՛չ ներելով տեսանել զիրացն ճշմարտութիւն. քանզի կամ գովեն երբեմն զարժանիսն պարսաւի, կամ պարսաւեն յոլովակի զլաւագոյնսն՝ արժանիս գովեստից.[2] զի մին ի յերկուց աստի ի յինքեանց մեղանչիցի[3], կամ չարն գովեցեալ կամ բարին նախատեցեալ։

ԺԳ. Հաւասար լինել պարտ է հանապազ խոհականութեան[1] թագաւորին. քանզի փոփոխիլն ընդ փոխարկութիւնս իրողութեանցն[2], նշանակ լինի անկայուն տրամախոհութեան[3]։ Իսկ հաստատապէս ի բարիս յենուլն (որպէս բարեպաշտ ձեր կարողութիւնն սերտեալ է[4]) եւ ո՛չ առ ամբարտաւանութիւն ի վեր ամբառնիլն, եւ ո՛չ ի տխրութիւն ի ստոր բերիլն[5], հաստատնոց է ապահովապէս, եւ այնոցիկ՝ որք անդրդուելի ունին զհոգին։

---

տադարձ" անսովոր է հնոց. նոյնպէս "փոխարկութիւն" եւն այս իմաստով յունաբան հեղինակաց յատուկ է։

‖ ԺԲ. 1 Զ. "բլշեցուցանեն." յոյն՝ τοὺς τῆς ψυχῆς ἐξαμβλύνουσι λογισμούς (կուրացուցանեն զխորհուրդս հոգւոյն.) նոյն իմաստով "բլշացուցանել" սովորական է ուրիշ գրողներու ալ։ — 2 Ց. τὰ ἐπαίνων κρίττονα. (լտ. quae omni laude sunt majora.) — 3 Բառական՝ ἵνα δυοῖν θάτερον αὐτοῖς ἁμαρτάνηται, իմաստն է՝ Կը սխալին երկուքին միոյն մէջ, կամ չարը գովելով, կամ բարին նախատելով։

‖ ԺԳ. 1 Ց. τὸ φρόνημα (խորհուրդ, խոկումն, միտք եւն։) — 2 Ձեռագիրը կրնայ նաեւ կարդացուիլ "ըստ փոխարկութիւնս իրողութեանց" եւն։ — 3 "Տրամախոհութիւն" = յոյն διανοία. — 4 Փակագիծն ունի ձեռագիրը, բայց աւելորդ է. խօսքը կայ յոյն բնագրին մէջ ալ։ — "Սերտեալ" ի հարկէ հնոց իմաստով առնելու է, երբ՝ հաստատեալ, ամրացեալ եւն, իսկ "ձեր կարողութիւն" բառական թարգմանութիւն է. (յոյն՝ τὸ εὐσεβὲς ὑμῶν

ԺԴ. Եթէ ոք զմտածութիւնն մաքրեալ ունի ի մարդկային խաբէութեանց, եւ տեսանէ զչնչնութիւն իւրոյն բնութեան, եւ զաղութիւն եւ զփութանցութիւն[1] աստի կենաց, եւ զաղտն՝ որ շարալծեալ[2] է ի մարմինն, ոչ անկցի ի պարեխ[3] հպարտութեան, թէ եւ իցէ ի բարձու արժանապատուութեան[4]:

ԺԵ. Գեր քան զամենայն փառաւորութիւնս թագաւորութեան՝ պսակն բարեպաշտութեան զթագաւորն զարդարէ. քանզի հարստութիւնն անհետանայ եւ փառքն անցանէ. իսկ շուքն աստուածային քաղաքավարութեան յանմահ յաւիտեանս յարաձգի[1], եւ անդր քան զմոռացումն զունօղսն՝ զետեղեալ կացուցանէ[2].

ԺԶ. Կարծի ինձ թուի անտեղագոյն[1] լինել,

---

ἐστήρικται κράτος.) — 5 Նիւթական թարգմանութիւն յոյն բառախաղին՝ μήτε πρὸς ἀλαζονείαν ὑπεραίρεσθαι, μήτε πρὸς ἀθυμίαν καταφέρεσθαι, այսինքն՝ "ոչ յամբարտաւանութեան ելանել, եւ ոչ ի վհատութեան իջանել." Հայոյն "տխրութիւն" թարգմանելը թէեւ անյարմար, բայց սխալ չէ. ἀθυμία կը նշանակէ վհատութիւն, երկչոտութիւն եւ տխրութիւն:

‖ ԺԴ. 1 Յ. ὠκύμορον (վաղամեռիկ լինելն եւն:) — 2 Նիւթական, յոյն՝ τὸν συνεζευγμένον τῇ σαρκὶ ῥύπον (զաղտն որ ընդ մարմնի կցեալ է:) — 3 Յոյն՝ εἰς τὸν τῆς ὑπερηφανίας οὐκ ἐμπεσεῖται κρημνὸν (մի՛ անկցի ի գահավէժ հպարտութեան.) "պարեխ" ցանցառ բառերէն է՝ նոյն իմաստով: — 4 Զ. "արժանապատուութեան" յետոյ լուսանցքի վրայ ուղղուած՝ "ու" մ'ալ աւելցնելով:

‖ ԺԵ. 1 Ճշգրիտ թարգմանութիւն են "շուքն . . . յանմահ յաւիտեանս" եւն. "յարաձգի" = συμπαρεκτείνεται (տեւէ է միասին ընդ անմահ յաւիտեանս:) — 2 Բառական է ամբողջը (յոյն՝ καὶ λήθης ἐπέκεινα τοὺς ἔχοντας ἵστησι). իմաստն է՝ Մոռացմանէ զերծ կը պահէ նոյնը ունեցողները:

‖ ԺԶ. 1 "Անտեղագոյն" = ἀτοπώτατον (յոյժ անպատշաճ:) — 2 Յոյնը բառախաղ՝ τοῦ κόσμου τὰ πέρατα

ԺԲ․ Ի բաց դարձիր ի պատիր բանիցն շողոքորթաց որպէս ի յափշտակօղ բարուց ագռաւուց․ քանզի սոքա զաչս մարմնոյն բրեն, իսկ նոքա զհոգւոյն մտածմունսն բլշեցուցանեն․[1] ոչ ներելով տեսանել զիրացն ճշմարտութիւն․ քանզի կամ գովեն երբեմն զարժանիսն պարսաւի, կամ պարսաւեն յոլովակի զլաւագոյնսն՝ արժանիս գովեստից․[2] զի մին ի յերկուց աստի ի յինքեանց մեղանչիցի[3], կամ չարն գովեցեալ կամ բարին նախատեցեալ։

ԺԳ․ Հաւասար լինել պարտ է հանապազ խոհականութեան[1] թագաւորին․ քանզի փոփոխիլն ընդ փոխարկութիւնս իրողութեանցն[2], նշանակ լինի անկայուն տրամախոհութեան[3]։ Իսկ հաստատապէս ի բարիս յենուլն (որպէս բարեպաշտ ձեր կարողութիւնն սերտեալ է[4]) եւ ոչ առ ամբարտաւանութիւն ի վեր ամբառնիլն, եւ ոչ ի տխրութիւն ի ստոր բերիլն[5], հաստատնոց է ապահովապէս, եւ այնոցիկ՝ որք անդրդուելի ունին զհոգին։

---

տադարձ„ անսովոր է հնոց. նոյնպէս "փոխարկութիւն„ եւս այս իմաստով յունաբան հեղինակաց յատուկ է։

‖ ԺԲ․ 1 Զ․ "բլշեցուցանեն․„ յոյն՝ τοὺς τῆς ψυχῆς ἐξαμβλύνουσι λογισμούς (կուրացուցանեն զխորհուրդս հոգւոյն․) նոյն իմաստով "բլշացուցանել„ սովորական է ուրիշ գրողներու ալ։ — 2 Ց․ τὰ ἐπαίνων κρίττονα. (լտ. quae omni laude sunt majora.) — 3 Բառական՝ ἵνα δυοῖν θάτερον αὐτοῖς ἁμαρτάνηται, իմաստն է՝ Կը սխալին երկուքէն միոյն մէջ, կամ չարը գովելով, կամ բարին նախատելով։

‖ ԺԳ․ 1 Ց․ τὸ φρόνημα (խորհուրդ, խոկումն, միտք եւն։) — 2 Ձեռագիրը կրնայ նաեւ կարդացուիլ "ըստ փոխարկութիւնս իրողութեանց„ եւն։ — 3 "Տրամախոհութիւն„ = յոյն διανοία. — 4 Փակագիծն ունի ձեռագիրը, բայց աւելորդ է. խօսքը կայ յոյն բնագրին մէջ ալ։ — "Սերտեալ„ ի հարկէ հնոց իմաստով առնելու է, իբր՝ հաստատեալ, ամրացեալ եւն, իսկ "ձեր կարողութիւն„ բառական թարգմանութիւն է. (յոյն՝ τὸ εὐσεβὲς ὑμῶν

ԺԴ. Եթէ ոք զմտածութիւնն մաքրեալ ունի ի մարդկային խաբէութեանց, եւ տեսանէ զչնչնութիւն իւրոյն բնութեան, եւ զսղութիւն եւ զփութանցութիւն[1] սատի կենաց, եւ զաղտն՝ որ շարալծեալ[2] է ի մարմինն, ոչ անկցի ի պարեխ[3] հպարտութեան, թէ եւ իցէ ի բարձու արժանապատուութեան[4]:

ԺԵ. Գեր քան զամենայն փառաւորութիւնս թագաւորութեան՝ պսակն բարեպաշտութեան զթագաւորն զարդարէ. քանզի հարստութիւնն անհետանայ եւ փառքն անցանէ. իսկ շուքն աստուածային քաղաքավարութեան յանմահ յաւիտեանս յարաձգի[1], եւ անդր քան զմոռացումն զունօղսն՝ զետեղեալ կացուցանէ[2].

ԺԶ. Կարճ ինձ թուի անտեղագոյն[1] լինել,

---

ἐστήρικται κράτος.) — 5 Նիւթական թարգմանութիւն յոյն բնագրին՝ μήτε πρὸς ἀλαζονείαν ὑπεραίρεσθαι, μήτε πρὸς ἀθυμίαν καταφέρεσθαι, այսինքն՝ "ոչ յամբարտաւանութիւն ելանել, եւ ոչ ի վհատութիւն իջանել." Հայոյն "տխրութիւն" թարգմանելը թէեւ անյարմար, բայց սխալ չէ. ἀθυμία կը նշանակէ վհատութիւն, երկչոտութիւն եւ փոքրոգութիւն:

‖ ԺԴ. 1 Յ. ὠκύμορον (վաղամեռիկ լինելն եւն:) — 2 Նիւթական, յոյն՝ τὸν συνεζευγμένον τῇ σαρκὶ ῥύπον (զաղտն որ ընդ մարմնի կցեալ է:) — 3 Յոյն՝ εἰς τὸν τῆς ὑπερηφανίας οὐκ ἐμπεσεῖται κρημνὸν (մի անկցի ի գահաւանդս հպարտութեան.) "պարեխ" ցանցառ բառերէն է՝ նոյն իմաստով: — 4 Զ. "արժանապատուութեան" յետոյ լուսանցքի վրայ ուղղուած՝ "ու" մ՚ալ աւելցընելով:

‖ ԺԵ. 1 Ճշգրիտ թարգմանութիւն են "շուքն . . . յանմահ յաւիտեանս" եւն. "յարաձգի" = συμπαρεκτείνεται (տեւէ եւ ձգուի ընդ անմահ յաւիտեանս:) — 2 Բառական է ամբողջը (յոյն՝ καὶ λήθης ἐπέκεινα τοὺς ἔχοντας ἵστησι). իմաստն է՝ Մոռացմանէ զերծ կը պահէ նոյնը ունեցողները:

‖ ԺԶ. 1 "Անտեղագոյն" = ἀτοπώτατον (յոյժ անպատշաճ:) — 2 Յոյնը բառախաղ՝ τοῦ κόσμου τὰ πέρατα

զի հարուստ եւ աղքատ մարդիկ յաննման իրողութեանց զնման վնաս կրեն. քանզի ոմանք ի յղփութենէ պարպատին. իսկ ոմանք ի սովոյ ապականին։ Եւ ոմանք գրաւեալ նուաճեն զծագս աշխարհի. իսկ ոմանք ոչ ունին՝ ուր կացուսցեն զներբանս ոտից[2]։ Արդ՝ զի երկոքին եւս առողջութեան դիպեսցին, բարձմամբ եւ յաւելմամբ դարմանել պիտի, եւ առ հաւասարութիւն՝ զանհաւասարութիւնն անդրաբերել[3]։

ԺԷ. Առ մերովս բացայայտակի[1] ցուցաւ ժամանակն բարեկեցութեան[2], զոր նախագոյն ասաց ոմն ի հնոց լինելի գոլ,[3] յորժամ կամ իմաստասէրք թագաւորեսցեն, կամ թագաւորք իմաստասիրեսցեն։ Եւ քանզի իմաստասիրելով արժանի եղէք թագաւորութեան, եւ թագաւորելով մի՛ ի բաց կայցէք յիմաստասիրութենէ։ Քանզի եթէ սիրելն զիմաստութիւն՝ առնէ զիմաստասիրութիւն, իսկ սկիզբն իմաստութեան՝ երկիւղն Աստուծոյ, զոր ի կուրծս ձեր հանապազ ունիք, քաջայայտ է որպէս ճշմարիտ առ յինէն ասացեալս։

ԺԸ. Թագաւոր զքեզ ըստ ճշմարտութեան սահմանեալ ըստորասեմ.[1] իբր թագաւորել եւ տիրել հեշտութեանցն[2] կարողացեալ, եւ զպսակն ողջա-

---

(զծագս աշխարհի) ... ποῦ στῆσαι τὰ πέλματα ("ուր դիցեն զփարշապարս" կամ "ներբանս"։) — 3 "Անդրաբերել" յունական կազմութեամբ. Յ.՝ πρὸς ἰσότητα τὴν ἀνισότητα μετενεκτέον (պարտ է զանհաւասարութիւնն ի հաւասարութիւն բերել։)

‖ ԺԷ. 1 Յ. չունի "բացայայտակի", այլ պարզ "ցուցաւ"։ — 2 Յ. τῆς εὐζωΐας ὁ χρόνος. — 3 "Լինելի գոլ" յունաբանութիւն. (Յ. հոս ἔνεσθαι.) — Մնացեալը ճիշդ նոյն յոյն բնագրին հետ։

‖ ԺԸ. 1 Զ. աւելի կը կարդացուի "ըստ որ ասեմ.", անշուշտ լաւագոյն է՝ սահմանեալ "ըստորասեմ", թէեւ յոյնը մէկ բառ է՝ ὁρίζομαι ("սահմանեալ" հաստատել). Համեմ. լտ. te revera imperatorem asserimus. — 2 Բառական՝

խոհութեան ի գլուխ կապեալ, եւ զծիրանին արդարութեան զգեցեալ: Քանզի այլ իշխանութիւն՝ զմահն ունի յաջորդ. իսկ այսպիսի թագաւորութիւն՝ զանմահ մնացականութիւնն պահէ[3]: Եւ այն՝ յայսմ յաւիտենիս լուծանի. իսկ այս՝ յաւիտենական տանջանացն զերծանէ:

ԺԹ. Եթէ ընդ պատիւն որ յամենեցուն յառաջածի՝[1] կամիցիս բերկրիլ, լեր ամենեցուն հասարակ բարերար. քանզի ոչ մի ինչ այնպէս առ բարեմտութիւնն քարշէ[2], որպէս շնորհ բարերարութեան տուեալ կարօտելոցն: Քանզի վասն երկիւղի եղեալ[3] ծառայութիւնն՝ ձեւակերպեալ[4] շողոմութիւն է. որ կեղծեալ պատուոյ անուամբ նենգէ այնոցիկ՝ որք ինքեան մտերմանան:[5]

---

κρατεῖν τῶν ἡδονῶν δυνάμενον. — 3 Բառախաղ՝ τὸν θάνατον ἔχει διαδοχὴν (զմահն ունի յաջորդ) . . . τὴν ἀθάνατον σώζει διαμονήν (զանմահ մնացականութիւնն պահէ.) Նոյնպէս բառախաղ է յաջորդ "լուծանի,, (λύεται) եւ "զերծանէ,, (ῥύεται.)

‖ ԺԹ. 1 "Յառաջածի,, բուն բառացի չկայ յունին մէջ, բայց նման բան մ'անհրաժեշտ էր իմաստին համար. Յոյն "եթէ կամիս վայելել ի պատիւն առ յամենեցունց,,, ուր "վայելել,, բառին տեղ է καρποῦσθαι, այսինքն՝ καρπόω (պտղաբերել, ընծայաբերել. վայելել ի պտղոյ, եւ ընդհանրապէս՝ վայելել:) — 2 Բառական՝ πρὸς εὔνοιαν ἐφέλκεται (ձգէ ի բարեկամութիւն, բարեսիրութիւն, "բարեմտութիւն:,,) — 3 Այս "եղեալ,, եւն ալ բառացի փոխադրութիւն է: — 4 "Ձեւակերպեալ,, իբր՝ ձեւացուցած. յոյն՝ κατεσχηματισμένη ἐστὶ θωπεία (կերպարանեալ շողոմութիւն է:) — 5 Ձեռագիրը "կեղծեալ,, եւն բառերուն դիմաց լուսանցքի վրայ կը նշանակէ "Լծ. այսինքն՝ շողոմութեան,, անուամբ եւն. յոյնն է՝ πεπλασμένης τιμῆς ὀνόματι φενακίζουσα τοὺς αὐτῇ προσανέχοντας (անուամբ կերպարանեալ պատուոյ խաբէ զայնոսիկ որ վստահ լինին նմա:,,) Վերջինս է զոր Հայը "ինքեան մտերմանան,, թարգմանած է, ոչ այնչափ լաւ. յոյն բառը կը նշանակէ՝ յու-

Ի․ Ցիրաւի յարգոյ է թագաւորութիւնն ձեր, զի թշնամեացն ցուցանէ զիշխանութիւն. իսկ հպատակացն առատրէ մարդասիրութիւն[1]։ Եւ որ յաղթէ նոցա զօրութեամբ զինուց, անզէն սիրովն յաղթահարի ի յիւրոցն. քանզի որչափ է գազանի եւ ոչխարի միջոցն[2], այնչափ երկոցուն համարեալ լինի տարբերութիւնն։

ԻԱ․ Գոյութեամբ մարմնոյ հաւասար է ամենայն մարդկան թագաւորն. իսկ իշխանութեամբ արժանապատուութեանն նման է Աստուծոյն ամենեցուն. քանզի ոչ ունի ի յերկրի քան զինքն բարձրագոյն։ Պարտ է ուրեմն նմա եւ իբրեւ զԱստուած մի՛ բարկանալ, եւ որպէս մահկանացու մի՛ բարձրավզիլ[1]. զի թէեւ աստուածային պատկերաւ պատուեալ է, բայց եւ հողային փոշեաւ փաղհիւսեցեալ է[2]. որով ուսցի առ ամենեսին զհաւասարութիւնն։

ԻԲ․ Ընկալ զայնոսիկ՝ որք զօգտակարսն խորհիլ[1] կամին, եւ մի՛ զայնս՝ որք շողոքորթել յոլով

---

սալ, վստահիլ, յարիլ յուսով բանի մը, ընդհանրապէս նաեւ բանով մը զբաղիլ եւն. (լտ. fallens eos qui ipsi animum advertunt.)

‖ Ի. 1 “Առատրէ,, եւն. յոյն՝ τοῖς ὑπηκόοις δὲ νέμει φιλανθρωπίαν (իսկ հպատակացն բաշխէ զմարդասիրութիւն։) — 2 Այսինքն՝ անջրպետը. “միջոց,, ճշդիւ = τὸ μέσον, ինչպէս քիչ մ'եաքը “տարբերութիւնն,, = τὸ διάφορον.

‖ ԻԱ. 1 “մի բարձրավզիլ,, = μὴ ἐπαίρεσθαι (բարձրանալ, փքանալ։) — 2 Ուրիշները կը գրեն “բաղհիւսիլ.,, Թողուցինք ըստ Զ. վասն զի ըստ յունարէնից “փաղ,, մասնիկն ալ է = συμ..., ինչպէս “բաղ,,։ Յոյնն է՝ ἀλλὰ καὶ εἰκόνι χοϊκῇ συμπέπλεκται (այլ եւ ընդ հողեղէն պատկերի կցեալ է։)

‖ ԻԲ. 1 Յոյնը՝ օգտակարները “խորհիլ,, չ՚ուզեր ըսել այլ “խորհուրդ տալ,, (τὰ χρηστὰ συμβουλεύειν.) — 2 “Պարզաբար,, չունի Յ. եւ աւելորդ ալ կ'երեւայ. —

անգամ փոյթ ունին. քանզի նոքա զօգուտն պարզաբար² տեսանեն ճշմարտութեամբ. իսկ սոքա յայնս հային՝ որք իշխողացն հաճոյ են. եւ ստուերացն մարմնոց քատակեալք³, ասացելոցն առ ի նոցանէ ձայնակից լինին։

ԻԳ. Այնպիսի լեր առ ծառայսն քո, որպիսի ըղձանաս քեզ զտէրն լինել. քանզի որպէս լսեմք՝ լսելի լիցուք, եւ որպէս տեսանեմք՝ տեսեալ եղիցուք յաստուածային եւ յամենահայեաց տեսութենէն¹։ Արդ՝ նախ ի ներքս ածցուք² ողորմութեամբն զողորմութիւն. զի նմանեաւ զնմանն ընկալցուք։

ԻԴ. Որպէս ջինջքն ի հայելեաց զայնպիսիս ցուցանեն ներերեւութիւնս դիմաց¹, որպիսիք են սկզբնատիպքն², զուարճութիւնս³ զուարճացելոցն, եւ զտխրութիւնս՝ տխրեցելոցն. այնպէս եւ արդար դատաստանն Աստուծոյ մերային գործոց համանմանի.⁴ քանզի որպիսիք⁵ արդեօք իցեն առ ի մէնջ գործեցեալքն, այնպիսիք մեզ ի նմանեացն առատրին⁶։

---

“Քատակել„ տես Է, 1. յոյն՝ τῶν σωμάτων τὰς σκιὰς μιμούμενοι (նմանեալք ստուերացն մարմնոց։)

‖ ԻԳ. 1 “յամենահայեաց տեսութենէ„ լաւ փոխադրութիւն է յունին παντεφόρου βλέμματος (յամենատես հայեցուածոց։) — 2 “ի ներքս ածցուք„ = προεισενέγκωμεν.

‖ ԻԴ. 1 “Ներերեւութիւնս դիմաց„ բառական փոխադրութիւն յունին τὰς τῶν προσώπων ἐμφάσεις (տեսիլս կերպարանաց, լտ. vultuum imagines.) — 2 “Սկզբնատիպք„ = τὰ πρωτότυπα. — 3 Ձեռագրին մէջ “զզուարճութիւնս„ գրուած, բայց առաջին զ տառին վրայ բթիկ մը կայ, անշուշտ ջնջելու նշան. յոյնը՝ φαιδρὰ μὲν τῶν φαιδρυνομένων այսինքն՝ զուարթս (կերպարանս՝) զուարթացելոց„ եւն։ — 4 “Համանմանի„ = ἐξομοιοῦται (նմանի լինի։) — 5 Զ. “Որպիսիք արդեօք„ եւն. հոս ալ “արդեօք„ յունաբանութիւն է, տես Ը, 3։ — 6 “Առատրին„ եւն. յոյն՝ τοιαῦτα ἡμῖν ἐκ τῶν ὁμοίων παρέχει (այնպիսիք մեզ ի նմանեացն մատուցանին„, կամ՝ “հատուցանին։„)

Ի. Ցիրաւի յարգոյ է թագաւորութիւնն ձեր, զի թշնամեացն ցուցանէ զիշխանութիւն. իսկ հպատակացն առատրէ մարդասիրութիւն[1]։ Եւ որ յաղթէ նոցա զօրութեամբ զինուց, անզէն սիրովն յաղթահարի ի յիւրոցն. քանզի որչափ է գազանի եւ ոչխարի միջոցն[2], այնչափ երկոցուն համարեալ լինի տարբերութիւնն։

ԻԱ. Գոյութեամբ մարմնոյ հաւասար է ամենայն մարդկան թագաւորն. իսկ իշխանութեամբ արժանապատուութեանն նման է Աստուծոյն ամենեցուն. քանզի ոչ ունի ի յերկրի քան զինքն բարձրագոյն։ Պարտ է ուրեմն նմա եւ իբրեւ զԱստուած մի բարկանալ, եւ որպէս մահկանացու մի բարձրավզիլ[1]. զի թէեւ աստուածային պատկերաւ պատուեալ է, բայց եւ հողային փոշեաւ փաղհիւսեցեալ է[2]. որով ուսցի առ ամենեսին զհաւասարութիւնն։

ԻԲ. Ընկալ զայնոսիկ՝ որք զօգտակարսն խորհիլ[1] կամին, եւ մի զայնս՝ որք շողոքորթել յոլովսալ, վատահիլ, յարիլ յուսով բանի մը, ընդհանրապէս նաեւ բանով մը զբաղիլ եւն. (լտ. fallens eos qui ipsi animum advertunt.)

‖ Ի. 1 "Առատրէ,, եւն. յոյն՝ τοῖς ὑπηκόοις δὲ νέμει φιλανθρωπίαν (իսկ հպատակացն բաշխէ զմարդասիրութիւն։) — 2 Այսինքն՝ անջրպետը. "միջոց,, ճշդիւ = τὸ μέσον, ինչպէս քիչ մ'եւտքը "տարբերութիւնն,, = τὸ διάφορον.

‖ ԻԱ. 1 "մի բարձրավզիլ,, = μὴ ἐπαίρεσθαι (բարձրանալ, փքանալ։) — 2 Ուրիշները կը գրեն "բաղհիւսիլ.,, Թողուցինք ըստ Զ. վասն զի ըստ յունարանից "փաղ,, մասնիկն ալ է = συμ . . ., ինչպէս "բաղ,,։ Յոյնն է՝ ἀλλὰ καὶ εἰκόνι χοϊκῇ συμπέπλεκται (այլ եւ ընդ հողեղէն պատկերի կցեալ է։)

‖ ԻԲ. 1 Յոյնը՝ օգտակարները "խորհիլ,, չուզեր ըսել այլ "խորհուրդ տալ,, (τὰ χρηστὰ συμβουλεύειν.) — 2 "Պարզաբար,, չունի Ց. եւ ուելորդ ալ կ'երեւայ. —

անդամ փոյթ ունին. քանզի նոքա զօգուտն պարզաբար[2] տեսանեն ճշմարտութեամբ. իսկ սոքա յոյնս հայքն՝ որք իշխողացն հաճոյ են. եւ ստուերացն մարմնոց քատակեալք[3], ասացելոցն առ ի նոցանէ ձայնակից լինին։

ԻԳ. Այնպիսի լեր առ ծառայսն քո, որպիսի ըղձանաս քեզ զտէրն լինել. քանզի որպէս լսեմք՝ լսելի լիցուք, եւ որպէս տեսանեմք՝ տեսեալ եղիցուք յաստուածային եւ յամենահայեաց տեսութենէն[1]։ Արդ՝ նախ ի ներքս ածցուք[2] ողորմութեամբն զողորմութիւն. զի նմանեաւ զնմանն ընկալցուք։

ԻԴ. Որպէս ջինջքն ի հայելեաց զայնպիսիս ցուցանեն ներերեւութիւնս դիմաց[1], որպիսիք են սկզբնատիպքն[2], զուարճութիւնս[3] զուարճացելոցն, եւ զտխրութիւնս՝ տխրեցելոցն. այնպէս եւ արդար դատաստանն Աստուծոյ մերային գործոց համանմանի.[4] քանզի որպիսիք[5] արդեօք իցեն առ ի մէնջ գործեցեալքն, այնպիսիք մեզ ի նմանեացն առատրին[6]։

---

"Քատակել,, տես Է, 1. յոյն՝ τῶν σωμάτων τὰς σκιὰς μιμούμενοι (նմանեալք ստուերացն մարմնոց։)

‖ ԻԳ. 1 "յամենահայեաց տեսութենէ,, լաւ փոխադրութիւն է յունին παντεφόρου βλέμματος (յամենատես հայեցուածոց։) — 2 "ի ներքս ածցուք,, = προεισενέγκωμεν.

‖ ԻԴ. 1 "Ներերեւութիւնս դիմաց,, բառական փոխադրութիւն յունին τὰς τῶν προσώπων ἐμφάσεις (տեսիլս կերպարանաց, լտ. vultuum imagines.) — 2 "Սկզբնատիպք,, = τὰ πρωτότυπα. — 3 Ձեռագրին մէջ "զզուարճութիւնս,, գրուած, բայց առաջին զ տառին վրայ բծիկ մը կայ, անշուշտ ջնջելու նշան. յոյնը՝ φαιδρὰ μὲν τῶν φαιδρυνομένων այսինքն՝ զուարթս (կերպարանս՝) զուարթացելոց,, եւն։ — 4 "Համանմանի,, = ἐξομοιοῦται (նմանի լինի։) — 5 Զ. "Որպիսիք արդեօք,, եւն. հոս ալ "արդեօք,, յունաբանութիւն է, տես Ը, 3։ — 6 "Առատրին,, եւն. յոյն՝ τοιαῦτα ἡμῖν ἐκ τῶν ὁμοίων παρέχει (այնպիսիք մեզ ի նմանեացն մատուցանին,, կամ՝ "հատուցանին։,,)

**ԻԵ.** *Խորհեաց զգործելիսն յամրապէս. բայց կատարեա զդատեցեալսն փութապէս. քանզի յոյժ սխալոտ է յիրողութիւնս անշրջահայեցութիւնն*[1]*. զի եթէ զչարիսն որք յանխոհութենէ*[2] *զմտաւ ածիցէ ոք, յայնժամ բարւոք ծանիցէ զօգուտս բարեխորհութեան*[3]*. որպէս եւ զպարգեւն առողջութեան զկնի փորձոյն խօթութեան: Պարտ է ուրեմն ով քաջախոհագոյն թագաւոր*[4]*, եւ խոհեմագոյն խորհրդով եւ ուժգին աղօթիւք ճշդաբար քննել զպիտելիսն աշխարհի:*

**ԻԶ.** *Յոյժ լաւագոյն տնտեսեսցես զբարի թագաւորութիւնն քո, եթէ զամենեսին փութասցիս պարզագոյն տեսանել. եւ ոչ մի ինչ հանդուրժեսցես անտես առնել. քանզի ոչ փոքր է ի վերայ քո, որ փոքր լինել թուի ի բաղդատման*[1] *քոյոցն. վասն զի եւ բան թագաւորի սոսկ՝*[2] *զմեծ ունի առ ամենեսին զօրութիւն:*

**ԻԷ.** *Քեզ ինքեան պահելոյ զօրէնսն դիցես հարկ ի վերայ, իբր ոչ ունելով ի վերայ երկրի զոք՝ որ կարող իցէ հարկադրել*[1]*. քանզի այսպէս եւ զօրինացն ցուցցես յարգումն, դու ինքն յառաջ քան զայլս զնոսին յարգելով. եւ հպատակացն յայտ լիցի՝ օրինազանց գոլն ո՛չ անվտանգ լինել*[2]*:*

**ԻԸ.** *Հաւասար յանցանելոյն զոչ արգելուլն*

---

‖ ԻԵ. 1 Յոյն “յիրողութիւնսն անշրջահայեցութիւն” = τὸ ἐν τοῖς πράγμασιν ἀπερίσκεπτον (անխորհրդութիւն ի գործս.) — 2 “յանխոհեմութենէ” = ἐξ ἀβουλίας. — 3 “Բարեխորհութեան”, նիւթական = τῆς εὐβουλίας (խոհեմութեան:) — 4 “Քաջախոհագոյն” եւն. նիւթական. (յոյն՝ εὐφρονέστατε βασιλεῦ.)

‖ ԻԶ. 1 “ի բաղդատման” = ἐν συγκρίσει. — 2 “Բառ . . . սոսկ” = ῥῆμα βασιλέως ψιλόν (բան պարզ թագաւորի:)

‖ ԻԷ. 1 Յ. ἀναγκάζειν. — 2 Բառական ըստ յունին:

‖ ԻԸ. 1 “երկպատիկ բարեփորձ լինել” = διττῶς εὐδοκιμεῖν, տես Զ, 1: — 2 Յոյն բառախաղ՝ τοὺς τὰ

զյանցանօղսն համարեա՛. քանզի թէ եւ ոք քաղաքավարեսցի օրինաւորապէս, բայց հանդուրժեսցէ կեցողացն անօրինաբար, գործակից չարացն գոլ առ յԱստուծոյ դատի: Իսկ եթէ կամիցիս երկպատիկ բարեփորձ լինել[1], եւ զառնօղսն լաւագունից նախապատուեա՛, եւ զիրակօղսն վատթարագունից կշտամբեա՛[2]:

ԻԹ. Յոյժ օգտել կարծեմ զփախչելն ի կենցաղակցութենէն[1] չարաց. քանզի որ կենցաղի հանապազ ընդ մարդկան[2] չարաց, կա՛մ կրել կա՛մ ուսանել[3] չար ինչ՝ հարկ է նմա: Իսկ որ բնակակցի լաւաց[4], կա՛մ քատակումն[5] բարեացն ուսանի, կա՛մ զնուազումն չարացն ստանայ[6]:

Լ. Աշխարհական թագաւորութիւն յԱստուծոյ քեզ հաւատայեալ, ոչ զոք ի չարացն ի գործ արկանիցես ի ծառայութիւն սպասու իրո-

---

κάλλιστα ποιοῦντας προτίμα (նախապատուեա), καὶ τοῖς τὰ χείριστα δρῶσιν ἐπιτίμα (կշտամբեա:) "Իրակող" ի հարկէ "գործող" իմաստով է, ինչպէս յաճախ տեսանք "իրողութիւնք" = գործք. (Հոս δράω, գործել, առնել:)

‖ ԻԹ. 1 յոյն՝ τὸ φεύγειν τὰς τῶν κακῶν συνδιαιτήσεις (փախչիլ ի ընկերակցութեանց չարացն:) Յաջորդ "որ կենցաղէ ընդ . . ." = τὸν γὰρ συνόντα (որ կենակցի:) — 2 Մեր ձեռագիրն է "մարդկանց չարաց." յոյն՝ "որ կենակցի ընդ չար մարդկան". — 3 Յոյն բառախաղ՝ ἢ παθεῖν (կրել) ἢ μαθεῖν (ուսանել) ἀνάγκη τὸ πονηρόν. "կրել . . . չար ինչ" սովորական է յունաբանից. տես ԽԵ, 2: — 4 Յ. ὁ δὲ τοῖς αγαθοῖς συνδιάγων. — 5 "Քատակումն" = μίμησιν տես Է, 1: — 6 Ձ "ըստանայ." յոյն՝ "կրթի" կամ "ուսանի." ամբողջը դարձեալ բառախաղ՝ ἢ μίμησιν (նմանել, "քատակումն") τῶν καλῶν ἐκδιδάσκεται (ուսանի), ἢ μείωσιν (նուազումն) τῶν κακῶν ἐκπαιδεύεται (կրթի, ուսանի:)

‖ Լ. 1 Ձ "...ըսպասու" եւն. յոյն՝ πρὸς τὰς τῶν πραγμάτων διοικήσεις (ի մատակարարութիւնս գոր-

*ղութեանց[1]. քանզի յորոց արդարեւ նոքա չարաչար գործիցեն, համար տացէ Աստուծոյ՝ որ ետն նոցա զօրութիւն: Ուրեմն զկնի բազում քննութեան՝ պարտ է լինել իշխանացն առաջարկութիւն[2]:*

ԼԱ. *Հաւասար վարկանիմ չար, եւ թշնամեացն չարագործութեամբք ցասնուլ, եւ սիրելեացն շողոքորթութեամբք ողոքիլ[1]. քանզի պարտ է երկաքանչիւրոցն քաջապէս հակակայիլ[2]. եւ յայնմանէ որ վայել է՝ ոչ միով իւիք ի բաց կալ. ոչ յանբան չարակամութենէ նոցին վրէժ խնդրելով, եւ ո՛չ կեղծեալ բարեկամութեան սոցին փոխարէն հատուցանելով:*

ԼԲ. *Համարեա զայնս գոլ ճշմարտագոյն սիրելիս՝ որք ոչ գովեն զամենայն զառ ի քէն սասցեալսն. այլ որք արդար դատաստանաւ զամենայն ինչ գործել փութացուցանեն: Եւ որք ուրախակցին ի շահաւորսն եւ տխրին ի ներհականսն. քանզի սոքա ճշմարտիւ կարի անսուտ սիրելութեան ցուցանեն նշանակ:*

---

ծոց), ուստի այս իմաստով է "ծառայութեան տպաւոր խրոխտութեանց,,: — 2 Լաւագոյն կ'ըլլար "իշխանացն ընտրութեան." բայց թարգմանն ուզած է հաւատարմաբար պահել յոյն ընթերցուածն որ՝ բառախաղի մը հետեւութեամբ՝ է αἱ τῶν ἀρχόντων προβολαὶ (առաջարկութիւնք՝ ընտրութեան համար:)

‖ ԼԱ. 1 Յ. τῶν ἐχθρῶν θυμοῦσθαι ταῖς κακουργίαις καὶ τῶν φίλων θέλγεσθαι ταῖς κολακείαις (բարկանալ չարագործութեամբք թշնամեացն եւ ողոքուիլ՝ հրապուրուիլ շողոքորթութեամբք սիրելեաց, կամ չարագործութեանց ... շողոքորթութեանց համար:) — 2 Յ. γενναίως ἀνθίστασθαι (քաջապէս կալ ընդդէմ), այսինքն՝ երկուքին ալ հաւասարապէս դիմադրելու է, ինչպէս կը մեկնուի յաջորդովն ալ:

‖ ԼԲ. Ամբողջը ճիշդ բնագրին համեմատ:

ԼԳ. Մի՛ փոխարկեսցէ քեզ զմեծախոհ միտս՝ երկրաւոր այսր իշխանութեան զանգուած[1]. այլ որպէս հաստատուն իշխանութեան վարող[2], անփոփոխ կալ զմիտս ի փոփոխական իրողութիւնս, ոչ ի խնդութիւնս բարձրանալով եւ ոչ ի տխրութիւնս նուաստանալով։

ԼԴ. Որպէս ոսկի երբեմն երբեմն այլապէս յարուեստէն փոխաձեւացեալ[1], եւ առ[2] տարբեր տեսակս զարդարանաց յօրինեալ, միայն որ ինչ է, եւ փոփոխումն ոչ կրէ. սոյնպէս եւ դու ով բարեշուք[3] թագաւոր, զայլ զկնի այլոյ յաջորդեալ զպետութիւն[4], եւ ժամանեալ յայդ վերնագոյն պատիւ, դու ինքն հաստատուն մնաս, անայլայլելի ունելով զմտախոհութիւնդ[5]։

---

‖ ԼԳ. 1 Ամբողջը բառական՝ μὴ μεταβαλλέτω σοι τὴν μεγαλόφρονα γνώμην τῆς ἐπιγείου ταύτης δυναστείας ὁ ὄγκος, այսինքն՝ այս երկրաւոր պետութեան ճ ո խ ու թ ի ւ ն ը (ὄγκος զանգուած, քանակ, մեծութիւն եւն, տես ԾԲ, 1) քու ա զ ն ու ա մ ի տ դ ա տ ո ղ ու թ ի ւ ն դ ("մեծախոհ միտք") թող չ փ ո խ է (Հ. "փոխարկել", նիւթական։) — 2 Բոլորովին նիւթական. յոյն՝ ἀλλ' ὡς ἐπίκηρον διέπων ἀρχὴν (այլ որպէս կառավար փ ո խ ա ն ց ո ւ կ իշխանութեան.) ἐπίκηρος կը նշանակէ՝ ա ն ց ա ւ ո ր, եւ՝ մահկանացու, դիւրաթեք, տկար, հիւանդագին. մեր յունաբանք ալ կը գործածեն "հաստատուն" իբր վաղանցուկ, փոփոխական, թէեւ բուն հայ բառը բոլորովին ուրիշ իմաստ ունի. (հոսիլ։) — Քիչ մ'եւսքը "իրողութիւնք" այն իմաստով, զոր յաճախ յիշեցինք։

‖ ԼԴ. 1 "Փոխաձեւացեալ" = μετατυπούμενος (այլակերպ, այլաձեւ եղած։) — 2 "Առ տարբեր" եւն՝ այսինքն "ի տարբեր տեսակս . . . յօրինեալ." (յոյն՝ πρὸς։) — 3 Բ. εὐκλεέστατε βασιλεῦ (մեծանուն, հռչակաւոր թագաւոր։) — 4 Բառական՝ ἄλλην ἐξ ἄλλης ἀμείβων ἀρχὴν. — 5 Հոս հայը պարբերութիւն մը դուրս ձգած է. յոյնը՝ "դու ինքն մնաս հաստատուն, ո՛չ է ն ո յ ն գ ո ր ծ ո, (այլ) անփոփոխ պահելով զմիտդ ի բարին" (. . . οὐκ ἐν

ԼԵ. Ցայնժամ վարկեա թագաւորել ապահովապէս, յորժամ տիրես կամայական[1] մարդկանց. քանզի որ ակամայ հպատակի, յորժամ ժամ առնու՝ աղմուկ գրգռէ։[2] Իսկ որ օրինօքն բարեմտութեան[3] վարի, հաստատ ունի առ վարիչն զհնազանդութիւնն։

ԼԶ. Զի զիշխանութիւն թագաւորութեանն առնիցես հաչակելի, որքան ունիս ընդդէմ մեղուցելոցն հպատակաց բարկութիւն, այնքան ունել եւ ընդդէմ յանցուցելոյն քեզ ինքեան համարեա[1]։ Քանզի ոչ ոք զօրէ այնքան զօրեղ իշխանութեամբն կրթել, եթէ ոչ բան ընտանի որ ի նոյն յանցուցելոյն շարժեցեալ լինի[2]։

ԼԷ. Որ մեծ իշխանութիւն առեալ է, տուողին իշխանութեան քատակեսցի[1] ըստ կարի։ Քանզի եթէ զպատկերն բերէ զԱստուծոյն ամենեցուն, եւ ի ձեռն նորին ունի զպետութիւնն ի վերայ ամենեցուն, յայսմ արդարեւ մանաւանդ Աստուծոյ քատակեսցի, ո՛չ մի ինչ վարկանել քան զողորմին առաւել նախապատիւ։

---

τοῖς αὐτοῖς πράγμασιν, ἀναλλοίωτον ἔχων ἐν τῷ καλῷ τὸ φρόνημα.)

‖ ԼԵ. 1 Ո՛չ "կամայական,,, այլ "կամաւոր,, (կամաւ հնազանդող) մարդկան. յոյնը՝ ὅταν ἑκόντων ἀνάσσῃς ἀνθρώπων. — 2 "ժամ առնու,, եւն, այսինքն՝ "յորժամ դիպող գտանէ՝ ապստամբի.,, յոյն՝ στασιάζει καιροῦ λαβόμενον. — 3 Տես ԼԹ, 1, ԽԱ, 2։

‖ ԼԶ. 1 Բառական ըստ յունին. այսինքն՝ նոյնը (բարկութիւն) ունեցիր քեզի իսկ դէմ ալ երբ յանցաւոր ըլլաս (նոյն բանով։) — 2 Նոյնպէս բառական եւ յունաբան ("բան . . . շարժեցեալ,, եւն.) յոյնը՝ λογισμὸς οἰκεῖος ἐξ αὐτοῦ τοῦ πλημμελοῦντος κινούμενος. այսինքն՝ նոյն իսկ յանցուցելոյն ինքնաբուղխ դատողութիւնը՝ ճանչնալը։

‖ ԼԷ. 1 "Քատակեսցի,, = μιμείσθω (լիցի նմանող.) նոյնպէս քիչ մ'ետքը՝ "Աստուծոյ քատակեսցի,, (= τὸν θεὸν μιμήσεται.)

ԼԸ. Գերքան[1] զոսկի եւ քան զակն պատուական զհարստութիւն բարերարութեանն անձանց գանձեսցուք, զայն[1] որ եւ աստէն զուարճացուցանէ յուսով հանդերձելոյ զմայլմանն[2], եւ անդէն քաղցրացուցանէ փորձիւ յուսացելոյ երանութեանն։ Իսկ այնոքիկ՝ որք այժմ առ մեօք, որպէս ոչինչ առ մեզ[3], մի՛ շողոմեսցեն զմեզ[4]։

ԼԹ. Փոյթ արա պայծառագոյն պարգեւս փոխարէն հատուցանել այնոցիկ՝ որք բարեմտութեամբ[1] առնեն զառ ի քէն հրամայեալսն. քանզի այսու կերպիւ՝[2] եւ լաւացն աճեցուսցես զյօժարութիւն[3], եւ յոռեացն քարոզեսցես՝ ուսանել զչարութիւնն[4]. քանզի արժանի առնելն այնոցիկ որք ոչ առնեն զայնս՝ կարի անպատեհ է։

Խ. Քան զամենեսեան պատուականագոյն է թագաւորութիւնն։ Բայց յայնժամ մնաւանդ է

---

‖ ԼԸ. 1 Ի վեր քան . . . ։ — 2 Յ. τῆς μελλούσης ἀπολαύσεως (հանդերձեալ վայելմանց.) "զմայլումն,, հնոց քով այս իմաստն ալ ունի։ — 3 Իբրեւ ոչինչ մեզի համար (յոյն՝ οὐδὲν πρὸς ἡμᾶς.) — 4 Յ. μὴ τερπέτω ἡμᾶς (մի ուրախ արասցեն զմեզ։)

‖ ԼԹ. 1 "Բարեմտութեամբ,, բառական = μετ᾽ εὐνοίας (յօժարութիւնով, սիրով։) — 2 Ըստ յունին τούτῳ γὰρ τῷ τρόπῳ (այսու օրինակաւ, այսպէս։) — 3 Յ. τῶν ἀγαθῶν ἐπαυξήσεις τὴν προθυμίαν (". . . աճեցուսցես գէօյլի,, կամ "գէօնիւլի,, եւն։) — 4 Սխալ է իմաստը. Ճիշդ հակառակը կ'ուզէ ըսել յոյնը՝ τοὺς πονηροὺς διδάξεις μεταμαθεῖν τὴν κακίαν ("յոռեացն ուսուցես մոռնալ զչարութիւնն,,։) Ուստի՞ է "մոռնալ զչարութիւն։,, Յունարէն μανθάνω է "ուսանել,,, μεταμανθάνω մոռնալ սորվածը, այլազգ սորվիլ (գերմ. umlernen, verlernen.) կամ թարգմանը չէ տեսած μετα մասնիկը, ուստի կարդացած μαθεῖν (ուսանել), կամ "այլազգ,, կամ նման բառ մը դուրս ինկած է։ Տես ՏՊ. այս տեղը։

‖ Խ. 1 "Շըշլօխյըլը այս իշխանութիւնն,, անճահ է, բառական փոխադրութիւն ըլլալով περικείμενος բառին.

այնպիսի, յորժամ շրջակայեալս[1] այս իշխանութիւն ո՛չ առ յանդգնութիւն հակիցի, այլ առ հաւասարութիւն հայիցի, ի տմարդի անգթութենէն[2] որպէս ի գազանականէ ի բաց դառնալով. իսկ զմարդասիրութիւնն իբր ատուած անման յինքն ցուցանելով։

ԽԱ․ Հանգիտաբար[1] առ սիրելիս եւ առ թշնամիս արա զդատաստանս, մի՛ բարեխոհիցն[2] շնորհելով վասն բարեկամութեանն եւ մի՛ չարակամացն հակակայելով[3] վասն ատելութեանն։ Վասն զի նոյնոյ անտեղութեան[4] է՝ եւ արդարացուցանել զանիրաւն՝ թէ եւ սիրելի իցէ, եւ անիրաւել արդարոյն՝ թէ եւ թշնամի իցէ. քանզի չարն յերկաքանչիւրսն նման է, թէպէտ եւ ի ներհակսն գտանիցի։

ԽԲ․ Ուշադրաբար[1] լսել պարտին դատաւորքն

---

յոյնն է՝ ὁ τοῦτο περικείμενος τὶ κράτος, μὴ πρὸς αὐθάδειαν ῥέπῃ (“յորժամ իշխանութիւնս որ գտանի յումեք, ոչ . . .„, կամ՝ “յորժամ ոչ որ զգեցեալ է զայս իշխանութիւն՝ միտիցի ի յանդգնութիւն.„) περίκειμαι կը նշանակէ՝ բոլորտիքը, շրջակայ ըլլալ, բայց նաեւ՝ գտնուիլ, կրուիլ (“զգեցեալ լինել„) մէկէ մը. եւն (լա. hac qui circumdatus est potestate եւն։) — 2 Յոյն՝ τὸ μὲν ἀπάνθρωπον (զտմարդին, զտմարդութիւն) ὡς θηριῶδες (իբրեւ գազանական) ἀποστρεφόμενος (է բաց մերժելով. տրեցեալ են։)

‖ ԽԱ․ 1 Հաւասարապէս (յոյն՝ ἴσως։) — 2 Այսինքն՝ բարեկամաց. նիւթական ըստ յունին՝ μήτε τοῖς εὐνοοῦσι χαριζόμενος διὰ τὴν εὔνοιαν. վերջինս հոս “բարեկամութիւն„ թարգմանուած է ճշդիւ ըստ յարմարութեան, մինչ ուրիշ տեղ մը (Լթ, 1) “բարեմտութիւն„ փոխադրուած էր նիւթականօրէն։ — 3 “Հակակայել„ = յոյն՝ ἀνθιστάμενος (դէմ կենալ. տես ԼԱ, 2։) — 4 “Անտեղութեան է„ = τῆς αὐτῆς ἐστὶν ἀτοπίας.

‖ ԽԲ․ 1 “Ուշադրաբար„ յոյնը՝ νουνεχῶς (խոհեմաբար։) — 2 Բոլորովին նիւթական փոխադրութիւն. յոյնը

իրողութեանց. քանզի դժուարորսալի[2] է գիւտն արդարոյն, որ դիւրաւ փախչի յայնցանէ՝ որք ոչ յոյժ զգուշանան։ Զի թէ զպերճախօսութիւն ասողացն ի բաց թողլով, եւ զհաւանականութեամբ ասացելոյն զանց առնելով[3], ի խորս դիտաւորութեանցն զինքեանս ի ներքս արկանիցեն, այնպէս ի վեր քարշեն[5] զառ ի յինքեանց խնդրեցեալն, եւ յերկակի մեղաց ի բաց փախիցեն՝ ո՛չ ինքեանք զբարին մատնելով, եւ ո՛չ այլոց զնոյն իրակել[6] թոյլ տալով։

ԽԳ. Թէեւ ստանայցես ուղղաւորութիւնս[1] գործոց հաւասարութիւս աստեղաց, ոչ իսկ երբէք յաղթիցես բարութեանն Աստուծոյ. քանզի ո՛րքան ինչ ոք արդեօք մատուցանիցէ Աստուծոյ՝ ի նորայոցն զնորայսն նուիրէ նմա։ Քանզի որպէս չիք ումեք յարեւու յառաջ քայլել[2] քան զիւրական ստուերն, որ միշտ յառաջ երթայ, թէեւ հապատէպ ճեպիցէ.

---

δυσθήρατον (“դժուարորսալի,,) γὰρ ἐστὶν ἡ τοῦ δικαίου (“արդարոյն,,) εὕρεσις, այսինքն՝ ճիշդը գտնել դժուարին է. δυσθήρατος կը նշանակէ բուն “դժուարորսալի,,, բայց նաեւ “դժուարահաս, դժուարաքննելի,, եւն. ինչպէս δίκαιος է “արդար,,, բայց նաեւ “ճիշդ, օրինաւոր, պատշաճ,, եւն եւն։ — 3 Յոյնը բառախաղ՝ τῶν λεγόντων ἀφέντες δεινότητα (զպերճախօսութիւն ի բաց թողլով) . . . τῶν λεγομένων παρέντες πιθανότητα (զհաւանականութիւն եւն։) — 4 Յ. εἰς τὸ βάθος τῶν νοημάτων (ի խորս խորհրդոց՝ մտաց եւն։) — 5 Նիւթական՝ οὕτως ἀνιμήσονται, այսինքն՝ “ի վեր հանեն զոր խնդրենն,,. (լտ. sic demum haurient quod ipsis quaeritur.) — 6 Յ. τοῦτο δρᾶν (զնոյն գործել, առնել։)

‖ ԽԳ. 1 “Ուղղաւորութիւնս գործոց,, բոլորովին նիւթական եւ անյարմար. յոյն՝ τὰ κατορθώματα (գործք բարիք, «քաջագործութիւն», նշանաւոր արարք, եւն. լտ. bona opera.) — 2 Յոյն. ὑπερβῆναι τὴν . . . σκίαν, այսինքն՝ “անցանել յարեւու ընդ իւր ստուերն,, (“քայլել,,

*սոյնպէս եւ ո՛չ զանգերազանցելի բարութեամբն Աստուծոյ՝ բարերարութեամբք գերազանցեն մարդիկ*[3]:

**ԽԴ.** *Անծախելի է հարստութիւնն բարերարութեան. քանզի ի տալն՝ առաւել լինի, եւ ի ցրուելն՝ ժողովի: Զայս ունելով յանձին քում, ով հարստատուր*[1] *թագաւոր, տուր առատապէս ամենայն հայցողացն առ ի քէն. քանզի անհունապատիկ*[2] *ունելոց ես հատուցմունս վասն սոցին, յորժամ գայցէ ժամանակն հատուցման գործոց:*

**ԽԵ.** *Ակնարկութեամբն Աստուծոյ առեալ զթագաւորութիւնն, քատակեաց*[1] *նմա ի ձեռն գործոց բարեաց. քանզի ի համարոյ նոցին եղեալ ես՝ որք բարի առնել կարող են, եւ ո՛չ ի թուոյ այնոցիկ՝ որք բարի կրել*[2] *կարօտ են. քանզի առձեռն պատրաստութիւն առատութեան ընչիցն՝ անարգել*[3] *է առ բարերարութիւնս աղքատացն:*

**ԽԶ.** *Որպէս աչք բնաւորեալ*[1] *է մարմնոյ, սոյնպէս թագաւոր յարմարեցեալ է աշխարհի, տուեալ յԱստուծոյ ի դործակցութիւն օգտակարացն: Պարտ է ուրեմն նմա, որպէս իւրական անդամոց, այնպէս ամենայն մարդկան նախատես*

---

*բուն՝ քայլ առնելով վրայէն անցնիլ, որ իմաստով է յոյնն ալ:) — 3 Զ. “մարդիկ+:„*

‖ **ԽԴ.** 1 “Հարստատու-ր„ բոլորովին նիւթական թարգմանութիւն է. յոյն՝ πλουσιόδορε βασιλεῦ (առատաձեռն թագաւոր:) — 2 «Անհունապատիկ» եւն բառական յոյն՝ ἀπειροπλασίας γὰρ ἕξεις τὰς . . . ἀμοιβὰς.

‖ **ԽԵ.** 1 Այսինքն՝ «Լեր նմանող» (μίμησαι:) — 2 “Բարի կրել„ = εὖ παθεῖν (բարիս ընդունել, ստանալ.) տես ԻԹ, 3: — 3 «Անարգել է առ . . .» զուտ նիւթական փոխադրութիւն յունին ἀνεμπόδιστόν ἐστι πρὸς . . . այսինքն՝ ընչից առատութեան առձեռնպատրաստ ըլլալն արգելք չէ (ազատ է) աղքատներու բարերարութեան ընելու:

‖ **ԽԶ.** 1 Յ. ὀφθαλμὸς ἐμπέφυκε σώματι. — 2 Յ. προνοεῖν (նախատեսել, նախախնամել, յառաջագոյն

լինել.[2] զի ի բարիս զարգասցին,[3] եւ ի չարիս մի՛ զարկցին[4]։

ԽԷ. Ապահովագոյն պահպանութիւն համարեա փրկութեանն[1] քո՝ զչանիրաւելն ումեք երբէք ի հպատակացն. քանզի որ ումեք ոչ անիրաւէ, ոչ կասկածի յումեքէ։ Իսկ եթէ ոչ անիրաւելն՝ ապահովութիւն պատճառէ[2], բարերարելն՝ որչափ եւս առաւել. զի զապահովութիւնն տայ, եւ զսիրելութիւնն ոչ մատնէ[3]։

ԽԸ. Լեր հպատակացն, ով բարեպաշտագոյն թագաւոր, եւ ահաւոր վասն գերունակութեան[1] իշխանութեանդ, եւ բաղձալի վասն յորդութեան բարերարութեանդ։ Մի՛ զերկիւղն արհամարհելով՝ վասն գորովոյն, եւ մի՛ զգորովոյն անփոյթ առնելով վասն երկիւղին։ Այլ զհեզութիւնն ունելով անարհամարհելի, եւ զարհամարհութիւնն ունելով անհեզանալի։[2]

---

հոգալ։) — 3 Հոս Հայը կը հաստատէ Banduriusի սրբագրութիւնը, որ կը կարդայ προκόπτωσιν (յառաջեսցեն եւն. յոյն ձեռագիրք προσκόπτωσιν, տես յաջորդը։) — 4 "ի չարիս զարկցին„ նիւթական փոխադրութիւն յունին՝ μὴ προσκόπτωσιν ἐν κακοῖς (մի՛ գթխեսցեն ի չարիս.) προσκόπτω կը նշանակէ՝ ի դիմի հարկանել, ընդդիմահարիլ, եւ՝ գթել, նաեւ գայթակղել եւն։

‖ ԽԷ. 1 Ըստ յունին τῆς σωτηρίας σου φυλακὴν. — 2 "Պատճառէ„ յետնոց եւ արդի լեզուի իմաստով (= προξενεῖ.) — 3 Զ. սխալմամբ "մթանէ.„ յոյնը բոլորովին բառախաղ՝ τὸ ἀσφαλὲς γὰρ δίδωσι (զապահովութիւն տայ), καὶ τὸ προσφιλὲς οὐ προδίδωσι (զսիրելութիւն ոչ մատնէ.) լտ. nam ut tutelam exhibet, ita charitatem non prodit.

‖ ԽԸ. 1 "Գերունակութեան ... յորդութեան„ եւն = διὰ τὴν ὑπεροχὴν (յետնոց՝ "գերազանցութիւն„) ... διὰ τὴν παροχὴν τῆς εὐποιίας, ուստի բառախաղ։ Վերջինը Հայը փոխադրած է "վասն յորդութեան բարերարութեանդ.„ սակայն παροχὴ կը նշանակէ՝ նուէր, ընծայ,

ԽԹ. Զորս հպատակացն օրինադրես ի ձեռն բանից, դու զայնոսիկ յառաջընթաց գոլով[1] ցուցցես ի ձեռն գործոց. զի բանիւքն՝ որովք հաւանեցուցանես՝ քաղցր կենցաղ նպաստաւորեսցի[2]. քանզի այնպէս դրուատելի[3] ապացուցանես զիշխանութիւնն քո, եւ ասելով գործողապէս, եւ գործելով ասողապէս[4]:

Ծ. Առաւել եւս սիրեա, ով անդորրամիտ[1] թագաւոր, զայնոսիկ՝ որք պաղատին առ ի քէն տուրս առնուլ, քան զայնս՝ որք փութան քեզ ընծայս մատուցանել. քանզի սոցա պարտական հատուցման կացուցանիս. իսկ նոքա զԱստուած քեզ պարտական առնեն. որ զառ նոսա եղեալն ինքեան համարի, եւ հատուցանէ բարւոք փոխատրութեամբ աստուածասէր եւ մարդասէր դիտմանն[2] քո:

---

տուրք, եւ ընծայումն, նուիրելը եւն: — 2 Յոյնը բառախաղ՝ τὸ ἥμερον (զհեզութիւն) ἔχων ἀκαταφρόνητον ("անարհամարհելի,,), καὶ τὸ εὐκαταφρόνητον (զարհամարհութիւնն) ἔχων ἀνήμερον ("անհեզանալի:,,)

‖ ԽԹ. 1 "Յառաջընթաց գոլով,, = προλαβὼν (կանխել, կանխելով:) — 2 "Նպաստաւորեսցի,, շատ յարմար չէ. ամբողջը բոլորովին նիւթական փոխադրութիւն. յոյնը՝ ἵνα τοῖς λόγοις οἷς πείθεις καὶ χρηστὸς συναγωνίζηται (Հ. "Նպաստաւորեսցի) βίος, այսինքն՝ "զի բանիցն՝ որովք հաւանեցուցանես, օգնական (բուն՝ "մարտակից) լիցին եւ բարք քաղցունք:,, — 3 Լաւ է "դրուատելի,, = εὐδόκιμον, զոր այլուր "բարեփորձ,, կը թարգմանէր, տես Զ, 1, ԻԸ, 1: — 4 Բնականապէս բառական՝ καὶ λέγων πρακτικῶς (արդի "գործնականօրէն,,, Հայը "գործողապէս,,) καὶ πράττων λογικῶς (Հ. "ասողապէս,,). ամբողջը բառախաղ մըն է:

‖ Ծ. 1 Յ. βασιλεῦ γαληνότατε (թագաւոր անխռով եւն:) — 2 "Դիտման,, (= τὸν . . . σκοπόν, լտ. intentionem, դիտաւորութիւն:)

ԾԱ. Գործ է արեգական լուսաւորել ճառագայթիւքն զարարածս։ Իսկ արքայի առաքինութիւն՝ ողորմիլն է կարօտելոց. բայց քան զնա երեւելագոյն է բարեպաշտ թագաւորն։ Քանզի նա խոյս տուեալ մեկնի յաջորդութեամբ գիշերոյն. իսկ սա ոչ ի բաց մեկուսի՝ յափշտակութեամբ չարացն, այլ լուսովն ճշմարտութեան՝ յանդիմանէ զգաղտնիսն անիրաւութեան։

ԾԲ. Զթագաւորսն՝ որք յառաջ քան զքեզ՝ զարդարեաց իշխանութիւնն. իսկ դու զնոյն ով կարող՝ պայծառագոյն արարեր, հեզութեամբ խառնելով զզանգուածն[1] իշխանութեան, եւ քաղցրութեամբ յաղթելով երկիւղի մերձեցելոցն առ քեզ։ Ուստի ի նաւահանգիստ քոյոյ անդորրութեան ամենեքեան դիմեն ողորմութեան կարօտեալք, եւ ի ծփական ալեաց[2] աղքատութեան զերծեալք, գոհացողական օրհնութիւնս քեզ վերառաքեն[3]։

ԾԳ. Որչափ կարողութեամբդ զամենեքումբք գերազանցես, այնչափ եւ գործովք գերափայլել[1] ջանացիր. եւ բարեաց գործողութիւն համեմատ մեծութեանն կարողութեան՝ սպասեա

‖ ԾԱ. 1 "Ի բաց մեկուսի" անշուշտ իբրեւ բայ գործածած է Թարգմանը (յետնոց՝ "մեկուսիմ", մեկուսանամ.) բայց նաեւ այս՝ շատ յարմար չէ. յոյնը բառախաղով կ'ըսէ ὁ μὲν γὰρ ὑποχωρεῖ ("խոյս տուեալ մեկնի") τῇ διαδοχῇ τῆς νυκτός, ὁ δὲ οὐ παραχωρεῖ τῇ συναρπαγῇ τῶν κακῶν (իսկ սա ոչ տայ տեղի յափշտակութեամբ չարաց", կամ "յափշտակութեան չարաց։")

‖ ԾԲ. 1 Բառական = ἡμερότητι κιρνῶν τῆς ἐξουσίας τὸν ὄγκον. "զանգուած" տես ԼԳ, 1։ — 2 Յ. պարզ՝ "ալեաց" (τῶν κυμάτων κτλ.) — 3 Սովորական բացատրութիւն յետնոց ("վերառաքել" եւն) = εὐχαριστηρίους ὕμνους σοι ἀναπέμπουσιν. Զ. բուն "վերառաքեն։"

‖ ԾԳ. 1 "Գերափայլել" = ὑπερλάμπειν (առաւել փայլել։) — 2 Ամբողջ խօսքը ճշդիւ յունական ասութեան

պահանջիլ ի քէն[2]։ Արդ՝ զի առ յԱստուծոյ վերաքարոզեսցիս[3], հանդերձ պսակաւն անպարտելի թագաւորութեանդ՝ ստացիր եւ զպսակն բարեբարութեան։

ԾԴ. Խոկացեալ նկատեա նախ քան զհրամայելն զոր կամիս. զի հրամայեսցես ճահողապէս[1] որ ինչ անկ է. քանզի դիւրագթելի է գործարան լեզուին[2]. եւ մեծագոյն վտանգ առընթեր[3] ունի անփոյթ եղելոցն։ Իսկ եթէ զբարեպաշտ մտածութիւնն՝ որպէս երաժշտական նուագ[4] դիցես ի վերայ նորա, զամենայարմար տաղն առաքինութեան եղանակեսցէ[5]։

ԾԵ. Սուր[1] արդարեւ պարտ է լինել արքային առ ամենեսեան. եւ մանաւանդ առ դատողութիւնս դժուարին իրողութեանց. բայց դանդաղ յոյժ ի բարկութիւն ցուցանել[2]։ Քանզի որովհետեւ ամենեւին անբարկութիւնն[3]՝ արհամարհելի է, եւ ցասիր[4] չափաւորապէս, եւ մի ցասնուր։ Այն՝ զի զդիմեցմունս վատթարացն զսպեալ

---

համեմատ։ — 3 "Վերաքարոզիլ" ըստ յունարանից՝ հռչակել իբր յաղթող եւն. յոյն՝ ἵνα τοίνυν παρὰ θεοῦ ἀνακηρυχθῇς. (լտ. ut igitur a Deo quasi per praeconem victor declareris.)

‖ ԾԴ. 1 "Ճահողապէս" = ἐμφρόνως (խոհեմաբար եւն։) — 2 Յ. εὐόλισθον γὰρ τὸ τῆς γλώττης ὄργανον. — 3 Ձեռ. "Առընթեր." կրնայ նաեւ "առընկեր" կարդացուիլ։ — 4 "Երաժշտական նուագ" = ὡς μουσικὴν. — 5 Բառական՝ τὸ παναρμόνιον τῆς ἀρετῆς ἀνακρούσεται μέλος. ուստի "ամենայարմար" կ'ըսէ Հ. Ճշդիւ ըստ յունին, զոր այսօր "ներդաշնակաւոր" կը բացատրենք։

‖ ԾԵ. 1 "Սուր" բառական = ὀξὺν (խիստ, արագ, ազդու եւն.) լտ. acutum etc. — 2 Ըստ յունին εἰς ὀργὴν ἐπιδείκνυσθαι, այսինքն՝ ի բարկանալ։ — 3 "Անբարկութիւն" = τὸ ἀόργητον. — 4 Ձ. բուն գրած է՝ "եւ չ՝ ցասիր." այսինքն՝ "չ" տառը սխալմամբ գրուելով՝ վրան բութ գրուած

նահանջիցէ. իսկ այս՝ զի զծկտմունս բարեացն հետազօտիցէ[5]։

ԾԶ. Ի հոգունակ[1] խորհրդարանի սրտի քում մտադրաբար իմասցիս զբարս ընդ քեզ կենցաղակցելոցն. զի ծանիցես ճշդութեամբ եւ զայնս՝ որք սիրով քեզ պաշտօն տանին, եւ զայնս՝ որք պատրանօք շողոմեալ շողոքորթեն[2]. քանզի բազումք բարեխոհ լինել կեղծաւորեալք, մեծապէս վնասեն հաւատացողացն։

ԾԷ. Բան լուեալ՝ որ օգտել կարող է, մի՛ միայն լսելեօք զայն՝ այլ եւ գործով ընկալ։ Քանզի այնպէս իշխանութիւն թագաւորին պայծառազարդի[1], յորժամ կամ յինքենէ զկարօտեալսն տեսանէ[2], կամ յայլմէ գտեալ՝ ոչ իւիք անտես առնէ, այլ տեղականայ առանց ամօթոյ եւ կատարէ անյապաղաբար։

ԾԸ. Դղեակ[1] արդարեւ անառիկ պարսպօք ապահովացեալ՝ արհամարհէ զպաշարող թշնամիսն իւր. իսկ բարեպաշտ թագաւորութիւնն ձեր, ողորմութեամբք պարսպեալ, եւ աղօթիւք շուրջանակի աշտարակեալ[2] անպարտելի եղանի ի նե-

---

է իբրեւ նշան ջնջելու։ — 5 Բառախաղ՝ τῶν φαύλων τὰς ὁρμᾶς (շարժմունք, կիրք. Հ. "դիմեցմունք„) ἀναστέλλῃ ... τὰς ἀφορμὰς (Հ. "ձգտմունք„) τῶν χρηστῶν ἀνιχνεύῃ (խուզել գտանել, "հետազօտել։„)

‖ ԾԶ. 1 Յ. ἐν τῷ ἀκριβεῖ ... βουλευτηρίῳ (մանրազնին եւն։) — 2 Յ. τοὺς ἐν ἀπάτῃ κολακεύοντας (եւ զայնոսիկ որ խաբէութեամբ փաղաքշեն։)

‖ ԾԷ. 1 "Պայծառազարդի„ = ἀγλαΐζεται. — 2 "զկարօտեալսն„ շատ նիւթական եւ անյարմար. գոնէ ըլլալու էր "զպէտսն„. յոյնը՝ ἢ παρ' ἑαυτοῦ τὰ δέοντα συνορᾷ, այսինքն՝ "կամ ինքնին տեսանէ զայնոսիկ որ ինչ պէտք են„. (լտ. ex se considerat quae facienda sunt.)

‖ ԾԸ. 1 "Դղեակ„ = ἀκρόπολις. — 2 "Շուրջանակի աշտարակեալ„ այսինքն՝ պատեալ աշտարակօք կամ բրգօք. յոյն՝ προσευχαῖς περιπυργουμένη.

տիցն թշնամեաց, հուչակելի ընդդէմ նոցին կանգնելով յաղթանակս։

ԾԹ. Վարեսցիր որպէս պարտ է ստորին թագաւորութեամբդ, զի քեզ սանդուղք լիցի վերին բարեփառութեանն։[2] Քանզի որք զսա բարւոք կառավարեն, յետ այսր եւ նմին արժանի լինին. բայց զսա կառավարեն բարւոք, որք հայրական գորով ցուցանեն ի վերայ իշխեցելոցն, եւ իշխանական երկիւղ ընկալնուն առ ի նոցանէ[3]. սաստիւք ուրեմն զյանցանս յառաջագոյն զսպելով, եւ փորձ պատժոյ առ նոսա ոչ ածելով[4]։

Կ. Անհնանալի հանդերձ է զգեստն բարերարութեան. եւ անապական զարդ[1]՝ գութն որ առ աղքատս։ Պարտ է ուրեմն նմա որ կամի բարեպաշտութեամբ թագաւորել, այնպիսի զգեստուք զհոգին գեղազարդել[2]։ Քանզի որ զգեցեալ է ծիրանի աղքատսիրութեան, եւ արժանաւորի երկնային թագաւորութեան։

ԿԱ. Գաւազան թագաւորութեան առ յԱստուծոյ ընկալեալ, դիտեա նկատեա թէ զիարդ հաճոյասցիս այնմ՝ որ տուեալ է քեզ զայն։ Եւ որպէս քան զամենայն մարդ նախապատուեալ ես ի նմանէ, առաւել եւս քան զամենեսեան փութացիր յարգել զնա։ Բայց զայս յարգումն համարեա լինել մեծագոյն, եթէ իբրեւ զքեզ տեսանիցես՝

‖ ԾԹ. 1 “ստորին թագաւորութեամբդ„ (= τῇ κάτω βασιλείᾳ.) տես Ը, 2։ — 2 “Վերին բարեփառութեանդ„ = τῆς ἄνω εὐδοξίας. — 3 Բառական՝ καὶ ἀρχικὸν παρ᾽ αὐτῶν ἀντιλαμβάνοντες φόβον. — 4 Յ. τιμωρίαις δὲ πεῖραν αὐτοῖς οὐ προσάγοντες. (ոչ ածելով ի վերայ նոցա զփորձն պատժովք։)

‖ Կ. 1 Յ. բառախաղ՝ καὶ ἀδιάφθορος στολὴ ἡ πρὸς τοὺς πένητας στοργή (եւ անապական զգեստ՝ գութն առ աղքատս։) — 2 “զհոգին գեղազարդել„ = τὴν ψυχὴν καλλωπίζειν (զարդարել, պաճուճել, լտ. exornare.)

զարարածսն ի նմանէ. եւ որպէս պարտուց վճարումն զբարերարութիւնն լրացուցես[1]:

ԿԲ. Առ վերին օգնականութիւնն ընթանալ պարտի ամենայն մարդ, որ փրկութեան տենչայ. իսկ թագաւորն նախ քան զամենեսեան որպէս հոգացող վասն ամենեցուն: Զի յԱստուծոյ պահպանեալ՝ եւ զթշնամիսն քաջապէս նուաճեսցէ, եւ զիւրսն հոգունակութեամբ[1] ապահովացուսցէ:

ԿԳ. Աստուած ոչ կարօտի ումեք. իսկ թագաւորն Աստուծոյ միայնոյ: Քաղակեաց[1] ուրեմն այնմ որ ոչ կարօտի ումեք, եւ առատացո խնդրողաց զողորմութիւնն. ոչ հոգունակութեամբ խնամ տարեալ[2] յաղագս ընտանեացն քոց, այլ ամենայնի ընձեռելով զհայցուածսն առ կեցութիւն: Քանզի յոյժ լաւագոյն է վասն արժանեացն ողորմիլ եւ անարժանից. քան թէ զարժանիսն զրկել վասն անարժանիցն:

ԿԴ. Մինչ ներումն խնդրես մեղաց, ներեա եւ դու քոյոցն յանցանողաց. զի թողութեան թո-

‖ ԿԱ. 1 Ըստ յունին՝ καὶ ὡς χρεὼν καταβολὴν τὰς εὐποιίας πληροῖς (եւ որպէս հատուցումն պարտուց՝ զբարեգործութիւնս վճարեսցես.) Լտ. atque ut debiti exsolutionem beneficiendi munus adimpleas.)

‖ ԿԲ. 1 κατασφαλίζεται σπουδαίως (փութով, ժրութեամբ՝ յապահովս արասցէ:)

‖ ԿԳ. 1 "Քաղակեա՛ց" = μιμοῦ, տես Է, 1. ԻԲ, 3 եւն: — 2 "Հոգունակութեամբ խնամ տարեալ" քիչ մը տարբեր իմաստ կու տայ քան յունին բնածը՝ μὴ ἀκριβολογούμενος περὶ τοὺς σοὺς οἰκέτας, ἀλλὰ πᾶσι παρέχων τὰς πρὸς τὸ ζῆν αἰτήσεις, այսինքն՝ "մի՛ ճշդիւ կշռելով (կամ նաեւ՝ խնայելով) վասն հպատակաց քոց, այլ ամենեցուն շնորհելով զհայցուածս (զոր ինչ հայցեն) առ ի կեալ.", ἀκριβολογέω ճշդիւ՝ խնամով պատմել, կշռել, հաշուել. ἀκριβολογία կշռելը եւն, խնայողութիւն: իմաստն է անշուշտ որ Ո՛չ միայն իրեններուն պէտք չէ խնայել, այլ նաեւ ամենուն ապրելու հարկաւորները մատակարարել:

ղութիւն փոխատրի[1]. եւ հաշտութեամբն որ ընդ ծառայակցաց մերոց՝ բարեկամութիւն եւ ընտանութիւն առ Աստուած։

ԿԵ. Պարտ է այնմ որ անարատութեամբ փութայ իշխանութիւն առնել, եւ ի վատափառութենէ[1] արտաքոյեցն պահպանիլ, եւ զիւր ինքն[2] նախ քան զնոսա զամօթի հարկանել. զի՝ եւ ի յայտնապէս մեղանչելոյն վասն նոցա հրաժարեսցի, եւ յառանձին յանցանելոյն ըստ ինքեան[3] արգելեալ լիցի. քանզի եթէ հպատակեալքն ամօթոյ[4] արժանիք երեւիցին, առաւել եւս թագաւորն արժանի այնմ լինիցի։

ԿԶ. Ռամկի[1] գոլ սահմ չարութիւն՝ գործելն զյոռիս եւ զտանջանաց արժանիս. իսկ իշխանի յոռութիւն՝ ոչ առնելն զբարիս եւ զփրկութեան պատճառօղս[2]։ Քանզի ոչ ի չարաց հրա-

---

‖ ԿԴ. 1 Յունին համեմատ՝ ἀφέσει ἀντιδίδοται ἄφεσις.

‖ ԿԵ. 1 "Վատափառութիւն„ եւն յոյն՝ τὰς τῶν ἔξωθεν ἀδοξίας φυλάττεσθαι (զգուշանալ՝ պահպանել յանպատուութեանց արտաքնոց։) — 2 "Զիւր ինքն ... զամօթի հարկանել„ հայցականով (փխ. "ինքնին„ "անձամբ„ եւն) գրուած յունարէնին հետեւելով՝ καὶ ἑαυτὸν πρὸ ἐκείνων αἰσχύνεσθαι. — 3 "Ըստ ինքեան„ կրկնութիւն է "առանձինն„ բառին, եւ այն՝ յունականին համեմատ՝ καὶ τοῦ κατ' ἰδίαν πλημμελεῖν (լտ. privata seorsum flagitia etc.) — 4 Անշուշտ Հայը լաւ թարգմանած է "ամօթոյ արժանիք„ (= αἰδοῦς ἄξιοι.) ինչպէս խօսքին իմաստն ալ կը պահանջէ. αἰδὼς կը նշանակէ ամօթ, ծանականք, ամօթոյք. դարձեալ՝ ամչկոտութիւն, համեստութիւն, պատկառանք եւն, եւ հետեւաբար՝ պատկառանք ազդելը, պատիւ, յարգ եւն. ուստի հոս լտ. թարգմանը փոխադրած է՝ si enim ex subditis sunt qui reverentia digni habentur, etc.

‖ ԿԶ. 1 Յ. Ἰδιώτου μὲν εἶναι (տգիտի, ուստի "ռամկի„։) — 2 Բառական τὰ ... σωτηρίας πρόξενα. — Մնացեալը նոյն՝ բնագրին հետ։

ժառումն արդարացուցանէ զիշխօղն, այլ բաշխումն բարեացն պսակէ զայնպիսին։ Ուրեմն մի՛ միայն ի չարութենէ հրաժարիլ խորհեսցի. այլ եւ զարդարութենէ բուռն հարկանել փութասցի։

ԿԷ. Ի պայծառութենէ արժանապատուութեանց ոչ զարհուրի մահն. քանզի յամենեսին մխէ զամենակեր ատամունս[1] իւր։ Ուրեմն նախ քան զանհրաժեշտ[2] գալուստն նորա, փոխադրեսցուք յերկինս զընչիցն գոյաւորութիւն[3]։ Քանզի ոչ ոք զորս յաշխարհի ժողովէ՝ անտանօր շահ օգտութեան վերածէ[4], այլ զամենեսեան թողեալ ի վերայ երկրի, մերկ համար տայ զկենաց իւրոց։

ԿԸ. Թագաւորն տէր է ամենեցուն, բայց ծառայ է յետ ամենեցուն Աստուծոյ։ Եւ յայնժամ մանաւանդ կոչեսցի տէր, յորժամ ինքն ինքեան տիրեսցէ[1]. եւ անտեղի հեշտութեանց ոչ ծառայեսցէ. այլ մարտակից ունելով զբարեպաշտ մտածութիւնն՝ զանպարտելի ինքնակալն անբան ախտից[2], զամենագրաւ տռփութիւնսն՝[3] սպառազինութեամբ ողջախոհութեան նուաճեսցէ։

ԿԹ. Զոր օրինակ ստուերքն մարմնոց յարեւանան[1], նոյն գունակ մեղքն՝ հոգւոց զհետ եր-

‖ ԿԷ. [1] Ըստ յունին՝ κατὰ πάντων γὰρ ἐπιβάλλει τοὺς παμφάγους (ամենակեր) αὐτοῦ ὀδόντας. — [2] Պէտք է "զանհրաժեշտ„ կարդալ. Զ նախ գրած "զ՝ հրաժեշտ„, յետոյ լուսանցքի վրայ ուղղած "ան„ աւելցնելով. — [3] "...գոյաւորութիւն՝„ յոյն՝ τὴν τῶν χρημάτων περιουσίαν (զընչիցն [illegible] եւն) — [4] Յ. ἐκεῖσε ἀποδημήσας ἀπάγει ("անդր փոխեալ տանի։„)

‖ ԿԸ. [1] Ձեռագիրն "ինքն ինքեան սիրեսցէ.„ ուղղելի՝ "տիրեսցէ„ (= Յ. αὐτὸς ἑαυτοῦ δεσπόζῃ.) — [2] Ըստ Յ. ... τὸν εὐσεβῆ λογισμόν, τὸν ἀήττητον αὐτοκράτορα τῶν ἀλόγων παθῶν. — [3] Զ. "զամենագրաւ տռփութիւնն.„ յոդնակի ընելու է յունին համեմատ՝ τοὺς πανδαμάτορας ἔρωτας (զամենայաղթ ցանկութիւնսն ... նուաճեսցէ։)

*թան. որք յայտնապէս զգործսն պատկերացուցանեն. վասն այնորիկ ոչ է ի դատաստանին զլանալ². քանզի նոքա վկայեն զգործոց իւրաքանչիւրոց. ոչ ձայն արձակելով, այլ զայնպիսին յայտնելով՝ որք առ ի մէնջն գործեցան:*

**Հ.** *Անցից գնացից ծովաճեմ նաւու քատակի սուղավախճան կացութիւն առաջիկայ կենցաղոյս¹, որ զմեզ զնաւորդքս իւր խաբէ, եւ փոքր փոքր քարշէ ընթացս². եւ առ իւրական վախճան զիւրաքանչիւրսն ածէ: Արդ՝ եթէ այս այսպէս իցէ, զարտուղեսցուք ի շրջական³ իրացն աշխարհիս. եւ ճեպեալ ընթասցուք առ մնացականսն յաւիտեանս յաւիտենից:*

**ՀԱ.** *Սէգ եւ բարձրայօն¹ մարդն մի՛ իբրեւ ցուլ եղջերաբարձր ի վեր ամբարձցի². այլ ածցէ*

---

‖ ԿԹ. ¹ "ստուերքն յարէ—անան,, այսինքն՝ յարին համ հետեւին, ինչպէս կ'ուզէ բնագիրն ալ՝ ὃν τρόπον αἱ σκιαὶ τοῖς σώμασιν ἕπονται (որպէս ստուերքն զհետ երթան մարմնոց,, կամ "յարին ի մարմինս,,։) — ² "Ոչ է . . . զլանալ.,, յոյն՝ οὐκ ἔστιν ἐν τῇ κρίσει ἀρνήσασθαι (ոչ է ի դատաստանին ուրանալ.) յունարէն ἀρνέομαι կը նշանակէ՝ մերժել, զլանալ, ժխտել, ուրանալ, յուրաստ կալ եւն:

‖ Հ. ¹ "Անցից գնացից ծովածեմ նաւու քատակի,, լաւ փոխադրութիւն է (= νηὸς παντοπορούσης μιμεῖται διάβασιν եւն). "քատակել,, տես Է, 1 եւն: "Սուղավախճան կացութիւն,, բառական ըստ յունին՝ ἡ βραχυτελὴς . . . κατάστασις. — ² Բոլորովին նիւթական ըստ յունին՝ καὶ κατὰ μικρὸν παρασύρουσα δρόμον (ձգէ զընթացս իւր եւն:) — ³ "Շրջական,, (փխ. "անցաւոր, վաղանցուկ,,) անյարմար փոխադրութիւն է յունին որ բառախաղով կ'ըսէ՝ παραδράμωμεν τὰ παρατρέχοντα (անցաւոր) τοῦ κόσμου πράγματα.

‖ ՀԱ. ¹ Ց. ὁ σοβαρὸς καὶ ὑπέροφρος (= "բարձրայօն,, հպարտ.) — ² Ց. "Մի՛ իբրեւ ցուլ եղջերաբարձր (բարձրեղջիւր) հպարտասցի,, = μὴ ὡς ταῦρος ὑψίκερως

զմտաւ զստորակայութիւն[3] մարմնոյն, եւ դադարեցուսցէ զվերամբարձումն[4] սրտին։ Քանզի թէեւ իշխան եղեւ ի վերայ երկրի, մի՛ անգիտասցի զգոլ իւր ի յերկրէ. որ ի հողոյ ի վերայ աթոռոյ ելեալ, եւ ի նոյն յետ ժամանակի իջանել պարտի։

ՀԲ. Փութացիր հանապազ ով անպարտելի թագաւոր, եւ որպէս այնոքիկ որք ի սանդուղս վերելակել[1] սկսին, ոչ յառաջագոյն կան ի վերայ վերին կայիցն՝ մինչեւ ժամանիցեն ի ծայրն աստիճանին։ Սոյնպէս եւ դու ունիջիր զվերելս բարեացն. որպէս զի եւ ի վերին արքայութեանն վայելիցես, զոր քեզ շնորհեսցէ հանդերձ լծակցաւդ Քրիստոս թագաւորն այնոցիկ՝ որք թագաւորեն եւ որք թագաւորելոց են յաւիտեանս. ամէն[2]։

---

Կատարած յորդորական արտադրութեանցն Աղաբիդոսի Սարկաւագի, որ առ Յուստինիանոս կայսրն[3]։

---

Ի Թուականիս ՌՄԼԶ. նոյ.՛՛ 23։

---

ἐπαιρέσθω. — 3 "զՍտորակայութիւն մարմնոյն„ = τῆς σαρκὸς τὴν ὑπόστασιν (գոյացութիւն, իրական հանգամանք եւն.) — 4 "Վերամբարձումն սրտին„, այսինքն՝ հպարտութիւն. յոյն՝ τῆς καρδίας τὴν ἔπαρσιν (փքացումն, հպարտանալ։)

‖ ՀԲ. 1 "Վերելակել„ եւն = οἱ τὰς κλίμακας ἀναβαίνειν ἀρξάμενοι (որ սկսանին ելանել ընդ սանդուղս.) նոյնպէս քիչ մ'ետքը "զվերելս բարեացն„ = ἔχει τῆς τῶν καλλῶν ἀναβάσεως եւն։ — Մնացեալը նոյն՝ բնագրին հետ։ — 2 Ճիշդ այս Ἀμήν բառով կ'աւարտի յոյն բնագիրն ալ։ — 3 Վերջաբանութիւնս չկայ յունականին մէջ։ Հայ Զ. "... Աղաբիդոսի ... առ Յուստինիանոս„ եւն։ — 4 Թուական գրչութեան մեր ձեռագրին, զոր պահեցինք. ՌՄԼԶ = 1787։

# ՏԱՐԲԵՐՈՒԹԻՒՆՔ ՏՊԱԳՐԻՆ

*Ագապետոսի Նախընթաց ընագրին տպագրու-թեան ժամանակ շատ թանկագին տեղեկութիւններ ստացանք Արժ. Յովհ. Քհ. Մկրեանէ, որ բարեհաճած էր Ագապետոսի տպագրութեան (Կ.Պ. 1806) մասին տեղեկութիւններ տալ, միանգամայն համեմատելով մեր ձեռագրին ընթերցուածները տպագրին հետ՝ վերջնոյս տարբերութիւնները նշանակելով խաւրած մեզի: Այս ամէնուն համար հոս ալ կը յայտնենք մեր շնորհակալու-թիւնը: Տարբերութիւնքը շատ մեծ են. պարզ ընթերց-ման տարբերութենէ աւելի՝ նոր խմբագրութիւն մըն է: Յիշեալ տեղեկութեանց մասին յետոյ: Հոս կը դնենք նոյն տարբերութիւնքն՝ գլուխներու կարգաւ, ըստ տպա-գրին (ՏՊ:)*

**ՏՊ. Վերնագիր՝ "Բացատրութիւն յորդորական գլխոցն Աղաբիդոսի" եւն։**

**Ա. ‖ պատուեա զԱստուած ... քանզի է ըստ նմանութեան ... ուսուցես զարհամարհութիւն արդարոյն ... կատարեացն ...։**

**Բ. ‖ Որպէս զինւոր (փխ. "նաւավար") հսկէ ... զօրազլխական երագահութիւն (փխ. "զղեկին լաւօրէնու-թեան") ... կուրն համաշխարհական հնազանդութեան (փխ. "քաղաքավարութեան") բաղխեցի յաւէտ անխրաւութեան։**

**Գ. ‖ Աստուածային ուսումն եւ առաջին ձեր ծանօ-թէից զճանաչելն ստորատ զանձն է որ ստանձնէ լինել. քանզի որ ծանեաւ զանձն էր, ծանեաւ զԱստուած. իսկ որ ...։**

**Դ. ‖ ... եւ որք արքունի խոյրս ի գլուխ դնեն, է որ զօրէ իրանց տրամադրութեան վճռին է հօլեն (փխ. "ի սե-նեակս մեկուսի անկեալ դնին") եւն։**

**Ե. ‖ ... զի որքան մեծամեծ պարգեւաց արժանաւ-որեցար առ Աստուծոյ, այնքան մեծապէս փոխադարձութեան պարտական ես նմա. ուրեմն հատոյ բարերարին զպարտսն ... ոչ զարտաքերութիւն ի ձեռն գործոց (չէք "որ ի ձեռն ...") բարեաց, այլ զյորդորելի բերութիւն նորերաց. (փխ. "զառաջքերութիւն որ ի ձեռն բարեպաշտ իրողու-թեանց։")**

**Զ. ‖ Ոչինչ այնպէս պայծառեցէ (փխ. "բարեփորձ") գործէ զմարդ ... բայց միշտ զմարդասիրական եւ կամել ... քեզ շնորհեալ է խորհրդութիւն (փխ. "իշխանութիւն").**

որում կարօտէր վասն մեր բարի կամքն քո, զամենայն ինչ է— կամեսցես է— գործեսցես, եւն։

Է. ] ... փափաքի (փխ. "քաղաքէն") ընթացից ... իսկ յետ սակաւու ընդ այլ (փխ. "չեւսս") հոսելով առ այլս երթայ ... Միայուն է ստացողացն զնոյն (փխ. "ուրոցն") եւն։

Ը. ‖ Անմառոչելի են (փխ. "գոս") ... քանզի որպիսի՞ արդեօք ...։

Թ. ‖ ... քանզի ոչինչ այնպէս առնէ նկարել զդիտելին (փխ. "տեսանել զորս պարտ է"), որպէս պահել զնոյն ...։

Ժ. ‖ ... իսկ յորժամ ինքն զեկաւորն (փխ. "Նաւավարն") ... մեծամեծ համարս փոյթ (փխ. "տալոց է") ... հանդերձ բազում ճշգրտութեամբ (փխ. "ճշմարտութեամբ") ...։

ԺԱ. ‖ ... որ երբեմն այսպէս երբեմն այլապէս բերէ զնոյնս եւ պտտաբերէ (փխ. "շրջաբերէ".) ... զբարեպաշտ մտածութիւնս։

ԺԲ. ‖ ... իսկ նոքա զմտածութիւնս հոգւոյն բլրեցուցանեն ... զի մին ի յերկուց առնի ժխտնչական լինիցի՝ կամ չարն որ դրդրտալի կամ բարին որ նախատալի։

ԺԳ. ‖ ... եւ ոչ յամբարտաւանութիւն ի վեր ամբառնիլ, եւ ոչ ի տխրութիւն ի ստոր բերել ...։

ԺԴ. ‖ Եթէ որք զմտածութիւնն մաքրեալ ունի ի մարդկային պղտորանաց (փխ. "խաբէութեանց") եւ տեսանէ զընչութիւն (փխ. "զչնչնութիւնն") իւրոյն բնութեան ...։

ԺԵ. ‖ ... շուքն աստուածային փառափայլութեան (փխ. "քաղաքավարութեան") ...։

ԺԶ. ‖ ... իսկ ոմանք ի սովոյ տառապեալ կորնչին. եւ ոմանք դրաւեալ անձին (փխ. "նուաճեն") զծագս աշխարհի ... ուր կացուցեն զներքսանս երբեանց (փխ. "ոտից") ... գարմանել պիտի զայնոսիկ եւ առ հաւատարութիւն՝ զանհաւատարութիւն փոխաքերել (փխ. "անդրաբերել։")

ԺԷ. ‖ ... զոր ի կուրծս ձեր հանապազ ունիցիք ...։

ԺԸ. ‖ Թագաւոր զքեզ ... առհմանեմ (չիք "ատորանեմ") ...։

ԺԹ. ‖ Եթէ ընդ պատիւն որ յաձնեցանց յարաջնոյն (փխ. "յառաջածին") ... քանզի ոչինչ այնպէս ... վասն երկիւղի եղեալ հնազանդութիւնն (փխ. "ծառայութիւնն") ... որ կեղծեալ պատուոյ անուամբ դոտրէ զայ-

նոռէ՛ ո՞րք նմին ռուչ եղեռւ ռնոռն. (փխ. "Նմնողէ այնոցիկ որք ինքեան մտերմանան։")

Ի ‖ . . . ցուցանէ զիշխանութիւնն, իսկ Հպատակացն ընչեռւ (փխ. "ատարէ") մարդասիրութիւն . . . զօրութեամբն զինուց . . . ։

ԻԱ. ‖ Գոյութեամբ մարմնոյն . . . առ ամենեսին. (մեր ձագր. "ամէն" պատուով) . . . ։

ԻԲ. ‖ Ընկալ զայնոսիկ որք դժուրեան (փխ. "զօգտակարսն") խորհիլ . . . շողոքորթել բազում անգամ փորձեցեալ ճեղքն. քանզի նոքա զօգուտն դէտեն եւ խոյան (փխ. "պարզաբար տեսանեն") ճշմարտութեամբ . . .

ԻԳ. ‖ . . . որպիսի խոժո (փխ. "ըղձանաս") քեզ զուէրն լինել . . . ։

ԻԴ. ‖ . . . պղտուարճութիւնս . . . ոոյնպէս եւ արդար . . . ի նմանեացն գուեալ լինին. (փխ. "ատարին։")

ԻԵ. ‖ . . . յոյժ վրանգաւոր (փխ. "սխալուտ") է ղօգուտն բարեխորհութեան . . . եւ ջերմեռանդ (փխ. "ուժգին") աղօթիւք . . . ։

ԻԶ. ‖ Բարոռաբարե (փխ. "յոյժ լաւագոյն") տեսանեսցես . . . եթէ զամենայն ինչ փութասցիս նշարել (փխ. "պարզագոյն տեսանել".) եւ ոչինչ (փխ. "ոչ մի ինչ") հանգուրժեսցես ... քանզի ոչ փոքր է ի թեղ (փխ. "ի վերայ քո")... ։

ԻԷ ‖ Ընչին թաւս (փխ. "քեզ ինքեան") պահելոյ զօրէնս . . . քանզի այսպէս եւ օրինացն ցուցցես դյուրեռնութեանն . . . յառաջ քան զայլսն . . . ։

ԻԸ. ‖ . . . զոչ արգելուլն դյանդառացեալսն (փխ. "զյանցանօղսն") . . . առ Աստուծոյ դատի. իսկ եթէ կամիցիս երկպատիկ հաճոյ (փխ. "բարեփորձ") լինել . . . ։

ԻԹ. ‖ . . . ի կենցաղակցութենէն չարացն. քանզի որ կենցաղի հանապազ ընդ մոլեգնան չարաց (ուղիղ., մեր ձագր. "ընդ մարդկանց չարաց".) կամ կրել կամ ուսանել . . . կամ զքատակումն բարեացն ուսանի, կամ զնուազումն չարացն վարժի. (փխ. "սատանայ.")

Լ. ‖ . . . մի՛ (փխ. "ոչ") զոք ի չարացն ի գործ արկանիցես ի կառավարութեան (փխ. "ծառայութիւն սպասու") իրողութեանց. քանզի զոր արդարեւ նոքա . . . որ եւ նոցա զզօրութիւնն . . . իշխանացն առաջարկութիւնք ։

ԼԱ. ‖ . . . չարագործութեամբքն ցանուլ . . . շողոքորթութեամբքն ողոքել . . . ո՛չ առնիս անթան չարաչարութեանն նոցին վրեժխնդիր լինելով, եւ ոչ . . . ։

ԼԲ. ‖ . . . այլ որք արդար դատմամբ զամենայն ինչ գործել ծառայութեան (փխ. "դատաստանաւ ... փութացուցանեն,,):

ԼԳ. ‖ . . . երկրաւոր այսր իշխանութեան, այլ . . . (չէ բառս "զանգուածոյ,,, որ կարեւոր է:)

ԼԴ. ‖ Որպէս ոսկի երբեմն այսպէս երբեմն այլապէս յարուեստէն փոխանձեւացեալ, եւ ի զանազան տեսակս զարդարոյ յեղաշրջելով . . . զայլ զինի այլոյ փոխելով պէտութեան . . . դու ինքն միասս ի նոյն իրողութեանն՝ անայլայլելի ունելով ի քոյին զմտախոհութիւնդ:

ԼԵ. ‖ . . . կամայական մորթկան (ուղիղ. մեր ձեռգր. "մարդկանց,,) . . . յորժամ ժամ առնու՝ ողորմութեան վկարանջք (փխ. "զազմուկ գրգռէ.,,) իսկ որ օրինօք շերելութեան իշխէ (փխ. "բարեմտութեան վարի,,), հաստատ ունի առ իշխօղն (փխ. "վարիչն,,) զհնազանդութիւնն:

ԼԶ. ‖ . . . այնքան ունել եւ ընդդէմ անձին ծառայ յանցաւորն (փխ. "յանցուցելոյն քեզ ինքեան,,) համարեա. քանզի ոչ ոք զօրէ զայն՝ որ է յօրինեան իշխանութեան խորտել (փխ. "ոչ զօրէ այնքան զօրեղ իշխանութեամբն կրթել,,), եթէ ոչ զմտածութեան խորհրդոյն որ ի նոյն յանցուցելոյն շարժեցեալ յառաջնորդ. (փխ. "եթէ ոչ բան ընտանի . . . շարժեցեալ լինի,,)

ԼԷ. ‖ . . . քանզի եթէ բուռն ինձ չերդի բերե պատուիրն Աստուծոյն ամենեցուն . . .:

ԼԸ. ‖ . . . փորձիւն . . . որք այժմ շնորհ ջերմ (փխ. "առ մեզ,,) որպէս ոչինչ առ մեզ, մի զանազանացն (փխ. "շողոմեսցեն,,) զմեզ:

ԼԹ. ‖ . . . որք շերելութեամբ (փխ. "բարեմտութեամբ,,) առնեն . . . եւ լաւացն ամենեցունցես յօժարութեանն (փխ. "զշրջմտութիւնն,,) եւ յոռեացն ատելութեան լքանել զչարութիւնն. (փխ. "քարոզեսցես ուսանել զչարութիւնն.,, քանզի արժանի առնելն այնց զայնոսիկ որք . . .:

Խ. ‖ . . . յորժամ այն որ շրջագայել է զայս իշխանութիւն՝ ոչ է յանդգնութեան հաւէրեցի, այլ առ խորհրդոցթեան հայերոյն (փխ. "շրջակայեալս այս իշխանութիւն . . . առ յանդգնութիւն . . . առ հաւատարութիւն հայեցի,,) . . . իւր աստուածանման ցուցանելով. (չէ "յինքն,,:)

ԽԱ. ‖ . . . վասն զի նոյն անտեղութիւն է . . . յերկաքանչիւրս նման է . . .:

ԽԲ. ‖ Ուշադրութեամբ (փխ. "ուշադրաբար,,) լսել . . . զի թէ զարտաքսութեանն (փխ. "զպերճախօսու-

ԾԲ. ‖ . . . Հեզութեամբ խառնելով զխոնարհութիւնն (փխ. "զզանգուածն") իշխանութեան . . . յաղթելով երկիւղի՝ մարդասիրութեան առ քեզ . . . դիմեն խորհրդականն աղերսանաց եւ յալեաց (փխ. "ի ծփական ալեաց") աղքատութեանն զերծեալք, գոհացողական երգս (փխ. "օրհնութիւնս") քեզ վերառաքեն:

ԾԳ. ‖ . . . Ջանացիր. եւ համեմատ մեծութեանն կարողութեան՝ գործոյն բարեաց պահանջել օրինաւ: Արդ . . . ստացեր եւ զպսակն բարերարութեան ողջախոհաց:

ԾԴ. ‖ Խոնարհեալ նկատեա նախ քան զդատաւորելն զոր կամիս. զի հրամայեսցես խոհեմութեամբ (փխ. "ճահողապես") որ ինչ վայելուչն է (փխ. "անկ է") . . . եւ մեծագոյն վտանգ ընծայի (փխ. "առընթեր ունի", մեր ձեռագր. "առընթեր", կրնայ նաեւ "առ ընկեր" կարդացուիլ) անփոյթ եղելոց . . . որպէս երաժշտական ներդաշնակութեան վերադարձեալ նմա, զհաղորդականն տաղն առաքինութեան եղանակեսցէ, (փխ. ". . . նուագ դիցես ի վերայ նորա՝ զամենայարմար տաղն . . .:")

ԾԵ. ‖ . . . արքային առ ամենայն ինչ . . . ի բարկութիւն ցուցանել. քանզի որովհետեւ ամենեւին չքաւորական դիւրաբարձամարհելի է (փխ. "անբարկութիւնն արհամարհելի է"), եւ յաճախագոյն չափաւորապէս եւ մի յաճախագոյն. այն զի զդիմեցմունս վատթարացն արգելցէ (փխ. "զօպեալ նահանջեսցէ"), իսկ այս՝ զի զյօժարութիւնս լաւացն հաստատեսցէ (փխ. "զձկտմունս բարեացն . . .:")

ԾԶ. ‖ Ի ծէլս (փխ. "հոգունակ") խորհրդարանի սրտի քում մտադրութեամբ իմասցիս . . . զի ծանիցես ճշմարտութեամբ (փխ. "ճշդութեամբ") եւ զայնս որք սիրով (չէ+ "քեզ") պաշտօն տանին . . .:

ԾԷ. ‖ . . . իշխանութիւն թագաւորին պայծառանայ (փխ. "պայծառազարդի"), յորժամ կամ յինքենէ զդիտելեաց նշոյլ (փխ. "զկարօտեալսն տեսանէ") կամ զառ ի յայլմէ դիտելոցն՝ ոչ ի ւիւք անտես առնէ, այլ տեսանէ (փխ. "տեղեկանայ") առանց ամօթոյ . . .:

ԾԸ. ‖ Դիմեալ արդարեւ անխորհդանելի (փխ. "անառիկ") . . . հաշակելիս ընդդէմ նոցին կանգնելով յաղթանակս:

ԾԹ. ‖ Վարեսցիս վայելչաբար (փխ. "որպէս պարտ է") ստորին . . . հայրական գորով ցուցանելն իշխեցելոցն (չէ+ "ի վերայ") . . . սաստիւք արդարեւ (փխ. "ուրեմն")

կալն անբան ախտից, ղամենապարփօղ (փխ. "զամենապրաւ„) տափութիւնն ... ողջախոհութեանն:

ԿԹ. ‖ ... քանզի նոքա վկայեն ղերայն (փխ. "զգործոց„) իւրաքանչիւրոց ... որք առ ի մէնջ գործեցան:

Հ. ‖ ... սուղավախճան վենոյ առաջիկայ կենցաղոյս ... եւ սոյնա ար սոյնա (փխ. "փոքր փոքր„) քարշէ ղընթացս ... արդ՝ եթէ այսպէս իցէ, խաաաֆեոյաւ է հաստյան իրացն աշխարհիս ... ընթացուք է յանցականն ...:

ՀԱ. ‖ ... դադարեցուցէ ղամբարշտաճ (փխ. "զվերամբարձումն„) սրտին ... մի՛ անգիտասցի ֆոլոմ է յերկրե (փխ. "զգոլ իւր է յերկրէ„) որ ...:

ՀԲ. ‖ ... ո՛չ յառաջագոյն կան է վերնոմ մաօին արքմանն (փխ. "ի վերայ վերին կայիցն„) մինչ չէ ծամանէալ ջցեն ի ծայրն ... ի վերին արքայութեանն ղմոյլեցէս (փխ. "վայելիցես„) ...:

Վերջը Ց. Գ.՝ "Կատարած յորդորական գլխոյն Ագաբիտոսի Սարկաւագի որ առ Յուստինիանոս կայսրն. Որոյ օէզբնաբառթն բար յոռնոյանեն հեթեն ղայս քան. Աթաստածոյնոֆոյն եւ բարեպաշտոֆոյն Բաֆասորեն մերոյ Յուստինեանոսի Աղաբիտոս փրաող սարկաւաֆս:„

---

## 3.

Ագապետոս Յունաց քով արդէն հնուց տարածուած գործք մըն էր, նաեւ իբր դպրոցի ուսման միջոց: Հնոց քով յաճախ էին քերականական-բառագրական լուծմունք նշանաւոր մատենագրաց, ինչպէս այսպիսի լուծմանց առատութիւն մ'ունինք մենք ալ: Ասկէ զարգացած է Յունաց "հատածագրութիւն„ (σχεδογραφία) կոչածն, այսինքն քերականական ուսմունքը սորվեցընել՝ լուծելով հատածի մը բառերն ու բառաձեւերը: Ասոր համար կ'ընտրուէին կարճ եւ սիրուած կտորներ Ս. Գրքէն, եկեղեցական երգեր, նամակներ եւ նմաններ, նաեւ արտաքին հեղինակներ, ինչպէս Փիլոստրատոս, Աֆթոնիոս եւ ուրիշներ[1]: Այսպէս

[1] Բիւզանդեան Լուծմանց մասին՝ տես Կրումբախէր էջ 590–2:

Ագապետոսի բառերու լուծմունք մ'ըրած է Մանուէլ Մոսքոպուլոս, որ Անդրոնիկոսի Բ. օրով (1282—1328) կ'ապրէր[1]։

Յիշուած գիրք մ'եղած է յետոյ ալ, ինչպէս կը ցուցընեն բազմաթիւ տպագրութիւնքն ու թարգմանութիւնքն եւրոպական շատ մը լեզուներու տպագրութեան հնագոյն ժամանակներէն ալ։ Փաբրիկիոս եւ Հարլէս ահագին ցանկ մը յօրինած են այս հրատարակութեանց, միանգամայն ամփոփելով Ագապետոսի մասին կարելի ամէն տեղեկութիւնքն[2]։ Ճոխ տեղեկութիւններ կը պարունակէ նաեւ Գալանդոսի հաւաքածոյն[3]։ Այս ամէնը այժմ առձեռն եւ դիւրամատչելի է Մինի հռչակաւոր հայրախօսական հաւաքման մէջ, ուր դրուած են յիշեալ գրութիւնքն ալ բնագրին իբր նախաբան[4]։

Յոյն բնագրին հնագոյն հրատարակութիւնը՝ լատ. թարգմանութեամբ հանդերձ՝ եղած է Վենետիկ 1509ին. անկէ ետքը շատ յաճախ, նաեւ Եսովպայ առակներուն հետ[5]։ Յատկապէս յիշելու ենք Բանդուրիոսի հրատարակութիւնն կրկին (A եւ B) օրինակաց համեմատ, նոր թարգմանութեամբ լատիններէնի՝ զոր Գալանդոս կրկնած է յիշեալ տեղն, եւ ծանօթութիւններով իւր Արեւելից Ինք-

1 Մոսքոպուլոսի մասին՝ անդ 546—8։ Յոյն հեղինակիս περὶ σχεδῶν գործքէն այն մասն որ Ագապետոսի Լուծմունքն են՝ տես Migne, անդ. 1161—2՝ excerpta Moschopulo in Agapetum, նոյն բնագիր նաեւ Fabricius, Bib. Gr. XII, 306.

2 Fabricius, Bibliotheca Graeca, ed. Harless, VIII, 36 ff, առ Մինյն՝ էջ 1155—62։

3 Gallandus, Vet. Patrum Bibliotheca, tom. XI, pars IX, 253 ff, առ Մինյն՝ էջ 1153—5։

4 Migne, Patrologiae cursus, Series Graeca, LXXXVI, 1153—1186.

5 Հմմտ. Agapeti Diaconi De officio regis ad Justinianum, Venetiis 1509, դարձեալ՝ Կոլոնիա 1527, Բասիլիա՝ 1521 եւն. Եսովպի հետ՝ Aesopi Phrygii fabulae cum aliis quibasdam opusculis, Բասիլիա՝ 1553, եւ այլուր։

նակալութեան գործոյն մէջ[1]։ Լատիններէն թարգմանութիւնքն ալ ըստ այսմ բազմաթիւ են, հատ մը Լուգդունեան՝ արդէն Բարոնիոսէն գործածուած (Տարեգիրք, յամի 527,) հատ մ'ալ Կամերարիոսէ, եւ դարձեալ յաճախ Ս. Հարց գործոց բազմաթիւ տպագրութեանց մէջ[2]։ Միւս լեզուներէն նշանաւոր է ի մասնաւորի գաղղիականն, որ լեզուաւ՝ ի միջի այլոց՝ թարգմանութիւն մ'ալ կայ նոյն իսկ Լուդովիկոս ԺԳ. թագաւորին կողմանէ[3]։ Բաց ի սպանիերէն եւ իտալերէն թարգմանութիւններէն՝[4] առատ են նաեւ գերմանականները, որոնց մէջ հնագոյնը կ'երեւայ Վիտտեմբէրգինը 1530ին "իշխողաց գրքոյկ„ տիտղոսով[5]։ Կան նաեւ բազմաթիւ անգղիական թարգմանութիւնք, որոնց հնագոյնը Լոնտոն տպուած է նոյնպէս 1530ին, միւսներն անթուական[6]։ Նոր ժամանակի գրութեանց գլխաւորները քիչ մ'ետքը կը յիշենք. իսկ հնագոյնները մանրամասն յիշել անհնար է եւ աւելորդ ալ։

Որչափ ճոխ է Ագապետոսի գրութեան հրատարակութեանց եւ թարգմանութեանց ցանկը,

---

1 Bandurius, Imperium Orient., t. II, եւ Praef. p. 8.

2 Հմմտ. Biblioth. Patrum. տպ. Պարիս 1575, 1624 (II, 363 ff) եւն, Camerarius p. 158–170, եւ շատ ուրիշներ։

3 Տիտղոսն է՝ Les preceptes d'Agapetus à Justinian sur une version Latine par le Roi Louis XIII, en ses leçons ordinaires, Paris 1612. Հնագոյն թարգմանութիւնն ըրած էր Joanne Picot, Պարիս 1563։

4 Սպանիերէն թրգմ. Mosquera de Figueroa, Մատրիտ 1596. իտալերէն՝ Վենետիկ 1545 եւ ուրիշներ։

5 Regenten-Büchlein, Wittenberg 1530, ուրիշ թրգմ.՝ Մարտինոս Մէօլէր (M. Möller, ի Gorlitii 1590, 1605), Նիկ. Glayer (Բրէմէն, 1619). դարձեալ տպ. Ֆրանքֆորտ 1782 եւն եւն։

6 Ընդղ. Introduction to wisedome, Banket of Sapience, and Precepts of Agapetus, Լոնտոն. ուրիշ թրգմ. Thom. Paynell, Լոնտոն. երկուքն ալ անթուական։

այնչափ աննշան են իւր անձին մասին մեզի հասած տեղեկութիւնքն։ Համանուն բազմաթիւ անձերէն նախ դուրս հանելու է Ագապետոս Ա († 536) եւ Բ (946—56) հռոմայեցի քահանայապետները[3]. Նոյնպէս Սիւնադաց համանուն եպիսկոպոսը՝ զոր բաց ի Եւագրէն՝ կը յիշեն Փիլոստորգոս եւ Սուիդաս (ի բառն Ագապետոս։) Դարձեալ կայ Ագապետոս մետրոպոլիտ մը Հռոդոսի, որ 457ին թուղթ մ'ուղղած է Լեւոն կայսեր Քաղկեդոնի ժողովքին մասին եւ որ Գեննադիոսի պատրիարքին օրով 459ին Կ. Պոլսոյ ժողովոյն ստորագրած է։ Ոսկեբերանի թղթերուն մէջ կան երեք հատ՝ ուղղուած Ագապետոս անձի մը. (տես Montfaucon, Bibl. Coislin. 567, 569.) Նոյն Մոնֆոկոնի վկայութեան համեմատ յիշեալ ձեռագիրը կը հաշուէ նաեւ Ագապետոս "Քերական„ մը. համանուն մարտիրոս սարկաւագ մ'ալ կը տօնեն Հռոմէական վկայաբանութիւնք օգոստոս 6ին։ Նոյն իսկ ճիշդ Յուստինիանոսի օրով Կ. Պոլսոյ ժողովոյն արձանագրութեանց մէջ յաճախ կը յիշուին երկու վանահայրներ Ագապետոս անուամբ, որոնցմէ կը զանազանեն արդէն Պարոնիոս եւ Փաբրիկիոս մեր հեղինակը, եւ թէեւ Բանդուրիոս նոյնը չի համարձակիր ընել՝ նաեւ արդի ամէն գիտնականք։ Շատերը նոյնացընել փորձած են մեր հեղինակն այն Ագապետոսի հետ, որուն ուղղած է Պրոկոպիոս Գազացի իւր ԾԺԲ նամակը. սակայն՝ ինչպէս նոր գիտնականք ալ կ'ընդունին, անհիմն է այս կարծիքը նաեւ անով որ մեր հեղինակն ըստ երեւութին Կ. Պոլիս ապրած է, իսկ Պրոկոպոսի այն թղթակիցը կ'ա-

---

3 Ասոնց եւ յաջորդաց մասին տես (բաց ի Փաբրիկիոսէ եւ ուրիշներէ) նաեւ Hergenröther-Kaulen, „Kirchenlexicon", Ֆրայբուրգ, Հտր. Ա 1886, էջ 328—330։ Մենք աւելորդ համարեցանք այս ամէն Ագապետոսներու մասին տեղեկութիւնքն խճողել եւ անթիւ մատենախօսականները յիշել։

պրէր Աղեքսանդրիա. (տես Կրումբախեր, 457 եւ այլուր։)

Քիչ բան է ըստ այսմ մեր գիտցածը մեր Ագապետոսի մասին, այնչափ՝ որչափ գրութեան ճակատն արդէն դրուած է, թէ Սարկաւագ էր Մեծին Սոփիայ Կ.Պոլսոյ, եւ Ցուստինիանոս Ա. (527—565) ուղղած իւր գրուածքն, ուստի Զ. դարուն ծաղկած։ Գիտնականք իբր 527ին կը դնեն գրութիւնը. Մին ընտրած է վերջին 565 թուականն եւ անոր ներքեւ զետեղած գրուածքն։ Այսչափն է մեր գիտցածն, որչափ ալ գրուած ըլլայ Ագապետոսի մասին. շատ շատ կրնայ նաեւ աւելցուիլ այն պարագան որ՝ ըստ աւանդութեան՝ նոյն Ցուստինիանոս դաստիարակն եղած է Ագապետոս։ Յոյն ձեռագիր մը՝ որ կը գտնուէր ի Կ.Պոլիս Կոստանդինոս Բարինի (Const. Barini) գրոց մէջ, ունէր խորագիրս՝ "Ագապետոսի Սարկաւագի Մեծին Եկեղեցւոյ եւ ուսուցչէ թագաւորին Ցուստինիանոս Մեծի, առ նոյն թագաւոր Ցուստինիանոս գիրք կամ հատածք ԺԲ.„ ինչպէս կը վկայէ նաեւ Պոսեւինոս[1]։ Ասոր հաստատութիւն կ'առնու կալանդոս գրութեանս ԺԷ գլխուն բանծը՝ "Առ Ձերով բացայայտակից ցուցաւ ժամանակն բարեկեցութեան„ եւն, այնպէս՝ ինչպէս վարդապետ մը կը խօսի իւր աշակերտին։

Բարոնիոսէն վեր մեծ գովութեամբ կը խօսուի գրութեանս վրայ, դրուատելով անոր սիրուն պարունակութիւնը, գրութեան գրեթէ ատտիկեան ոճը, եւ ընդհանրապէս կ'ընդունուի որ նկատելով հեղինակին Զ. դարուն ծաղկիլը՝ շատ գեղեցիկ

---

1 Possevinus, Catal. Ms. Gr., tom. II, Apparatus p. 45. Հարլէս կը նշանակէ Ագապետոսի մասին նաեւ հետեւեալ գրութիւնքն՝ Cave, Script. eccl. I, 509. R. Ceillier, Hist. gén. des aut. eccl. XVI, 485. Hamberger, Z. N. III, 333 ff. Saxii Onom. II, 26 ff, թողլով յիշել շատ ուրիշներ։

է գրուածքիս յոյն լեզուն, եւ կը ցուցընէ որ հեղինակն ուսումնասիրած էր հին դասական մատենագիրները։ Այս ամէնն եւ նորագոյն քննութեանց արդիւնքը գեղեցիկ կերպով՝ կ'ամփոփէ Կրումբախեր իւր Բիւզանդական Մատենագրութեան պատմութեան մէջ[1] հետեւեալ կերպով. "Ագապետոս՝ Կ. Պոլսոյ Ս. Սոփիա եկեղեցւոյն սարկաւագ եւ աւանդութեան մը համեմատ՝ որ սակայն շատ ապահով չէ, նաեւ ուսուցիչ Յուստինիանու կայսեր, վերջնոյն իշխանութեան գլուխ անցնելու ատեն (527ին) նուիրած է նոյն կայսեր իշխանաց "Հայելի վարուց„ մը (Fürstenspiegel), որ ձեռագրաց մէջ կը գտնուի խորագրովս "Արտադրութիւն յորդորական գլխոց„ եւն։ Գրութիւնը 72 գլուխ ունի, որ իրարու կապուած են եւ որոնց սկզբնատառերը կը կապեն՝[2] "Աստուածային եւ բարեպաշտ թագաւորին Յուստինիանու՝ Ագապետոս տրուպ սարկաւագ։„ Գլուխներն՝ որոնց ծաւալն է 1էն մինչեւ 10 տող, կը պարունակեն գրեթէ միշտ ընդհանուր խրատներ իշխանի մը բարոյական, կրօնական եւ քաղաքական պարտուց մասին։ Իւրաքանչիւր գլուխը յինքեան ամբողջ մըն է. կանոններու յօրինուածքը վճռաձեւ է եւ խիստ հռետորական գունով մը. լի է հակադրութիւններով, համանդամ եւ նմանաձայն կազմութիւններով. մասնաւոր խնամք տարուած է պարբերութեանց իրարու համեմատական անդամները համաձեւ կերպով յօրինելու։ Ագապետոսի հետ նոյն են շատ մասամբ իշխանաց վարուց այն երկու փոքրիկ "Հայելի„ները, որ կը գտնուին Բարղաամայ եւ Յովասափայ վէպին մէջ[3]։

---

1 Krumbacher K., Geschichte der Byz. Litteratur. München 1897, p. 456—7.

2 Այս "ծայրանուն„ յօրինուածութեան (akrostichis) մասին տես Կրումբախեր՝ էջ 699։

3 Տես նաեւ Կրումբախերի ըսածը նոյն վէպին մասին՝ անդ, էջ 887։

Սակայն նոյն իսկ այս համաձայնութեան կերպը կը ցուցընէ որ Բարղաամու հեղինակը քաղած չէ Ագապետոսէն. այլ պէտք է ընդունիլ հասարակաց ակնաղբիւր օրինակ մը՝ որմէ օգտուած են երկուքն ալ։ Այս օրինակը բաղադրուած էր կամ քաղուած Իսոկրատեայ եւ ի մասնաւորի եկեղ. մատենագրաց՝ յատկապէս Բարսղի եւ Գրիգորի Նազիանզացւոյ գործերէն։ Ագապետոսի իշխանաց վարուց հայելին իւր պարունակութեան ուղղամտութեամբն եւ շինիչ բնութեամբ, լեզուի մաքրութեամբն եւ հռետորական ճարտարութեանց ճոխութեամբը բնական է որ շատ յարմար դատուէր դպրոցական կրթութեան գործածուելու. եւ յամենայն դէպս իբրեւ դպրոցական գիրք գործածուելուն է որ կը գտնուի այնչափ բազմաթիւ ձեռագիր օրինակներով։ Հումանիստներու ժամանակն ալ պահեց գրքոյկն իւր ճոխութիւնը. միայն ԺԶ. դարուն լոյս տեսած են գրքիս իբր 20 հրատարակութիւններ„։

Նորագոյն քննութիւնքն ըստ այսմ աւելի Ագապետոսի աղբիւրներով կը զբաղին։ Կ. Կայլ քննութեան առած է Իսոկրատէսի հետ եղած աղերսը[1]. Կ. Պրէհտէր՝ որուն գրութիւնն Ագապետոսի մասին ծանօթ գլխաւոր ուսումնասիրութիւնն է, անոր Բարղաամու վէպին հետ ունեցած կապը[2]։ Մեր նպատակը չէ Ագապետոսի յոյն բնագրին քննութեամբ զբաղիլ. բայց կ՚արժէ վերջնոյս գլխաւոր եզրակացութիւնքն համառօտիւ ամ-

---

1 B. Keil, Epikritische Isokratesstudien, ի Թերթին „Hermes“, XXIII (1888), p. 357–369. — Համմ. նաեւ Kil. Seitz, die Schule von Gaza, Heidelberg 1892, p. 14.

2 K. Prächter, der Roman Barlaam und Joasaph in seinem Verhältnis zu Agapets Königsspiegel. Կրումպախերի “Բիւզանդական Թերթին„ մէջ (Byz. Zeitschrift, II, 1893, p. 444–460.)

փոփել անոր համար ալ որ մեզի համար ուրիշ տեսակէտով կարեւոր են։ Բարղաամու վէպին յունականին մէջ իշխանաց վարուց կրկին «Հայելի» կայ. մին երբ Յովասափ կը նկարագրուի իբր թագաւորի մը գաղափարական օրինակը, միւսը՝ Յովասափու առ Բարաքիաս խօսած ճառին մէջ։ Ասոնց եւ Ագապետի շատ մը գլուխներու նոյնութիւնը տեսած էին արդէն Դամկէ[1] եւ յիշեալ վէպին հրատարակիչը Բուասոնադ[2]։ Վերջին գիտնականս՝ որ վէպը Դամասկացւոյն կ'ընծայէ, ի հարկէ առանց այլեւայլութեան Ագապետոսը կը դնէ իբր հնագոյն եւ աղբիւր։ Բայց խնդրական է իրը նոյն իսկ անով որ՝ ինչպէս նոր քննութիւնք ցուցուցած են՝ Յոհվ. Դամասկացւոյ գրչէն չէ այն վէպը։ Ահա այս կէտը մանրամասն ուսումնասիրած է Բրէհոտէր, համեմատութեան բերելով Ագապետի գլխոց մեծ մասը, (տես էջ 445 եւն.) եւ կու գայ այն եզրակացութեան որ Բարղաամայ վէպին մէջ գաղափարաց կապակցութիւնը շատ աւելի լաւ է քան Ագապետոսինը, որուն ձեռագիրներէն ոմանք (այսպէս Վիեննայի cod. Vind. phil. Graec. 16) աւելի եւս շփոթ ունին գլուխները։ Յայտնի է որ Ագապետ չէ աղբիւր վէպին կտորներուն, այլ ուրիշ հասարակաց աղբիւր մը փնտռելու է։ Ասոր ապացոյց է այն ալ որ Ագապետի վճռոց ոմանց նմաններ կան նաեւ Ս. Հարց քով։ Գիտնականը պարզած է այս կէտն ալ երկար համեմատութիւններով, զորոնք չենք կրնար յառաջ բերել։ Շատանանք յիշելով որ Ագապետի Հ գլխուն համեմա-

---

1 Դամկէ (Damke) ի հրատարակութեան Ագապետոսի՝ Բազէլ 1633։

2 Հրտ. Բարղաամու վէպին իւր «Անտիպ Յունականք» հաւաքման մէջ. Boissonade, Anecdota Graeca, IV (Paris 1823) p. 331 ff, համեմատելի միւս «Հայելին» է՝ անդ՝ էջ 308 եւն։

տականը կայ մասամբ Բարսղի[1] եւ մասամբ Գր. Նազիանզացւոյ քով[2]. դարձեալ Բարսղի քով Ագապետի Է[3], ԿԹ[4] եւ ՀԲ[5] գլուխները. իսկ Նազիանզացւոյ քով՝ ԿԶ[6], ԽԳ[7] եւ ԼԴ[8] գլուխները։ Ուրիշ համեմատականները կրնան գտնուիլ նաեւ այլուր։

Մեզի համար բաւական էր այսչափն ալ, եթէ չըլլար այն կէտը՝ որ յիշեալ գործոց հայերէն թարգմանութիւնքն ալ գտնուելով՝ արժանի է ուշադրութեան առնուլ թէ անոնց թարգմանիչներն ինչպէս փոխադրած են Ագապետի համեմատական կտորները։ Անօգուտ չէ զանոնք համեմատելն. եւ ասով կ՚անցնինք արդէն համառօտ ուսումնասիրութեանս կարեւոր կէտին՝ հայերէնին։

## 4.

Ամէնէն յառաջ համեմատութեան առնուլ պէտք էր Բարղասմու եւ Յովասափու վէպը, որուն հայերէնը համառօտուած շատոնց ծանօթ էր, իսկ հնագոյն ընդարձակը ծանօթացուց Մեսրովպ Վրդ. Տէր-Մովսիսեան ընտիր հրատարակութեամբ մը[9]։

---

1 Հ = Բարսղի “ի սաղմոսն Ա„ (ձեռ. Մատ. Թ. 217. Թղ. 41ա). բն. hom. in psalmum I (Migne, XXXI, p. 220.)

2 Հ = Գր. Նազ. “յղ. աղքատասիրութեան„, (Թ. 217, Թղ. 256ա) բն. Or. XIV, ed. Paris 1840, p. 271.

3 Է = Բարսղի “ի ԿԱ սաղմոսն„ (Թ. 217, Թղ. 39ա) բն. hom. XII, in psalmum LXI (Migne, p. 481a.)

4 ԿԹ = Բարսղի Ճառ Է. “առ ընչեղսն„ (Թ. 217, Թղ. 23բ.) բն. hom. VII, in divites (Migne, p. 296.)

5 ՀԲ = Բարսղի “առ ընչեղսն„՝ անդ, (Migne, p. 292.)

6 ԿԶ = Նազիանզացւոյ “յղ. ի ձեռնադրութիւն անհաւանութեան„ եւն (Թ. 217, Թղ. 91ա.) բն. Oratio II, apologetica de fuga (Migne, XXXV ff, p. 191.)

7 ԽԳ = Նազ. Նախընթացը (p. 272.)

8 ԼԴ = Գր. Նազ. թուղթ ԻԱ. (epist. XXI, al. 107.)

9 “Նկարագրութիւն հոգեւորական վարուց Յովա-

փոփել անոր համար ալ որ մեզի համար ուրիշ տեսակէտով կարեւոր են։ Բարղաամու վէպին յունականին մէջ իշխանաց վարուց կրկին "Հայելի" կայ. մին երբ Յովասափ կը նկարագրուի իբր թագաւորի մը գաղափարական օրինակը, միւսը՝ Յովասափու առ Բարաքիաս խօսած ճառին մէջ։ Ասոնց եւ Ագապետի շատ մը գլուխներու նոյնութիւնը տեսած էին արդէն Դամկէ[1] եւ յիշեալ վէպին հրատարակիչը Բուասոնատ[2]։ Վերջին գիտնականս՝ որ վէպը Դամասկացւոյն կ'ընծայէ, ի հարկէ առանց այլեւայլութեան Ագապետոսը կը դնէ իբր հնագոյն եւ աղբիւր։ Բայց խնդրական է իրը նոյն իսկ անով որ՝ ինչպէս նոր քննութիւնք ցուցուցած են՝ Յոհ. Դամասկացւոյ գրչէն չէ այն վէպը։ Ահա այս կէտը մանրամասն ուսումնասիրած է Բրէհատէր, համեմատութեան բերելով Ագապետի գլխոց մեծ մասը, (տես էջ 445 եւն.) եւ կու գայ այն եզրակացութեան որ Բարղաամայ վէպին մէջ գաղափարաց կապակցութիւնը շատ աւելի լաւ է քան Ագապետոսինը, որուն ձեռագիրներէն ոմանք (այսպէս Վիեննայի cod. Vind. phil. Graec. 16) աւելի եւս շփոթ ունին գլուխները։ Յայտնի է որ Ագապետ չէ աղբիւր վէպին կտորներուն, այլ ուրիշ հասարակաց աղբիւր մը փնտռելու է։ Ասոր ապացոյց է այն ալ որ Ագապետի վճռոց ոմանց նմաններ կան նաեւ Ս. Հարց քով։ Գիտնականը պարզած է այս կէտն ալ երկար համեմատութիւններով, զորոնք չենք կրնար յառաջ բերել։ Շատանանք յիշելով որ Ագապետի Հ գլխուն համեմա-

---

1 Դամկէ (Damke) ի հրատարակութեան Ագապետոսի՝ Բազէլ 1633։

2 Հրտ. Բարղաամու վէպին իւր "Անտիպ Յունականք" հաւաքման մէջ. Boissonade, Anecdota Graeca, IV (Paris 1823) p. 331 ff, համեմատելի միւս "Հայելին" է՝ անդ՝ էջ 308 եւն։

տականը կայ մասամբ Բարսղի[1] եւ մասամբ Գր. Նազիանզացւոյ քով[2]. դարձեալ Բարսղի քով Ագապետի Է[3], ԿԹ[4] եւ ՀԲ[5] գլուխները. իսկ Նազիանզացւոյ քով՝ ԿԶ[6], ԽԳ[7] եւ ԼԴ[8] գլուխները։ Ուրիշ համեմատականները կրնան գտնուիլ նաեւ այլուր։

Մեզի համար բաւական էր այսչափն ալ, եթէ չըլլար այն կէտը՝ որ յիշեալ գործոց հայերէն թարգմանութիւնքն ալ գտնուելով՝ արժանի է ուշադրութեան առնուլ թէ անոնց թարգմաններն ինչպէս փոխադրած են Ագապետի համեմատական կտորները։ Անօգուտ չէ զասոնք համեմատելն. եւ ասով կ՚անցնինք արդէն համառօտ ուսումնասիրութեանս կարեւոր կէտին՝ հայերէնին։

## 4.

Ամենէն յառաջ համեմատութեան առնուլ պէտք էր Բարղասամու եւ Յովասափու վէպը, որուն հայերէնը համառօտուած շատոնց ծանօթ էր, իսկ հնագոյն ընդարձակը ծանօթացուց Մեսրովպ Վրդ. Տէր-Մովսիսեան ընտիր հրատարակութեամբ մը[9]։

---

1 Հ = Բարսղի "ի սաղմոսն Ա" (ձեռ Մատ. Թ. 217, Թղ. 41ա). բն. hom. in psalmum I (Migne, XXXI, p. 220.)

2 Հ = Գր. Նազ. "յղ. աղքատասիրութեան", (Թ. 217, Թղ. 256ա) բն. Or. XIV, ed. Paris 1840, p. 271.

3 Է = Բարսղի "ի ԿԱ սաղմոսն" (Թ. 217, Թղ. 39ա) բն. hom. XII, in psalmum LXI (Migne, p. 481a.)

4 ԿԹ = Բարսղի ճառ Է. "առ ընչեղն" (Թ. 217, Թղ. 23բ.) բն. hom. VII, in divites (Migne, p. 296.)

5 ՀԲ = Բարսղի "առ ընչեղն"՝ անդ, (Migne, p. 292.)

6 ԿԶ = Նազիանզացւոյ "յղ. ի ձեռնադրութիւն անհաւանութեան" եւն (Թ. 217, Թղ. 91ա.) բն. Oratio II, apologetica de fuga (Migne, XXXV ff, p. 191.)

7 ԽԳ = Նազ. նախընթացը (p. 272.)

8 ԼԴ = Գր. Նազ. թուղթ ԻԱ. (epist. XXI, al. 107.)

9 "Նկարագրութիւն հոգեւորական փարուց Յովա-

Սակայն այս վէպը ստիպուած ենք մենք քննու-թենէն դուրս թողուլ, այն պարզ պատճառաւ որ թէ՛ համառօտն եւ թէ՛ հնագոյն ընդարձակը յոյն բնագրին կրկին "հայելի„ փարուց տեղերէն մէկը չունին, իսկ միւսէն հազիւ քանի մ'ընդհանուր խօսքեր, որով համեմատութեան առնելու բան չէ մնացած։

Նաեւ Բարսղի եւ Նազիանզացւոյ համեմա-տելի տեղերէն ոմանք դուրս կը մնան, կամ վասն զի հայերէնին մէջ կը պակսին[1], կամ չափազանց աննման են[2]։ Միւս կողմանէ՝ եթէ մտադրու-թեամբ աչքէ անցուին այն թարգմանութիւնք, շատ մեծ նմանութիւններ կը գտնուին։ Ահա քանի մ'այսպիսի կտորներ, ամէնն ալ մեր Մատենդրնի Թ. 217 ձեռագրէն։ Յունարէն բնագրին նմանու-թիւնք ի հարկէ աւելի մեծ են։

1. (*Բարսեղ "ի Սղմ. Ա.„ անդ՝* Թղ. 42բ.) "Քանզի «օրէնս» է նոցա քննելով, ինքեամբ ի նուա-

---

սափու որդւոյ թագաւորին, գրեալ Յոհաննու կրաւնաւորի„, Վաղարշապատ, տպ. Էջմ. 1898. 8° էջք ՀԹ+179։ Առոր մասին ընդարձակ տես "Հանդէս„ 1898, էջ 115–8։

[1] Այսպէս չենք գտներ Բարսղի "ի ԿԱ Սղմ.„ ճառին մէջ (Թ. 217, Թղ. 39ա եւն) Ագապետոսի Է գլխուն հա-մեմատականը։ Վերջնոյս ԼԴ գլուխն ալ կը գտնուի Նա-զիանզացւոյ ԽԱ թղթոյն մէջ, զոր առձեռն չունինք հայերէն։

[2] Այսպէս Ագապետի ԿՁ գլուխն շատ աննման է հետեւեալը (Գր. Նազ. "Պտխ. յղ. ի ձեռնադրութիւն ան-հաւանութեան„, անդ՝ Թղ. 92բ.) առաջնորդաց մասին՝ "Ոչ մեծ ինչ վարկանել եթէ քան զյոլովն իցեմք զանազանեալք, այլ տոյժս վարկանել եթէ յարժանաւորութենէն նուա-զիցեմք ... այլ վարկանել ինքեանց զչարութիւն՝ որք զվատ-թարութիւնս գործեն, եւ որքան ինչ զատանջանացն է, որոց եւ օրէնքն ծանունք տեարք են. բայց իշխանի է յառաջ կալ ոչ իբրեւ զլաւ լինել եւ միշտ ի բարիոքն յառաջադիմանալ, եթէ հանդերձեալ իցէ յառաջիկայ առաքինութիւնսն ճգնել զյոլովս ի չափն, եւ ոչ բռնութեամբ արգելուլ, այլ հաւա-նութեամբ ածել„ եւն։

տանք, Թարգմանութեան կերպերու զարմանալի օրինակներ կը գտնենք։ Առնունք օրինակի համար երրորդ կտորը, ուր Բարսղի Թարգմանը շատ գեղեցիկ փոխադրած է՝ «զոր օրինակ հովանի՝ մարմնոյ, սոյնպէս եւ հոգւոյն ընթեր երթան մեղք... վասն այնորիկ ոչ է ուրանալ անդ» եւն։ Ագապետի Թարգմանը փոխադրած է նոյնը՝ (ԿԹ) «զոր օրինակ ստուերքն մարմնոց յարեւանան, նոյնգունակ մեղքն հոգւոց զհետ երթան... վասն այնորիկ ոչ է ի դատաստանին զլանալ» եւն։ «Յարեւանալ» անսովոր ձեւ կ՚երեւայ, բայց այս իմաստով (զհետ երթալ, յարիլ եւն) կը գործածուի ուրիշ յոյնաբաններէ ալ[1]. սակայն «զլանալ» փխ. «ուրանալ» շատ աւելի նիւթականութիւն է (յունարէնն է հոս ἀρνέομαι 1. մերժել, զլանալ. 2. ժխտել, ուրանալ, եւն.) բայց նոյն իսկ այս կը գտնուի միւս յունաբաններու քով ալ[2]։ Ուրիշ օրինակ մը բե-

---

չեալ «յղ. աղքատասիրութեան» ճառէն՝ Թղ. 259բ «զի յերկուց զմին ամենայն իրօք շահեսցին, կամ ոչ երբեք գործել չար... կամ համակամութիւնս ունել յինքեան առ Աստուած» եւն. աւելի եւս՝ Թղ. 92ա «Զի մի կողմն ամենայն իրօքս սխալեսցի, կամ չարն զօրասցեալ կամ բարիս անհաւատալի լեալ» (Նազ. Ճառ Ա.) = Ագապ. ԺԲ («զի մին ի յերկուց սատի ի յինքեանց մեղանչիցի, կամ չարն գովեսցեալ կամ բարին նախատեսցեալ»։) — Գր. Նազ. Թղ. 259բ «վասն զի ոմանք հոսանուտք եւ առժամանակեայք» եւն (Ագապ. ԼԳ «որպէս հոսանուտ իշխանութեան վարող։») — Նազ. Թղ. 261բ «մի ախորժեսցես ի վեր ամբառնալ զձեռն Աստուծոյ՝ ըստ բարձրավզիցն» եւն. (Ագապ. ԻԱ «մի բարձրավզիլ,» եւն։) — Նազ. Թղ. 264ա «Զայս ի ներքս բերցուք ի ձեռն կարօտելոցն» եւն. (Ագապ. ԻԳ. «ի ներքս ածցուք ողորմութեամբն զողորմութիւն» եւն.) եւ շատ նմաններ։

1 Տես նաեւ Հյկզն. Բառգ. (Բ, 347 «յարեւանամ») Թրակացի, նաեւ Խօսրովիկ՝ «ցանկականն եւ ցասմնականն՝ զգայականին յարեւանայ» եւն։

2 Տես Հայկզն. Բառգ. Ա, 737 «Զլանալ»

*րելու համար՝ ահա կտոր մը Բարսղի, որ ըստ դիպաց մեր աչքին հանդիպած է։*

| *Բարսեղ (ճառ Դ)*[1] | *Ագաթանգեղոս, ԽԲ* |
| --- | --- |
| *Արդ արարէք այսուհետեւ խաղաղութիւն բանիս ի ձեռն լռութեան. քանզի ամենայն իրք երեւեցի պիտանացու եւ ընտանեգոյն ընդունողաց։ Դժուարորսալ է*[2] *ճշմարտութեան բան, դիւրաւ կարէ փախչել յայնցանէ որք ոչ զգուշանան. նոյնպէս եւ հոգւոյն շինողի ներմանելն է„ եւն։* | *Ուշադրաբար լսել պարտին դատաւորքն իրողութեանց. քանզի դժուարորսալ է ճշմարտութիւն, որ դիւրաւ փախչի յայնցանէ՝ որք ոչ յոյժ զգուշանան։ Զի եթէ„ եւն։* |

*Բացատրութեան անսովորութիւնը նկատելով՝ ուրիշ դիպաց մէջ կրնար փորձուիլ մինչեւ անգամ մտածել որ թարգմանիչներէն մին կախում ունենայ միւսէն։ Բայց հոս թերեւս դարերով հեռու ալ են իրարմէ։ Երկուքն ալ՝ աւելի կամ նուազ չափով՝ յունաբան, գրելով հայ լեզու մ'որուն իւրաքանչիւր բառը ճշգրտուած է յոյն բառի մը վրայ՝ քիչ շատ ամէն նոյն կարգի գրողներուն քով, զարմանք չէ որ երբ բնագրին մէջ* δυσθήρατος *տեսնուէր՝ առանց այլեւայլութեան բառացի կազմուէր "դժուարորսալի„ անհեթեթ բառ մը թէ Բարսղի թարգմանչին քով, թէ Փիլոնի, Պիտոյից գրոց եւ Ագաթանգեղոսի քով։ Միւս կողմանէ Ագաթանգեղոսի թարգմանն աւելի նիւթական է։ Բարսղի "ճշմարտութեան բան„ հայերէն է,*

---

1 *Բարսղի ճառ "Հայեաց ի քեզ„* (Թ. 217. Թղ. 13 *ա.*) *բն.* hom. III.

2 *Մեր ձեռագիրը հոս ունի "դժոխորսալէ„, որ անշուշտ սխալ գրչութիւն մըն է, ինչպէս կը վկայէ Ագաթանգեղոս եւ նաեւ Վենետկեան Օրինակը (տես Հայկազն. Բառգ.* Ա, 621, *ուր վկայութեան բերուած է այս մասն, ինչպէս նաեւ նոյն բառին կոչմունք Փիլոնէն եւ Պիտոյից գրքէն։)*

իսկ Ագապետի նոյնը “ֆի-ոն արդարոյն„ ըսելն անյարմար նիւթականութիւն (τοῦ δικαίου.)[1] որ քանի մ՚անգամ կրկնուած է, եւ գոնէ “արդարութեան„ ըլլալու էր (յոյնը չէզոքաբար:)

Սակայն երկար կ՚ըլլար՝ եթէ ուզէինք Ագապետի լեզուի մանրամասնութեանց մէջ մտնել: Արդէն ծանօթութեանց մէջ մի առ մի համեմատած ենք. մաս մ՚ալ այլեւայլ առթիւ պիտի յիշենք: Այժմ կարեւորագոյն է գիտնալ որ Ագապետի վճռոց արձագանգները կը գտնուի՞ն արդեօք հայ գրականութեան մէջ ուրիշ տեղեր ալ: Գոնէ թարգմանական գրականութեան համար հաստատելու ենք այս կէտը, որ աննշան չըլլալով նոյն գրութեան աղբիւրներու խնդրին նկատմամբ՝ գոնէ հարեւանցի յիշուելու արժանի է:

Վճիռ մը կը գտնենք յունական այն առածներու հաւաքման մէջ, որ “Բանք Իմաստասիրաց„ անուամբ ծանօթ է եւ հրատարակուած, հայերէնի թարգմանուած իբր Զ. դարուն[2]: Հոն կը գտնենք նախ ընդհանուր նմանութեամբ վճիռներ, զոր օր. (էջ 20) “Պարտ է որք խորհին իշխանութիւն ունել ի վերայ այլոց՝ նախ անձանց իւրեանց իշխել. յիշխելն հեզ լեր եւ ընդ իշխանութեամբ երկայնամիտ„, (— բուն՝ Սեքստոսի եւ Կղիտարքեայ, որոնց մասին ուրիշ անգամ, —) եւ նմաններ՝ որոնց ի հարկէ անհրաժեշտ չէ Ագապետի հետ կապ ունենալ: Բայց կայ նաեւ հետեւեալը “Թէոպիդէս„ իմաստնոյն անուամբ, զոր կը դնենք դէմ առ դէմ:

*Բանք իմ. (“Սոփ.„ Ա, էջ 35.)* — *Ագապետոս, Դ.*

Թէոդէկտէս ասէ. Ի բաց ի վերայ ամենայնութեան առաքինութեան մի՛ ով պարծեսցի. նախանձողաց մի՛ ով անձար-

---

[1] Տես վերը ԽԲ, 2 “արդար„. նոյնպէս՝ Ա, 4 եւն:

[2] Տպ. “Սոփերք Հայկականք„, Ա. (Վենետ. 1853), էջ 1—59:

գէ մի չաա աանին ամենեքեան է նախնեայ, որք է ծիրանեա իցեն եա որք է խոր ողքոփաաաթեան մահայեցք են։

Թեաղեփաա սաւէ. Քաջազգի ասեմ ոչ որ ի գեղեցկաց եւ բարեկեցաց իցեն ծնեալ, այլ որ զգեղեցիկան եւ զբարին եկեալ գործիցեն։

հաաամիայէ. քանգէ փէղմ աանին ամենեքին աեաին նախահայր, եա որք է ծիրանեա եէ բեհեղա ղարծին, եա որք յաղքափաաթեան եա է խոթաաթեան խաչփանքին, եւ որք արքունի խոյրս ի գլուխ դնեն եւ որք ի սենեակս մեկուսի անկեալ դնին։ Մի ուրեմն պարծեսցուք ի տոհմային ազգ, այլ ի վերայ քաղցրութեան բարուց պանծասցուք։

Վճռական խօսքերու հին հաւաքում մըն է այն որ Սեքստոսի անունը կը կրէ եւ կայ նաեւ հայերէն թարգմանութեամբ[1], որուն մասին ընդարձակօրէն խօսելու առիթ պիտի ունենանք ի մօտոյ։ Ասոր նոյն իսկ սկիզբը կապ մը կը ցուցընէ Ագաթանգեղոսի վճռոց հետ, օրինակի համար սա խօսքը՝ "Աստուծոյ մարդն՝ արժանի Աստուծոյ է. Աստուծոյ արժանի այն է որ ինչ [որ] անարժան է Աստուծոյ՝ ոչ գործէ„ եւն. (Համմտ. Ագաթ. Գ։) Բնական է որ նմաններ գտնուին նաեւ այլուր։

Աւելի բաղձալի էր ի հարկէ գիտնալ թէ Հայ ինքնագիր գրականութեան վրայ ազդեցութիւն ըրա՞ծ է արդեօք Ագաթանգեղոս։ Դժբախտաբար որոշ եւ վճռական ապացոյց մը չկրցանք գտնել, թէեւ բաւական գրուածքներ՝ ուր աւելի յիշատակութիւն մը գտնել կը յուսացուէր, յատկապէս այս նպատակաւ աչքէ անցուցինք։ Միւս կողմանէ գրուածքիս նիւթը՝ որ իշխող արքայի մը պարտուց վրայ կը խօսի, քիչ անգամ առիթ կու տար Հայ հեղինակի մը գործածելու զայն. մինչդեռ տիրող է

---

1 Մեր Մատ. ձեռագիր Թ. 174, Թղ. 198ա եւն "Խրատ Վարդապետութեան Սեքստեա„. տես "Ցուցակ„ էջ 492 եւ 1149։

իսկ Ագապետի նոյնը "զէ—ան —րդ—րոյն„ ըսելն անյարմար նիւթականութիւն (τοῦ δικαίου.)[1] որ քանի մ'անգամ կրկնուած է, եւ գոնէ "արդարութեան„ ըլլալու էր (յոյնը չէզոքաբար:)

Սակայն երկար կ'ըլլար՝ եթէ ուզէինք Ագապետի լեզուի մանրամասնութեանց մէջ մտնել: Արդէն Ծանօթութեանց մէջ մի առ մի համեմատած ենք. մաս մ'ալ այլեւայլ առթիւ պիտի յիշենք: Այժմ կարեւորագոյն է գիտնալ որ Ագապետի վճռոց արձագանգները կը գտնուի՞ն արդեօք հայ գրականութեան մէջ ուրիշ տեղեր ալ: Գոնէ թարգմանական գրականութեան համար հաստատելու ենք այս կէտը, որ աննշան չըլլալով նոյն գրութեան աղբիւրներու խնդրին նկատմամբ՝ գոնէ հարեւանցի յիշուելու արժանի է:

Վճիռ մը կը գտնենք յունական այն առածներու հաւաքման մէջ, որ "Բանք Իմաստասիրաց„ անուամբ ծանօթ է եւ հրատարակուած, հայերէնի թարգմանուած իբր Զ. դարուն[2]: Հոն կը գտնենք նախ ընդհանուր նմանութեամբ վճիռներ, զոր օր. (էջ 20) "Պարտ է որք խորհին իշխանութիւն ունել ի վերայ այլոց՝ նախ անձանց իւրեանց իշխել. յիշխելն հեզ լեր եւ ընդ իշխանութեամբ երկայնամիտ„, (— բուն՝ Սեքստոսի եւ Կղիտարքեայ, որոնց մասին ուրիշ անգամ, —) եւ նմաններ՝ որոնց ի հարկէ անհրաժեշտ չէ Ագապետի հետ կապ ունենալ: Բայց կայ նաեւ հետեւեալը "Թէոպիդէս„ իմաստնոյն անուամբ, զոր կը դնենք դէմ առ դէմ:

Բանք իմ. ("Սոփ.„ Ա, էջ 35.)    Ագապետոս, Դ.

Թե—ղէրե— ասէ. Ի ֆ—ղ— Ի Վէր—յ —շն———թե—ն —ղե——թե—ն մ' —ֆ ղ—րծե—յե. Ն—խ—ծն—ղ—յ մ' —ֆ —մ—ր—

[1] Տես վերը ԽԲ, 2 "արդար„. նոյնպէս Ա, 4 եւն:

[2] Տպ. "Սոփերք Հայկականք„, Ա. (Վենետ. 1853), էջ 1—59:

ղէ մէ կաա ասնէն ամենէթեան է նախնէաց, որթ է ծէրանէօ էցէն էա որթ է խոր աղթապոա-բեան մահայլէցթ էն:

Թեոլոգոս ասէ. Քաջ-ազգի ասեմ ոչ որ ի գեղեցկաց եւ բարեկեցաց իցեն ծնեալ, այլ որ զգեղեցիկսն եւ զբարին եկեալ գործիցեն:

հաատճեայէ. թանղէ փէղմ ոա-նէն ամենէթէն ոէաէն նախա-հայր. էա որթ է ծէրանէօ էա-է բէհէղա ղարծէն, էա որթ յաղթապոաբեան էա է խօբոա-բեան խոշփանէլէն, եւ որք արքունի խոյրս ի գլուխ դնեն եւ որք ի սենեակս մեկուսի անկեալ դնին: Մի ուրեմն պարծեսցուք ի տոհմային ազգ, այլ ի վերայ քաղցրութեան բարուց պանծասցուք:

Վճռական խօսքերու հին հաւաքում մըն է այն որ Սեքստոսի անունը կը կրէ եւ կայ նաեւ Հայերէն թարգմանութեամբ[1], որուն մասին ընդարձակօրէն խօսելու առիթ պիտի ունենանք ի մօտոյ: Ասոր նոյն իսկ սկիզբը կապ մը կը ցուցընէ Ագաթանգեղոսի վճռոց հետ, օրինակի համար սա խօսքը՝ "Աստուծոյ մարդն՝ արժանի Աստուծոյ է. Աստուծոյ արժանի այն է որ ինչ [որ] անարժան է Աստուծոյ՝ ոչ գործէ„ եւն. (Հմմտ. Ագաթ. Գ.:) Բնական է որ նմաններ գտնուին նաեւ այլուր:

Աւելի բաղձալի էր ի հարկէ գիտնալ թէ Հայ ինքնագիր գրականութեան վրայ ազդեցութիւն ըրա՞ծ է արդեօք Ագաթանգեղոս: Դժբախտաբար որոշ եւ վճռական ապացոյց մը չկրցանք գտնել, թէեւ բաւական գրուածքներ՝ ուր աւելի յիշատակութիւն մը գտնել կը յուսացուէր, յառաջապէս այս նպատակաւ աչքէ անցուցինք: Միւս կողմանէ գրուածքիս նիւթը՝ որ իշխող արքայի մը պարտուց վրայ կը խօսի, քիչ անգամ առիթ կու տար Հայ հեղինակի մը գործածելու զայն. այնչափ տիրող է

[1] Մեր Մատ. ձեռագիր Թ. 174, Թղ. 198ա եւն "Խրատ Վարդապետութեան Սքեսեա„. տես "Ցուցակ„ էջ 492 եւ 1149:

մեր գրականութեան մէջ զուտ աստուածաբանական ճիւղը։ Այսու հանդերձ մանր նմանութիւններ ալ չեն պակսիր։ Երբ Ներս. Լամբրոնացի[1] կը գրէ վճիռս թէ "Երկրագործին սխալանք՝ անձին միայն վնասէ, իսկ թագաւորին՝ ամենայն աշխարհին", կը յիշեցընէ Ագապետի մէկ վճիռը (տես գլ. Ժ), ուր երկրագործի տեղ նախ նաւորդը, յետոյ քաղաքացին կը բերուի համեմատութեան։ Մխիթարայ Գօշի առակներուն վերջաբան-խրատներուն մէջ ալ նմանութիւններ կը տեսնենք։ Այսպէս ՀԶ առակին խրատն է[2] "բարեկարգս կամի առնել առակս զթագաւորս՝ ըստ պատշաճի վճռակել զիշխանս եւ զդատաւորս", որ նիւթ է Ագապետի Լ վճռին (տես նոյնը։) Գօշի ԺԳ կամ թթենի եւ ձիթենի առակին խրատականն Ագապետի ԼԴ վճռին՝ նաեւ բացատրութեան կողմանէ՝ նմանութիւն կը ցուցընէ, թողլով նաեւ ուրիշ նմաններ[3]։ Ընդհանուր կամ դոյզն ուրիշ նմանութիւններ կրնանք ի հարկէ ուրիշ տեղեր ալ գտնել[4]։

---

1 Մատենագրութիւնք տպ. Վենետ. 1847, էջ 53։

2 Գօշի Առակք, տպ. Վենետ. 1842, էջ 70։

3 Գօշ, առակ ԺԳ, անդ՝ էջ 15 "թագաւորական ազգ թէպէտ փառաւոր է, այլ երկրաւորօքս ճոխ՝ որ հաստատունք են (Համմտ. Ագապ. ԼԳ), որում թթենիդ է նշանակ. իսկ քահանայական տոհմ թէպէտ եւ աղքատ իցէ՝ մեծատուն է հոգեւորօքն" եւն։ — Համմտ. առակ Բ՝ անդ էջ 6 "Համարձակութեամբ խոնարհել փառաց, զի բնաւորեալն ընդ նոսա պատիւ ոչ թողու անարգել" եւն. — առակ Է՝ անդ էջ 10 "Առձեռն պարգեւօք ակն ունին անագան յուսոյ բազումք տերանց իւրեանց" եւն, եւ նմաններ։

4 Համմտ. օրինակի համար Ուխտանէսի սա խօսքը (տպ. Էջմ. 1871, Բ, խզ էջ 79) "Վասն զի զոյգ է չար պատրաստութիւն առ վատթարս՝ եւ պղերգանալ առ լաւագոյնսն." (Համմտ. Ագապ. ԿԶ.) — Շնորհալւոյ առ Մանուէլ թղթին մէջ (Նամականի, տպ. Վենետ. 1838, էջ 321) "Ողջ լեր թագաւոր օգոստէ, երկնաւոր թագաւորին պահպանեալ զօրութեամբ" եւն. (Համմտ. Ագապ. Ա.) —

Բայց ասոնք մեր խնդրին համար աննշան են։ Ընդհանրապէս մեզի անհնար եղաւ գտնել կոչումներ եւ յիշատակութիւններ որոնք յատկապէս Ագապետի մեզի այժմ ծանօթ հայ բնագիրն ակնարկեն։ Թերեւս գտնուին այսպիսիներ, որ մեր աչքէն վրիպած ըլլան։ Թերեւս նաեւ այս հայ բնագիրը՝ աւելի ուշ ժամանակ ծագած՝ բոլորովին անծանօթ էր հայ մատենագրաց մեծ մասին։ Այս կէտը՝ որ շատ կարեւոր է, որոշել չենք կրնար, եւ ոչ ալ նաեւ մերձաւորապէս նշանակել հայ թարգմանութեան ժամանակը։ Մանաւանդ թէ կայ կամ կար կարծիք մ'ալ որ շատ ուշ ժամանակի՝ անցեալ ԺԸ. դարուն վերջերուն՝ կ'ուզէր վերագրել Ագապետի հայ թարգմանութիւնս։ Այս կը ստիպէ զմեզ անցնիլ յաջորդ կէտին, այն է Ագապետի ձեռագրին, որուն մասին այժմ թանկագին տեղեկութիւններ ստացանք։

## 5.

Ագապետոսի գործքին հրատարակութեան ժամանակ միակ աղբիւր մ'ունէինք հայ բնագրին համար, մեր Մատենադարանին ձեռագիրը, ինչպէս

---

Գործոց Առաքելոց խմբագիր մեկնիչը (տպ. Վենետ. 1839, էջ 64)՝ “Եւ զի զբազումս ի մարդկանէ քան թէ բարերարութիւնն՝ յոյժ մանաւանդ երկիւղն զգաստացուցանէ„ եւն. (Հմմտ. Ագապ. ԾԹ., տես նաեւ ԽԸ, ԾԵ։) — Այսպիսի ընդհանուր խօսքեր շատ կրնան գտնուիլ, բայց նշանակութիւն չունին, ինչպէս եւ ոչ միշտ բացատրութեանց նմանութիւններ։ Վերջնոյս մասին ահա քանի մ'օրինակ Յովհ. Կաթող. պատմագրութենէն (տպ. 1867) էջ 382՝ “զի մի թերեւս ըստ մանկական բարուցն պագշոտական ինչ ստացի կամս եւ զանկազմն դրժեալ գործեսցէ իրս„ եւն. (Հմմտ. Ագապ. Խ.) — անդ՝ էջ 408 “գրգռէին զաղմուկ„ (ապստամբել, տես Ագապ. ԼԵ.) — անդ՝ 420 “իբր ի մանկոյկ ինչ վերելակել„, եւ էջ 432 “սանդղօք ոմամբք ի վեր ելակեալ„ տես Ագապ. ՀԲ.) եւ ուրիշներ հոս եւ այլուր։

ուսումնասիրութեանս սկիզբը կամ ներածութեան մէջ նկարագրեցինք։ Ծանօթ էր միայն որ՝ ինչպէս «Մատենագիտութեան» մէջ ալ նշանակուած էր, եղած էր տպագրութիւն մ՚ալ Կ. Պոլիս 1806ին. բայց մեզի անմատչելի էր այն։ Այժմ ուրախ ենք որ ոչ միայն կարեւոր եւ լիակատար տեղեկութիւններ ստացանք այն տպագրին մասին, այլ նոյն իսկ անոր տարբեր ընթերցուածներուն համեմատութիւնը։ Այս համեմատութիւնն ալ ցուցուց որ չափազանց կարեւոր էր տպագրին ծանօթութիւնը։ Վասն զի ոչ թէ մեր ձեռագրին համեմատ բնագիր մըն է հոն եղածը՝ կ՚ենթադրուի տարբերութեամբ ընթերցուածներու, ինչպէս սովորաբար կը գտնուի ձեռագրէ ձեռագիր անգամ. այլ՝ որչափ ալ նոյն Հայ բնագիրն ըլլայ՝ յէականս անգամ Խաղէս տարբեր բնագիր մըն է, չենք վարանիր ըսելու՝ Հայ թարգմանութեան նոր խմբագրութիւն մը։ Այս պատճառաւ անհրաժեշտ էր մասամբ ընդարձակել մեր ուսումնասիրութեան նախնաբար համառօտ ծրագիրն, եւ հոս՝ նախ քան աւարտելը՝ տեսնել թէ ինչ արդիւնք կրնանք ունենալ տպագրին ընծայած առաւելէն։ Առանց ասոր մեր ուսումնասիրութիւնն էական մասամբ աւելի թերակատար պիտի մնար քան որչափ է արդէն ինքնին իւր սահմանափակ շրջանին մէջ։

Թէ թանկագին տեղեկութիւններն եւ թէ ամբողջ գործքին համեմատութիւնը պարտական ենք Արժ. Յովհաննէս Քհ. Մկրեանի, որուն նաեւ հոս հրապարակաւ մեր շնորհակալութիւնը կը յայտնենք։ Տեղեկութիւնքն ամփոփուած են նամակի մը մէջ, որ կը պարունակէր նաեւ տպագրին ընթերցուածոց համեմատութեան սկիզբը (գլուխքն Ա—Ժ.) քիչ ետքն ստացանք ամբողջին համեմատութիւնը։ Այս տարբերութեանց գլխաւորները նաեւ յաջորդներուս մէջ առիթ պիտի ունենանք յառաջ բերելու, իսկ ամբողջը դրուած է բնագրին

մեր հրատարակութեան կից՝ ուրոյն իբր յաւելուած եւ նոր խմբագրութիւն բնագրին:* Հոս յառաջ կը բերենք նամակը (Կ. Պոլ. 1/13 փետր. 1900). որ է հետեւեալը:

"Ձեր գովելի հետազօտութեանց մի նոր գործն եւս ընթերցայ այս անգամ փետրուարի Ամսօրեայ Հանդէսին մէջ, Աղաբեկեան Սարգսեանի մի գրութեան վրայ՝ որ մեր նախնեաց թարգմանութիւնն է կ'ըսէք: Այդ գրքոյկը արդարեւ տպագրուած է ի Կ. Պոլիս. ոչ թէ 1808 թուին, ինչպէս գրած է Հ. Գ. Զարբ. "Հայկական Մատենագիտութեան„ մէջ, այլ 1806ին (ՌՄԾԵ). այսպիսի ունելով նախադասութիւն "Բացատրութիւն յորդորական գրոց Աղաբեկեան Սարգսեանի: Ցեղեալ է յաշխարհական լեզուէն ի հայկական բարբառ: Աշխատասիրութեամբ ... բանասէրի: Եւ տպեալ հրամանաւ Տեառն Յովհաննու Սրբազան Պատրիարքի. ի Կոստանդնուպօլիս. ի Թուականին ՌՄԾԵ (= 1806). ի Տպարանի Յովհաննիսեան Պօղոսի:„ Այս տպագրութեան եւ Ձեր օրինակի մէջ քանական տարբերութիւններ գտայ, զորս Ձեր եւ ընթերցողաց ուշադրութեան յանձնել պատշաճ համարեցայ. առայժմ այնչափ՝ որչափ տպագրուած է Հանդէսի մէջ. (Հտծ. Ա—Ժ.) խոստանալով շարունակել զայն ըստ շարունակութեան Հանդիսի:** Սակայն պատշաճ դատեցայ ինձ նախապէս սա ծանօթութիւնն տալ: Կը գրէք թէ "Մեր ընդօրինակողն առջեւն ունեցած է հանրածանօթ Գէորգայ Պալատեցւոյ 1778ին օրինակութիւնն, որ փոխադարձաբար գաղափար առած էր ի Լօվ գրուած ձեռագիր մը:„ Ինձ կը թուի թէ նոյն տպագրութիւնն եւս արժանայիշատակ Գէորգ Դպիր Պալատեցւոյն է. վասն զի գրքուկին վերջը հետեւեալ Ոտանաւորը տպուած է, որ յայտնի կ'ընէ Գէորգ Պալատեցւոյն լինելն:

"Բան Յիշատակի.

"Մըշակ ոմըն՝ գուշակ եղեալ՝ աշխատեցաւ՝ ըստ կարի,
եւ Աստուծոյ՝ Փրկչին կամօք՝ յառաջ բերաւ՝ այս բարի:

Ապա տենչիւ՝ առըն միոջ՝ բարեսիրի՝ տըպեցաւ,
եւ յայտ եկեալ՝ ի լըսելիս՝ Հայկեան սեռ.ի՝ հըրպեցաւ:

* Տես վերը՝ էջ 192 եւն:

** Ինչպէս ըսինք՝ մնացեալն ալ քիչ մ'ետքն ընդունած ենք:

Ցորում ամի՝ Թուական Հայոց՝ գոլով հազար՝ երկհարիւր, յիսուն եւ հինգ՝ ի նոյն յարեալ՝ կատարումն էր՝ համար իւր։

Եօթանասուն՝ երկու են սոտ՝ բանք խրատու հոգեւորք, զոր ընծայեաց՝ Աղաբիդոս՝ վեհ արքային՝ ․․ Գեւորգ։„

«Կարծեմ տարակոյս չի մնար թէ Աղաբիդոսի առաջին անգամ հրատարակիչն Գէորգ Դպիր Պալատեցին եղած է․ բայց զարմանալի է՝ որ ո՛չ գրքուկին սկիզբը եւ ո՛չ վերջը, բնա՛ւ չի յիշեր թէ այս թարգմանութիւնն ի մեր Երանելի Նախնեաց եղած է․ եւ ատոյգն ասելով ես իսկ մինչեւ ցայժմ կարծեր էի թէ՝ Գէորգ Պատուելին ինքն թարգմանած է, եւ աքանչացած էի շարադրութեան վրայ։ Գանք այժմ ի բաղդատութիւն սոյն տպագրութեան„ եւն։

Թէ տպագրութիւնը ստուգիւ Գէորգայ Պալատեցւոյն է, մենք ալ չենք տարակուսիր։ Այս մասին որոշ վկայութիւն մըն է վերջին խօսքը կամ բան յիշատակին։ Այն տեղն ամենէն վերջը („ո Գէորգ„) բացայայտ տուած է իւր անունը։ Նաեւ սկիզբը բառախաղ մ’ըրած կը կարծենք „Մշակ ոմն„ գրելով, ուր դժուար չէ տեսնել որ Գէորգ անուան թարգմանութիւն մ’ըրած է՝ յունարէն լեզուէ այնպէս թարգմանելով անունը։[1] Բայց թէ ինք զինքն հոն ալ այս այլակերպութեան տակ անուանել ուզած ըլլայ, այս ստուգիւ խնդրական է, եւ ինչպէս պիտի տեսնենք՝ շատ տարբեր կերպով եւ իրմէ դարերով հին անձի մը վրայ ալ կրնայ առնուիլ։ Նոյնն ըսելու ենք ճակատին այն խօսքին համար ալ թէ „յեղեալ ի յունական լեզուէն … աշխատութեամբ ուրումն բանասիրի„, որ գոնէ ընդհանուր եւ անորոշ խօսք մըն է։ Ամենեւին հարկ չկայ այս „ոմն բանասէր„ը նոյն ինքը Պալատեցին համարիլ, եթէ չունենանք ուրիշ կողմանէ համոզիչ փաստեր։ Այսպիսի փաստեր մեզի ծա-

---

[1] Ցոյն՝ Γεώργιος Գէորգ, γεώργιον դաշտ, մշակութիւն եւն. γεωργός երկրագործ, Մշակ։

նօթ չեն. մանաւանդ թէ՝ որչափ ալ մեծ համարում ունենանք Գէորգ դպրին վրայ, շատ դժուարին կ'երեւայ մեզի իրեն վերագրել ուզել Ագապետոսի նման թարգմանութիւն մը, եթէ չ'ըլլար նաեւ մեր ձեռագիրը, ինչպէս նաեւ Վենետկինը։

Սակայն ընդունինք թէ յիշեալ երկու անորոշ խօսքերն ալ ստուգիւ իրեն Գէորգայ Պալատեցւոյ կը վերաբերին կամ իրեն մասին ըսուած հասկընալու է, որով Պալատեցի կերպով մ'ինք զինք յայտարարած ըլլայ թարգմանիչ։ Նաեւ այս պարագայիս՝ որ ապահով չէ, պէտք ենք այլազգ մեկնել նոյնը. ասով բացատրուած կ'ըլլայ այն կէտն ալ թէ ինչու արդեօք տպագրին մէջ որեւէ յիշատակութիւն չկայ բնագրին Նախնեաց թարգմանութիւն ըլլալուն։ “Աղաբիդոս„ այնպէս ինչպէս կը ներկայացընէ Ցղ-ֆէր՝ ամբողջութեամբ առեալ շատ լաւ կրնայ ըսուիլ թէ “Նախնեաց„ բնագիր չէ։ Համեմատելով մեր ձեռագրին հետ՝ կը տեսնուի որ տպագիրը ծայրէ ծայր սրբագրուած եւ փոփոխուած է, այն ալ որոշ ծրագրով եւ ուղղութեամբ։ Մթին ասութիւնները պարզուած են, խրթին յունաբանութիւնքն հայացուած, նիւթական թարգմանութիւններն ուղղուած։ Այնպէս որ ամբողջն՝ ինչպէս ըսինք՝ նոր խմբագրութիւն մըն է, ի հարկէ հիմն ունենալով հինը կամ մեր ձեռագրինը։ Եւ որովհետեւ կան նշաններ թէ այս սրբագրողը՝ զոր կ'ընդունինք թէ ինքը Պալատեցին էր, պարզ հայ ձեռագրի մը վրայ չէ աշխատած, այլ առջեւն ունեցած է յոյն (տպագիր) բնագիրն ալ, որով մէկ երկու յաւելուածներ կը գտնենք՝ որ հնոյն մէջ կը պակսին, կրնայ ամբողջը կերպով մը նոր թարգմանութիւն կոչուիլ, որ մեր ձեռագրին համար անհնար է ըսել։

Առանց այս տեսակ մեկնութեան շատ դժուարութիւններ կը մնան անլոյծ։ Այսպէս անմեկնելի կը մնայ թէ ինչու Պալատեցի, եթէ ինքն էր ընդ-

հանրապէս առաջին անգամ Ագապետի թարգմանը, պայծառ եւ որոշ կերպով չէ յիշած իւր թարգմանած ըլլալը, մինչդեռ իւր միւս բոլոր գրութեանց մէջ՝ որ ապահովապէս իրենն են, (— վասն զի շատ բան ալ կայ խնդրական իրեն ընծայուած,[1] —) միշտ կը գտնենք յիշատակուած իւր անունը, թարգմանութեան տարին եւ այլ հանգամանքները։[2] Դարձեալ շատ դժուար էր մեկնել մեր ձեռագրին եւ Վենետկոյ (եւ ուրիշներու՝ որ անշուշտ կան) բնագրին գոյութիւնը։ Երկու բնագիր կայ մէջտեղ, որոնց մին միայն կրնար Պալատեցւոյն ըլլալ, այն՝ զոր տպագրութեամբ ալ հրատարակած է, եւ որ հայ ընթերցողին դիւրահասկնալի ըլլալու յատկութիւնն ալ ունի։ Իսկ ձեռագրինը՝ խրթին եւ յունաբան է, գրուած տպագրութենէն իբր 30 տարի յառաջ Գրիգոր դպրէ մը, եւ այն աղաւաղութիւններով՝ թէեւ քիչ, նախադասութիւններ դուրս ինկած (տես ԼԴ, [5]), մինչեւ անգամ անիմաստ ըլլալու չափ (տես Գ, [1].) գրչի սխալներն ալ չհաշուելով (զոր օր. Դ, [4] "Ջեկ—ոէ —նչէ—ւ" բառերէն "անմեկուսի" եղած, եւ նմաններ.) միով բանիւ ամէն նշաններով՝ որոնք կը ցուցընեն թէ ուղղակի սկզբնագրէ մը օրինակուած չէ, այլ գաղափարն ալ արդէն աղաւաղութիւններ ունէր։ Վենետկոյ օրինակէն փոքր գլուխ մը միայն ծանօթ է ինծի, եւ այն ալ ընթերցման՝ թէեւ փոքրիկ՝ տարբերութիւն կը ցուցընէ։ Այս կողմանէ

---

1 Այսպէս Պալատեցւոյ ընդարձակ կենսագրութեան մէջ, զոր հրատարակած է Ա. Ց. Այվազեան ("Շար հայ կենսագրութեանց", Ա. Կ. Պոլիս 1893, էջ 11—73), ընդհանուր միտութիւն մը նշմարել կը կարծենք՝ Պալատեցւոյ նուիրելու շատ բան, որ այնպէս ապահով չէ։ Քանի մը բան առիթ պիտի ունենանք յիշելու։

2 Տես այժմ Այվազեան "Շար" եւն, էջ 24–30, 35, 38, 43 եւն։ Անհնար է մեզի այս ամէն եւ ուրիշ յիշատակարանները, յառաջաբանականքն եւն յառաջ բերել։

շատ բաղձալի էր տեղեկութիւն ունենալ Ս. Խաչի ձեռագրին վրայ, մանաւանդ որ ճիշդ Պալատեցւոյ գրչութիւն կ'ըսուի:[1] Եթէ ձեռագրաց խմբագրութեան տեսակէն է ան ալ, այն ատեն խնդիրը վերջնականապէս վճռուած կ'ըլլայ. իսկ եթէ տպագրին տեսակէն՝ վերջնոյս նախագաղափարն ըլլալու է: Ուրիշ՝ եւ յատկապէս ԺԸ. դարէն հնագոյն՝ ձեռագիրներ մեզի ծանօթ չեն դժբախտաբար:

Աննշան չէ նաեւ լեզուի խնդիրը: Ըսինք՝ եւ առիթ ալ եղաւ օրինակներով ալ ցուցընելու որ Ագապետոսի լեզուն մեր Յունաբանաց շրջանին լեզուն է ճշդիւ, այն լեզուն ու թարգմանութեան ոճը՝ զոր Անյաղթէն ու Սիւնեցիէն մինչեւ Գր. Մագիստրոս եւ անկէ ետքն ալ կը տեսնենք. ուր իւրաքանչիւր յոյն բառ ու յոյն ասութիւն հաստատուն եւ յաճախ յունականին վրայ ձեւուած հայերէն համեմատական մ'ունի: Եթէ քննենք Ագապետի իւրաքանչեւր բառ ու ասութիւն՝ նաեւ բոլորովին նիւթականները՝ ճիշդ նոյնութեամբ կը գտնենք միւս յունաբաններուն քով ալ, եւ դոյզն տարբերութեամբ՝ նոյն յոյն բառերուն դէմ, զորոնք ծանօթութեանց մէջ նշանակեցինք: ԺԸ. դարուն վերջը՝ Գէորգայ Պալատեցւոյ համար այսպիսի լեզու մ'ենթադրել անհնար բան է. նաեւ լոկ արուեստական հետեւողութիւն մը պիտի ըլլար անոր կողմանէ, եւ անըմբռնելի թէ իբր քաջ հայկաբան հռչակուած Պալատեցին ճիշդ Ստեփ. Սիւնեցւոյ կամ Մագիստրոսի լեզուն առած ըլլար նպատակ ըստ ամենայնի եւ կէտ առ կէտ նմանելու: Իւր միւս գրութեանց մէջ այսպիսի բան մը չենք տեսներ բացարձակապէս:

Այս ամէնը կարծենք բաւական էր համոզելու զմեզ: Բայց քանի որ խնդիրը կարեւոր է, եւ Պալատեցւոյ անունը կապ մ'ունի ասոր հետ,

---

1 Տես "Շարղ" էջ 47:

*աւելորդ չէ քիչ մ'ալ աչքէ անցընել վերջնոյս տրուած այլեւայլ թարգմանութիւնները։ Ստացուած արդիւնքը լիովին, պիտի հաստատէ մեր ըսածները։*

*Պաղատեցւոյ թարգմանութեանց մաս մը դուրս թողլու ենք, անոնք որ տաճկերէն եւ պարսկերէն լեզուէ եղած են, որ լեզուի քերականութիւն եւ բառգիրք մ'ալ յօրինած է, վերջինս իւր գրութեանց գլուխ գործոցը։*[1] *Յունարէնէ թարգմանութիւն մը կայ "Վէմ գայթակղութեան" գրքին, որ թարգմանուած է ի Կ. Պոլիս "յունամինէ բանասիրէ", եւ "որ կը կարծուի թէ Գէորգ դպիրն եղած լինի։*[2]*" Թարգմանուած* 1767*ին՝ տպագրութեամբ լոյս տեսած է* 1786*ին,*[3] *ինչպէս յիշատակարանը կը ցուցընէ Կ. Պոլսոյ ձեռագրի մը վրայէն*[4]*։ Արդ եթէ Պաղատեցին է հոս ստուգիւ "բանասէր" թարգմանը, շատ պայծառ ապացոյց մը տուած է տալ թէ իրեն չենք կրնար վերագրել Ագապետոսի թարգմանութիւնը։ Հոս ըստ ամենայնի լեզու մըն է, զոր որեւէ յունագէտ Միաբանողի մը կրնայինք վերագրել։ Քերականական անճշդու-*

---

1 *Տես "Շար"* էջ 23–41, 45, 48 *եւն։*

2 *Տես անդ՝* էջ 45։

3 *"Գիրք որ կոչի Վէմ Գայթակղութեան, շարադրեցաւ Ցիլիայ Մինեադիսէ եպիսկոպոսէ Ֆալավիոլգացն վիճակի, ի խնդրոյ ուրումն իշխանի, եւ թարգմանեցաւ ի Յունաց լեզուէ ի Հայս ի Կոստանդնուպօլիս յամին Տեառն* 1767*, եւ այժմ տպագրեցաւ... յամի Տեառն* 1786*, իսկ ի Թուին Հայոց ՌՄԼԵ, ի Սանկտպետերբուրգ, ի տպարանի Խալդարեանց պարոն Գրիգորի" եւն։ Փոքր* 8° *էջք* 176։

4 *Տպագրութիւնն եղած է Մանիշարեանց Աստուածատրեան պարոն Մարգարին ծախիւք։ Օրինակը խաւրած է Տէր Սահակ արքեպ. Գեղամացի. "որ ըստ խնդրոյ մերոյ զգաղափարն գրքուկիս այսորիկ ուղղեալ ի սխալմանց գրչաց յղեաց առ մեզ ի Կոստանդնուպոլսոյ"։ Տես տպագրին "Յիշատակարանը"՝* էջ 169—172։

թիւններ եւ նոյն ժամանակի սիրուած կէս-գրաբար ձեւեր բազմաթիւ են.[1] շատ տեղ պարզ աշխարհաբար մը՝ գրաբար ձեւերու տակ:[2] Ռամկաբանութիւնք ալ պակաս չեն. օրինակի համար՝ (էջ 9) “զորս ջուխտակ տպեաց յունարէն եւ լատիներէն„ եւն, կամ (էջ 89) “յայսմիկ ծանարտակի, այսինքն արզուհալիս„, եւ նմաններ:[3] Ի մասնաւորի յոյն եւ օտար բառերն՝ որ պահուած են, եւ յատուկ անուններն՝ այնպէս փոխադրուած են որ շատ “անբանաւէր„ ոճ մըն է, այնպէս՝ ինչպէս ԺԸ. դարուն վերջերը կը սպասուէր. օրինակի

---

1 Օրինակի համար՝ էջ 3 “զպատճառն այսմիկ բաժանման„ (շատ յաճախ.) — 10 “ոչ ունէր հաւասարող խորհուն„ (իրեն), 20 “իւրեան նուիրեցին„ (շատ յաճախ.) — 45 “ոչ հաճի զանկումն Իգնատիոսի„. — 24 “ճանաչեցին„ (նոյն՝ 42, 55 եւն). 62 “ընկենանի„. 63 “սպանանեցաւ„. 93 “գտանեցաւ„. 105 “ընթեռնանի„. 122 “ոչ ընդունեցին արեւելցիքն„. — 19 “ձեռագիր„ հրաժարման (նոյն՝ 44 եւն.) 49 “զերկուս կողմունս„, 62 “ի պատրիարգարանոջն„, 66 “ի հատուածոյն„, 80 “ի միւս գործոյն„ եւն. — 79 “ճանաչեցին որ Փոտիոսն փի միանգամայն եւ ամենեւին ոչ ընդունի„, եւն եւն:

2 Հմմտ. էջ 14 “ամենայն կերպ միջոցաւ . . . բայց հանդիպեցաւ մի պատճառ„. — 19 “Փոտիոսն յայնժամ մեծ համբաւ ունէր„. — 21 “Ի վերջն ամենեցուն (ամէնէն վերջը) հաւանեցաւ„ (նոյն՝ 25, 39 եւն.) — 27 “զայրանայր որ ակամայ զինքն համարեցին պատրիարդ„. — 44 “մինչեւ որ իրաւամբ ճանաչիցի„. — 50 “առաքեցին վերակացուս որ վերատեսանիցի ի սկզբանէ անտի նիւթն„. — 64 “մանաւանդ որ շատ անգամ ընդդէմ իւրեան եղեալ զդարանման գիտէր„. — 74 “շարժեալ էր զամենայն քարինս„ (ամէն միջոց ի գործ դրած.) — 93 “մի այսպիսի մարդ„ եւն եւն:

3 Այսպէս՝ էջ 59 “Որոյ կարելի էր դիւրաւ ճկիլ յոր կողմն մինչ քարշիցեն„. — 71 “եւ զրուցեցին զպատուիրեալն„ եւն. — 52 “ի լինել վերավազութեան եւ արշաւանաց„ եւն (նոյն՝ 56.) թուականներէն՝ 34 “երեքհարիւր տասնեւութ„, 63 “թագաւորեաց . . . տասնեւհինգ տարի . . . եւ մէկ տարի„. 110 “ի տասնեւվեց եպիսկոպոսաց„, եւ նմաններ:

համար “գօղիոս„ (փոտ), “Իվճենիոս„ (Իւգինէոս, էջ 98 եւն). “Ըսիուայի Կոստանդիանոսն... Պոնտակյան Իրաքլայի փաւլոսն„ (էջ 51, Պաւղոս Հերակլեայ Պոնտոսի), “Յովհ. Բադուիքիոս„ (Պատրիկ, էջ 7—8 եւ յաճախ), ‘Նիքիդաս Բափլակոն„, էջ 6, 9 եւն) եւ շատ նմաններ:[1] Միով բանիւ վիհ մը կայ ասոր եւ Ագապետի մէջ: Պալատեցի՝ եթէ ինքն է թարգմանը, ամենեւին չի ցուցըներ հոս թէ մօքէն անցած ըլլայ այնպէս նմանիլ մեր յունաբաններուն լեզուին ամէն նրբութեանցն, ինչպէս է Ագապետի լեզուն:

Քիչ մ՚աւելի լաւ, բայց նոյն կարգի է միւս թարգմանութիւնն ալ որ իրեն կը տրուի, այսինքն Կիւրղէ Աղեքսանդրացւոյ “Բան վասն Էլման Հոգւոյ„ ճառն, որուն կից են Ոսկեբերանի երեք ճառեր ալ[2]:

1 Հմմտ. 29 եւն “Անաստասիոս Վիվլիօթիքարիոս„, 125 եւն “Լուղտուն„ քաղաք (Լուգդոն). 122 եւն “Պուլկարիստան„ (յաճախ.) նաեւ՝ 6 ‘‘Լեւոն Առմէնիոս„, 95 “ի Տրդատայ Թագաւորէն Ամէնաց„ եւն եւն: Փոխադրութիւններէն՝ 80 “ռէֆէնտառիոս„. 102 “քոմմոնիդառիոն„. 127 “պատերայից ... Ֆրանչիսքականաց„ եւն. 127 “չարժէ ...զըոլոր բուինքիեայսն Եւրոպայի ... Ֆռանչիսքեան Ֆռադորաց„ եւն. 129 “գործակցութեամբ Հօրն Յօհաննու Տեքառմայ գլխաւորին այսինքն ճէնէրալին Ֆրանչիսկանաց„. 154 “Մայիպուռակոս ճիզուիթն„. 167 “եղբայրն իւր Տիմիդրի տեսփօթին„, եւ անթիւ նմաններ:

2 “Ճառն Կիւրղի սրբոյ եպիսկոպոսի Աղէքսանդրու, ճառ վասն էլման հոգւոյ եւ համդերձեալ դատաստանին Քրիստոսի. անդրանկացեալ ի յունականէն ի հայ բարբառ, եւ տպեցեալ... ի Կոստանդնուպօլիս քաղաքի՝ հրամանաւ Նորին Սրբազան Պատրիարքի Տեառն Յակոբայ Աստուածաբան Վարդապետի, ի Թուին Հայոց 1209 (= 1760), փետր. ժ:„ Փոքր 8° էջք 104: Կը պարունակէ՝ էջ 3—38 Կիւրղի “բան վասն ելման հոգւոյ...: Երկնչիմ ի մահուանէ„ եւն. — 39-41 “Աղօթք Ս. Հօրն մերոյ Յօհ. Ոսկեբերանի, ի ժամանակի սրբազնասուրբ խորհրդոյ ճաշակմանն: Տէր Աստուած իմ, գիտեմ զի չեմ արժանի„ եւն: — 42-67

*Ասոնք միասին մէկ գործ կը կազմեն, ի վերջոյ ունենալով յիշատակարանս (էջ 104)՝ "Ողորմութեամբն Աստուծոյ Թարգմանեցեալ եղեն ճառքս յունմենէ բանասիրէ ընդ հովանեաւ Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյն:" Թէ կենսագիրն եւ Թէ "Մատենագիտութեան" հեղինակը Գէորգ Պալատեցին կը համարին Թարգմանը, որուն բնակութեան տեղն ալ նշանակուած կը կարծուի յիշատակարանին մէջ:*[1] *Արդ առնունք նախ Կիւրղի ճառը, եւ նոյն լեզուն կը գտնենք հոս ալ: Ամէն քայլափոխին կը գտնենք նշաններ եւ ակնյայտնի կը նշմարենք որ հին Թարգմանութիւն չէ, ոչինչ տարբեր ԺԷ—ԺԸ. դարու միւս Թարգմանութիւններէն: Հոս ալ անթիւ են հնոց անսովոր բառեր, բացատրութիւններ ու կազմութիւններ,*[2] *քերականական նոյն անճշդութիւնները,*[3] *նորագոյն լեզու, յաճախ*

---

*Ոսկեբ. "ճառ. յղ. Ապաշխարութեան . . . : Ցեսէք յառաջնում կիրակէի զպատերազմն եւ զյաղթութիւնն" եւն.* — 68–77 *Ոսկեբ. "ճառ առ այնոսիկ որք ի բաց կան ի ժողովարանէ: Որպէս սերմանողաց ոչինչ է օգուտ" եւն:* — 78—104 *Ոսկեբ. "ճառ ի յառակն որ վասն անառակին: Միշտ եղբարք զԱստուծոյ մարդասիրութիւնն քարոզել" եւն:*

1 *Ցես "Շար"*, 44: *"Մատենագիտ."* 304՝ *"երեք ճառեր Թարգմանութեամբ՝ ինչպէս հաւանական կ'երեւայ տիրացու Գէորգայ Տէր Յովհաննիսեան" եւն:*

2 *Հմմտ.* էջ 3 *"անկաշառամուտ դատաստան".* — 10 *"ժամն այն վտանգահոծ եւ բազմահեծեծական".* — 21 *"արդարքն [illegible], իսկ մեղաւորքն Թխանան".* — 25 *"կայծակնակուտակ մահիճքն".* — 31 *"առ ի [illegible] եւ ուռկանել զհոգին".* — 35 *"ոչ [illegible] գործոց" եւն: Հմմտ.* 19 *"տանջեցեալքն բառաջեն անմիջոցաբար" (անընդհատ.)* 26 *"գինեհարք վերատրշաւողք".* 18 *"Ո՞ւհ եւ ափսոս" եւն,* 35 *"սինակոկայն Հրէից" եւ նմաններ:*

3 *Ի միջի այլոց՝* էջ 3 *"որ անցանէ [illegible] [illegible] բեմին".* — 4 *"երկնչիմ ի տանջանաց [illegible] ունողէն զկատաբած".* — 9 *"զոր կանանց . . . վայելէն նոցին".* — 10 *"այլ*

*աշխարհաբար գրաբարի ձեւերու ներքեւ*[1], *եւ նոյն ռամկաբանութիւններ, օրինակի համար՝ "Զաւուրս եւ զամս իւրեանց մխեցին"* (*էջ* 27, *նոյն՝* 80 *եւն*,) *եւ նմաններ։*[2] *Շատ տեղ կարծես այնպէս՝ որ նոյն դարերուն որեւէ միջակ գրողի մը տպաւորութիւն կ'ընէ, մինչեւ անգամ մեր լատինաբան Միաբանողներուն լեզուին նոյնութիւն կը տեսնենք յաճախ*[3]*։ Միով բանիւ Ագապետի հետ համեմատութեան չենք կրնար բերել, որ բոլորովին ուրիշ շրջանի* (*Յունաբանաց*) *լեզուի ամէն յատկութիւններն ունի։ Նոյն են ճշդիւ նաեւ Ոսկեբերանի ճառերն ամէն կողմանէ։*[4] *Զարմանալի է որ ասոնք նոր*

*յայլում ժամանակի սակի չտեմարանեցի"*. — 15 *"ո՞ւր պարծեցեալքն ի բազմութիւն փափկութեանցն՝ աղքատաց ոչ ողորմելով, եւ զԱստուած արհամարհելով"*. 16 *"հոգւով բռնութեան խորտակեցին ապականելով" եւն.* — 18 *"տարտարոս անուանեալն, զոր եւ ինքն սատանայ դողայ"*. — 24 *"ի հուր ընկենանիլ"*. — 33 *"ի վաղիւն գողանեցան" եւն։*

1 *Հմմտ. էջ* 5 *"ուսուցեալ լինէի եւ ոչ ուշադրութիւն առնէի"*. — 10 *"տեսանիցէ եթէ զի՞նչ է որ լինելոց է իւրն"* (*իրեն. նոյն՝* 71 *եւն. տես՝* 87 *"մերձ գալ իւրն", այսինքն՝ իրեն մօտենալ,* 81 *"ծառայել իւրեանն", եւն.*) — 13 *"ոչ ոք է որ ոչ աղխարշատեսցի"*. — 15 *"ո՞ւր այնոքիկ որք աներկեղութեամբ ապրէին"*. (*կէին. նոյն՝* 75 *եւ յաճախ.*) — 29 *"վայ ականջադիր եղելոց", եւն եւն։*

2 *Ի միջի այլոց՝ էջ* 29 *"արդարեւ է ճանճառոր սատանայի զարդարեալն"*. (*գուցէ՝ "յանկաւոր"*.) — 36 *"սէր առանց երեսպաշտութեան"*. — 38 *"մի՛ ուրեմն ուրախացուսցուք զանսուրբ դեւսն"* (*դեւս*), *եւ նմաններ։*

3 *Տես օրինակի համար էջ* 71 *եւն։*

4 *Ահա քանի մ'օրինակներ ասոնցմէ ալ՝ զորոնք ըստ այսմ նախընթացներուն վրայ աւելցընելու է։ Քերականական ձեւեր՝ էջ* 42 *"բանսարկուն զի՞ նոցանէ հարուածոցն ոչ եղեւ տարող"*. — 45 *"նա գիտակ է զամենայն"*. — 46 *"զպատիժն նմա վէր եած"*. — 62 *"բանքն զիրն յաղթեցին"*. — 63 *"զաշխատանս ոչ հայի"*. — 86 *"զձեռս յաճախակի իրեարս բաղխելով"*. — 96 *"զի հնչումն իմն շուրջ ականջօքս իմովք բաղխէ". Հմմտ.* 44 *"բարեբարոյ լեր շուրջ*

*թարգմանելու հարկ տեսնուած է. քանի որ կե-
ցած էր նախնեաց ընտիր թարգմանութիւնը,[1] մին
մանաւանդ՝ ոսկեղէնիկ լեզուաւ։ Թէրեւս թարգ-
մանչին ծանօթ չէին այս ճառերը նախնեաց թարգ-
մանութեամբ, թէեւ Պալատեցւոյ պէս անձի մը
համար՝ որ այնչափ զբաղած էր հնոց ձեռագիրնե-
րով, անհաւատալի կրնայ երեւալ։ Զխարդ եւ իցէ՝
անցնինք ուրիշ կէտի մը, որ կապ ունի այս
գրքին հետ։*

*Զարմանքով կը կարդանք Պալատեցւոյ
թարգմանութեանց շարքին մէջ նաեւ "Գիրք Պա-
րապմանց Ս. Կիւրղի եպիսկոպոսի Աղեքսանդրու,
յղ. մարդանալոյ Միածնին, որ անդրափոխեալ է
ի Յունականէն ի Հայ բարբառ՝ Գէորգ-Դպիրն, եւ
հրամանաւ Սրբազան Պատրիարքի Տեառն Յակով-
բայ Աստուածաբան վարդապետի՝ տպուած ի Կ. Պո-
լիս, ի թուին Հայոց* 1209 (= 1760), *փետր.* 10։"[2]
*Վերջին մասը կը ցուցընէ որ շփոթութիւն մ'ըլլա-
լու է։ Այս ամէնը ճիշդ նոյն է՝ մինչեւ անգամ
ամսոյն թուականը՝ նախընթաց գործքին հետ, որ
Կիւրղի ճառն էր, բայց անոր "բան վասն ելման հոգւոյ"
ճառը, ո՛չ թէ Պարապմունքը։ Ստուգութեան կը
փոխուի այս կէտը, երբ կը կարդանք թէ "Ս. Կիւրղի
այս գրուածին հետ երանելւոյն Յովհաննու Ոսկե-*

---

զմեղօքդ"։ — Կամ՝ էջ 52 "ծանուցեալ զմեղսն" (Նոյն 80 եւն.) — 55 "շունչքն լեղակեցեն (լիզեսցեն) զարիւն քո" եւն. (Նոյն՝ 56։) — Ռամկականք՝ էջ 45 "Կային սպան զեղբայր . . . նախանձուք, այնպէս որ նախանձուն հետեւեալ եղիցի սպանութիւնն". — 52 "զանկուածն եւ ընկէնքն (հինել, նիւթել) քաշել սկսաւ". — 71 "այսոքիկ տուրեւց" (ուսկից։) Հմմտ. 65 "որ շուրջ զմարմնովն հարեւանցի զգեստաւորեալ", եւ շատ նմաններ։

[1] Տես Ոսկեբ. "Ճառք", տպ. Վենետ. 1861, էջ 46–56, 69–71 եւ Ոսկեբ. Մեկն. Պաւղ. (Վենետ. 1862), Հտր. Բ, 684—695։ Ոսկեդարեան լեզուաւ է առաջինը։

[2] Այվազեան "Շար", 43–44։

բերան Հայրապետի երեք ճառերն„ ալ թարգմանուած են, որոնց յիշատակարանն ալ յառաջ կը բերուի։ Ուստի Նախընթաց գիրքը շփոթուած է Պարապմանց հետ։ Ըստ ինքեան ալ անհաւատալի էր որ Պալատեցի ձեռնարկէր Հայոց հանրածանօթ Պարապմանց գիրքը, որ թարգմանուած էր արդէն Սիւնեցիէն եւ որուն Լուծմունք ալ գրած էր Գր. Տաթեւացի, կրկին թարգմանելու։ Թէ՛ բնագիրն եւ թէ՛ Լուծմունքը տպուած ալ էին Կ. Պոլիս Պալատեցւոյ ծննդենէն 20 տարի յառաջ՝ 1717ին Պաղտասար դպրէն։[1]

Այս շփոթութեան պատճառն ըլլալու է "Մատենագիտութեան„ տեղեկութեանց սխալ հասկցուիլը։ Վերջինս յիշելով լոկ Կիւրղէ Պարապմունքը՝ յարակից դրած է Կիւրղի յիշեալ ճառն թարգմանութեամբ Պալատեցւոյն.[2] եւ թէեւ ուրիշ տեղ մը լաւ նշանակած է Պարապմանց գիրքն ալ մանրամասնութեամբ,[3] երրորդ տեղ մը դրած է հետեւեալը.[4] "Գիրք Պարապմանց Ս. Կիւրղի եպիսկոպոսի Աղեքսանդրու հայրապետի, յաղագս մարդանալոյ Միածնին եւ Գրիգորի աշակերտի Յովհաննու Որոտնեցւոյ քաջ հռետորի, աշխատասիրեալ ի լուծումն Պարապմանց Ս. Կիւրղի, ի խնդրոյ տեառն բանասէրի Գէորգեայ Նորին հարազատի. Կ. Պոլիս. (անթուական։)„ Հարեւանցի ըսենք որ ո՛չ անկախ տպագրութիւն մըն է այս եւ ո՛չ անթուական. այլ

---

1 Գիրք Պարապմանց (էջ Ա—ԺԷ. Յուշք. Պաղտասարի, ցանկ եւն), տպ. Կ.Պ. 1717. 8° էջք 799 (ԷՃՂԹ։) Յիշատակարանը կ'ըսէ՝ "տպեցեալ աւարտեցաւ սուրբ Գիրք Պարապմանց Ս. Կիւրղի եւ Լուծմանց նորին, ի ՌՃԿԶ կալուածի արամազնեանս տոմարի ... Ը. աւուրցն փետրվարի, ի տպարանի Կարապետի որդի ... Աստուածատրոյ, ի Կոստանդնուպօլիս քաղաքի„ եւն։

2 Տես "Մատենագիտ.„ 304—5։

3 "Մատենագիտ.„ 575։

4 Անդ՝ "Մատենագիտ.„ 133։

*Պարապմանց գրոց* 1717*ի տպագրութեան երկրորդ մասն է՝ Նախընթացին հետ մէկ ամբողջութիւն կազմելով։*[1] *Ակնյայտնի կ'երեւայ որ* Կենսագիրը՝ *գրքերն աչքին առջեւը չէ ունեցած, եւ այս տեղեկութիւնը կցելով Նախընթացին* (Կիւրղի *Ճառ Ելման*), *հետեւցուցած է անկէ Պալատեցւոյ Պարապմանց գիրքն ալ թարգմանած ըլլալը, մանաւանդ որ հոս ալ կը կարդացուի հռչակաւոր "ուրումն բանասիրի" խօսքն՝ յարակից ունենալով նոյն իսկ "Գէորգ" անունը բացայայտ։*[2] *Սակայն այս շատ լաւ օրինակ մըն է ցուցընելու որ շատ դիւրին է այսպիսի "բանասէր" եւ նման վերադիրներէն շփոթիլ։ Այս "բանասէր Գէորգը" դարերով հին է քան զՊալատեցի. եւ է այն՝ զոր Գրիգոր Տաթեւացի իւր հարազատն եւ համշիրակը կը կոչէ, որուն խնդրանօք գրեց* 1391*ին իւր յիշեալ Լուծմունքն Պարապմանց գրոց՝ ինչպէս յիշատա-*

---

1 *Պաղտասար դպիր նախ դրած է Պարապմանց գիրքը՝ քանի մը յարակիցներով եւ Խաչատրոյ վարդապետի յիշատակարանով.* (էջ ԺԹ–ԵՃԺԸ։) *"Առ ընթերցօղսդ" ազդը* (էջ ԵՃԺԶ) *կ'իմացընէ որ "վասն Բնաբանին եւ Լուծմանց ի միում տփի լինելոյ" վերջինս ալ միասին տպած է. եւ արդեամբք կը յաջորդէ* (էջ ԵՃԺԹ–ԷՃԼ) *"Գրիգորի աշակերտի Յովհ. Որոտնեցւոյ քաջ հռետորի, աշխատասիրեալ... ի խնդրոյ ուրումն բանասիրի, Գէորգայ Նորին Հարազատի"* (*ճիշդ վերնոյն պէս*) *եւ յիշատակարանով Տաթեւացւոյն ուղղուած նոյն Գէորգայ։ Կը յաջորդեն տպօղին կրկին Յիշատակարաններն* (էջ ԷՃԼԱ–ԷՃԼԹ), *որոնց առաջինը կը ներկայացընէ այն ձեռագիրն՝ որմէ եղած է տպագրութիւնը, այսինքն Էջմիածնի մէկ օրինակն "որ ունէր յինքն ի միում տփի երիս գրեանս, զԳանձուցն եւ զՊարապմանցն եւ զԼուծմունսն նորին" եւն։*

2 *Այս կէտը կը հաստատուի անկէ ալ որ Կենսագրին յառաջ բերած խորագիրը ճիշդ նոյն է այս գրքին եւ Նախընթաց* (*Ճառ Ելման*) *գործոյն վերնագիրներուն հետ, որ իրարու ձուլուած են, եւ մէջը մտած "Գէորգ-Դպիրն" անունը։*

կարանն ալ կ'ըսէ,[1] եւ 1387ին իւր "Փոքր Հարցմունքը։"[2] Գէորգ Երզնկացին[3] է, որ նաեւ՛ իբր մատենագիր բաւական ծանօթ է։ Հ. Գ. Զարբհ. իրեն կ'ընծայէ "բաց ի քանի մը մանր գրուածքներէ... Աստուածաբանի գրոց Լուծմունքը, եւ Յովհաննու աւետարանչի Յայտնութեան Մեկնութիւն մը։"[4] Առաջինը կամ "Առ որս" գրոց լուծմունք՝ թէեւ դժբախտաբար կիսատ՝ ունինք 1444ին գրուած ձեռագրի մը մէջ։[5] Իւր "խրատ մկրտութեանը՝" ուրիշ ձեռագրաց մէջ "Գրիգորի Եզնկացւոյ" անուամբ է. միւս գրուածքներէն ալ քանի մ'աննշան բան ծանօթ է, եւ ընդհանրապէս համանուն Գէորգ հեղինակներուն՝ որոնց մէջ նշանաւորագոյնն է Սկեւռացին, այլեւայլ գրութիւնք շատ անգամ իրարու հետ կը շփոթուին։[6] Բայց այս կէտը մեր ծրագրէն դուրս է։

---

1 Տես տպ. 1717, էջ՝ ԷՃՀԴ–Զ։ Նոյնը յառաջ բերած ենք ուրիշ տեղ մը՝ "Ցուցակ", էջ 454։

2 Տես նաեւ Տաթեւացւոյ "Գիրք Հարցմանց", Կ.Պոլիս ՌՃՀԸ (= 1729), զոր գրած է Տաթեւացի 1397ին "ի խնդրոյ [illegible] Աստմի"։ Վերջը կը կցուի (էջ 773–789) "Հարցմունք Գէորգ Վարդապետի եւ Լուծմունք Գրիգորի Նորին Հարազատի։"

3 Տես նաեւ Ալիշանի "Սիսական", էջ 239։

4 "Պատմ. Հայերէն դպրութեան", Հատ. Բ. Նոր Մատենագրութիւն. (Վենետ. 1878.) էջ 219։ Զամչեան (Պատմ. Գ, 452) կը գրէ "Յաւուրս սորա էր եւ Գէորգ Վրդ. Երզնկացի, զոր յիշեցաք (Գ, 426 տեսութիւն Լանկթամուրի հետ.) սա արար զլուծմունս գրոց Աստուածաբանին որ ասի "Առ որս." եւս եւ քարոզս պէսպէս. գրեաց եւ խրատս առ անսխալ գործածութիւն Մաշտոցի ըստ կարգելոյ նախնի սուրբ հարց, արար եւ զայլ պէսպէս գրուածս. սմա ընծայեն ոմանք եւ զմեկնութիւն Եսայեայ բայց այլոյ է այն, ըստ որում յիշեցաք." (Գ, 169 Գէորգ Սկեւռացի։)

5 Ձեռագր. մեր Մատ. Թ. 151, տես "Ցուցակ", էջ 455։

6 Այսպէս բազմաթիւ համանուններ տես "Ցուցակ", 1071–2. յատկապէս Սկեւռացւոյ մասին՝ "Սիսուան", 103–6

Մեզի համար կարեւորագոյն կէտն էր ցուցընել որ "բանասէր„ եւ նաեւ "բանասէր Գէորգ„ անհրաժեշտ Պաղատեցին ըլլալու պէտք չկայ. այլ դարերով ալ յառաջ նոյնպէս յորջորջուած են ուրիշ մատենագիրներ ալ։ Ակամայ կու գայ նաեւ հետեւեալ խորհրդածութիւնը։ Պաղատեցին՝ որ նոր խմբագրած ու տպագրած էր Ագապետոսը, տեսանք որ մէջին ակնարկութիւններ ըրած էր թարգմանութեան մասին, եւ որոնց ուրիշ մեկնութիւն տալու կարելիութիւնը ցուցուցինք։ Արդ նախընթացէն կրնայ հետեւցուիլ թէ Պաղատեցին թերեւս անով տեղեկութիւն մ՚ուզած ըլլայ տալ Ագապետի թարգմանութեան մասին, տեղեկութիւն՝ որուն ակնարկութիւն մը թերեւս գտած էր այն ձեռագրին մէջ, որմէ գաղափարած էր իւր Ագապետի օրինակը։ Այս կերպով Պաղատեցւոյն խօսքերն իրմէ դարերով հին անձի մը վրայ կրնան առնուիլ եւ հաւանօրէն առնելու է, այսինքն սա խօսքը՝ "յեղեալ ի յունական լեզուէ ի հայկական բարբառ, աշխատութեամբ ուրումն բանասիրի„։ Այս բանասէրն աւելի մերձաւոր ալ կրնանք նշանակուած գտնել յիշատակարանին խօսքերովս՝ "Մշակ (= Գէորգ, տես վերը) ոմն՝ գուշակ եղեալ աշխատեցաւ ըստ կարի, եւ Աստուծոյ Փրկչին կամօք յառաջ բերաւ այս բարի. առա տենչիւ առն միոջ բարեսիրի փղեցա„ եւն։ Խօսքին կերպը յայտնի կը ցուցընէ տպագրող "բարեսէրը„ շատ ուշ ժամանակի ("ապա„ եւն) անձ է քան նոյն բարին՝ կամ Ագապետոս՝ "յառաջ բերողը„, թարգմանողը կամ թերեւս նաեւ կրկին ծանօթացընողը, որ Գէորգ Բանասէր "ոմն„ էր, եւ որուն աշխատութիւնն ապարդիւն չէր, վասն զի՝ ինչպէս "գուշակ եղած„ էր՝ յետոյ գնահատող ալ գտնուեցաւ եւ տպագրութեամբ ընդհանրացաւ։

Իբրեւ պարզ ենթադրութիւն կը դնենք այս մեկնութիւնը. վասն զի այլեւայլ կէտերը կրնան

խնդրական ըլլալ, եւ զանազան առարկութիւններ հանուիլ։ Բայց եթէ ենթադրութիւնն ուղիղ համարուի, ստուգիւ մեծ բան մը շահած կ՚ըլլանք, կերպով մը Ագապետի "յառաջ բերողին„ անունը տեղեկացած ըլլալով։ Սակայն նաեւ այս դէպքիս՝ ո՞վ էր այն "բանասէր Գէորգը„՝ համանուն այնչափ անձանց մէջ․ վասն զի բնական է որ Տաթեւացւոյ Երզնկացի Գէորգը "բանասէր„ կոչելով միայն չենք կրնար անմիջապէս զինքը մատնանիշ ընել, քանի որ չենք գիտեր նոյն իսկ թէ Երզնկացին գիտէ՞ր արդեօք յունարէն՝ Ագապետի նման գրեթէ դասական գործ մը թարգմանելու չափ։ Եթէ ստուգիւ Գէորգ մը պէտք է փնտռել, մենք կ՚ախորժինք փնտռել աւելի այն տեղերն՝ ուր Բիւզանդեան դպրոցք կ՚իշխէին, եւ այն ժամանակներն՝ երբ յունաբանութիւնն ի ծաղկի էր, օրինակի համար Մագիստրոսի օրով, որ՝ միջանկեալ ըսենք՝ իւր յունաբան նամակներէն մին ուղղած է Գէորգ Վարդապետի մը։[1] — Բայց այս ամբողջին դէմ գլխաւոր առարկութիւն մը կրնայ հանուիլ․ այն թէ նախ ա՞յս բանս կ՚ուզէր հասկըցընել Պալատեցին յիշեալ՝ յամենայն դէպս ոչ պայծառ՝ խօսքերով․ եւ եթէ այս՝ ստուգիւ հին ձեռագիր-գաղափարէ՞ մը քաղած էր այն տեղեկութիւնը։ Այս կէտն եթէ լուսաւորելու յոյս մը կայ, միայն Պալատեցւոյն այն ձեռագրէն կրնայ ըլլալ, որ ինչպէս կ՚աւանդուի՝ Ս․ Խաչի թանգարանը կը պահուի։

Վերջնոյս մասին կը գրէ Այվազեան․[2] "յիսակիւտար՝ Ս․ Խաչ եկեղեցւոյ թանգարանին մէջ կը գտնուին Գէորգ-Դպրի ձեռագիրներէն՝ 1․ 1783ին

---

1 Տես "Ցուցակ„, էջ 159 եւ այլուր։ Մագիստրոս այս Գէորգ Վարդապետէն կը խնդրէ Երեմիայ Մեկնութեան գիրքն Աստղկայ։

2 Տես "Շար„, 47։

ի Հելլէնականէն գրաբար ճոխ եւ ընտիր լեզուաւ թարգմանած Սիմէոնի Մագիստրոսի Յաղագս Զօրութեանց Կերպեաց երկն։ 2. Աղաֆիտոս. (յունարէնէ թարգմանութիւն։) 3. Պարմենիդեան Տրովադայի. (յունարէնէ թարգմանութիւն։)„ Վերջինս եւ քիչ մ'եաքն յիշուած "Դիւցաբանութիւն մը ի յունարէնէ թարգմանեալ„ նոր գործեր ըլլալու են։ Առաջինը կամ Սիմէոն Մագիստրոսի գործոյն թարգմանութիւնը մեզի այլուստ անծանօթ եւ անմատչելի է, ուստի ոչինչ կրնանք ըսել. 1783 թուականն անշուշտ գրչութեան տարին է։ Կը մնայ "Աղափիտոս„, որ այնպէս Հարեւանցի յիշատակուած է, մինչեւ մտածել կու տայ թէ կենսագրին մատչելի եղած ըլլալու չէ բուն ձեռագիրն։ Եւ սակայն շատ կարեւոր էր տեղեկութիւն ունենալ ճիշդ այս ձեռագրին մասին, որ Պալատեցւոյն գրչութիւնը կ'ըսուի, եւ որ թերեւս այլեւայլ մթին կէտերու լուսաւորութիւն մը տայ։ Բաղձալի էր նաեւ Վենետկոյ եւ ուրիշ ձեռագրաց մասին՝ որ անշուշտ կան, տեղեկութիւններ ունենալ. յաճախ գրչութեան մը թուականն ու անիշան համարուած յիշատակարան մ'անգամ մեծ լոյս կը սփռէ բանասիրական այսպիսի խնդիրներուն մէջ։

Պալատեցին ըստ այսմ այլեւայլ կերպով կապ մ'ունի Ագապետի հետ, ո՛չ միայն յիշեալ գրչութեամբն Ս. Խաչի, այլ նաեւ տպագրութեամբն՝ որ նոր խմբագրութիւն մը կը ցուցընէ, որուն խմբագրիչն ալ հաւանօրէն ինքն էր։ Այս ամէնը համաձայն է մեր ուրիշ կողմանէ ալ իր մասին ունեցած տեղեկութեանց։ Պալատեցին շատ զբաղած է ձեռագիրներով, համեմատած այլեւայլ տպագիրները՝ մաս մը սրբագրած ձեռագրաց համեմատ եւ նաեւ հրատարակած, ուրիշներու մասին երկրորդական աշխատութիւններ կատարած՝ յօրինելով ցանկեր, բառացուցակներ եւ նմաններ։[1]

[1] Այսպէս խօսրովայ Անձեւացեաց գործոյն համ.

Բայց ճիշդ այս պարագան եւ այն՝ որ հռչակուած էր իբրեւ հմուտ եբրայեցի, պարսիկ, արաբական, յոյն եւն լեզուաց, առիթ եղած է վերագրելու իրեն գործքեր ալ որ իւրը չեն։ Մէկ երկու բան տեսանք արդէն. հոս կը յիշենք երկու գործ ալ, եւ առով կը կնքենք այս մասն՝ որ մեր բաղձացածէն աւելի երկարեցաւ։ Կենսագիրը կը գրէ՝ "Ատոնցմէ զատ, Նոյն (Ս. Խաչի) Թանգարանին 1817 Թուականի կնիքը կրող ընտրելագոյն մի ձեռագիրն՝ Չէ–նաղըննո–ընի–ն անուամբ, որ ձեռնահմայութիւն կը հասկըցուի, ոմանք Գէորգ-Դպրի կը վերագրեն։" Բայց այս կարելի չէ։ Եթէ ձեռագիրն իւր գրչութիւն կ՚ուզուի համարիլ, անհնար է անոր համար որ ինքն արդէն 1812ին վախճանած էր.[2] իսկ եթէ իբր թարգմանիչ՝ աւելի եւս սխալ է։ Ասիկա մէկ մասն է միայն "Ճօան-Պաթիսթայ Փոռթայ" անձին գործին, զոր համառօտած է "Ֆռանչիսկոս Սթէլլութի" եւ թարգմանած "Յովհ. Վրդ. Կ. Պոլսեցի", եւ որ յաճախ կը գտնուի։[3] Ճիշդ այս Ս. Խաչի ձեռագրին եւ թարգմանչին

մատութիւնը (մեր Մատ. Թ. 22) Պալատեցւոյ յիշատակարանով (տես "Ցուցակ" 134—8.) Վաստակոց գրոց "Լուծումն բառից" (մեր Մատ. Թ. 281), զոր Ալիշան Պալատեցւոյ կ՚ընծայէ (տես "Ցուցակ" 706.) "Դրախտ ցանկալի" գրոց վկայութեանց համարները. (տես "Շար" 45.) Ագաթանգեղեայ 1770ի տպագրութիւնը համեմատ Ամթայ ձեռագրին. ("Շար" 42—3) եւ նմաններ։

1 Տես "Շար"․ 48։

2 Տես նոյն իսկ Պալատեցւոյ դամբանագիրը ("Շար" 66՝) "Վախճանեցաւ 75 ամաց, ի Թուին Հայոց ՌՄԿԱ" (= 1812)։ Գէորգ Դպիր Տէր-Յովհաննիսեան Պալատեցին ծնած էր 1737ին։

3 Տես ընդարձակ "Ցուցակ", 668–9 (մեր Մատ. Թ. 262.) ուրիշներ՝ անդ 1110, ի միջի այլոց տեսանաեւ Էջմիածնի ("Մայր Ցուցակ", էջ 52) Թ. 871 գրուած ՌՄՁԵ (= 1736) Թուականին, նոյնպէս Պալատեցւոյ ծննդենէն յառաջ։

(Յովհ. Հոլով) նուիրած է Տքր. Վ. Յ. Թորգոմեան երկու յօդուածներ։[1] — Նոյնպիսի սխալ գաղափար մ'ունեցած էինք մենք ալ, երբ մեր Մատենադարանին Թ. 105 խառնակ ձեռագրին մէջ գտնելով կիսատ գործ մը՝ որ բաց յայլոց՝ եբրայական լեզուի հմտութիւն կը ցուցրնէր, համարած էինք "անցեալ դարու վերջերէն թարգմանութիւն մը", եւ մէտ էինք Պալատեցւոյ ընծայելու։[2] Այժմ գիտենք որ Պալատեցին գործք չունի հոս ալ։ Այն գործը տպուած է արդէն 1716ին, ուստի Պալատեցւոյ ծննդենէն ալ յառաջ, եւ այն՝ այնպիսի խորագրի մը ներքեւ՝ ուր դժուարաւ կրնար մէկը փորձուիլ մեր ձեռագրին պարունակածը գտնելու փորձ մ'ընել։[3]

---

1 Ս. Խաչի ձեռագրին մասին յօդուածը տես "Հանդէս,, 1893, էջ 280–3. Յովհ. Վրդ. Կոստանդնուպոլսեցւոյ մասին՝ անդ 1893, էջ 369–370։ Առաջին յօդուածին մէջ հետաքրքրական տեղեկութիւն մը կը տրուի, այն թէ Ս. Խաչի հաւաքումն ծախսացընողներէն եղած է Տիրացու Մարտիրոս, "որ 1779էն մինչեւ 1789 շատ մը ձեռագիր հատորներ, մանաւանդ Գէորգ Պալատեցւոյն գործերն, անձամբ ընդօրինակելով նուիրած է Ս. Խաչ դպրոցին։,, Կրնայ ըստ այսմ կասկածուիլ որ Ագապետի ձեռագիրն ալ նոյն Մարտիրոսի գրչութիւն ըլլայ պարզապէս։

2 Տես "Ցուցակ,,, 379 եւ 1071։

3 Գիրքն է՝ "Պօփլէրաուէր Պօփլէրաթեաց. Սէր է հօմայեանօրեան պօփլէրօց. Նուիրեալ եւ տեառնագրեալ Ջուղայեցի Գիլանենց ի Տէր Հանգուցեալ Սարգսի որդւոյ Պետրոսին ... յօրինեալ երկասէր եւ տպագիր աշխատանօք Ղօռլսաաա Դօպրէ Վանտպեյգաւոյ, յամի Տեառն 1716 եւ ի թուին Հայոց 1165, յԱմստրդամ։,, Փոքր 8⁰ էջք 448 (վերջը կիսատ), երկմասնեայ։ Մեր ձեռագիրը (Թ. 105, Թղ. 23բ) կը սկսի Առաջին մասին որեւէ տեղէ մը. տպագրին՝ էջ 131 կէսէն։ Առանձին խորագիր ունի Բ. մասն իբր ուրոյն գործ, այսինքն՝ "Փօռա ւ Պօյծաաաօտայ Փօռաահեղօրեան Ցէասաօէ Քրէսօսօէ արիաբար բացայայտեալ,, եւն (= մեր ձռգր. Թ. 105, Թղ. 31–108) ճիշդ նոյն գլուխներու եւ պրակներու

Բաւական համարինք այսչափն ալ, որ կը յուսանք համոզեց զմեզ թէ պէտք չէ որեւէ մթին եւ անորոշ յիշատակութեան մը համեմատ հնութեան ամէն երեւոյթն ունեցող գործ մը վերագրել նոր թարգմանի մը, առանց համոզիչ փաստերու։ Թէ Պալատեցւոյ համար պիտի գտնուէին արդեօք այսպիսի համոզիչ ապացոյցներ՝ զինքն Ագապետի բուն թարգմանը համարելու, չենք գիտեր, թէեւ չենք ալ կարծեր, ինչպես մինչեւ հիմայ ցուցուցինք։ Նուազ կարեւոր ապացոյց մը չէ մեզի համար նոյն իսկ տպագիրն, որուն բնագրին մասին մեր դիտողութիւնք պիտի ընենք յաջորդովս, որով եւ Ագապետի լեզուին համառօտ քննութեամբ մը պիտի փակենք մեր ուսումնասիրութիւնը։

## 6.

Կը մնայ վերջին կէտ մը լուսաբանել, որ նուազ կարեւոր չէ քան նախընթացն եւ մասամբ շարունակութիւն անոր։ Կրկնեցինք որ Ագապետոսի տպագիրը, զոր հոգացած է Գէորգ Դպիր Պալատեցին, հայ բնագիրը նոր խմբագրութեամբ՝ կրնանք մասամբ ըսել նոր թարգմանութեամբ՝ կը ներկայացընէ։ Արդ այս կէտը կ'արժէ քիչ մ'աւելի մանրամասն տեսնել. վասն զի ասով հաստատուած կ'ըլլայ նաեւ այն մեծ խտիրը որ կայ մեր ձեռագրին եւ տպագրին մէջ։ Ցընթացս այս քննութեան ստիպուած ենք նաեւ ի նկատի առնուլ Ագապետի բնագրին լեզուն, որ՝ թէեւ յինքեան ինքնակաց խնդիր մըն է, սերտ կապ ունի տպագրին հետ ալ,

---

բաժանմամբ. (տպ. էջ 177–448։) Տպագիրը վերջը Ն. գլխուն ԻԲ պրակ մ'ալ ունի, որ կիսատ կը մնայ 448 էջով։ Մեր օրինակին վերջը նշանակուած է՝ "Ուրիշ 2 օրինակք եւս այսպէս (կիսատ՝ 448. էջով) կը վերջանան։ Հ. Գր. (Գալէմքեարեան։)"

քանի որ վերջինս հիմնական եւ դիտուած փոփոխութիւններ կը ցուցընէ նաեւ լեզուին նկատմամբ: Երկու տարբեր խնդիրներ են ըստ այսմ, որ հոս մեր ուսումնասիրութեան վերջին մասը կը կազմեն, բայց երկուքն ալ գոնէ տեսակէտով մ'իրարու հետ սերտ կապ ունենալով, միասին կ'առնուին ի նկատի: Բայց կանխելու ենք ըսել որ երկու կէտն լիապէս եւ ամենայն ամբողջութեամբ հետազօտելու միտք չունինք, այն պարզ պատճառաւ որ շատ բան զուտ կրկնութիւն մը պիտի ըլլար: Տպագրին տարբերութիւնքն զատ դրուած են մեր հրատարակութեան կից, ուստի ամբողջութեամբ հոն կրնան տեսնուիլ: Հոս միայն այն մասերը յառաջ կը բերենք, որոնք կրնան մեզի նպաստել ցուցընելու թէ ինչ նպատակաւ եղած են այն փոփոխութիւնքն: Լեզուի մասին ալ շատ բան արդէն առիթ ունեցանք նշանակելու յընթացս մեր գրութեան. այլեւայլ ուրիշ կէտեր պիտի նշանակենք յաջորդաւս, իսկ մնացեալը կրնայ մի առ մի համեմատուիլ եւ տեսնուիլ մեր հրատարակութեան կից Ծանօթութեանց մէջ, ուր նշանակած ենք յոյն բնագրին հանդէպ տեսնուած ամէն զարտուղութիւնքն եւ յոյն համեմատականները[1]:

Նախ պէտք է այս տարբերութիւնները տեսնել, ոչ թէ իւրաքանչիւրը մի առ մի՝ որ պարզ կրկնութիւն կ'ըլլար, այլ քանի մը գլուխներ դէմ առ դէմ համեմատուած: Շատ աւելի պայծառ գաղափար մը կու տայ այս տեսակ համեմատութիւն մը քանի մ'ամբողջ գլուխներու, քան ամէն մի փոքրիկ զարտուղութիւն մի առ մի նշանակելը:

---

1 Լեզուի մասին ուր պէտք ըլլայ նշանակել թէ յիշեալ բառը կամ բացատրութիւնը սովորական է միւս յունաբան հեղինակներուն եւ թարգմաններուն, փոխանակ զուր տեղ երկար կոչումներ ընելու՝ կը նշանակենք պարզապէս ՀԲ (— Հայկազն. Բառգիրք), ուր կրնան նոյն վկայութիւնք տեսնուիլ:

*Համեմատութեան առնուած են թէ՛ այնպիսի գլուխներ որ մեծ փոփոխութիւն կը ցուցընեն, եւ թէ՛ ուրիշներ՝ որ համեմատութեամբ քիչ փոխուած են։ Ահա քանի մը գլուխ մեր ձեռագրին եւ տպագրին՝ դէմ առ դէմ.*

*Ձեռագիր:*

1. (ԼԴ.) Որպէս ոսկի երբեմն երբեմն այլապէս յարուեստէն փոխաձեւացեալ, եւ առ1 տարբեր տեսակս զարդարանաց յօրինեալ, մնայ որ ինչ է եւ փոփոխումն ոչ կրէ. սոյնպէս եւ դու, ով բարեշուք թագաւոր, զայլ զկնի այլոյ յաջորդեալ զպետութիւն. եւ ժամանեալ յայդ վերնագոյն պատիւ. դու ինքն հաստատուն մնաս, անայլայլելի ունելով զմտախոհութիւնդ։

*ՏՊ. (Տպագիր:)*

1. Որպէս ոսկի երբեմն այսպէս երբեմն այլապէս յարուեստէն փոխաձեւացեալ, եւ ի զանազան1 տեսակս զարդուց յեղյեղեալ, մնայ որ ինչ է, եւ փոփոխումն ոչ կրէ. սոյնպէս եւ դու ով բարեշուք թագաւոր, զայլ զկնի այլոյ փոխելով թագաւորութիւն, եւ ժամանեալ յայդ վերնագոյն պատիւ, դու ինքն մնաս ի նոյն իրողութիւնսն2, անայլայլելի ունելով ի բարին զմտախոհութիւնդ։

---

1 Ագապետի յունաբանութեանց մին է գրեթէ միշտ πρὸς նախադրութեան դիմաց "առ" նախադրութիւնը գործածելը թէեւ անյարմար, ինչպէս հոս "առ տարբեր տեսակս" եւն։ Տպագիրը միշտ ուղղած է՝ "ի"։ Նոյն կարգի են "ոչ առ ամբարտաւանութիւն ի վեր ամբառնիլ" (տես ԺԳ, 5, ՏՊ. "ոչ յամբարտաւանութիւն . . .") — Խ, 1–2 "ոչ առ յանդգնութիւն հակիցի, այլ առ հաւասարութիւն հայիցի" (ՏՊ. "ոչ ի յանդգնութիւն հակիցի, այլ առ կարեկցութիւն հայեսցիս" ուստի վերջինը մոռցած սրբագրել.) — ԿԲ "առ վերին օգնականութիւն" (ՏՊ. "ի վերին . . .") եւ շատ նմաններ։

2 Այս "ի նոյն իրողութիւնսն" եւ յաջորդ "ի բարին" յոյն բնագրին համեմատ են։ Ձեռագիրն ինչպէս նշանակեցինք հոս կամ աղաւաղութեամբ կամ նման պատճառաւ՝ թերի ունի այս բառերը. (տես ԼԴ, 5։) Պալատեցին կամ ՏՊ. լրացուցած է պակասը։ — Ծանօթ ուրիշ թերոյթ մ'ունի ձեռագիրը՝ Գ, 1 "Աստուածային ուսումն եւ առաջին՝ մարդիկս, ճանաչել ումեք զիւր ինքն, ճանաչէ

2. (ԼԶ.) Զի զիշխանութիւն թագաւորութեանն առնիցես հուչակելի, որքան ունիս ընդդէմ մեղուցելոցն հպատակաց բարկութիւն, այնքան ունել եւ ընդդէմ յանցուցելոյն քեզ ինքեան[1] համարեա։ Քանզի ոչ ոք զօրէ այնքան զօրեղ իշխանութեամբն կրթել[2], եթէ ոչ բան ընտանի[3] որ ի նոյն

2. Զի զիշխանութիւն թագաւորութեանն առնիցես հուչակելի, որքան ունիս ընդդէմ մեղուցելոցն հպատակաց բարկութիւն, այնքան ունել եւ ընդդէմ անձին քում յանցուցելոյ[1] համարեա։ Քանզի ոչ ոք զօրէ զայն որ է յայնքան իշխանութեան՝ խրատել[2], եթէ ոչ զմտածութեան իրա-

---

զԱստուած„ եւն. Հոս ալ Պալատեցին Թերին լրացուցած է գրելով՝ “Աստուածային ուսումն եւ առաջին մարդիկս զճանաչել ստորոք զանձն քո՝ սստանիմք լինել. քանզի որ ծանեաս զանձն քո, ճանիցէ զԱստուած„ եւն։

1 Ագապետի յունաբանութեանց մին է նաեւ այս “քեզ ինքեան„ եւ նմաններ, զոր ՏՊ. միշտ սրբագրած է հայերէնի ոգւոյն համեմատ, այսպէս հոս “անձին քում„. Նոյնպէս են՝ Գ, 2 “ծանուցել ումեք զիւր ինքն„ (ἑαυτὸν, ինքը զինքը.) ՏՊ. “զճանաչել ուրուք զանձն քոյ.„ — ԻԷ, “քեզ ինքեան պահելոյ զօրէնս . . .„ ՏՊ. “Անձին քում պահելոյ զօրէնս . . .„ — ԿԸ, 1 “ինքն ինքեան տիրեսցէ„ (αὐτὸς ἑαυτοῦ, ինքն իրեն.) ՏՊ. “Անձին իւրում տիրեսցէ„, եւ նմաններ (տես յետոյ)։ Նոյն գործածութիւնը կայ ուրիշ հնոց քով ալ (տես ՀԲ, Ա. 855, 875։)

2 Շատ լաւ օրինակ մըն է այս՝ մթին, նուաստական կամ անորոշ թարգմանութեանց նոր խմբագրին ձեռօք պարզուելուն եւ հասկանալի ըլլալուն։ Նման տեղեր չափազանց շատ կան, օրինակի համար՝ Լ, 1 “ոչ զոք ի չարացն ի գործ արկանիցես ի ծառայութեան [illegible] իրողութեանց„ (տես Լ, [1] Ծան.) որուն իմաստը լաւ բացատրեր է ՏՊ.՝ “մի զոք ի չարացն ի գործ արկանիցես ի կառավարութեան իրողութեանց„ (այսինքն՝ ի մատակարարութիւն գործոց.) — ԼԵ, 3 “իսկ որ օրինօք բարեմտութեան (տես անդ՝ յոյն բնագիրն եւ ՀԲ. Ա, 453) վարի, հաստատ ունի առ վարիչն զհնազանդութիւնն„. ՏՊ.՝ “իսկ որ օրինօք օրինաւորութեան իշխէ, հաստատ ունի առ իշխողն զհնազանդութիւնն.„ (Նոյնը ճիշդ տես ԼԹ, 1, ուր ՏՊ. նոյնպէս “սիրելութեան„ եւն.) եւ շատ ուրիշներ. տես յաջորդը։

3 “Բան ընտանի . . . չարժեցեալ„ յունաբան փո-

յանցուցելոյն շարժեցեալ լինի։

3. (ԽԹ.) Զորս հպատակացն օրինադրես ի ձեռն բանից, դու զայնոսիկ յառաջընթաց գոլով ցուցցես ի ձեռն գործոց. զի բանիւքն որովք հաւանեցուցանես՝ [illegible][2] քանզի այնպէս դրուատելի [illegible] զիշխանութիւնն քո, [illegible][3]։

4. (ԾԴ.) Խոհկացեալ նկատեա նախ քան [illegible]

[illegible][3] որ ի նոյն յանցուցելոյն շարժեցեալ [illegible][1]։

3. Զորս հպատակացն օրինադրես ի ձեռն բանից, դու զայնոսիկ յառաջընթաց գոլով ցուցցես ի ձեռն գործոց. զի բանիւքն՝ որով հաւանեցուցանես՝ [illegible][2] քանզի այսպէս դրուատելի [illegible] զիշխանութիւնն քո, [illegible]՝ [illegible][3]։

4. Խոհկացեալ նկատեա նախ քան [illegible] զոր

---

խադրութիւնը (տես ԼՁ, 2) պարզաբանել ուզած է ՑՊ. "զմտաւածութիւն իւրական" եւն գրելով։

1 Վերջին "յառաջագայի" բառն ուրիշ տեղ մ'ալ գործածած է, այսպէս՝ ԺԹ, 1 "պատիւն որ յամենեցուն [illegible]" (այսինքն՝ [illegible]) բացատրութեան տեղ ՑՊ. ունի՝ "...որ յամենեցունց յառաջագայի", որ սրբագրութեան ըստ ինքեան պէտք չկար։ Տեղւոյս իմաստը տես Ծան. ԺԹ, 1։

2 Յունաբան տեղւոյս իմաստին մասին տես Ծան. ԽԹ, 2 (այսինքն՝ "օգնական լիցին եւ բարք քաղցունք։") Պալլատեցին ուզած է իմաստը ճշդրտել, բայց բուն աւելի մթին ըրած է՝ "եւ անուշակ կեանքն [illegible]" գրելով։ Գոնէ "զուգամտիլ" անիմաստ եւ բոլորովին անճահ նորակերտ բառ մըն է, մինչդեռ ձեռագրին "նպաստաւորիլ", թէեւ մթին եւ անյարմար՝ գոնէ անհնար ալ չէ. (տես նոյնը բառն ի ՀԲ, Հտր. Բ "նպաստաւորեմ" = նպաստ լինել։) Բայց թերեւս ՑՊ. սխալ մըն է, եւ Պալլատեցին գրել ուզած ըլլայ "[illegible]" (թէեւ աս ալ անսովոր բարդութիւն մը կ'ըլլար՝) ուզելով ճիշդ նմանիլ յոյն բառին (συναγωνίζηται մարտակից լինին։)

3 Յոյնը բառախաղ մը, զոր Ագապետ բառացի փոխադրած է՝ անշուշտ բառախաղը քիչ մ'ալ նմանցընելու դիտաւորութեամբ։ Պալլատեցին ընդհակառակն իմաստը բացատրել ուզած է ճշդիւ։ Նման դէպքեր յաճախ են, եւ մէկ երկուքը պիտի տեսնենք ալ։

ձայնն զոր կամիս. զի հրամայեսցես ճահողապէս որ ինչ անկ է. քանզի դիւրագթելի է գործարան լեզուին, եւ մեծագոյն վտանգ առընթեր ամենէ անփոյթ եղելոցն։ Իսկ եթէ զբարեպաշտ մտածութիւնն որպէս երաժշտական նուագ դիպեսցի ի վերայ նորա, զամենայարմար[2] տաղն առաքինութեան եղանակեսցէ։

5. (ԿԵ.) Պարտ է այնմ որ անարատութեամբ փառաւոյ իշխանութեան առնել, եւ է [illegible] պահպանել. եւ զիւր ինքն[3] նախ քան զնոսա զամօթի

կամիս, զի հրամայեսցես խոհեմութեամբ որ ինչ վայելուչ է. քանզի դիւրագթելի է գործարան լեզուին, եւ մեծագոյն վտանգ ընչեաւ[1] անփոյթ եղելոցն։ Իսկ եթէ զբարեպաշտ մտածութիւնն որպէս երաժշտական ներդաշնակութեան վերադրեսցէ նմա, զքաղցրանուագ[2] տաղն առաքինութեան եղանակեսցէ։

5. Որ փառաւոյ [illegible] թագաւորել, պարտ է նմա եւ [illegible] անփոփոխութեանց պահպանել, եւ զանձն իւր[3] յառաջ քան զնոսա զամօթի հարկանել. զի եւ

---

1 Ձեռագրին "վտանգ առընթեր ամենէ,, լաւ թարգմանութիւն մըն է, այնպէս որ պէտք չկար Պալատեցւոյն նոյնը "ընչեաւ„ փոխելուն։ Պալատեցին նոյնն ուրիշ տեղ մ'ալ յարմար գործածեր է, երբ (ԻԸ, 1) "հպատակացն առաւել մարդասիրութիւն,, խօսքը փոխեր է՝ "հպատակացն ընչեաւ մարդասիրութիւն։„ Բայց հմմտ. ԻԴ, 6 "այնպիսիք քեզ ի նմանեացն առաւելին„, Տպ. "...փառաւորեալ լինին„։

2 Ասոնց յունարէնը տես Ծան. ԾԴ, 4—5. "ամենայարմար,, παναρμόνιον բառին տեղ է, զոր Պալատեցին փոխած է "քաղցրանուագ,, գրելով. աւոր դէմ դնելու էր ըստ ինքեան "ներդաշնակ,, բառը, քան երաժշտական "նուագի,, տեղ՝ ուր յոյնը պարզ "երաժշտութիւն,, կ'ըսէ։ Սակայն "ամենայարմար,, ճիշդ այս իմաստով կը գործածեն ուրիշ թարգմանութիւնքն ալ՝ (Փիլոն, Նազ. տես ՀԲ Ա, 54։)

3 "Զիւր ինքն„ — Տպ. "զանձն իւր,, տեսանք արդէն վերը. տես Հտձ. 2 (ԼԶ։) Բայց հոս աստ միայն չէ կրցած Տպ. ուղղել կամ վերցընել յունաբանութիւնը։ Վերջինս յայնմ է որ յունին համեմատ հայցականով գրուած է "զիւր ինքն . . . զամօթի հարկանել,, (ἑαυτὸν . . . αἰσχύνεσθαι, ամաչել յանձն իւր եւն.) որմէ տարբերութիւն մը չունի Պալատեցւոյն փոխելը՝ "զանձն իւր . . . զամօթի հարկանել։„ Անյարմար թարգմանութիւնը մնացած է երկրորդին մէջն ալ։

| | |
|---|---|
| հարկանել. զի եւ ի յայտ- նապէս մեղանչելոյն վասն նոցա հրաժարեցի, եւ յա- ռանձին յանցանելոյն ըստ ինքեան՝ արգելեալ լիցի. քանզի„ եւն։ | ի յայտնապէս մեղանչելոյն վասն նոցա հրաժարեցի, եւ յառանձին յանցանելոյն յանձնէ իւրմէ՝ արգելեալ լիցի. քանզի„ եւն։ |

Այսքանն ալ կարծենք բաւական է ցուցընելու որ մեր ձեռագրին (եւ Վենետկոյ) մէկ կողմանէ եւ տպագրին միւս կողմանէ՝ տարբերութիւնները շատ մեծ են, ոչ միայն համեմատութեամբ ամբողջ գրքին փոքր ծաւալին, այլ նաեւ իւրաքանչիւր տարբերութեան տեսակին կողմանէ։ Երկու տարբեր բնագիրներ են, երկու զատ զատ խմբագրութիւններ, որոնց հնագոյնն է ի հարկէ ձեռագրինը։ Վերոյիշեալ բնագրաց կցած քանի մը ծանօթութիւնք կը պարզեն մեզի նաեւ տպագրին նոր խմբագրութեան որպիսութիւնը։ Այն քանի մ'օրինակներն ինքնին բաւական են ապացուցանելու որ՝ այսպէս ըսենք՝ արուեստական խմբագրութիւն մըն է այն, աւելի ճիշդ ըսելու համար սրբագրութիւն մըն է հին բնագրին՝ գլխաւորաբար այն ուղղութեամբ որ ըստ կարելւոյն մթին ու անորոշ տեղերն՝ որ հետեւութիւն են սովորաբար շատ ստրկօրէն եղած յունաբան թարգմանութեան մը, պարզաբանուին եւ աւելի դիւրաւ հասկըցուին։ Չենք կարծեր թէ դիտեալ՝ բայց գոնէ պատահաբար՝ եղած է տեսակ մը հայացում յունաբան ասութեանց։

Թէեւ ոչ ամէն տեղ յաջող, մանաւանդ տեղ տեղ սրբագրութիւնը պարզապէս անյաջող ալ է, ինչպէս վերն ալ տեսանք[2]. Նաեւ երբեմն ինքն

---

1 Տես նախընթացը, եւ յոյն բնագիրը՝ Ծան. Կե, 3։ Բուն պէտք էր ջնջել իբրեւ աւելորդ, բայց Պալատեցին շատացած էր պարզապէս յունաձեւ ասութիւնը հայացընելով, թէեւ ասով իմաստի փոքր տարբերութիւն մը կրնայ ծագիլ։

2 Տես վերը "զուգամտել.„ "զանձն իւր զամօթի հարկանել„ եւ նմաններ։ Հմմտ. ՃԲ, 3 "զի մին ի յերկուց

աւելի յունացուցած է բնագիրը[1]. բայց յընդհանուրն գործն իւր ամբողջութեամբն առեալ՝ նպատակին հասած է սրբագրիչն, Ագապետի վճիռներուն իմաստն աւելի պայծառ ընելով։ Ի հարկէ փոփոխութեանց կամ սրբագրութեանց մեծ մաս մ՚ալ կայ, որ կրնար բոլորովին պակսիլ, ոչինչ առաւելութիւն մ՚ընծայելով։ Երբեմն պարզ բառ մը կամ ասութիւն մ՚ուրիշ համանիշով փոխարինուած է[2], որ կրնայ աւելորդ համարուիլ. ուրիշ

---

սատի ի յինքեանց ծեղանչեցի, կամ չարն գովեցեալ կամ բարին նախատեցեալ„ (տես Ծան. նոյն տեղւոյ եւ վերը՝ Նազիանզացւոյ համեմատականը.) հոս ՑՊ. «զի մին ի յերկուց սատի ծեղանչաւոր լինիցի, կամ չարն որ դրուատի կամ բարին որ նախատի։„ Գոնէ յունաբան նիւթականութիւնը վերցուած չէ ասով։ — ԿԸ, 2–3 «անդորրելի ինքնակալն անբան ախտից, զօրենսդրաւ առաքինութեանն.„ ՑՊ.՝ «անդորրելի ինքնակալն անբան ախտից, զօրենսդրութեան առաքինութեանն„ որ գոնէ աւելորդ փոփոխութիւն էր։ «Ամենագրաւ„ ճիշդ այս իմաստով ունի Նարեկացին ալ, տես ՀԲ, Ա, 59 եւ նմաններ։

1 Հմմտ. ԿԶ. «քանզի ոչ ի չարաց հրաժարումն արդարացուցանէ զիշխօղն, այլ ծաղկումն բարեացն պսակէ զայնպիսին. ուրեմն ոչ միայն ի չարութենէ հրաժարելն խորհեսցի„ եւն։ ՑՊ. փոխած է՝ «քանզի ոչ ի չարաց ճողոպրելն արդարացուցանէ զիշխօղն, այլ ցուցանելն բարեացն պսակէ զայնպիսին. ուրեմն ոչ միայն ի չարութենէ ճողոպրելն խորհեսցի„ եւն։

2 Օրինակի համար՝ ԼԱ «ոչ յանբան չարակամութենէ նոցին վրէժ խնդրելով.„ ՑՊ՝ «ոչ ոչինչ անբան չարակամութեանն նոցին վրէժխնդիր լինելով.„ — ԽԷ.2 «ապահովութիւն դարձուած.„ ՑՊ՝ «ապահովութիւն արդարոց.„ (ճիշդ նոյնը կրկնուած՝ ԿԶ,2։) — ԾԵ.3 «անբարկութիւն արհամարհելի է.„ ՑՊ.՝ «չբարկանալն դիւրարհամարհելի է,„ — ԾԸ, դղեակ . . . անառիկ.„ ՑՊ.՝ «դղեակ . . . անկործանելի„։ Հմմտ. դարձեալ՝ Է.2 «յետոյ հոսելով յայլս երթայ.„ ՑՊ.՝ «ընդ այլ հոսելով առ այլս երթայ.„ — ԺԱ.2 «այլապէս բերէ եւ շրջաբերէ.„ ՑՊ.՝ «այլապէս բերէ եւ պարաբերէ,„ — ԺԴ.1 «ի մարդկային խաբէութեանց . . . զննութեան„ եւն. ՑՊ.՝ «ի

Բայց ճիշդ այս պարագան եւ այն՝ որ հուշակուած էր իբրեւ հմուտ եբրայեցի, պարսիկ, արաբական, յոյն եւն լեզուաց, առիթ եղած է վերագրելու իրեն գործքեր ալ որ իւրը չեն։ Մէկ երկու բան տեսանք արդէն. հոս կը յիշենք երկու գործ ալ, եւ առով կը կնքենք այս մասն՝ որ մեր բաղձացածէն աւելի երկարեցաւ։ Կենսագիրը կը գրէ՝ "Ատոնցմէ զատ, նոյն (Ս. Խաչի) թանգարանին 1817 թուականի կնիքը կրող ընտրելագոյն մի ձեռագիրն՝ Չէ–նա–ղնն–ըն–ն անուամբ, որ ձեռնահմտութիւն կը հասկցուի, ոմանք Գէորգ-Դպրի կը վերագրեն։" Բայց այս կարելի չէ։ Եթէ ձեռագիրն իւր գրչութիւն կ՚ուզուի համարիլ, անհնար է անոր համար որ ինքն արդէն 1812ին վախճանած էր.[2] իսկ եթէ իբր թարգմանիչ՝ աւելի եւս սխալ է։ Արիկա մէկ մասն է միայն "Ճօան-Պաթիսթայ Փոռթայ" անձին գործին, զոր համառօտած է "Ֆռանչիսկոս Սթէլլութի" եւ թարգմանած "Յովհ. Վրդ. Կ. Պոլսեցի", եւ որ յաճախ կը գտնուի։[3] Ճիշդ այս Ս. Խաչի ձեռագրին եւ թարգմանչին

---

մատութիւնը (Մեր Մատ. Թ. 22) Պալատեցւոյ յիշատակարանով (տես "Ցուցակ" 134—8.) Վաստակոց գրոց "Լուծումն բառից" (Մեր Մատ. Թ. 281), զոր Ալիշան Պալատեցւոյ կ՚ընծայէ (տես "Ցուցակ" 706.) "Դրախտ ցանկալի" գրոց վկայութեանց համարները. (տես "Շար" 45.) Ագաթանգեղեայ 1770ի տպագրութիւնը համեմատ Ամթայ ձեռագրին. ("Շար" 42—3) եւ նմաններ։

1 Տես "Շար", 48։

2 Տես նոյն իսկ Պալատեցւոյ դամբանագիրը ("Շար" 66՝) "Վախճանեցաւ 75 ամաց, ի թուին Հայոց ՌՄԿԱ" (= 1812)։ Գէորգ Դպիր Տէր-Յովհաննիսեան Պալատեցին ծնած էր 1737ին։

3 Տես ընդարձակ "Ցուցակ", 668–9 (Մեր Մատ. Թ. 262.) ուրիշներ՝ անդ 1110, ի միջի այլոց տեսնաեւ Էջմիածնի ("Մայր Ցուցակ", էջ 52) Թ. 871 գրուած ՌՄՁԵ (= 1736) թուականին, նոյնպէս Պալատեցւոյ ծննդենէն յառաջ։

(Յովհ. Հոլով) նուիրած է Տքր. Վ. Ց. Թորգոմեան երկու յօդուածներ։[1] — Նոյնպիսի սխալ գաղափար մ'ունեցած էինք մենք ալ, երբ մեր Մատենադարանին Թ. 105 խառնակ ձեռագրին մէջ գտնելով կիսատ գործ մը՝ որ բաց յայլոց՝ եբրայական լեզուի հմտութիւն կը ցուցընէր, համարած էինք "անցեալ դարու վերջերէն թարգմանութիւն մը„, եւ մէտ էինք Պալատեցւոյ ընծայելու։[2] Այժմ գիտենք որ Պալատեցին գործք չունի հոս ալ։ Այն գործը տպուած է արդէն 1716ին, ուստի Պալատեցւոյ ծննդենէն ալ յառաջ, եւ այն՝ այնպիսի խորագրի մը ներքեւ՝ ուր դժուարաւ կրնար մէկը փորձուիլ մեր ձեռագրին պարունակածը գտնելու փորձ մ'ընել։[3]

---

1 Ս. Խաչի ձեռագրին մասին յօդուածը տես "Հանդէս„ 1893, էջ 280–3. Ցովհ. Վրդ. Կոստանդնուպոլսեցւոյ մասին՝ անդ 1893, էջ 369–370։ Առաջին յօդուածին մէջ հետաքրքրական տեղեկութիւն մը կը տրուի, այն թէ Ս. Խաչի հաւաքումն ճոխացընողներէն եղած է Տիրացու Մարտիրոս, "որ 1779էն մինչեւ 1789 շատ մը ձեռագիր հատորներ, մանաւանդ Գէորգ Պալատեցւոյն գործերն, անձամբ ընդօրինակելով նուիրած է Ս. Խաչ դպրոցին։„ Կրնայ ըստ այսմ կասկածուիլ որ Ագապետի ձեռագիրն ալ նոյն Մարտիրոսի գրչութիւն ըլլայ պարզապէս։

2 Տես "Ցուցակ„, 379 եւ 1071։

3 Գիրքն է՝ "Պատճառք Պատճառաց. Սէր է համաձայնութիւն պատճառաց. Նուիրեալ եւ տեառնագրեալ Ջուղայեցի Գիլանենց ի Տէր Հանգուցեալ Սարգսի որդւոյ Պետրոսին ... յօրինեալ երկասէր եւ տպագիր աշխատանօք Ղուկասու Դպրի Վանանդեցւոյ, յամի Տեառն 1716 եւ ի թուին Հայոց 1165, յԱմստերդամ։„ Փոքր 8° էջք 448 (վերջը կիսատ), երկմասնեայ։ Մեր ձեռագիրը (Թ. 105, Թղ. 23բ) կը սկսի Առաջին մասին որեւէ տեղէ մը. տպագրին՝ էջ 131 կէսէն։ Առանձին խորագիր ունի Բ. մասն իբր ուրոյն գործ, այսինքն՝ "Փառք Եւ Պայծառութիւն Փառահեղութեան Ցեառն Քրիստոսի արիաբար բացայայտեալ„ եւն (= մեր ձռգր. Թ. 105, Թղ. 31–108) ճիշդ նոյն գլուխներու եւ պրակներու

Բաւական համարինք այսչափն ալ, որ կը յուսանք համոզեց զմեզ թէ պէտք չէ որեւէ մթին եւ անորոշ յիշատակութեան մը համեմատ հնութեան ամէն երեւոյթն ունեցող գործ մը վերագրել նոր թարգմանի մը, առանց համոզիչ փաստերու։ Թէ Պալատեցւոյ համար պիտի գտնուէին արդեօք այսպիսի համոզիչ ապացոյցներ՝ զինքն Ագապետի բուն թարգմանը համարելու, չենք գիտեր, թէեւ չենք ալ կարծեր, ինչպէս մինչեւ հիմայ ցուցուցինք։ Նուազ կարեւոր ապացոյց մը չէ մեզի համար նոյն իսկ տպագիրն, որուն բնագրին մասին մեր դիտողութիւնք պիտի ընենք յաջորդովս, որով եւ Ագապետի լեզուին համառօտ քննութեամբ մը պիտի փակենք մեր ուսումնասիրութիւնը։

## 6.

Կը մնայ վերջին կէտ մը լուսաբանել, որ նուազ կարեւոր չէ քան նախընթացն եւ մասամբ շարունակութիւն անոր։ Կրկնեցինք որ Ագապետոսի տպագիրը, զոր հոգացած է Գէորգ Դպիր Պալատեցին, հայ բնագիրը նոր խմբագրութեամբ՝ կրնանք մասամբ ըսել նոր թարգմանութեամբ՝ կը ներկայացնէ։ Արդ այս կէտը կ'արժէ քիչ մ'աւելի մանրամասն տեսնել. վասն զի առով հաստատուած կ'ըլլայ նաեւ այն մեծ խտիրը որ կայ մեր ձեռագրին եւ տպագրին մէջ։ Ընթացս այս քննութեան ստիպուած ենք նաեւ ի նկատի առնուլ Ագապետի բնագրին լեզուն, որ՝ թէեւ յինքեան ինքնակաց խնդիր մըն է, սերտ կապ ունի տպագրին հետ ալ,

---

բաժանմամբ. (տպ. էջ 177–448։) Տպագիրը վերջը Ն. գլուխն ԻԲ պրակ մ'ալ ունի, որ կիսատ կը մնայ 448 էջով։ Մեր օրինակին վերջը նշանակուած է՝ "Ուրիշ 2 օրինակք եւս այսպէս (կիսատ՝ 448. էջով) կը վերջանան։ Հ. Գր. (Գալէմքեարեան։)"

քանի որ վերջինս հիմնական եւ դիտուած փոփոխութիւններ կը ցուցընէ նաեւ լեզուին նկատմամբ։ Երկու տարբեր խնդիրներ են ըստ այսմ, որ հոս մեր ուսումնասիրութեան վերջին մասը կը կազմեն, բայց երկուքն ալ գոնէ տեսակէտով մ՚իրարու հետ սերտ կապ ունենալով, միասին կ՚առնուին ի նկատի։ Բայց կանխելու ենք ըսել որ երկու կէտն լիապէս եւ ամենայն ամբողջութեամբ հետազօտելու միտք չունինք, այն պարզ պատճառաւ որ շատ բան զուտ կրկնութիւն մը պիտի ըլլար։ Տպագրին տարբերութիւնքն զատ դրուած են մեր հրատարակութեան կից, ուստի ամբողջութեամբ հոն կրնան տեսնուիլ։ Հոս միայն այն մասերը յառաջ կը բերենք, որոնք կրնան մեզի նպաստել ցուցընելու թէ ինչ նպատակաւ եղած են այն փոփոխութիւնքն։ Լեզուի մասին ալ շատ բան արդէն առիթ ունեցանք նշանակելու յընթացս մեր գրութեան. այլեւայլ ուրիշ կէտեր պիտի նշանակենք յաջորդաւս, իսկ մնացեալը կրնայ մի առ մի համեմատուիլ եւ տեսնուիլ մեր հրատարակութեան կից ծանօթութեանց մէջ, ուր նշանակած ենք յոյն բնագրին հանդէպ տեսնուած ամէն զարտուղութիւնքն եւ յոյն համեմատականները[1]։

Նախ պէտք է այս տարբերութիւնները տեսնել, ոչ թէ իւրաքանչիւրը մի առ մի՝ որ պարզ կրկնութիւն կ՚ըլլար, այլ քանի մը գլուխներ դէմ առ դէմ համեմատուած։ Շատ աւելի պայծառ գաղափար մը կու տայ այս տեսակ համեմատութիւն մը քանի մ՚ամբողջ գլուխներու, քան ամէն մի փոքրիկ զարտուղութիւն մի առ մի նշանակելը։

---

1 Լեզուի մասին ուր պէտք ըլլայ նշանակել թէ յիշեալ բառը կամ բացատրութիւնը սովորական է միւս յունաբան հեղինակներուն եւ թարգմաններուն, փոխանակ զուր տեղ երկար կոչումներ ընելու՝ կը նշանակենք պարզապէս ՀԲ (= Հայկազն. Բառգիրք), ուր կրնան նոյն վկայութիւնք տեսնուիլ։

համեմատութեան առնուած են թէ այնպիսի գլուխներ որ մեծ փոփոխութիւն կը ցուցնեն, եւ թէ ուրիշներ՝ որ համեմատութեամբ քիչ փոխուած են: Ահա քանի մը գլուխ մեր ձեռագրին եւ տպագրին՝ դէմ առ դէմ.

*Ձեռագիր:*

1. (ԼԴ.) Որպէս ոսկի երբեմն երբեմն այլապէս յարուեստէն փոխաձեւացեալ, եւ ու[1] տարբեր տեսակս զարդարանաց յօրինեալ, մնայ որ ինչ է եւ փոփոխումն ոչ կրէ. սոյնպէս եւ դու, ով բարեշուք Թագաւոր, զայլ զկնի այլոյ յաջորդեալ պետութիւն. եւ ժամանեալ յայդ վերնագոյն պատիւ. դու ինքն հաստատուն մնաս, անայլայլելի ունելով զմտախոհութիւնդ:

*ՏՊ. (Տպագիր:)*

1. Որպէս ոսկի երբեմն այսպէս երբեմն այլապէս յարուեստէն փոխաձեւացեալ, եւ ի զանազան[1] տեսակս զարդուց յեղյեղեալ, մնայ որ ինչ է, եւ փոփոխումն ոչ կրէ. սոյնպէս եւ դու ով բարեշուք Թագաւոր, զայլ զկնի այլոյ փոխելով Թագաւորութիւն, եւ ժամանեալ յայդ վերնագոյն պատիւ. դու ինքն մնաս ի նոյն իրողութիւնան[2], անայլայլելի ունելով ի բարին զմտախոհութիւնդ:

---

1 Ագապետի յունաբանութեանց մին է գրելթէ միշտ πρὸς նախադրութեան դիմաց «ու» նախադրութիւնը գործածելը թէեւ անյարմար, ինչպէս հոս «ու տարբեր տեսակս» եւն: Տպագիրը միշտ ուղղած է՝ «ի»: Նոյն կարգի են «ոչ ու ամբարտաւանութիւն ի վեր ամբառնիլ» (տես ԺԳ, 5, ՏՊ. «ոչ յամբարտաւանութիւն . . .») — Խ, 1–2 «ոչ ու յանդգնութիւն հակիցի, այլ ու հաւասարութիւն հայիցի» (ՏՊ. «ոչ ի յանդգնութիւն հակիցի, այլ ու կարեկցութիւն հայեսցիս» ուստի վերջինը մոռցած սրբագրել.) — ԿԲ «ու վերին օգնականութիւն» (ՏՊ. «ի վերին . . .») եւ շատ նմաններ:

2 Այս «ի նոյն իրողութիւնան» եւ յաջորդ «ի բարին» յոյն բնագրին համեմատ են: Ձեռագիրն ինչպէս նշանակեցինք հոս կամ աղաւաղութեամբ կամ նման պատճառաւ՝ Թերի ունի այս բառերը. (տես ԼԴ, 5:) Պալատեցին կամ ՏՊ. լրացուցած է պակասը: — Ծանօթ ուրիշ Թերութ մ'ունի ձեռագիրը՝ Գ, 1 «Աստուածային ուսումն եւ առաջին՝ մարդիկս, ճանաչել ումեք զիւր ինքն, ճանաչէ

2. (ԼԶ.) Զի զիշխանութիւն թագաւորութեանն առնիցես հռչակելի, որքան ունիս ընդդէմ մեղուցելոցն հպատակաց բարկութիւն, այնքան ունել եւ ընդդէմ յանցուցելոյն քեզ ինքեան[1] համարեա։ Քանզի ոչ ոք զօրէ այնքան զօրեղ իշխանութեամբն կրթել[2], եթէ ոչ բան ընտանի[3] որ ի նոյն

2. Զի զիշխանութիւն թագաւորութեանն առնիցես հռչակելի, որքան ունիս ընդդէմ մեղուցելոցն հպատակաց բարկութիւն, այնքան ունել եւ ընդդէմ անձին քում յանցուցելոյ[1] համարեա։ Քանզի ոչ ոք զօրէ զայն որ է յայնքան իշխանութեան՝ խրատել[2], եթէ ոչ զմտածութիւն բարո-

---

զԱստուած" եւն. Հոս ալ Պալատեցին թերին լրացուցած է գրելով՝ "Աստուածային ուսումն եւ առաջին մարդիկս զճանաչել արարած զանձն իւր՝ ստանիմք լինել. քանզի որ ծանեաւ զանձն իւր, ծանիցէ զԱստուած" եւն։

1 Ագապետի յունաբանութեանց մին է նաեւ այս "քեզ ինքեան" եւ նմաններ, զոր Տպ. միշտ սրբագրած է հայերէնի ոգւոյն համեմատ, այսպէս հոս "անձին քում", նոյնպէս են՝ Գ, 2 "ճանաչել ումեք զիւր ինքն" (ἑαυτὸν, ինքը զինքը.) Տպ. "զճանաչել ուրուք զանձն իւր." — ԻԵ, "քեզ ինքեան պահելոյ զօրէնս . . ." Տպ. "Անձին քում պահելոյ զօրէնս . . ." — ԿԸ, 1 "ինքն ինքեան տիրեսցէ" (αὐτὸς ἑαυτοῦ, ինքն իրեն.) Տպ. "Անձին իւրում տիրեսցէ", եւ նմաններ (տես յետոյ)։ Նոյն գործածութիւնը կայ ուրիշ հնոց քով ալ (տես ՀԲ, Ա. 855, 875։)

2 Շատ լաւ օրինակ մըն է այս՝ մթին, նուաստական կամ անորոշ թարգմանութեանց նոր խմբագրին ձեռօք պարզուելուն եւ հասկնալի ըլլալուն։ Նման տեղեր շատ կան, օրինակի համար՝ Լ, 1 "ոչ զոք ի չարացն ի գործ արկանիցես ի ծառայութիւն ազատ իրողութեանց" (տես Լ, [1] ծան.) որուն իմաստը լաւ բացատրեր է Տպ.՝ "մի զոք ի չարացն ի գործ արկանիցես ի կառավարութիւն իրողութեանց", (այսինքն՝ ի մատակարարութիւն գործոց.) — ԼԵ, 3 "իսկ որ օրինօք բարեմտութեան (տես անդ՝ յոյն բնագիրն եւ ՀԲ. Ա, 453) վարի, հաստատ ունի առ վարիչն զհնազանդութիւնն". Տպ.՝ "իսկ որ օրինօք սիրելութեան իշխէ, հաստատ ունի առ իշխօղն զհնազանդութիւնն." (Նոյնը ճիշդ տես ԼԹ, 1, ուր Տպ. նոյնպէս "սիրելութեան" եւն.) եւ շատ ուրիշներ. տես յաջորդը։

3 "Բան ընտանի . . . շարժեցեալ" յունաբան փո-

յանցուցելոյն շարժեցեալ լինի:

3. (ԽԹ.) Զորս հպատակացն օրինադրես ի ձեռն բանից, դու զայնոսիկ յառաջընթաց գոլով ցուցցես ի ձեռն գործոց. զի բանիւքն որովք հաւանեցուցանես՝ փողոց կենդանի նպաստաւորեսցէ.[2] քանզի այնպէս դիւրաւատելի տպաւորեսցես զիշխանութիւնն քո, ե-տելով գործողութեան. ե-գործելով տաղողութեան[3]:

4. (ԾԴ.) Խոկացեալ նկատեա նախ քան ըհըր-

կան[3] որ ի նոյն յանցուցելոյն շարժեցեալ յառաջագայէ[1]:

3. Զորս հպատակացն օրինադրես ի ձեռն բանից, դու զայնոսիկ յառաջընթաց գոլով ցուցցես ի ձեռն գործոց. զի բանիւքն՝ որով հաւանեցուցանես՝ եւ ա-նուշակ կեանք զուգամարտեսցէ.[2] քանզի այսպէս դիւրատելի հաստատեսցես զիշխանութիւնն քո, երբ խորհեսցես՝ ոչ առանց գործոյ, եւ երբ գործեսցես՝ ոչ առանց խորհրդոյ[3]:

4. Խոկացեալ նկատեա նախ քան զղորդառերեւն զոր

---

խադրութիւնը (տես ԼԶ, 2) պարզաբանել ուզած է ՑԳ. "զմտաւածութիւն իւրական" եւն գրելով:

1 Վերջին "յառաջագայի" բառն ուրիշ տեղ մ'ալ գործածուած է, այսպէս՝ ԺԹ, 1 "պատիւն որ յամենեցուն յառաջածէր" (այսինքն՝ մարդոյանէ) բացատրութեան տեղ ՑԳ. ունի՝ "...որ յամենեցունց յառաջագայի" որ սրբագրութեան ըստ ինքեան պէտք չկար: Ցեղ-ոյս իմաստը տես Ծան. ԺԹ, 1:

2 Ցունաբան տեղւոյս իմաստին մասին տես Ծան. ԽԹ, 2 (այսինքն՝ "օգնական լիցին եւ բարք քաղցունք:") Պաղատեցին ուզած է իմաստը ճշգրտել, բայց բուն աւելի մթին ըլլած է՝ "եւ անուշակ կեանքն զուգամարտեսցէ" գրելով: Գոնէ "զուգամտիլ" անիմաստ եւ բոլորովին անճահ նորակերտ բառ մըն է, մինչդեռ ձեռագրին "նպաստաւորիլ" թէեւ մթին եւ անյարմար՝ գոնէ անհնար ալ չէ. (տես նոյնը բառն ի ՀԲ, Հտր. Բ "նպաստաւորեմ" = նպաստ լինել:) Բայց թերեւս ՑԳ. սխալ մըն է, եւ Պաղատեցին գրել ուզած ըլլայ "զուգամարտեսցէ" (թէեւ աս ալ անսովոր բարդութիւն մը կ'ըլլար) ուզելով ճիշդ նմանիլ յոյն բառին (συναγωνίζηται մարտակից լինին:)

3 Ցոյնը բառախաղ մը, զոր Ագապետ բառացի փոխադրած է՝ անշուշտ բառախաղը քիչ մ'ալ նմանցընելու դիտաւորութեամբ: Պաղատեցին ընդհակառակն իմաստը բացատրել ուզած է ճշդիւ: Նման դէպքեր յաճախ են, եւ մէկ երկուքը պիտի տեսնենք ալ:

մոյէն զոր կամիս. զի հրամայեսցես ճահողողեօ որ ինչ անկ է. քանզի դիւրագթելի է գործարան լեզուին, եւ մեծագոյն վտանգ առընթեր առնի անփոյթ եղելոցն: Իսկ եթէ զբարեպաշտ մտածութիւնն որպէս երաժշտական նուագ դիպի ի վերայ նորա, ամենայարմար[2] տաղն առաքինութեան եղանակեսցէ:

5. (ԿԵ.) Պարտ է այնմ որ առաջնորդութեամբ փութայ իշխանութիւն առնել, եւ ի հրապարակաւորութենէ արդարացւոյն պահպանիլ. եւ զիւր ինքն[3] նախ քան զնոսա զամօթի

կամիս, զի հրամայեսցես խոհեմութեամբ որ ինչ վայելուն է. քանզի դիւրագթելի է գործարան լեզուին, եւ մեծագոյն վտանգ ընծայէ[1] անփոյթ եղելոցն: Իսկ եթէ զբարեպաշտ մտածութիւնն որպէս երաժշտական ներդաշնակութեան վերադրիցի նմա, քաղցրանուագ[2] տաղն առաքինութեան եղանակեսցէ:

5. Որ փութայ անբասիր թագաւորել, պարտ է նմա եւ յարդարական անփութութեանց պահպանել, եւ զանձն իւր[3] յառաջ քան զնոսա զամօթի հարկանել. զի եւ

---

1 Ձեռագրին "վտանգ առընթեր առնի,, լաւ թարգմանութիւն մըն է, այնպէս որ պէտք չկար Պաղատեցւոյն նոյնը "ընծայէ" փոխելուն: Պաղատեցին նոյնն ուրիշ տեղ մ'ալ աւելի յարմար գործածեր է, երբ (ԻԱ, 1) "հպատակացն առաջրէ մարդասիրութիւն,, խօսքը փոխեր է՝ "հպատակացն ընծայէ մարդասիրութիւն:" Բայց հմմտ. ԻԴ, 6 "այնպիսիք քեզ ի նմանեացն առաջրէն", ՑԳ. "...պատուել լինին":

2 Ասոնց յունարէնը տես Ծան. ԾԴ, 4—5. "ամենայարմար,, παναρμόνιον բառին տեղ է, զոր Պաղատեցին փոխած է "քաղցրանուագ,, գրելով. ասոր դէմ դնելու եր ըստ ինքեան "ներդաշնակ,, բառը, քան երաժշտական "նուագի,, տեղ՝ ուր յոյնը պարզ "երաժշտութիւն,, կ'ըսէ: Սակայն "ամենայարմար,, ճիշդ այս իմաստով կը գործածեն ուրիշ թարգմանութիւնքն ալ՝ (Փիլոն. Նաղ. տես ՀԲ Ա, 54:)

3 "Զիւր ինքն" — ՑԳ. "զանձն իւր,, տեսանք արդէն վերը. տես Հտծ. 2 (ԼԶ:) Բայց հոս ասով միայն չէ կրցած Ցպ. ուղղել կամ վերցընել յունաբանութիւնը: Վերջինս այնմ է որ յունին համեմատ հայցականով գրուած է "զիւր ինքն ... զամօթի հարկանել,, (ἑαυτὸν ... αἰσχύνεσθαι, ամաչել յանձն իւր եւն.) որմէ տարբերութիւն մը չունի Պաղատեցւոյն փոխելը՝ "զանձն իւր ... զամօթի հարկանել:" Անյարմար թարգմանութիւնը մնացած է երկրորդին մէջն ալ:

| | |
|---|---|
| հարկանել. զի եւ ի յայտ-<br>նապէս մեղանչելոյն վասն<br>նոցա հրաժարեսցի, եւ յա-<br>ռանձին յանցանելոյն ըստ<br>ընտրեան՝ արգելեալ լիցի.<br>քանզի„ եւն։ | ի յայտնապէս մեղանչելոյն<br>վասն նոցա հրաժարեսցի,<br>եւ յառանձին յանցանելոյն<br>յոնջնէ խուրժէ՝ արգելեալ<br>լիցի. քանզի„ եւն։ |

Այսքանն ալ կարծենք բաւական է ցուցընելու որ մեր ձեռագրին (եւ Վենետկոյ) մէկ կողմանէ եւ տպագրին միւս կողմանէ՝ տարբերութիւնները շատ մեծ են, ոչ միայն համեմատութեամբ ամբողջ գրքին փոքր ծաւալին, այլ նաեւ իւրաքանչիւր տարբերութեան տեսակին կողմանէ։ Երկու տարբեր բնագիրներ են, երկու զատ զատ խմբագրութիւններ, որոնց հնագոյնն է ի հարկէ ձեռագրինը։ Վերոյիշեալ բնագրաց կցած քանի մը ծանօթութիւնք կը պարզեն մեզի նաեւ տպագրին նոր խմբագրութեան որպիսութիւնը։ Այն քանի մ՚օրինակներն ինքնին բաւական ենապացուցանելու որ՝ այսպէս ըսենք՝ արուեստական խմբագրութիւն մըն է այն, աւելի ճիշդ ըսելու համար սրբագրութիւն մըն է հին բնագրին՝ գլխաւորաբար այն ուղղութեամբ որ ըստ կարելւոյն մթին ու անորոշ տեղերն՝ որ հետեւութիւն են սովորաբար շատ ստրկօրէն եղած յունաբան թարգմանութեան մը, պարզաբանուին եւ աւելի դիւրաւ հասկըցուին։ Չենք կարծեր թէ դիտեալ՝ բայց գոնէ պատահաբար՝ եղած է տեսակ մը հայացում յունաբան ասութեանց։

Թէեւ ոչ ամէն տեղ յաջող, մանաւանդ տեղ տեղ սրբագրութիւնը պարզապէս անյաջող ալ է, ինչպէս վերն ալ տեսանք[2]. նաեւ երբեմն ինքն

---

1 Տես նախընթացը, եւ յոյն բնագիրը՝ Ծան. ԿԵ, 8։ Բուն պէտք էր ջնջել իբրեւ աւելորդ, բայց Պալատեցին շատացած էր պարզապէս յունաձեւ ասութիւնը հայացընելով. թէեւ ասով իմաստի փոքր տարբերութիւն մը կրնայ ծագիլ։

2 Տես վերը "զուգամտել.„ "զանձն իւր զամօթի հարկանել„ եւ նմաններ։ Հմմտ. ԺԲ, 8 "զի մին ի յերկուց

աւելի յունացուցած է բնագիրը[1]. բայց յընդհանուրն գործն իւր ամբողջութեամբն առեալ՝ նպատակին հասած է սրբագրիչն, Ագապետոսի վճիռներուն իմաստն աւելի պայծառ ընելով։ Ի հարկէ փոփոխութեանց կամ սրբագրութեանց մեծ մաս մ՚ալ կայ, որ կրնար բոլորովին պակսիլ, ոչինչ առաւելութիւն մ՚ընծայելով։ Երբեմն պարզ բառ մը կամ ասութիւն մ՚ուրիշ համանիշով փոխարինուած է[2], որ կրնայ աւելորդ համարուիլ. ուրիշ

---

ասոի ի յինքեանց ծաղանչիցէ, կամ չարն գովեցեալ կամ բարին նախատեցեալ„ (տես Ծան. նոյն տեղւոյ եւ վերը՝ Նազիանզացւոյ համեմատականը.) հոս Ցգ. "զի մին ի յերկուց ասոի ծաղանչական լինիցի, կամ չարն որ դրուատի կամ բարին որ նախատի„ գոնէ յունաբան նիւթականութիւնը վերցուած չէ ասով։ — Կը, 2—3 "ամենազօրեալ ինքնակալն անբան ախտից, զամենապարգեւ առաքինութիւնսն.„ Ցգ.՝ "զամենայնիւ ինքնակալն անբան ախտից, զամենապարգեւօղ առաքինութեանն„ որ գոնէ աւելորդ փոփոխութիւն էր։ "Ամենագրաւ„ ճիշդ այս իմաստով ունի Նարեկացին ալ, տես ՀԲ, Ա, 59 եւ նմաններ։

1 Համմ. ԿԶ. "քանզի ոչ ի չարաց հրաժարութեամբ արդարացուցանէ զիշխօղն, այլ բարեխօսեալ բարեաց պսակէ զայնպիսին. ուրեմն ոչ միայն ի չարութենէ հրաժարել խորհեցի„ եւն։ Ցգ. փոխած է՝ "քանզի ոչ ի չարաց բացայայտելեան արդարացուցանէ զիշխօղն, այլ ցուցանելովն բարեաց պսակէ զայնպիսին. ուրեմն ոչ միայն ի չարութենէ բացայայտել խորհեցի„ եւն։

2 Օրինակի համար՝ ԼԱ "ոչ յանբան չարակամութենէ նոցին վրէժ խնդրելով.„ Ցգ՝ "ոչ ըստ անբան չարակամութեանն նոցին վրէժխնդիր լինելով.„ — ԽԷ. 2 "ապահովութիւն պատճառէ.„ Ցգ՝ "ապահովութիւն արտաքրէ.„ (ճիշդ նոյնը կրկնուած՝ ԿԶ, 2։) — ԾԵ. 3 "անբարկութիւն արհամարհելի է.„ Ցգ.՝ "չբարկանալն դիւրարհամարհելի է։„ — ԾԸ„ դղեակ . . . անառիկ.„ Ցգ.՝ "դղեակ . . . անկործանելի„։ Համմ. դարձեալ՝ Է. 3 "յետ հասելով յայլս երթայ.„ Ցգ.՝ "ընդ այլ հասելով առ այլս երթայ.„ — ԺԱ. 3 "այլապէս բերէ եւ շրջաբերէ.„ Ցգ.՝ "այլապէս բերէ եւ պարաբերէ.„ — ԺԴ. 1 "ի մարդկային խաբէութեանց . . . զննութեան„ եւն. Ցգ.՝ "ի

տեղեր նաեւ հին եւ ընտիր աւանդութիւններ փոփոխութեան ենթարկուած են[1]։ Բայց վերջապէս նաեւ անոնց մէջ կը գտնենք որ գլխաւոր նպատակն եղած է բնագրին իմաստն աւելի ճշգրիտ ընել, որով երբեմն նաեւ չնչին երեւցած փոքրիկ սրբագրութիւններն ստուգիւ իմաստի տարբերութիւն մ'ունին[2]։ Աւելի եւս բնական էր որ անյարմար երեւցած տեղերը սրբագրուէին, ինչպէս յաճախ եղած է[3]։ Քանի մ'ուրիշ այս կարգի տեղեր քիչ մ'ետքն աւելի պիտի ունենանք յիշելու։

---

մարդկային պօտրանօց . . . ղօշնշօ–բեան" եւն. — ԺԶ.1 "անդրաբերել." ՏՊ.՝ "փոխաբերել." — ԼԳ.3 "որք տո ձեօէ." ՏՊ.՝ "որ շոբՂ ղձեօէ." — ԾԲ.3 "գոհացողական օրհնութեան." ՏՊ.՝ "գոհացողական երգօ." եւն եւն։

1 Օրինակի համար՝ ԼԵ.2 "յորժամ ժամ առնու՝ ողջամոյն գրգոէ." ՏՊ.՝ "... ապօտամենալ քտարանքէ։" — ԽԶ.4 "եւ ի չարիս մի ղարկցեն" (այսինքն՝ գթեսցին.) ՏՊ.՝ պարզ՝ "ի չարիս մի անկցին", եւ շատ ուրիշներ։

2 Համմտ. ի միջի ուրիշներու՝ ԾԱ "բայց քան զնա (զարեգակն) երեւելագոյն եւ բարեպաշտ թագաւորն։" ՏՊ. լաւագոյն՝ "... քան զնա լուսաւորագոյն է . . ." — Կ.1 "անհնանալի հանդերձ է . . . եւ անապական զարդ՝ գուլթն" եւն. ՏՊ. լաւագոյն "Անհնանալի . . . եւ անապական պատմուճան (= στολή) գուլթն" եւն, զոր Պալատեցին գրած է յոյն բնագրին համեմատ. — ԻԲ2 "նոքա զօգուտն պարգեւոր փեսանեն ճշմարտութեամբ." Համմտ. ԻԶ՝ "եթէ զամենեսեն փութասցիս պարգեւոյն փեսանել։" ՏՊ. լաւագոյն է առաջինը "նոքա զօգուտն փեսեն եւ խօսեն ճշմարտութեամբ." երկրորդը՝ "եթէ զամենայն ինչ փութասցիս նշարել," եւն։ Թողունք յիշել ուրիշները։

3 Շատ օրինակներ յիշեցինք արդէն։ Համմտ. դարձեալ ԾԳ "եւ բարեաց գործողութիւն համեմատ մեծութեանն կարողութեան սպասեա պահանջիլ ի քէն." (տես յոյն բն.) ՏՊ.՝ "եւ համեմատ մեծութեանն կարողութեան՝ գործոցն բարեաց պահանջիլ սպասեա," որ դոյզն փոփոխութեամբ միայն եղած է։ ԾԱ.՝ "ոչ է քոյ ձեռօտ ("մեկուսիմ" տես ՀԲ. Հտր. Բ. 245) յափշտակութեամբ չարաց." ՏՊ.՝ "իսկ

Սրբագրութեան ենթարկուածներէն ոմանք այնպիսի ասութիւններ են՝ որոնք հնոց ալ անսովոր էին եւ յայտնապէս Ագաթանգեղոսի թարգմանչէն՝ յունականի նմանողութեամբ կաղապարուած էին՝ բառախաղերուն պատճառաւ, զորոնք այն տեղերը ջանացած է թարգմանիչը կերպով մը նմանցընել։ Ահա քանի մ'այսպիսի օրինակներ։ Երկրորդ վճռին մէջ կը գրէ Ագաթանգեղոս (տես Բ, 4) թէ թագաւորը կը հոկէ բռնելով "զղեկին լաւօրէնութեան" (εὐνομίας բարեկարգութեան, օրինապահութեան) եւ մերժելով "զկոհական անօրէնութեան" (ἀνομίας.) Անշուշտ "լաւօրինութիւն" անսովոր կազմութիւն մըն է, ծագած անկէ որ թարգմանը բառախաղը պահել ուզելով եւ չկրնալով "բարօրինութիւն" գրել՝ որ ուրիշ իմաստ ունէր, ուրիշ ելք չէ գտած։ Բայց եւ այնպէս աւելի լաւ է քան տպագրին սրբագրելը՝ "զուղղեակին խրատատուութեան", որ բաց ի անկէ որ նոյնպէս անսովոր է՝ նաեւ անճիշդ է։ Ընդհակառակն ուրիշ տեղ մը Պալատեցին չէ փոխած բառախաղ մ'որ թերեւս պէտք էր սրբագրուիլ՝ իմաստի անճշդութեան վտանգին պատճառաւ, այսինքն ԻԵ[2–3] "զչարիսն որ յանխոհութենէ (ἐξ ἀβουλίας յանխոհեմութենէ)… զօգուտս բարեխորհրդութեան" (εὐβουλίας), այսինքն՝ խոհեմութեան. երկուքն ալ թէեւ հնոց անսովոր չեն, մեր թարգմանն ուրիշ իմաստով ալ գործածած է[1]։ —

---

սա ոչ թոյլ տուեալ ներէ յափշտակութեանն չարաց", որ յոյն բնագրին համեմատ է (տես Ծան. նոյն տեղւոյ)։

1 "Անխոհութիւն" (= "անխոհեմութիւն"), նոյնպէս "բարեխոհութիւն" (խոհեմութիւն) հնոց սովորական է. (տես ՀԲ։) Իսկ Ագաթ. Խ.2 կը գրէ "մի՛ բարեխոհեօք շնորհելով վասն բարեկամութեան" (= τοῖς εὐνοοῦσι, "բարեխոհ" այս իմաստով ալ տես ՀԲ. Ա 448։) Նոյն յոյն բառին դիմաց ուրիշ տեղ մը (ԼԹ. 2) կը գտնենք "որք բարեմտութեամբ առնեն" (այսինքն՝ յօժարութեամբ, սիրով, μετ' εὐνοίας, տես ՀԲ ալ։) Դարձեալ վերջապէս ԻԵ, եւն "քա-

ԽԴ,[1] կը գտնենք փոխադրուած՝ "Անձախելի է պղուտոսնէն (πλοῦτος) բարերարութեան . . . ։ արդ ով պղուսիոդորէ (πλουσιόδορε) թագաւոր„ եւն, ուր վերջին բառս՝ որ Հնոց անսովոր է, կազմուած է առաջնոյն համեմատ բառախաղը պահելու համար, ի հարկէ միտ չդնելով որ իմաստն այլայլած է. վասն զի յոյնը կը նշանակէ "ով տուրոտոջեան թագաւոր։„ ՏՊ. ելք մ'ուզած է գտնել սրբագրելով "ով մեծապարգեւ թագաւոր„, որ գոնէ իմաստին ճշդութիւնը պահած է։ Այսր ալ փոխարէն Ե,[3] տեղւոյ խօսքը՝ "ոչ ղորփորբերութիւն (προφορὰν) որ ի ձեռն բանից բարեաց, այլ յառաջբերութիւն (προσφορὰν ընծայութիւն, նուէրութիւն) որ ի ձեռն բարեպաշտ իրողութեանց„ անփոփոխ թողուցած է Պալատեցին, միայն վերջը սրբագրած՝ "այլ զյառաջբերութիւն նուէրաց„ գրելով, որ ճիշդ չէ. վասն զի "իրողութեանց„՝ մեր թարգմանին լեզուաւ՝ է "գործոց[1].„ եւ այս կ'ուզէ ըսել յոյնը։ Ընդհանրապէս այս վերջին պարագան, այսինքն այն որ մեր Ագապետոսի թարգմանը յունաբանաց լեզուն կը գործածէ, առիթ տուած է Պալատեցւոյն սրբագրութեանց, թէեւ առաջինն ալ ճիշդ նոյն իմաստն ունէր։ Օրինակի համար Զ,[1] "ոչինչ այնպէս բարեխօսէ գործէ զմարդ.„ (ՏՊ. "ոչինչ այնպէս պրոստոտէլի գործէ„ եւն.) կամ ԻԸ,[1] "երկպա-

---

ջախոհագոյն„ — εὐφρονέστατε (Հմմտ. ՀԲ, Բ, 984, Փիլոն եւն։)

[1] "Իրողութիւն„ այս իմաստով (= πρᾶγμα) յաճախ առիթ ունեցանք նշանակելու, տես Ագապ. Ե.3. Թ.2. ԺԱ.1. ԻԵ.1. Լ.1. դարձեալ՝ ԺԱ.1. ԺԳ.2. եւն։ Նոյնը սովորական է Հնոց յունաբանից Դիոնեսիոսի, Պղատոնի գործոց, Յովհ. Օձնեցւոյ եւն. (ՀԲ, Ա. 873։) Այսր համեմատ կը գտնենք նաեւ ԽԲ.3 "իրողել„ δράω, (գործել, առնել.) եւ ԻԸ.2 "իրողող„ (գործող։) ՀԲ չի նշանակեր վերջինքս, բայց կը նշանակէ Հնոց յաճախ գործածած "իրողութիւն„ (= πρᾶξις. πρᾶγμα) յիշելով բազմաթիւ գործեր՝ (անդ՝ Ա, 870.)

տիկ բուրեփորյ լինել.„ (ՏՊ. "երկպատիկ հաճոյ լինել„.) երրորդ տեղ մը սրբագրելու պէտք չկար, վասն զի ձեռագիրն ալ հոն "դրուատելի„ ունէր, (տես ԽԹ,[3]:) Արդ "բարեփորձ„ որ կազմուած է իբրեւ համապատասխանող յոյն εὐδόκιμος բառին, նոյն իմաստն ունի եւ սիրուած բառ մըն է մեր յունաբաններուն քով[1]: Ուրիշ շատ տեղեր ալ ի Հարկէ Պաղատեցին անփոփոխ թողուցած է այս կարգի բառերն եւ ասութիւնները, որ շատ բազմաթիւ են[2], աւելի եւս հին ասութիւն-

1 Տես ՀԲ, Ա, 458 (Նիւս., Կիւրեղ, Լամբր. եւն:)

2 Օրինակի համար "նմանել„ (μιμέομαι, նմանել): որ յաճախ գործածուած է, այսպէս Է,1 ("քաղաքէ ընթացից պետական հօտանաց.„) ԻԲ,3. ԻԹ,5. ԼԷ,1. ԿԳ,[1]. զարձեալ "նմանութիւն (նմանողութիւն) բարեաց„ (ԻԹ,5) եւ այլուր՝ ԽԵ,[1]. Հ,[1]. եւ որ Փիլոնի, Պորփիւրի, Մագիստրոսի եւ նմանեաց սիրելի բառերէն է. (տես ՀԲ, Բ, 994.) — ԺԱ.4 "ի շրջագայութեան փոխարկութեանն„ (փոփոխման, μεταβολή,) նոյն՝ ԺԳ,2 եւ ԼԳ,[1] "մի փոխարկեսցէ քեզ զմեծախոհ միտս„ եւն: "Շրջադարձ„ անսովոր ալ է հնոց, իսկ "փոխարկել„ եւն շատ սովորական յունաբանից. (ՀԲ, Բ, 950.) — ԺԳ.4 "որպէս բարեպաշտ ձեր կարողութիւնն օբրինեալ է„ (հաստատել եւն. տես ՀԲ, Բ, 710:) — ԽԲ.2 "Դժուարորսալի (δυσθήρατον) է գիւտն արդարոյն„ (τοῦ δικαίου), որուն մասին խօսեցանք ալ. նոյն իսկ այս չէզոքական "արդարն„ (= արդարութիւն, հոս՝ ճշմարտութիւն) կայ յունաբանից քով (տես ՀԲ, Ա, 346:) — ԻԴ.[1] "ցուցանեն ներկայութեանց գիմաց„ (τὰς ... ἐμφάσεις, տեսիլս կերպարանաց), զոր կը գործածեն Փիլոն եւ Արիստոտէլ. (տես ՀԲ, Բ, 417:) — ԼԵ,[1] "յորժամ տիրես կամայական (ἑκόντων, կամաւոր, յօժարական) մարդկան,„ որ իմաստի հոմութիւն կրնար տալ, թէեւ հնոց քով "կամայական„ այս իմաստն ունի. (տես ՀԲ[1] Ա, 1041:) — ԿԹ,2 "ոչ է ի դատաստանին ուրանալ (ἀρνήσασθαι, ուրանալ), որուն մասին խօսեցանք, զոր ՏՊ. ալ անփոփոխ թողուցեր է: — ԾԳ.3 "զի յԱստուծոյ վերաքարոզեսցես„ (ἀνακηρυσσω հռչակել եւն. տես ՀԲ, Բ, 811:) — ԻԱ,2 "բարձրացուցանել„ (փքանալ, տես ՀԲ, Ա, 465.) — ԾԷ,1 "իշ-

ներն՝ թէեւ երբեմն ցանցառ գործածուած բառեր ըլլան ։[1]

Ագապետոսի բնագրին համեմատութեան ժամանակ շատ յաճախ առիթ ունեցանք նշանակելու նաեւ այնպիսի փոխադրութիւններ՝ որ ծագած են չափազանց նիւթական թարգմանութեամբն եւ ասով մթին ու դժուարիմաց եղած, տեղ տեղ նաեւ յայտնի սխալմունքի կերպարանքով։ Թէ այսպիսի սխալմունքները Պալատեցին ուղղելու ջա-

---

խանութիւն պայծառալուրջի.„ Կ.2 "զհօգին գեղալուրջեալ„. ԿԷ.3 "զնչիցն գոյառողութեան„ (τὴν περιουσίαν, առատութիւն ընչից, ստացուածք) եւ շատ ուրիշներ, զորոնք անփոփոխ պահած է Պալատեցին կամ ՑՊ։ Հմմտ. ի վերջոյ ՀԱ.1 "սէգ եւ բարձրայօն (ὑπέροφρυς) մարդն մի իբրեւ ցուլ եղջերաբարձր (ὑψίκερος) ի վեր ամբարձցի„ եւն։ Հնոց քով "բարձրայօն„ յաճախ է (ՀԲ, Ա. 464), իսկ "եղջերաբարձր„ անսովոր. սակայն Մագիստրոս կը գրէ՝ "բարձրեղջեր նոխազ ի կառս իւր լծեալ„ եւն. (ՀԲ, Ա. 466։)

1 Շատ ուրիշներէն յիշենք՝ ԺԴ,3 "ոչ անկցի ի դարիւ հպարտութեան„ (κρημνὸς, գահաւանդ, դար.) զոր կը գտնենք Հարանց Վարուց մէջ ալ. (ՀԲ, Բ,) 632. — ԺԶ,3 "ուր գիցեն զներբանս ոտից.„ (τὰ πέλματα, տես ՀԲ, Բ, 415.) — ԺԲ,1 "զհօգւոյն մտածմունս բժշկեցուցանէին (կուրացուցանէին, տես ՀԲ, Ա, 492.) — ԿԹ,1 "ստուերքն մարմնոց յարատանան„, զոր յիշեցինք. — ԺԹ,4 "շողոմողութեան„ (θωπεία), ԺԶ.2 "շողոմեալ շողոքորթեն„ եւն (ԻԲ,1. ԼԱ,1. ԼԸ,4 "շողոմել), զոր կը գործածեն Նոննոս եւ Հարանց վարք. (ՀԲ՝ Բ, 488.) — ԼԳ,2 "որպէս հոռանոտ իշխանութեան վարող„ (ἐπίκηρον ἀρχὴν, վաղանցուկ, անցաւոր), զոր յիշեցինք արդէն եւ հնոց անսովոր չէ. (ՀԲ, Բ, 120.) — ԾԸ,1 "աղօթիւք շուրջանակի աշտարակեալ„ (περιπυργουμένη), զոր կարծես կը յիշեցընէ Լամբրոնացի գրելով՝ "Հաւատս եկեղեցւոյ, որով աշտարակեալ գոյ եւ պարսպեալ„ (տես ՀԲ, Ա. 265. ուր կոչում մ'ալ Եւագրէ.) — Հ,1 "յոլովաճեմ նաւու (νηὸς παντοπορούσης) քառակի ստողախնման (βραχυτελὴς) կացութիւն„ եւն, որոնց երկուքն ալ հնոց քով այլուր չենք գտներ, եւ շատ ուրիշներ։

նացած է, կրնայ ինքնին հասկըցուիլ, եւ եթէ ուզէինք յառաջ բերել այսպիսիները՝ շատ երկար ցանկ մը յօրինելու ստիպուած պիտի ըլլայինք։ Շատանանք յիշելով մէկ քանին։ ԺԹ,[5] կը կարդանք՝ "առ երկիւղի եղեալ ծառայութիւնն ձեւակերպեալ շողոմութիւն է, որ կեղծեալ պատուոյ անուամբ նէնքէ այնոցիկ ովք ինքեան մրերմանան," որուն անյարմար ըլլալը նշանակեցինք. (տես Դրան. նոյն տեղւոյ։) ՏՊ թէեւ ամբողջապէս չէ ուղղած յունաձեւ ասացուածը (միայն "ծառայութիւն" բառը փոխուած է՝ "հնազանդութիւն"), գոնէ իմաստը ճշդած է սրբագրութեամբս՝ "... պատրէ զայնոսիկ՝ ովք նմին ուշ եդեալ անոան" (= τοὺς ... προσανέχοντας.) — Ցոյն բնագրին ճիշդ հակառակ իմաստն առած է Ագապ. ԼԹ,[4] "եւ լաւացն աճեցուսցես զլըջմտութիւն[1], եւ յոռեացն քարոզեսցես ուսանել զչարութիւնն," որ կարելի չէ, քանի որ յոյնը կ'ուզէ ըսել "մոռանալ զչարութիւն" (μεταμαθεῖν,) ինչպէս տեղը բացատրեցինք, յաւելով որ թարգմանը կամ չէ տեսած μετα...մասնիկը (— μανθάνω ուսանել, μεταμανθάνω մոռնալ սորվածը, այլազգ սորվիլ եւն.), կամ ժխտական իմաստով բառ մը դուրս ինկած։ ՏՊ. լաւ սրբագրած է այս խօսքը գրելով՝ "եւ լաւացն աճեցուսցես (զ)յօժարութիւնն, եւ յոռեացն մոռանալ տալ ուսանել զչարութիւն։" — Շատ անյաջող փոխադրութիւն մըն է, երբ թագաւորական իշխանութեան համար կ'ըսուի թէ (Խ,[1]) "յորժամ շրջահայեցողն այս իշխանութիւն ոչ առ յանդգնութիւն հակիցի," որ անյաջող դարձուած մըն է յունաբանութեան մը (ὃ τοῦτο περικείμενος

---

1 Ցոյնը τὴν προθυμίαν ըսելով, իմաստն է՝ փոյթ, եռանդն եւն. ինչպէս ՏՊ. սրբագրած է "յօժարութիւն։" Սակայն "լըջմտութիւն" ալ ի վերջոյ այս մտօք ալ կրնայ առնուիլ. (տես ՀԲ, Ա, 908։)

τὶ χράτος), ուր թարգմանը περίχειμαι բառին մէկ նշանակութիւնն առած է («շրջակայիլ[1]», շուրջը գտնուիլ), առանց միտ դնելու որ նոյն բառը կը նշանակէ նաեւ՝ կրուիլ մէկէ մը, գտնուիլ մէկուն վրայ եւն: ՏՊ. իմաստը ճշգրտած է սրբագրելով՝ «յորժամ այն որ շրջաբերեալ է զայս իշխանութիւն՝ ոչ ի յանդգնութիւն հակիցի:» — Քիչ մ'եաքը կը կարդանք՝ (ԽԳ,[1]) «Թէեւ ստանայցես ուղղաւորութիւնս գործոց հաւասարաթիւս աստեղաց:» «Ուղղաւորութիւն» յարմար չէ ամէն դէպքի մէջ եւ հնոց անսովոր, այն ալ պարզ նիւթական փոխադրութիւն յոյն բառին (τὰ χατορθώματα), որ կը նշանակէ «քաջագործութիւնք, նշանաւոր գործք» եւն, հոս՝ բարի գործքեր: ՏՊ. ուղղած է այս ալ՝ «Թէեւ ստանայցես գործս քաջութեան հաւասարաթիւս աստեղաց» եւն: — Ակնյայտնի անյարմար է նաեւ (ԾԷ,[8]) խօսքս թէ «իշխանութիւն թագաւորի պայծառազարդի, յորժամ կամ յինքենէ շնորհեալն տեսանէ, կամ յայլմէ գտեալ՝ ոչ իւիք անտես առնէ:» Հայ ընթերցողը կրնար կարծել որ հոս խօսքը «կարօտեալ» աղքատներու մասին է. բայց այս չէ իմաստն, այլ թէ ընելու պէտք եղածները կամ անձամբ գտնելու է կամ ուրիշին գտածներն ընդունելու: Պարզապէս նիւթական փոխադրութեան արդիւնք մըն է (τὰ δέοντα, իսկ δέομαι կը նշանակէ՝ պէտս ունել, պիտոյանալ, կարօտել, խնդրել եւն,) որուն իմաստը լաւ ուղղած է ՏՊ. գրելով՝ «յորժամ կամ զպիտոյսն նկատէ, կամ զառ ի յայլմէ գտեալսն ոչ իւիք անտես առնէ» եւն: — Անյաջող է եւ հակառակ իմաստ ալ ունի սա խօսքը (ԿԳ,[2]) «ոչ հոգունակութեամբ խնամ տարեալ յաղագս ընտանեացն քոց, այլ ամենայնի ընձեռելով զհայցուածոն առ կեցութիւն»: Նշանակեցինք (տես Ծան. նոյն տեղւոյ) որ ի-

---

1 Հմմտ. ՀԲ, Բ, 496.

մասը հակառակն է, այսինքն թէ ոչ միայն ընտանի հպատակաց պէտք չէ խնայել կամ զլանալ, այլ նաեւ ամէնուն ապրելու հարկաւորները մատակարարել, եւ թէ սխալ թարգմանութեանս պատճառն է յունին ἀκριβολογούμενος ("խնամ տարեալ," բուն՝ ճշդիւ եւ խնամով կշռել, խնայել եւն) բառին անյարմար փոխադրութիւնը։ ՏՊ. գոնէ կերպով մ'աշխատած է հասկանալի ընել իմաստը՝ գրելով. "ոչ ճիշդ հոգողութեամբ վարուել առ ընտանի ծառայսն, այլ ամենեցուն ընձեռելով զհայցուածսն որ առ կեցութիւնն։" "Հոգունակութիւն" բառը հնոց անսովոր է։ — ԿԷ,[4] կը կարդանք՝ "Ոչ ոք զորս յաշխարհի ժողովէ՝ անդանօր շահ օգտութեան վերածէ, այլ զամենեսեան թողեալ ի վերայ երկրի, մերկ համար տայ զկենաց իւրոց։" Սխալմունքն ակնյայտնի է, մանաւանդ երբ համեմատենք յոյն բնագիրն՝ ἐχεῖσε ἀποδημήσας ἀπάγει, զոր Պալատեցին շատ լաւ թարգմանած է տպագրին մէջ՝ "ոչ ոք զորս յաշխարհի ժողովէ, նժդեհութեամբ անդր ուղեւորել՝ տանի, այլ զամենայն ինչ թողեալ," եւն։ — Վերջապէս յիշենք (ԼԳ,[1]) յունաբան փոխադրութիւնս՝ "Մի փոխարկեսցէ քեզ զմեծախոհ միտս՝ երկրաւոր այսր իշխանութեան ուռուցում." ուր "զանգուած" է ὁ ὄγκος բառին նիւթական փոխադրութիւն, որ կը նշանակէ՝ ուռուցում, քանակ, մեծութիւն, պերճութիւն եւն։ Հոս Պալատեցին ուրիշ ճար չէ գտած բայց եթէ պարզապէս ջնջել "զանգուած" բառն, բայց ասով աւելի անիմաստ եղած է խօսքը։ Միայն թէ կարելի է որ տպագրական վրիպակ մ'ըլլայ այն. վասն զի ուրիշ տեղ մը ճիշդ նոյն յունաբան սխալմունքը շատ լաւ սրբագրած է։ Այս տեղն է (ԾԲ,[1]) "հեզութեամբ խառնելով զուռուցում (τὸν ὄγκον) իշխանութեան." զոր ՏՊ. սրբագրած է՝ "հեզութեամբ խառնելով զվսեմութիւն իշխանութեան," որ նաեւ բուն իմաստն է։

Բաւական կը համարինք այնչափն ալ. Մնացեալներէն շատ բան ալ առիթ եղաւ նշանակելու յընթացս մեր գրութեան եւ Ծանօթութեանց մէջ։ Շատ տեղեր, բայց յատկապէս այս վերջին յիշուած փոխադրութեանց սրբագրութիւնք յայտնապէս կը հաստատեն այն կէտը թէ Պաղատեցին ոչ թէ պարզապէս հայ բնագիրն առջեւն առած ըստ կամս սրբագրելու աշխատած է՝ մթին տեղերուն իմաստ մը տալու համար, այլ թէ յօրինուածաբար աշխատած է՝ յոյն (անշուշտ տպագիր) բնագիրն աչքին առջեւ ունենալով եւ անոր համեմատ սրբագրած։ Անոր համար իւր սրբագրած եւ տպագրած բնագիրը՝ կերպով մը մասնական Նոր Խորհրդածութիւն կրնանք անուանել։ Մէկ երկու տեղեր՝ ինչպէս տեսանք՝ յաւելուած ալ ըրած է, գլխաւորաբար թերիները լրացընելով յոյն բնագրէն։[1]

Ի վերջոյ յառաջ կը բերենք Ագապետի գլուխ մըն ալ համեմատութեամբ ձեռագրին եւ Պաղատեցւոյ տպագրին, հետեւեալ պարզ պատճառաւ։ Մինչեւ հիմայ մեր տեսած բոլոր տարբերութիւնքն միայն մեր ձեռագրին եւ տպագրին մէջ են, եւ թէեւ մեր ձեռագիրն իբր 30 տարի կանուխ ըլլալով քան տպագիրը, առաջնոյն հնութեան եւ առաջնութեան մասին՝ թողլով նաեւ ուրիշ՝ ապացոյցները՝ եւ ոչ կասկած կրնայ ըլլալ, բայց լաւագոյն է գիտնալ որ նոյն աղերսն ունին նաեւ միւս ձեռագիրները։ Ս. Խաչի ձեռագրին

---

1 Ամենէն նշանաւորն է վերջաբանին յաւելուածը. "կատարած ... Որոյ ուղղափառութեան հեղեն գոյս բան՝ Աստուածայնագոյն եւ բարեպաշտագոյն Թագաւորին մերոյ Յուստինիանոսի Աղաբիդոս տրուպ սարկաւագ.", որուն արդէն լեզուն կը ցուցընէ թէ Պաղատեցւոյ յաւելուածն է։ Յոյն բնագիրքն ունին այս տեղեկութիւնն սկիզբը կամ վերնագրին կից. (տես վերը՝ էջ 160 Ծան.) իսկ մեր ձեռագիրը ունի ոչ հոն, ոչ ալ վերջը։

մասին տեղեկութիւն չունինք. բայց Վենետկոյ ձեռագրէն ծանօթ է մեզի գլուխ մը. որուն համեմատութիւնն ալ լիովին կը հաստատէ մեր ձեռագրին բնագրական վիճակը։ Ահա այս գլուխը համեմատուած տպագրին հետ։ Վենետկոյն ճիշդ նոյն է մեր ձեռագրին հետ, իսկ տպագիրը հոս աւելի մեղմ սրբագրութիւն մը կը ցուցընէ։

*Ձեռ. Վենետ. (Հ:)*[1]

Անցից գնացից ծովաճեմ նաւու քատակի սուղավախճան կոյսաբեան առաջիկայ կենցաղոյս. որ զմեզ զնաւորդքս իւր խաբէ, եւ փոքր փոքր քարշէ ընթացս[2], եւ առ իւրական վախճան զիւրաքանչիւրն ածէ։ Արդ եթէ այս այսպէս իցէ, զգուշասցուք ի շրջական[3] իրացն աշխարհիս, եւ ճեպեալ ընթասցուք առ մնացականն[4] յաւիտեանս յաւիտենից։

*Տպագիր (Հ:)*

Անցից գնացից ծովաճեմ նաւու քատակի սուղավախճան վիճակ առաջիկայ կենցաղոյս. որ զմեզ զնաւորդքս իւր խաբէ, եւ սակաւ առ սակաւ քարշէ զընթացս[2], եւ առ իւրական վախճան զիւրաքանչիւրն ածէ։ Արդ եթէ այս այսպէս իցէ, խուսափեսցուք ի հոսական[3] իրացն աշխարհիս, եւ ճեպեալ ընթասցուք ի մնացականսն[4] յաւիտեանս յաւիտենից։

Զենք կրնար կնքել մեր ուսումնասիրութիւնն առանց կրկին հաստատելու որ Գաղատեցին իւր նպատակին էական մասն ստուգիւ յաջողութեամբ

---

1 Տես Հ. Գ. Զարբ. "Մատենադարան,,, էջ 292։

2 "Քարշէ զընթացս,, (παρασύρουσα δρόμον) ուրիշ նման գործածութիւններ ալ ունի, այսպէս՝ ԺԹ, 2 "առ բարեմտութիւն քարշէ,, (ձգէ տանի.) ԽԲ, 5 "ի վեր քարշեն զառ ի յինքեանց խնդրեցեալն,, (ի վեր հանեն) եւն։ "Քարշել,, տես ՀԲ, Բ, 959։

3 Գաղատացւոյ "հոսական,, սրբագրելը կը յիշեցընէ ԼԳ, 2 տեղւոյ "հոսանուտ,, բառը, զոր պահած էր։ "Շրջական իրք,, հոս = τὰ παρατρέχοντα (անցաւորք, վաղանցուկ իրք.) այս մտօք ալ հնոց անսովոր չէ՝ իբր փոփոխական. (տես ՀԲ, Բ, 496։)

4 Մեր ձեռագր. "առ մնացականն,, (= ՏՊ.։)

գործածուած է, այսինքն՝ Ագապետի Նիւթական թարգմանութիւնքը ճշդրտել եւ մթին իմաստները պարզել։ Իսկ լեզուի տեսակէտով՝ անգոյն լեզու մ՚ունին Պալատեցւոյ սրբագրութիւնքն, որոնց ոմանք մինչեւ անգամ անյաջող են, ինչպէս տեսանք, ուրիշները նաեւ ռամկացումն ու լեզուական անճշդութիւններ կը ցուցընեն։[1] Բայց նաեւ այս կողմանէ շատ աւելի բարձր է տպագրուած Ագապետոսի՝ քան Պալատեցւոյն տրուած միւս թարգմանութեանց՝ լեզուն, ինչպէս վերը տեսանք։ Եւ վերջապէս նոյն իսկ տպագրիս այս էական յատկութիւնը, օրթօգրաֆեան եւ առով նոր խմբագրութիւն մ՚ըլլալը, կը ցուցընէ որ չենք կրնար Պալատեցւոյն ընծայել բուն հին թարգմանութիւնը։ Վերջինս հիմնովին բարեփոխողը, անոր սխալներն ուղղելու ձեռնարկողը չէր կրնար միանգամայն նոյն անճշդութեանց, նիւթականութեանց եւ սխալմանց հեղինակն ըլլալ. եւ այն որ տպագրութեամբ հրատարակելու համար գոնէ մասնական նոր թարգմանութիւն մ՚ընել հարկ տեսած էր, չէր կրնար առաջինը հրատարակել եւ հանրամատչելի ընել։ Եւ վերջապէս այն որ Ագապետի ամէն մի յունաբանութիւն հայացընելու աշխատած է, չէր կրնար իրեն նպատակ դրած ըլլալ Փիլոնի կամ Մագիս-

---

1 Այսպէս Դ, 4 «եւ որք արքունի խոյրս ի գլուխ դնեն, եւ որք ի ընդնէօք ծեխով անկեալ դնէին» — Տպ․ «. . . եւ որք զօրքն էրանց (այսինքն՝ զուրկ ի խուրից) արտաքոյ ոքնին եւ հօկեն.» — ԻԹ, 6 «կամ քատակուամ բարեաց ուսանի, կամ զնուազուամ չարեաց ոփանոյ» (յոյն ἐκπαιδεύεται, ուսանի, կրթի․) զոր Տպ․ ուզած է ճշդրտել այսպէս՝ «կամ զքատակուամ բարեացն ուսանի, կամ զնուազուամ չարեացն վերծէ.» բայց այսպէս Պալատեցի աւելի յունացուցած է. («վարժիմ զ․ . .» յաճախ է յունաբանից քով, տես ՀԲ, Բ․ 794։) Թողունք յիշել մէկ երկու ուրիշ կտորներ․ ուրիշներ տես նախընթաց ծանօթութեանց մէջ։

տրոսի եւ նմանեաց լեզուին նմանիլ այնպիսի մեծ յաջողութեամբ եւ ճշգրտութեամբ։

Եւ սաով կը կնքենք մեր ուսումնասիրութիւնը, սպասելով աւելի լոյսի մը նորանոր ձեռագրաց յայտնուելէն եւ ծանօթներուն հանրամատչելի ըլլալէն։ Բաղձալի էր որ ուրիշ բանասիրաց յաջողէր մեզի կարելի եղածէն աւելի եւս՛ ճշգրտել թարգմանութեանս հնութեան չափն եւ ժամանակը։

## Թ.

## ԹՂԹԱԿՑՈՒԹԻՒՆ ԱԲԳԱՐՈՒ ԵՒ ՔՐԻՍՏՈՍԻ ԸՍՏ ՆՈՐԱԳԻՒՏ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ԵՓԵՍՈՍԻ

### 1.

Քանի մ'ամիս յառաջ բաւական աղմուկ հանեց լրագրութեան մէջ գիւտի մը ծանուցումը, զոր ըրաւ ուսուցչապետն Բորման (Bohrmann) Հռոմ գումարուած հնախօսական համաժողովին առջեւ։ Գիւտն է Աբգարու թղթակցութեան արձանագրութիւն մը, գիւտի տեղը՝ Եփեսոս, ուր աւստրիական գիտունք պեղումներ կ'ընեն։ Քիչ շատ ամէն եւրոպական թերթ բերաւ այս լուրը՝ բնականաբար իրերը յաճախ բաւական տարբեր ներկայացընելով։ Այսպիսի թերթի մը տուած լուրը հաղորդուեցաւ նաեւ թերթիս մէջ,[1] ուր ի միջի այլոց յիշելով նամակաց վաւերականութեան մասին եղած վէճերը կ'ըսուի թէ "շատերը զանոնք վաւերական համարած են, ոմանք՝ ի մասնաւորի նոր գերմանական քննադատները՝ սուտ կամ կեղծ.„ եւ յետոյ կը գրուի յիշելով Եփեսոսի գիւտը "որ Յիսուսի ժամանակաց արձանագրութիւն մը կը յարաբերէ, որուն մէջ Աբգարին դէպքը կը պատմուի եւ երկու նամակաց վրայ յիշատակութիւն կ'ըլլուի, անոնց վաւերականութիւնն այս կերպով ազատ ի տարակուսանաց կը հաստատուի։„ Իբր օրինակ յիշեցինք զայս. Նման

---

1 Տես "Հանդէս„ 1900, Թ. 5–6, էջ 187 "Կարեւոր գիւտ մը մեր հին եկեղեցական պատմութեան վերաբերեալ„, գրուածքը՝ Տրիեստի L'Amico թերթէն (1900, Մայիս 6։)

բաներ են միւս թերթերուն ալ գրածը։ Մեզի դժբախտաբար անծանօթ է Բորմանի բանախօսութիւնը, եւ չգիտենք թէ նոյն համաժողովի տեղեկագիրքն արդէն տպագրուա՞ծ են թէ ոչ, ուստի եւ ոչ նոյն գիտնականին կարծիքն։ Բայց կարծենք դժուարաւ կրնայ վերոյիշեալ կարծիքն ընդունուիլ։ Արձանագրութիւնը ո՛չ մի կերպով Յիսուսի ժամանակաց կը վերաբերի, ո՛չ ալ Աբգարու պատմութիւն մըն է, ուր թղթերը յիշուած ըլլան. այլ պարզապէս թղթերն են յունարէն լեզուաւ, յուռեգոյն քան Եւսեբեայ քով, որ հիմն է արձանագրութեանս։

Հայ թերթերն ալ բնական է որ զբաղէին այս խնդրով։ Փոքրիկ յօդուած մըն է զոր դրաւ "Բազմավէպ„ սա խորագրին ներքեւ՝ "Մեծ հնախօսական գիւտ մը յԵփեսոս. Թղթակցութիւն ի մէջ Քրիստոսի եւ Ագրիպպաս արքայի։„[1] Գրուածքը տեղեկատուութիւն մըն է անգղիական ամենօրեայ թերթի մը,[2] որուն Հռովմայ թղթակիցը խառնած էր նաեւ արձանագրութեան նմանահանութիւն մը։ Այս նմանահանութիւնն ալ դրած է "Բազմավէպ„ երկու կտորով։[3] Կը՛ խոստովանինք որ ճիշդ այս արձանագրութեան նմանահանութիւնն էր որ գրգիռ եղաւ մեզի զբաղելու կրկին այս խնդրով։ Հարեւանցի ակնարկ մ'ալ բաւական էր համոզուելու որ այնպէս "մեծ հնախօսական գիւտ մը„ չէ եղածը, գոնէ արձանագրութեան մասին, որ նոր բան մը չէր պարունակեր։

---

1 "Բազմավէպ„ 1900, Յունիս, էջ 287։

2 Թերթն է՝ Daily Express 1900, Մայիս 2։

3 Անշուշտ պարզապէս էջին նեղութեան պատճառաւ տակէ տակ դրուած են իբր երկու քար, մինչ բուն մէկ քար է։ Եթէ կրկին բաժինները I եւ II նշանակենք, արձանագրութեան բոլոր տողերու առաջին կէսը կը գտնուի I բաժնին մէջ, վերջին կէսը՝ II բաժնին. ուստի Տող 1 է — $I^1$ եւ $II^1$. Տող 2 — $I^2$ եւ $II^2$ եւ այսպէս յառաջ։

Պարզապէս Եւսեբեայ խմբագրութիւնն է՝ քիչ մ'աւելի վատթարացած, մանաւանդ թէ վերջաբանական կտոր մ'աւելի՝ որ ինքնին կը վճռէ բովանդակ թղթակցութեան կեղակարծ ըլլալը. մինչդեռ ցայսօր Եւսեբեայ եւ հետեւաբար Խորենացւոյ քով պակսելով նոյնը՝ վաւերականութեան պաշտպան ըլլալ ուզողը գոնէ մեծ դժուարութենէ մ'ազատ կրնար ըլլալ։

Այս կէտերն են զոր կ'ուզենք շօշափել համառօտիւ յաջորդ դիտողութեանց մէջ, չուզելով կրկին զբաղիլ խնդրոյն ամէն մանրամասնութիւններով եւ Լաբուբնայի խնդրով, որուն հետ անբաժան կապուած է այս ամէնը։ Վերջնոյս մասին արդէն առիթ ունեցած ենք խօսելու եւ նշանակած բազմաթիւ գրքեր, որ նոյն խնդրոյ մասին լոյս տեսած են։[1] Կրնայինք աւելցնել շատ ուրիշներ ալ։[2] Ի մասնաւորի որչափ խնդիրը Հայոցս, այսինքն՝ բուն Խորենացւոյ ալ կը վերաբերի, յիշելու արժանի է հայագէտ Կարիէրի քննութիւնը,[3] որ նաեւ հայերէն թարգմանութեամբ լոյս տեսաւ,[4] եւ ուր անտես չեն եղած ի հարկէ նամակներս՝

---

1 Տես մեր Zur Abgar-Sage, Վիեննա 1890, $8^0$ էջք 55. (Նախ ի WZKM, 1890, Heft 1—3.) Համառօտ հայերէն տես “Հանդէս„ 1889. էջ 47—51, 63—67։

2 Ի միջի այլոց՝ R. Duval, Histoire politique, religieuse et littéraire d'Edesse, ի թերթին Journ. As. XVIII (1891), p. 87–133, 201–278, 381–439. XIX, 5–102 եւ առանձինն։ — Adolfe Raffa, La légende d'Abgar et les origines de l'Église d'Edesse, étude historique et critique. Genève 1893, $8^0$ pp. 110, եւ ուրիշներ։

3 A. Carrière, La légende d'Abgar dans l'histoire d'Arménie de Moïse de Khoren. Paris 1895, $4^0$ pp. 57.

4 “Աբգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ„ թրգմ. Հ. Գ. Մենէվիշեան՝ յառաջաբանով, Վիեննա 1897. $8^0$ էջք ԺԵ+107. (Նախ ի “Հանդէս„ 1896, Թ. 2—12։)

որ Խորենացւոյ քով ալ կան։[1] Իբրեւ պատասխան այն տեսակ մը պարսաւանաց թէ ի մանաւորի գերման գիտնականք են որ թղթակցութեանս կեղծ ըլլալը կ'ընդունին, յիշենք գերմանացի գիտնական մ'ալ՝ Հայրախօսն Նիրշլ, որ յատուկ գրութեամբ մ'ուզեց պաշտպան հանդիսանալ վաւերականութեան, թէեւ բոլորովին անբաւական կերպով,[2] մինչդեռ գաղղիացի գիտնական մը, որ այնպէս ջերմ պաշտպան է Աբգարու զրուցին յէականս պատմական ըլլալուն, արդի թղթակցութիւնն ներկայ ձեւին մէջ չէր կրնար հարազատ ընդունիլ. այլ միայն նախնական հարազատ թղթակցութեան մը գոյութիւնը կ'ենթադրէր։[3]

Ցաջորդ տողերը մեծ մասամբ գրուած էին, երբ ստացանք ուրիշ հայ պարբերական մ'ալ՝ “Բանասէր„։ Ներկայ տարւոյ առաջին պրակին մէջ հրատարակիչը Կ. Ց. Բասմաջեան համառօտ քննութիւն մը գրած է նոյն խնդրին սա խորագրով՝ “Աբգարի եւ Քրիստոսի թղթակցութիւնն. Նորագիւտ արձանագրութիւն յԵփեսոս։„[4] Հոս ալ հրատարակուած է արձանագրութիւնը նոյն նմանահանութեամբն, զոր ունէր նաեւ “Բազմավէպ„. բայց հոս՝ քիչ մ'աւելի պզտիկցուած՝ աւելի լաւ

---

1 Տես անդ՝ էջ 77—81 եւն։

2 Jos. Nirschl, Der Briefwechsel des Königs Abgar in Jerusalem oder die Abgarfrage, ի թերթին „Katholik“, Bd. 76, p. 14–40, 97–114, 193—209, 322—345 եւ 398—420.

3 J. P. P. Martin, Les origines de l'Église d'Edesse etc. Paris 1889, 8° pp. 153. — Լաբուբնայի հետ կապ ունեցող խաչի գիւտի խնդրոյ մասին հմմտ. ի մէջ այլոց նաեւ V. Ryssel, Materalien zur Geschichte der Kreuzauffindungslegende in der syr. Litteratur, ի թերթին „Zeitschrift f. Kirchengeschichte“ XVI, 222—242, եւ ուրիշներ։

4 “Բանասէր„, Հատ. Բ (1900), Պրակ Ա, էջ 45—51։

գաղափար մը կու տար՝ դրան քարին երկու բաժինները ճշդութեամբ քովէքով դրուած ըլլալով։ Ամբողջ գրութիւնն ալ՝ քանի մը մանրամասնութիւնք չհաշուելով՝ իբր ուղիղ կերպով կը լուսաբանէ. այնպէս որ պահ մը աւելորդ երեւցաւ մեզի հրատարակել յաջորդ դիտողութիւնքն։ Սակայն՝ ինչպէս ընթերցողք կրնան համեմատելով կշռել, մենք իրերը քիչ մը տարբեր տեսակիտով պիտի ներկայացընենք. եւ կը յուսանք այլեւայլ կէտեր աւելի լուսաւորել. եւ դարձեալ՝ այս մեր դիտողութեանց հիմն առնուած է յիշեալ արձանագրութեան վաւերական եւ պաշտօնական պատճէնը կամ հրատարակութիւնը, որ տեղ տեղ բաւական տարբեր ընթերցուած ունի։

Երկու նմանահանութիւնքն ալ՝ զոր յիշեցինք, միակ պատճէնի մը համեմատ են, որ բուն սկզբնագրին վրայէն առնուած ալ ըլլալով՝ չի ներկայացըներ բոլորովին այն՝ ինչ որ է սկզբնագիրն իւր տառերու ձեւերով եւն։ Բայց այս կէտը մեզի համար նշանակութիւն չունի. տառաձեւերն եւ նմանները մեզի համար հոս այնչափ արժէք ունին, որչափ կրնան նպաստել հնութեան չափը որոշելու։ Բուն գլխաւոր կէտն է ընթերցուածոց ճշդութիւնը, զոր պահած են ընդհանրապէս յիշեալ նմանահանութիւնքն ալ՝ ինչպէս այժմ կրնանք համեմատելով որոշել. բայց մանրամասնութեանց մէջ բաւական շեղումներ կան, շատ տառեր լաւ չեն ներկայացուած, որով ուրիշ ընթերցմանց առիթ կը տրուի, եւն։ Կարեւորն էր ըստ այսմ Արձանագրութեան պաշտօնական հրատարակութիւնն ունենալ աչքին առջեւ, որ դժուար ալ չէր։ Արդէն նոյն "Բանասէր„ յիշեալ յօդուածին կցած էր՝ "Նորագոյն արձանագրութեանս առթիւ„ խորագրով՝ նամակ մը գաղղիերէն լեզուաւ, զոր գրած է Հ. Հուբեր (Henri Hubert)՝ Սէն-Ժէրմէնի Հնութեանց Թանգարանին մէկ պաշտօ-

*նեայն, որ մատնանիշ կ՚ընէր նոյն հրատարակութիւնն եւ անով կը ճշգրտէր շատ կարեւոր նախադասութեան մ՚ընթերցուածը։*[1] *Այս հրատարակութիւնն արդեամբք եղած է Աւստրիական Հնախօսական Հաստատութեան Տարեգրոց ներկայ տարւոյ առաջին Գրքին մէջ, որ լոյս տեսած է* 1900 *Մարտ* 31*ին։*[2] *Հրատարակիչն է Եփեսոսի պեղիչներէն նոյն ինքն Հեբերդէյ, որ կու տայ "Նախընծայ տեղեկագիր մը Եփեսոսի պեղմանց մասին" յիշեալ հրատարակութեան վերջը՝ յարակից բաժնին մէջ։*[3] *Բուն գրուածքը կամ տեղեկագիրն՝ արձանագրութեան ընթերցմամբ եւ այլ տեղեկութիւններով՝ բառ առ բառ նոյնութեամբ արդէն հրատարակուած էր քիչ մ՚աւելի կանուխ, դրուած ըլլալով Վիեննայի Գիտութեանց Ճեմարանին փիլիսոփայական-պատմական բաժնին Զեկուցագրին մէջ (Թիւ Ե, Նիստ* 1900*, փետր.* 7*։)*[4] *Բայց այնտեղ կը գտնենք բուն Արձանագրութեան ճշգրտագոյն նմանահանութիւնը. Նախ ամբողջ սեմա-*

---

1 *"Բանասէր,, անդ՝ էջ* 52*։ Այստեղ կը նշանակէ Հերբեր որ ուրիշ գիտնական մը* (Dobschütz *ի Թերթին* Theol. Literaturzeitung 1900, col. 380) *կը ծանուցանէ "աւելի կարեւոր երկասիրութիւն մը,,, արձանագրութեան բնագիրն աւելի մերձաւոր գտնելով անոր հետ՝ զոր հրատարակած են Լինդսէյ եւ Նիքոլսոն՝ Փայուսի մէկ պրտուաթղթին համեմատ՝ արդէն* 1885*ին։ Այս վերջինն առիթ պիտի ունենանք յիշելու քիչ մ՚ետքը։*

2 Jahreshefte des österreichischen archäologischen Institutes in Wien. Bd. III, Heft I. Wien 1900 4°, pp. 120 + coll. 104. (2 *տախտակով եւ* 63 *պատկերներով։*)

3 Jahreshefte etc. Beiblatt, col. 83–96. Rudolf Heberdey, Vorläufiger Bericht über die Ausgrabungen in Ephesus. *Արձանագրութեան մասը՝* col. 90--96*։ Գրուած է Զմիւռնիայէ։*

4 K. Akademie d. Wiss. in Wien, Anzeiger der phil.-hist. Classe. Nr. V (Sitzung von 7 Febr. 1900), S. 30—40, *արձանագրութեան մասը՝* S. 38–39*։*

քարը ներկայացուած գրութեամբն ալ, որ պայծառ գաղափար մը կու տայ իրեն. եւ երկրորդ յատկապէս արձանագրութիւնն աւելի մեծ նմանահանութեամբ՝ սկզբնագիրն ճիշդ ինչպէս է ներկայացընելով։

Նախ քան բուն խնդրին միջամտելը՝ ըսենք որ այս եւ նման խնդիրները յատկապէս մեզ Հայոցս համար ըստ ինքեան անտարբեր են կամ ըլլալու են։ Ըլլայ արձանագրութիւնը հին կամ ոչ, ըլլայ Աբգարու թղթակցութիւնը վաւերական կամ կեղծ, ըլլայ Լաբուբնա պատմութիւն կամ վիպախառն աւանդութիւն, այս ամէնը կը վերաբերի բուն եւ կրնանք ըսել բացառապէս Ուռհայի եկեղեցւոյ եւ ասորի գրականութեան, շատ շատ Ուռհայի ազդեցութեան ներքեւ եղած շրջակայ հայ գաւառներուն ալ երկրորդաբար։ Նախնաբար մեզի հետ գործ չունեցող խնդիր մըն է, որ հայկական եղած է կերպով մ'այն օրէն՝ երբ Խորենացւոյ հետ արշակունի մ'ըրած ենք Աբգարն, եւ երբ՝ ինչպէս արդէն Լաբուբնայի հայ թարգմանիչն ըրած էր, ասորի աւանդութեան Ուռհայ մեռնող Ադդէն՝ Թադէոս անուան ներքեւ ի Հայս փոխադրած է հայ աւանդութիւնը։ Այնպէս որ այս ամէնը մեր պատմութեան անհրաժեշտ մէկ էջը կազմած են դարերէ ի վեր. եւ շատերը հայրենի գրականութեան եւ նաեւ եկեղեցւոյ սրբազան պարտք մը կը համարին նոյները պաշտպանել ո՛չ միայն գիտնոց դէմ, որ կարծես ընդ հենգն բոլորովին ուրիշ կը տեսնեն նախնական իրերը, այլ նաեւ Ասորւոց դէմ, որոնք իրենց աւանդութիւնները մեզի շնորհել չեն ուզեր ի հարկէ։ Այս ամէն պատմական, աւանդական եւ վիպական խնդիրներն ու վէճերը մեր ծրագրէն դուրս ըլլալով՝ կը թողունք ուր եւ ինչպէս են, եւ կ'անցնինք Արձանագրութեան։

## Զ.

*Նախ կարեւոր է գիտնալ ճշդիւ թէ ինչ կ'ըսէ Արձանագրութեան բուն պեղողը եւ հրատարակողը։ Հեբերդէյ համառօտիւ կը նկարագրէ գիւտը եւ կարեւոր տեղեկութիւնները կու տայ. եւ ինքն իբրեւ ականատես շատ հեռի է անոր այն չափազանց նշանակութիւնը տալէն. այլ ընդհակառակն բոլորովին ուղիղ դատած է իրը։ Ահա իւր գրածը. Պեղմանց շնորհիւ "առանձին գիւտերէն՝ որոնց մէջ այս անգամ ալ մեծ քանակութեամբ արձանագրութիւններ կան, կը յիշեմ յանուանէ Հռոմայեցւոյ մը գլուխը՝ թերեւս Նախաքրիստոնէական ժամանակէն, զոր անաղարտ պահուած հանեցինք բիւզանդեան պատէ մը՝ Թատրոնէն վեր։ Նաւահանգստի փողոցին հիւսիսակողմը գտնուող ուշ ժամանակի տան մը սեմատարը մաքուր տառերով քանդակուած՝ ունի անվաւեր Թղթակցութիւնն ի մէջ Քրիստոսի եւ Աբգարու Եդեսիոյ,[1] հետեւեալ ձեւով որ Եւսեբիոսի ունեցածին ազգական է, բայց այլ եւ այլ յաւէ ուղղագրութիւններով եւ ընդմիջարկութիւններով աղաւաղած է։„ Բնագիրը դնելէն ետքը կը շարունակէ՝ "Աչքի կը զարնէ արձանագրութիւնը զետեղելու կերպը. արձանագիրը կը գտնուի սեմոց վարի երեսը, տուն մտնողին ճիշդ գլխուն վրայ։ Ցայտնապէս կը տեսնուի որ էֆէր հմայական պահպանակ գրուած է* (apotropäische Absicht), *եւ սոսր համաձայն է այն պարագան որ հոս առնուած է նաեւ վերջաբանական տողն, որ կը խոստանայ պաշտպանութիւն քա-*

[1] *"Մատենագրութիւն ու աղբերաց ցուցակ մը տես* Harnack, Geschichte der altchristlichen Literatur, I, 533ff. 909, *որուն վրայ աւելցընելու է Արքիդուքս Ռայներէ Պապիրոսներուն երկու խպտի հատակոտորները.* (*տես* J. Krall, Mittheilungen, V, 144ff. Führer, p. 56, 57, Nr. 192, 195.)„ — *Ծան. Հեբերդէյի։*

ղաքին (Եդեսիոյ) եւ բնակչաց, որ տակաւին կը պակսի Եւսեբեայ քով եւ ապահովապէս ուշ ժամանակի յաւելուած մըն է։[1] Ի հարկէ բոլորովին անկարելի չէ որ քարը նախնաբար այս տեղւոյ համար գործածուած ըլլայ։ Ասոր կրնար ապացոյց բերուիլ որ առաջին նամակին խորագիրը՝ զոր Եւսեբիոս պահած է եւ մեր արձանագրութիւնը չունի (Ἀντίγραφον ἐπιστολῆς եւն) եւ կը սպասուէր հոս՝ ինչպէս որ կայ միւսը Տող 7ին մէջ, կրնար կորսուած ըլլալ այն ատեն՝ երբ քարին նոյն երեսը կրկին կոփուեցաւ իբրեւ դրան սեամք։ Սակայն եւ այնպէս այս պարագայիս ալ մնալու է այն մեկնութիւնը զոր տուինք թէ ինչ նպատակի կը ծառայէր քարը այս վերջին տեղը։„

Այժմ տեսնենք արձանագրութիւնը։ Առձեռն չունենալով սկզբնագրին վաւերական նմանահանութիւնը, որ կրնայ տեսնուիլ վերոյիշեալ տեղը, կը դնենք տպագրական տառերով ճշդիւ ինչպէս հոն է։ Ամբողջ 11 տող է, բայց տողերն այնպէս երկայն (— արձանագրութեան երկայնքն է 1·40 մեդր —) որ չենք կրնար ճշդութեամբ պահել. որոշեցինք թուարկելով (1—11) եւ նոր տողով սկսելով։ Քարն երկու կտորի ճեղքուած է ճիշդ տողերուն կէսէն, զոր կը նշանակենք ||նշանով։ Իւրաքանչիւր կտորն ալ կրկին երկուքի ճեղքուած է, զոր կը ցուցընէ |նշանը։ Ուր այս կտրուած տեղերը տառեր պակսած են՝ կը նշանակենք [ ] փակագծով։ Ահա արձանագիրը։

---

[1] "Այսպէս թղթերս քանդակուած էին Եդեսիոյ դռներու վրայ (տես Պրոկոպիոս Bell. Pers. II, 12. Եւագր. Եկղ. Պատմ. II, 27։) Թղթերուս պատճէններ իբրեւ պահպանակ (Amulett) վրանին կը կրէին. (տես Վիեննայի Cod. Vind. Theol. Graec. 315, Թղ. 59ա—61բ։) Հմմտ. Lipsius, Die edessenische Abgarsage, p. 4, 16, 21. J. Krall, նոյն տեղը։„ — Ծան. Հեբերդէյի։

1. † ΑΥΓΑΡΟCΟΥΚΑΜΑΤΟΠΑ[ ]ΧΗCΙΗCΟΥΑΓΑΘΩCΩΤΗΡΙΑΝΑΦΑΝΕΝΤΙΕΝΠΟΛΙΙΕ
‖ΡΟCΟΛΥΜΩΝΧΕΡΙΝΗΚΟΥCΤΕΜΟΙ | ΤΑΠΕΡΙCΟΥΚΑΙΤΩΝCΩΝΙΑΜΑΤΩΝΩCΑΝΕΥ
2. ΦΑΡΜΑΚΩΝΚΑΙΒΩΤΑΝΩΝΥΠ[]ΟΥΓΙΝΟΜΕΝΩΝΤΥΦΛΟΥCΑΝΑΒΛΕΠΙΝΠΟΙΕΙCΧΩΛΟΥCΠΕ[]
‖ΠΑΤΙΝΛΕΠΡΟΥCΚΑΘΑΡΙΖΙCΚΑΙΑ | ΚΑΘΑΡΤΑΠΝΕΥΜΑΤΑΚΑΙΔΕΜΟΝΑCΕΚΒΑΛΛΙC
3. ΚΑΙΤΟΥCΜΕΝΜΑΚΡΟΝΟC[ ]ΒΑCΑΝΙΖΟΜΕΝΟΥCΘΕΡΑΠΕΥΕΙCΚΑΙΝΕΚΡΟΥCΕΓΙΡΙC[ ]
‖ΑΙΤΑΥΤΑΠΑΝΤΑΑΚΟΥCΑCΠΕΡ | ΙCΟΥΚΑΤΑΝΟΥΝΕΘΕΜΗΝΤΟΕΤΕΡΟΝΤΩΝΔΥΟ
4. ΠΟΤΙCΟΙΕΙΟΙΥΙCΤΟΥΘΥΚΑΙΚ | ΑΤΑΒΑCΕΚΤΟΥΟΥΡΑΝΟΥΠΟΙΕΙCΤΑΥΤΑΗΟΤΙCΟΙΕΙΟΘ[ ]
‖ΚΑΙΚΑΤΑΒΑCΕΚΤΟΥΟΥΡΑ | ΝΟΥΠΟΙΕΙCΤΑΥΤΑΔΙΑΤΟΥΤΟΓΡΑΨΑC
5. ΕΔΕΗΘΗΝCΟΥCΚΥΛΗΝΑΙΠΡ | ΟCΜΕΚΑΙΤΟΠΑΘΟCΟΕΧΩΘΕΡΑΠΕΥCΑΙΗΚΟΥCΤΕΜΟΙΓΑ[ ]
‖ΤΙΟΙΙΟΥΔΕΟΙΚΑΤΑΓΟΓΓΥΖΟΥ | CΙΝCΟΥΚΑΙΒΟΥΛΟΝΤΑΙΚΑΚΩCΕCΑΙΠΟΛΙCΔΕΜ[ ]
6. ΕCΤΙΝΜΙΚΡΟΤΑΤΙΚΑΙCΕΜΝΙ | ΗΤΙCΕΞΑΡΚΙΑΜΦΟΤΕΡΟΙC†
7. † ΤΑΑΝΤΙΓΡΑΦ | ΕΝΤΑΠΑΡΑΤΟΥΔΕCΠΟΤΟΥΔΙΑΑΝΑΝΙΟΥΤΑΧΥΔ
‖ΡΟΜΟΥ
8. † ΜΑΚΑΡΙΟCΟΠΙCΤΕΥCΑCΕ | ΝΕΜΟΙΜΗΕΩΡΑΚΩCΜΕΓΕΓΡΑΠΤΕΓΑΡΠΕΡΙΕΜΟΥ
‖ΟΙΕΩΡΑΚΟΤΕCΜΕΜΗΠΙCΤΕΥ | CΟΥCΙΝΕΝΕΜΟΙΚΑΙΟΙΜΗΕΩΡΑΚΟΤΕCΜ[ ]
9. ΠΙCΤΕΥCΟΥCΙΝΚΑΙΖΗCΟΝ[ ]ΕΠΕΡΙΔΕΟΥΕΓΡΑΨΑCΜΟΙΕΛΘΙΝΠΡΟCCΕΔΕΟΝΕC[ ]
‖ΝΠΑΝΤΑΔΙΑΑΠΕCΤΑΛΗΝ | ΠΛΗΡΩΤΑΙΤΑΠΑΝΤΑΚΑΙΜΕΤΑΤΟΠΛΗΡΩ[ ]
10. ΤΑΠΑΝΤΑΑΝΑΛΗΜΦΘΗΝ | ΑΙΠΡΟCΤΟΝΑΠΟCΤΙΛΑΝΤΑΜΕΚΑΙΕΠΙΔΑΝΑΝΑΛΗ
‖ΜΦΘΩΑΠΟCΤΕΛΛΩΤΙΝ | ΑΤΩΝΜΑΘΗΤΩΝΜΟΥΟCΤΙCΕΙΑCΕΤΑΙCΟΥ
11. ΤΟΠΑΘΟCΚΑΙΖΩΗΝCΟΙΠΑΡΑ | CΧΗΚΑΙΤΟΙCCΥΝCΟΙΩCΙΝΚΑΙΤΗΠΟΛΙΤΗCΗΜΗΔΕΝ
‖ΑΤΩΝΕΧΘΡΩΝΤΩΝCΩΝΕΞΟΥΗΑΝΤΑΥΤΗCΕΧΙΝΗCΧΙΝΠΟΤΕ †

Արձանագրութիւնը դրինք ամենայն ճշդութեամբ: Միայն տառաձեւերն ի հարկէ յաճախ տարբեր են տպագրէն: Օրինակի համար ω միայն տեղ մը (ἀγαθω տող 1) ω է, միւս բոլոր տեղերը սա ձեւով ա, հայերէն բոլորգիր "ա" տառի պէս. υ միշտ սա ձեւն ունի Υ, տեղ մը միայն (տող 2 πνευματα) եղած է արդէն V. դարձեալ φ տեղ մը (տող 4 γραφας) պարզ խաչաձեւ †, ուրիշ տեղ մը (տող 9 εγραψας) եռաժանւոյ ձեւով՝ ⊥. կրկին ձեւով է α տառը, եւ շատ ուրիշներ, ի հարկէ ամէնը գլխագիր ձեւով, ամբողջը շատ խնամով քանդակուած:

Արդ այս արձանագրութիւնն է որ այնչափ աղմուկ հանեց, մեր կարծեօք բոլորովին անտեղի: Ուրիշ տեսակէտ մըն է այն՝ զոր կը ծանուցանէ անգղիական թերթը, զոր վերը յիշեցինք եւ զոր յառաջ կը բերէ "Բազմավէպ"՝ ինչպէս արդէն նոյն փոքր գրուածքին խորագիրը կը ցուցընէ: Հոն կը կարդանք "վերոյիշեալ լրագրիս խմբագիրը քննելու յանձներ է այդ նմանահանութիւնը Բրիտանական Թանգարանին Ուսուցիչ Մըրրէյի, երբ սա Հռովմայ Հնախօսական ժողովէն դարձեր է: Մըրրէյ անտարակոյս վաւերական եւ յոյժ հետաքրքրական համարեր է այդ արձանագրութիւնը. վասն զի այսու պիտի հաստատուի նաեւ վաւերականութիւնն Եդեսիոյ Աբգար Թագաւորին եւ Յիսուսի Քրիստոսի թղթակցութեան, զոր կը յիշատակեն Եւսեբիոս եւ մերս Խորենացի: Ասորի-քաղդէական տառերով գրուած նամակներն, — որոնց պատճէնն է այս նորագիւտ արձանագրութիւնս, — կանխաւ գտնուած էին քարի մը տակ Իկոնիոն քաղաքէն 84 մղոն հեռու տեղ մը, յամի Տեառն 97: Լրագիրն կը ծանուցանէ եւս որ Աւգարոս նոյն է Աբգար Թագաւորին հետ եւ Քրիստոսի առ սա ղրկածն է Փիլիպպոս առաքեալն:" Բազմավէպի խմբագիրն իրաւամբ հարցական նշան կը դնէ այս տեղեկու-

թեան ծայրը։ Ամբողջն ալ իբր պարզ լրագրի լուր ինքնին արժէք մը չունի. եւ եթէ յիշեցինք՝ սա կէտին համար է որ նախ կ'ըսուի թէ Աբգար եւ Ագրիպպաս նոյն անձն ըլլան։ Չենք գիտեր Մըրրէյ հրատարակա՞ծ է արդէն իւր կարծիքն, եւ թէ պիտի յաջողէ՞ այսպիսի քայլ մը, որ շատ տարակուսական կ'երեւայ։ Բայց եթէ ասոր ապացոյց մը պիտի ըլլայ ներկայ արձանագրութիւնը, այն զուր ակնկալութիւն է։ Մեզի ծանօթ չէ դարձեալ այն "ասորի-քաղդէական" տառերով գիւտն, որ չգիտենք ինչ տեսակ տառեր պիտի ըլլան, եւ "որոնց պատճէնն" պիտի ըլլայ մեր արձանագրութիւնը։ Բայց ներկայ յունարէնն ոչ մի "ասորի-քաղդէական" բնագիր չ'ենթադրեր. միակ հիմն ունի, այն յունարէնը՝ որ ծանօթ է արդէն Եւսեբիոսէն։

Արդէն հրատարակիչն Հեբերդէյ շատ լաւ շեշտած է այս եւ անոր յարակից պարագաները։ Նախ արձանագրութիւնն այնպէս հին չէ։ Գտնուած տունը կամ պալատը "ուշ ժամանակի" գործ է, ոչ թէ հնագոյն Եփեսոսի շէնքերէն։[1] Երկրորդ՝

[1] Այս մասին աւելի տեղեկութիւն պիտի ունենանք, երբ հրատարակուին պեղմանց վերջնական արդիւնքն։ "Բանասէր" (անդ՝ էջ 51) աւելի տեղեկութիւններ կու տայ՝ իբր վերջաբան իւր գրութեան՝ այսպէս. "Հնագրական տեսակէտով՝ արձանագրութեանս մէջ գործածուած տառերը Ե. րդ դարու մէջ գործածուած ձեւեր կը ներկայացընեն, իսկ չորրորդ եւ ամենակարեւորը՝ Եփեսոսի վերոյիշեալ պալատին — որուն արտաք դրան վրայէն գտնուած է այս արձանագրութիւնը, կառուցուած է Ե. րդ դարուն մէջ։ . . . Արձանագրութիւնն օրինակուած է Եւսեբիոսի Եկեղ. Պատմութեան նախնական օրինակի մը վրայէն, եւ զետեղուած է հոն իբրեւ հմայք յանսասան պահպանութիւն արքայական պալատին, ինչպէս կ'ընեն շատ անգամներ խաչ մը կամ թէ ո եւ է սուրբի մը պատկերը քանդակել տալով։ Այսպիսի հմայական մտքով գործածուած համանման արձանագրութիւն մըն ալ գտած է վերջերս անգղիացի ուղեւոր մը,

քանդակը սեմիներսի կողմը գրուած է իբր Հմայք՝, իբր պահպանակ (համայիլ), ճիշդ ինչպէս ձեռագիր ալ կայ նոյնպէս։ Անշուշտ վաւերականութեան նշաններ չեն ասոնք․ բայց մանաւանդ երրորդ կէտը՝ արձանագրութիւնս չէ եւ չի կրնար մտածուիլ առանց Եւսեբիոսի, որմէ անբաժան է եւ որմէ կախուած է։ Արդէն՝ եթէ Եւսեբիոս սուտ չէ խօսած, իրմէ յառաջ չկար թղթերուս յոյն թարգմանութիւն մը։ Ահա այս վերջին կէտը կ՚արժէ քիչ մ՚աւելի մանրամասն տեսնել։

Աբգարու զրոյցն ու թղթակցութիւնս դարերէ վեր ծանօթ է ամէն լեզուաւ եւ պէսպէս խմբագրութեամբ։ Եթէ ուզենք մի առ մի յիշել այն ամէն հեղինակներն, որ նոյները պատմած կամ յիշած են, ահագին ցուցակ մը կ՚ելլէ։[1] Նուազ պէսպէս չեն նաեւ թղթերուս բնագիրներն այլեւայլ լեզուներով, զարմանալի պարունակութեամբ ի մասնաւորի անոնք որ իբր պահպանակ (հմայք) գրուած են։ Այսպէս է արաբական մը,[2] որ Քրիստոսի խոստումը այսպէս կը գրէ՝ "Եւ թշնամի եւ բռնաւոր ոչ զօրեսցէ ընդդէմ նորա (Ուռհայի) եւ ու ընդդէմ այնր որ կրէ յանձին զայս թուղթ„ (ولا على حامل هذه الرسالة), եւ կ՚աւելցընէ թէ նամակը եօթն կնքով էր, առաջին կնքոյն բնաբանը՝ "Ահա չոգայ ի խաչ կամաւք իմովք․„ եօթներորդին՝ "Բանն յաւիտենական, յամենայն ժամ, միշտ, ի յաւիտեանս„, եւ կ՚աւարտի յիշելով անձեռագործ

---

որ խոստացած է հրատարակել զայն„ եւն։ Վերջինս թերեւս այն "ասորի-քաղդէականն„ ըլլայ։

1 Ընդարձակ ցուցակ մը տես Tixeront, les origines de l'Église d'Edesse etc. Paris 1888, p. 20–29. Lipsius, Acta Apostolorum apocrypha, I (Lips. 1891), p. CVI–CX, եւ այլուր։

2 Tixeront, p. 197—9, գղ. թրգմ. p. 200—1 Հրատարակիչն ու թարգմանիչն է H. Hyvernat.

պատկերը։ Ճիշդ նոյնպէս է յունականներէն Վիեննայի Թ. 315 պահպանակն, զոր այժմ հրատարակեց Լիպսիուս։[1] Առաջին նամակը քիչ շատ լաւ է. պատասխանն արդէն շատ փոխուած. իսկ Եւսեբեայ աւարտելէն ետքը՝ տակաւին երկար կը շարունակուի հոն, ուր Քրիստոս Տէր մեր կը պատմէ իւր ծնունդն եւն եւն, ուր ի միջի այլոց Տեառն մերոյ բերանը կը դրուի՝ "Եւ մարդ որ կրէ զայս յանձին, եղիցի ազատ յամենայն չար գործոց, եւ ասասցէ՝ Այս ի բժշկութիւն եղիցի եւ յանդորր ուրախութիւն. վասն որոյ բանն գրեալ գրեցաւ իմով իսկ ձեռամբ հանդերձ կնքաւ իմով. դրոշմեալ են ի թղթիս եօթն կնքովք՝ †̄. Ψ̄. Χ̄. Ε̄. Γ̄. Ρ̄. Ᾱ. Յիսուս Քրիստոս որդի Աստուծոյ եւ որդի Մարեմայ որ կրէ զշունչ յերկուս բնութիւնս ծանուցեալ Աստուած եւ մարդ. իսկ կնքոցն մեկնութիւն այս ինչ է" եւն եւն։ Չենք ուզեր յիշել շատ ուրիշները։

Հնագոյն բնագիր երեք հատ կը յիշեն միշտ ամէն քննիչք, որոց երկուքն են բոլոր պաշտպաններու բուն խարիսխն ալ։ Ամենահինն է Եւսեբիոս (†340, Եկեղ. Պատմ. գրուած իբր 323ին Ժ գիրքը.) երկրորդը՝ Լաբուբնա ատորականն, որ իւր արդի ձեւին մէջ Եւսեբիոսէն ուշ է, իբր Դ դարուն վերջերէն, իսկ իւր Նախնականն (զոր գիտնականք Acta Edessena կը կոչեն, —) էր ճշդիւ այն գիրքը, որմէ քաղած է Եւսեբիոս՝ "բառ առ բառ" ինչպէս կ՚ըսէ. Երրորդն է Խորենացի, զոր շատերն այս խնդրին հետ այնպէս անբաժան եւ իբր համազօր Եւսեբեայ կը յիշեն։ Բայց հոս՝ Ընթերցողին համար՝ Խորենացի որեւէ արժէք չունի. ինքը պարզապէս օրինակած է ոչ թէ հայ Լաբուբնան, այլ Եւսե-

---

[1] Lipsius, Acta Ap. apocr. I, 279—83. Ἐπιστολὴ Αὐγάρου τοπάρχου Ἐδέσσης πρὸς τὸν Κύριον եւն. բայց բաց ի նամակներէն՝ կը պարունակէ նաեւ Աբգարու զրոյցը։

բիոսի Եկեղ. Պատմութիւնը, եւ այն՝ ոչ թէ ուղղակի, այլ անոր հայերէն թարգմանութեան համեմատ։ Խորենացւոյ միւս մասերը Աբգարու եւն նկատմամբ՝ հոս մենք ի նկատի չենք առնուր։

Արձանագրութիւնն յունարէն ըլլալով՝ նոյն լեզուաւ խմբագրութիւնքն համեմատութեան առնելու է, որոնց ամէնուն հիմն է կրկին Եւսեբիոս։ Տեսանք Վիեննայի Թ. 315 օրինակը, որ ուշ ժամանակի խմբագրութիւն եւ բոլորովին անպէտք է մեր նպատակին։ Նոյնպէս է "Գործք սրբոյ առաքելոյն Թադէոսի„, զոր հրատարակեց նոյն Լիպսիուս,[1] ուր միայն Աբգարու նամակը պահուած է՝ նոյնպէս այլայլած. Քրիստոսի պատասխանը բառացի չէ հաղորդուած։ Ասոնց հետ գործ չունի արձանագրութիւնը։ Հաշուէ դուրս են նաեւ բազմաթիւ յոյն մատենագիրներ, որոնք այս իրերը կը պատմեն, Պրոկոպիոս († 565), Եւագր (իբր 593), Յովհ. Դամասկացի († իբր 760), Գէորգ Սինկեղոս (Ը դար) եւ շատ ուրիշներ, որոնք արդէն խնդրոյ ներքեւ եղած ժամանակէն ետքն են։ Բաց ի Եւսեբիոսէ կը մնայ միակ բնագիր մը, Էլ-Ֆայումի պապիրոս մը՝ որմէ հատակտորք միայն մնացած են։ Դ կամ Ե դարէն կ'ըսէ այս չորս հատակտորներուն հրատարակիչը Լինդսէյ, որ Պոդլէեան գրատունը գտնելով զանոնք հրատարակեց 1885ին։[2] Բնագիրն ի հարկէ շատ թերակատար է, զոր ջանաց Նիկոլսոն լրացընել՝ պակասներն Եւսեբիոսէն առնելով.[3] եւ այսպէս հրատարակեց նաեւ Տիքսերոն։[4]

---

1 Lipsius I, 273—8. *Πράξεις τοῦ ἁγίου ἀποστόλου Θαδδαίου ἑνὸς τῶν ιβ′*, ըստ Վիեննայի (Cod. Vind. Hist. Gr. 45, Թ—Ժ դարէն.) Պարիզինը (Bibl. Nat. Gr. 548 ԺԱ դարէն) ուրիշ խորագիր ունի։

2 W. M. Lindsay, ի թերթին „Athenaeum“ 1885, Sept. 5, p. 304.

3 E.—B. Nicholson, նոյն թերթին մէջ՝ „Athenaeum„ 1885, Nov. 15, p. 506—7.

4 Tixeront, p. 194.

Այս բնագիրն ալ նոյն է Եւսեբեայ հետ, միայն տեղ տեղ փոքր շեղումներով։ Յաջորդ համեմատութեան մէջ աչքի առջեւ ունինք այս ալ, զոր "Պ" կը նշանակենք։

Այս ամենէն կը հետեւի որ մենք արձանագրութենէն ալ ուրիշ բան չէինք սպասեր։ Ի հարկէ եթէ վաւերական էր, Ա դարու արձանագիր մը եւն, բոլորովին ուրիշ բնագիր մ'ըլլալու էր քան Եւսեբեայ թարգմանել տուածը, ազատ անվաւերացուցիչ պարագաներէն եւ ընթերցուածներէն. վերջապէս բնագիր մ'որ արժանի ըլլար հարազատ նկատուելու։ Բայց արդ ներկայ արձանագրութիւնը Եւսեբիոսի Թարգմանութիւնն է ծայրէ ծայր, միայն շատ յոռեցած, լի է սխալագրութիւններով. եւ մէկ երկու բուն ընթերցման տարբերութիւնք ալ աղաւաղման արդիւնք են, ինչպէս վարը պիտի նշանակենք, միակ բացառութեամբ վերջաբան տողին՝ որ ինքնին անվաւերութեան ամենամեծ ապացոյցն է։ Յաջորդ համեմատութեան մէջ, որ Արձանագրին ընթերցուածն է, ուղղած ենք սխալագրութիւնքն, ծանօթութեանց մէջ նշանակելով սկզբնագրին գրութիւնքն։ Խնամով նշանակուած են Եւսեբեայ եւ Պապիրոսի ընթերցմունք, ուր տարբերութիւն կար աւելի կամ պակաս։ Իբր թարգմանութիւն կը դնենք Եւսեբեայ հայերէնը, որ թէեւ ասորւոյն վրայէն է՝ ընդհանրապէս ճիշդ կը համընթանայ յունականին։[1] Խորենացի օրինակած է նոյնը. իւր տարբերութիւնքն նշանակեցինք փակագծի մէջ X համառօտութեամբ։ Եւսեբիոսի ալ օրինակաց տարբերութիւնք, զոր նշանակեցինք Լէմմէրի հրատարակութեան[2] համեմատ, կարեւոր են. վասն զի կը ցուցընեն թէ ո՛ր ձեռագրին նման էր քան-

[1] Եւսեբ. կեսարացւոյ Պատմ. Եկեղ. տպ. Վենետ. 1877, էջ 61—2 (մանրագիրը)։ — Խոր. տպ. Վենետ. 1843։

[2] Eusebii Pamphili Historiae Eccl. libri decem. ed. H. Laemmer, Fasc. I—IV. (Scaphusiae 1869–1872.)

դակողին օրինակը։ Ահա ուրեմն բնագիրն ու համեմատութիւնն, որ ինքնին կը խօսի արդէն։

*Արձանագր. = Եւսեբ. I, 13.*

[Խորագիր Եւսեբեայ՝ Ἀντίγραφον ἐπιστολῆς γραφείσης ὑπὸ Ἀβγάρου τοπάρχου τῷ Ἰησοῦ, καὶ πεμφθείσης αὐτῷ δι' Ἀνανίου ταχυδρόμου εἰς Ἱεροσόλυμα.][1]

1|| † Αὔγαρος[2] Ουκάμα[3] τοπά[ρ]χης Ἰησοῦ ἀγαθῷ σωτῆρι[4] ἀναφανέντι ἐν πόλει[5] Ἱεροσολύμων χαίρειν[6].

*Հայ Եւսեբ. = Խոր. Բ, լա–լբ:*

[Պատճէն հրովարտակին որ գրեալ է յԱբգար արքայէ առ Յիսուս, եւ առաքեաց նմա ի ձեռն Անանիա սուրհանդակի յԵրուսաղէմ. X՝ Թուղթ Աբգարու առ փրկիչն Յիսուս Քրիստոս։]*

1|| Աբգար Արջամայ (X Արշամայ) իշխան աշխարհիս (X աշխարհի) առ Յիսուս փրկիչ եւ բարերար որ ե–

---

* Արձանագիրը չունի խորագիրս, զոր Եւսեբիոս կցած է, հաւանօրէն քարին նոր կոփուելուն ատեն ինկած, տես վերը։ Կայ միւս խորագիրը, զոր տես տող 7. (Տողերը ‖ կը բաժնենք եւ կը թուարկենք։) Հայոյն "պատճէն հրովարտակին„ բառն ըստ ասորւոյն հասկընալու է՝ "պատճէն թղթոյն։„

1 Վերնագիրս այժմ չկայ Արձանագրութեան մէջ։

2 Արձ. Αὔγαρος ըստ Եւսեբեայ ձեռագրին Fa, միւսները Ἄβγαρος.

3 Բոլոր ձեռագիրք կորսնցուցած են ընթերցումս. պահած են Ռուփինոսէն զատ՝ միայն Ea եւ P ձեռագիրք աղաւաղ ձեւովս οὐχ ἅμα, զոր սրբագրելու է Արձանագրութեան համեմատ Οὐκάμα, զոր ունին Հայն եւ Ասորին եւ Լատինն։ — Արձանագրութեան պէս պարզ τοπάρχης (= Հ "իշխան աշխարհիս„) ունի Եւս. ալ, միայն այլեւայլ ձեռագիրք (ACFab են) ունին յաւելուածով՝ τοπάρχης Ἐδέσσης.

4 Եւս. շրջուն՝ σωτῆρι ἀγαθῷ = Հ "փրկիչ եւ բարերար„։

5 Արձ. πόλι, որ գէշ սրբագրութիւն է Եւսեբեայ ἐν τόπῳ (= Հ "յաշխարհին„) գրածին։

6 Արձ. χέριν.

*Ἤκουσταί*[1] *μοι τὰ περὶ σοῦ καὶ τῶν σῶν ἰαμάτων, ὡς ἄνευ*

*ըւեցաւ յաշխարհի (X երեւեցար աշխարհի) Երուսաղեմացւոց, ողջոյն։ Լուեալ է մեր (X իմ) վասն քո եւ վասն բժշկութեանդ որ լինի (X լինին) ի ձեռն քո առանց*

²|| *φαρμάκων καὶ βοτανῶν*[2] *ὑπ[ὸ σ]οῦ γινομένων*[3]*, τυφλοὺς ἀναβλέπειν*[4] *ποιεῖς, χωλοὺς πε[ρι]πατεῖν*[5]*, λεπροὺς καθαρίζεις*[6]*, καὶ ἀκάθαρτα πνεύματα καὶ δαίμονας ἐκβάλλεις*[7]*,*

²|| *դեղոց եւ արմատոց. զի որպէս ասի, տաս դու կուրաց տեսանել եւ կաղաց գնալ, զբորոտս սրբես (X եւ զբորոտս սրբել,) եւ զայսս պիղծս եւ զդեւս հանես.*

³|| *καὶ τοὺς μὲν*[8] *μακρονοσ[ίᾳ] βασανιζομένους θεραπεύεις*[9]*, καὶ νεκροὺς ἐγείρεις*[10]*. [Κ]αὶ ταῦτα πάντα ἀκούσας περὶ σοῦ κατὰ νοῦν ἐθέμην τὸ ἕτερον τῶν δύο*

³|| *եւ որ միանգամ չարչարեալ են ընդ յերկար X) երկար) հիւանդութեամբք՝ բժշկես դու, եւ զմեռեալս յարուցանես։ Եւ իբրեւ լուայ վասն քո զայս ամենայն, եդի ի մտի իմում մի յերկուց,*

---

1 Արձ. *ἤκουστέ μοι.*

2 Արձ. *βωτανῶν.*

3 Փակագծեալ տեղը Արձ. դուրս ձգած է Եւսեբեայ բառերս *ὡς γὰρ λόγος* (= Հ "զի որպէս ասէ"), որ անշուշտ նախնական են. Հմմտ. Լաբուբնա։

4 Արձ. *ἀναβλέπιν.*

5 Արձ. *πε[ρι]πατῖν.*

6 Արձ. *καθαρίζις.* Եւսեբիոս կ'ըսէ *καὶ λεπροὺς* (= Խոր. "Եւ զբորոտս" եւն։) Արձ. չունի այս "եւ", ինչպէս եւ ոչ Եւսեբեայ Հայերէնը։

7 Արձ. *δέμονας ἐκβάλλις.*

8 Այսպէս Արձ. *μὲν,* Եւսեբեայ ձեռագիրք *τοὺς ἐν μακρονοσίᾳ.*

9 Արձ. աղաւաղ *θεραπεύειε.*

10 Արձ. այսպէս (*ἐγίρις*) Եւսեբեայ բոլոր ձեռագրաց պէս, մինչ ուղղագոյնն ըլլալու է *ἀνεγείρεις*, տես Լէմմէր։ Ուստի Արձ. լաւագոյն օրինակ մը չունէր։

| | |
|---|---|
| 4‖ *ἢ ὅτι σὺ εἶ ὁ υἵς (= υἱὸς) τοῦ θῦ (= θεοῦ)*[1] *καὶ καταβὰς ἐκ τοῦ οὐρανοῦ ποιεῖς ταῦτα*[2], *ἢ ὅτι σὺ εἶ ὁ θ[ς]*[3] *καὶ καταβὰς ἐκ τοῦ οὐρανοῦ ποιεῖς τοῦτα*[4]. *Διὰ τοῦτο*[5] *γράψας* | 4‖ կամ թէ դու Աստուած իցես՝ իջեալ յերկնից եւ (X չէ+ "եւ") գործես զայդ. եւ (X չէ+ "եւ") կամ թէ որդի Աստուծոյ իցես (X որդի իցես դու Աստուծոյ) եւ զայդ առնես։ Արդ վասն այսորիկ (X այնորիկ) |
| 5‖ *ἐδεήθην σου σκυλῆναι πρὸς μέ*[6], *καὶ τὸ πάθος, ὃ ἔχω. θεραπεῦσαι. Ἤκουσταί*[7] *μοι* | 5‖ գրեցի ես առ քեզ (X չէ+ "առ քեզ")՝ աղաչել զքեզ, զի աշխատ լիցիս (X |

1 Այսպէս Արձ. որ ըստ այսմ հոս եւ յաջորդը շատ աղաւաղած է, կը գրէ *σοί (= σὺ) εἶ . . . ἐκ* (Եւս. *ἀπὸ*) *οὐρανοῦ* եւն.

2 Ամբողջ խօսքը աղաւաղ է այնու որ ոչ թէ հոս, այլ յաջորդ նախադասութեան մէջ ըլլալու էր *ὁ υἱὸς τοῦ θεοῦ* (որդի Աստուծոյ), այլ հոս ըստ Եւս. (= Հայ. Լաբուբ. եւն) *ἢ ὅτι σὺ εἶ ὁ θεὸς* (Աստուած) *καὶ καταβὰς ἀπὸ τοῦ οὐρανοῦ ποιεῖς ταῦτα.*

3 Այսինքն *ὁ θεός.*

4 Արձանագիրը բոլորովին շփոթեր է եւ նախընթաց խօսքը ճշդիւ կրկնած. միայն հոն "որդի Աստուծոյ" գրած ըլլալով՝ հոս հակադրութեան երկրորդ մասը պէտք էր դնել, այսինքն "Աստուած", միայն։ Ուղիղն է Եւս. (= Հայ, Լաբ. եւն) *ἢ υἱὸς εἶ τοῦ θεοῦ ποιῶν ταῦτα.* այս շփոթութիւնն եւ վրիպակն ինքնին արձանագրութեան խեղճութիւնը ցուցընելու բաւական է։

5 Եւս. *διὰ τοῦτο τοίνυν γράψας* եւն (= Հ "արդ վասն այսորիկ", Լաբ. եւն։) Հոս կը սկսի Պ. կամ Փայումի պապիրոսի հատակտորն, որ միաբան է Եւսեբեայ բայց միայն վերջին տառը հոս պահուած է Տող 1՝ ...[*διὰ τοῦτο τοίνυ*]*ν* եւն.

6 Պ (տող 2) միայն սա բառերը պահած է... [...*σκυλῆναι*] *πρὸς μὲ.*

7 Արձ. այսպէս *ἤκουστέ μοι γὰρ ὅτι*, Եւս.՝ *καὶ γὰρ ἤκουσα ὅτι* (= Հ "նաեւ լուայ".) Պ. Տող 3՝ [...*καὶ γὰρ ἤ*]*κουσταί μοι ὅτι* եւն.

*γὰ[ρ ὅ]τι οἱ ᾿Ιουδαῖοι[1] καταγογγύζουσίν σου[2], καὶ βούλονται κακῶσαί σε[3]. Πόλις δέ μ[οι]*

6|| *ἔστιν[4] μικροτάτη καὶ σεμνή, ἥτις ἐξαρκεῖ[5] ἀμφοτέροις.* †

7|| † *Τὰ ἀντιγραφέντα παρὰ τοῦ δεσπότου[6] διὰ ᾿Ανανίου[7] ταχυδρόμου[8].*

*չինիցիս) եւ եկեսցես առ իս, եւ բժշկեսցես զհիւանդութիւնս զոր ունիմ ես։ Նաեւ լուայ զի Հրեայք տրտնջեն զքէն եւ կամին չարչարել զքեզ. բայց քաղաք մի*

6|| *փոքրիկ եւ գեղեցիկ է իմ, եւ բաւական է մեզ երկոցունցս։*

7|| *Պատասխանի հրովարտակին զոր ինչ գրեցաւ է* Յէ⁓⁓⁓⁓ե *(տպ. «յԵրուսաղեմէ») ի ձեռն* Անանիա *սուրհանդակի առ* Աբգար *իշխան աշխարհի. (X Պատասխանի թղթոյն* Աբգա*րու ...։]*

---

1 Արձ. *[ὅ]τι οἱ ᾿Ιουδεοι*, Եւս. *ὅτι καὶ ᾿Ιουδαῖοι*, Պ. *անընթեռնլի*։

2 Այսպէս Արձ., *իսկ* Եւս. *սովորականը*՝ *καταγογγύζουσι, καὶ*... *ուստի չունի σου*, *բայց ունին նոյնը* Ար*ձանագրութեան պէս նաեւ շատ ձեռագիրք*, *ըստ* Լէմմէրի ACFa *եւ տպագիրքն* UVa.

3 Արձ. *բոլորովին սխալագիր*՝ *κακῶσέ σαι*. Պ *բոլորովին տարբեր ընթերցուած ունի* Տող 4՝ *[...σου καὶ] διώκουσίν σε* (*եւ հալածէին զքեզ*։)

4 Արձ. *π. δέ μ[οι] ἔστιν μικροτάτι καὶ σεμνὶ*. Եւս. *շրջուն*՝ *πόλις δὲ μικροτάτη μοί ἐστι καὶ* ..., Պ. *ըստ երեւութին աւելի նման* Արձանագրին՝ Տող 5 *[...πόλις δέ μοί ἐσ]τιν σμικροτάτη [καὶ...]*

5 Արձ. *ἐξαρκι*. Պ *այս տողը* (Տ.ղ 6) *անընթեռնլի*։

6 Հոս Արձ. *տարբեր է παρὰ τοῦ δεσπότου* (*ի* Տէ⁓⁓նե) *գրելով*. Եւս՝ *ὑπὸ ᾿Ιεσοῦ* (*ի* Յիսուսէ.) Հայ *եւ* Խոր. *չունին երկուքն ալ*. Պ *ամբողջ խորագիրս* (*տող* 7—8) *անընթեռնլի*, Նիքոլսոն *լրացուցած է ըստ* Եւսեբեայ.

7 Այսպէս *διὰ ᾿Ανανίου* (Հեբերդեյ *᾿Ανανία*) *ունին նաեւ* Եւսեբեայ *ձեռագիրք* EaFaH, *միւսները* *᾿Ανανία*.

8 *Ταχυδρόμου բառէն վերջը* Եւսեբեայ *ձեռագիրք կ'աւելցնեն*՝ *τοπάρχῃ ᾿Αβγάρῳ*, *զոր* Լէմմէր *կ'ուղղէ τοπάρ-*

8‖ † *Μακάριος ὁ*[1] *πιστεύσας ἐν ἐμοί, μὴ ἑωρακώς με. Γέγραπται*[2] *γὰρ περὶ ἐμοῦ. οἱ ἑωρακότες με μὴ πιστεύσουσιν ἐν ἐμοὶ*[3]*, καὶ οἱ μὴ ἑωρακότες μ[ε]*[4]

8‖ Երանի իցէ այնմիկ (X այնմ) որ հաւատայ յիս, իբրեւ ոչ իցէ (X նորա) տեսեալ զիս։ Զի գրեալ է վասն իմ այսպէս, զի Որք տեսանիցեն (X տեսանենն) զիս՝ ոչ հաւատասցեն յիս, եւ որ ոչն տեսանիցեն զիս (X տեսանեն՝ նոքա)

9‖ *πιστεύσουσιν καὶ ζήσων[ται].*[5] *Περὶ δὲ οὗ ἔγραψάς μοι ἐλθεῖν*[6] *πρὸς σέ, δέον ἐσ[τὶν] πάντα,*[7] *δὶ ἃ ἀπεστάλην, πληρῶσαι τὰ*

9‖ հաւատասցեն եւ կեցցեն։ Իսկ վասն այոր (X այնր) զի գրեցեր դու առ իս՝ գալ ինձ առ քեզ, արժան է ինձ կատարել աստ

---

*χου 'Αβγάρου,* ըստ ինքեան երկուքն ալ աւելորդ են։ Բայց նոյները տեսած է նաեւ Եւսեբեայ Հայ Թարգմանը՝ "առ Աբգար իշխան աշխարհի։"

1 Արձ. համեմատ է Եւսեբեայ EaFbO ձեռագրաց, միւսերը՝ *μακάριος εἶ πιστ.*, իսկ CFa եւ VaX կը կարդան *Αβγαρε (Αὔγαρε), μακάριος* եւն. ուստի "Ո՛վ Աբգար, երանի" եւն։ Պ (տող 9) ունի *[Μακά]ριος εἶ ὅτι ἐπίστευσας ἐν ἐμοὶ μὴ [ἑωρα]κώς με,* կամ "Երանի ես հաւատացեր յիս" եւն։

2 Արձ. *γέγραπτε.*

3 Եւս. հայցականով կ'ըսէ՝ *τοὺς ἑωρακότας με μὴ πιστεύσειν* (AEa եւ U *πιστεύειν*) *ἐν ἐμοὶ* (այսպէս ձեռագիրք AEaFbGH եւ U, միւսները պարզ *μοι.*)

4 Եւս. *καὶ ἵνα* (UVa միայն *ἵνα*, առանց *καὶ*) *οἱ μὴ* եւն.

5 Արձ. *ζήσοντε.* Եւս. *(καὶ ἵνα οἱ μὴ ἑωρ.) αὐτοὶ πιστεύσωσι καὶ . . .* = Հայ "Նոքա հաւատասցեն" եւն։ Պ ունի ամբողջն (Տող 10–12) այսպէս՝ *[γέγραπται] γὰρ περὶ ἐμοῦ ὅτι οἱ ἑωρακότες με οὐ μὴ πιστεύσ[ωσιν ἐ]ν ἐμοί, καὶ οἱ μὴ ἑωρακότες με αὐτοὶ [πιστέυσ]ουσιν παὶ ζήσονται,* ուստի քիչ տարբեր Եւսեբիոսէ։

6 Արձ. *ἐλθῖν.* — Եւսեբեայ օրինակք A եւ UX կը կարդան *περὶ οὗ δε* եւն. միւսներն ըստ Արձ.։ Պ (տող 12) = Եւս.։

7 Եւս. *ἐστὶ.*

*πάντα*[1], *καὶ μετὰ τὸ πληρῶ[σαι]*

*զամենայն ինչ վասն որոյ առաքեցայ ես, եւ իբրեւ կատարեցից*

10|| *τὰ πάντα*[2], *ἀναληφθῆναι πρὸς τὸν ἀποστείλαντά με*[3], *καὶ ἐπειδὰν ἀναληφθῶ, ἀποστελῶ*[4] *τίνα τῶν μαθητῶν μου, ὅστις ἰάσηταί*[5] *σου*

10|| *զայսն* (X *զայս*)՝ *ապա վերացայց* (X *համբարձայց*) *առ այն՝ որ առաքեացն զիս. եւ յորժամ վերացայց* (X *համբարձայց*)՝ *առաքեցից քեզ մի* (X *առաքեցից զմի*) *յաշակերտաց աստի իմոց, զի*

11|| *τὸ πάθος, καὶ ζωήν σοι παράσχει*[6] *καὶ τοῖς σὺν*

11|| *զցաւս քո բժշկեսցէ եւ կեանս տացէ քեզ եւ որ*

---

1 Այսպէս Արձ. *πληρῶται* եւ տառական երեւութով մը կրկնելով հոս դարձեալ *τὰ πάντα*. Եւս. եւ Պ (տող 14) *δι' ἃ ἀπεστάλην, ἐνταῦθα πληρῶσαι* (*μέ* կ'աւելցընեն Եւսեբեայ շատ օրինակներ, իսկ Ea եւ O չունին *μέ* Պապիրոսին պէս) — Հայ "կատարել տօփ" եւն.

2 Եւս. կը կցէ (*τὰ πάντα*) *οὕτως*, զոր չունին Արձ. եւ Պ (տող 14)։ Հայը՝ "կատարեցից զայս", զոր անշուշտ ուղղելու է "... զայս ամենայն"։

3 Արձ. եւ Պ. կը գրեն ուղղագրութեամբս *ἀναλημφθῆναι* եւն. նոյնպէս քիչ մ'ետքը։ Արձ. կը գրէ *ἀποστίλαντα* եւն.

4 Արձ. *ἐπιδὰν ἀναλημφθῶ* (= Պ), *ἀποστελλῶ τίνα* եւն. այսպէս *ἀποστέλλω* կը գրեն նաեւ Եւսեբեայ ձեռագիրք AEa եւ UX. Իսկ բուն Եւս. եւ Պ (տող 16) կը կարդան՝ *ἀποστελῶ σοί τινα* = Հայ "առաքեցից քեզ" եւն։

5 Արձ. այսպէս՝ *ὅστις εἰασεταί σου* եւն (որ բժշկեսցէ.) Եւս. *ἵνα ἰάσηταί σου* եւն = Հայ "զի զցաւս քո" եւն։ Պ. հաւանօրէն երկուքէն ալ կը շեղէր (տող 17) այսպէս՝ մերձաւորապէս ըստ Նիքոլսոնի՝ [*ἵνα τὸ πάθος σου*] *ἰάσηται, καὶ ζωὴν* եւն։

6 Արձ. *παράσχη*. Ճիշդ այս ոչ շատ յարմար *παράσχει* ձեւն ունի նաեւ Վիեննայի ձեռագիրն Vindob. 315, տես Lipsius, Abgarsage 17 n. եւ Acta. — Եւս. եւ Պ. *παράσχηται*, տես յաջորդը։

| | |
|---|---|
| σοὶ[1], ὦσιν καὶ τῇ πόλει[2] τῇ σῇ μηδένα τῶν ἐχθρῶν τῶν σῶν ἐξουσίαν[3] ταύτης ἔχειν ἢ σχῖν[4] ποτέ. † | միանգամ ընդ քեզ են. (X եւ կեանս քեզ եւ որոց ընդ քեզ են՝ շնորհեսցէ։) |

Համեմատութեամբս, որ ինքնին պերճախօս է, կրնայինք կնքել մեր գրութիւնը։ Սակայն քանի մը կէտեր աւելի լուսաւորելու համար՝ աւելորդ պիտի չըլլայ առաջիկայ բնագիրներուն մասին քանի մը դիտողութիւններ ընել յաջորդ տողերու մէջ։

## 3.

Երկրորդական նշանակութիւն ունի Հայերէնը, զոր յունարէնին դիմաց դրինք։ Ուշադրութեան արժանի կրնան ըլլալ միայն Խորենացւոյ ընթերցուածներուն տարբերութիւնները։ Մեծ մասը՝ ինչպէս տեսանք՝ աննշան են, եւ յայտնա-

---

Վերջին մասս ունի Եւս. այսպէս՝ καὶ ζωήν σοι καὶ τοῖς σὺν σοὶ παράσχηται, եւ ասով կ'աւարտի Եւսեբեայ քով նամակը. նոյնպէս Հայը։ Գ. (տող 18) այսչափ միայն ընթեռնլի՝ καὶ ζωὴν κα[ι . . .] παράσχηται, ունենալով յաջորդ տող մ'ալ, տես վարը։

7 Արձ. πόλι.

8 Սրձ. սխալ գրուած ἔξουναν, որուն առաջին N կարդալու է CI.

9 Արձ. ἔχιν η σχιν. Դրինք ἢ σχῖν Հեբերդէյի հետ. բայց լաւագոյն կը համարինք Հուբերի առաջարկը կարդալ ἢ ἔξειν (տես "Բանասէր", էջ 52։) — Ամբողջ այս վերջաբանական մասն ալ ունեցած է Գ (տող 19), որմէ սակայն ընթեռնլի են այժմ միայն տառերս՝ [ ] ολε [ ] τῶν [ ], այսինքն πόλει եւ τῶν (ἐχθρῶν)։ Վերջաբանս այլեւայլ ձեւերով ունին ուրիշ յոյն օրինակներ ալ (տես Lipsius, Abgarsage, 17 եւ Acta,) որոնց մասին յետոյ, փոխանակ Արձանագրին ὦσιν (καὶ τῇ πόλι), որ որոշ կը կարդացուի, լաւագոյն էր կարդալ π ᾶ σ ι ν, καὶ... ինչպէս ունի Վիեննայի Թ. 315 յունականը։

պէս ծագած յընթացս ժամանակաց գրչագրէ գրչագիր։[1] Ուղղագոյն են ի հարկէ անոնք որ աւելի համաձայն են Եւսեբեայ հայերէնին։ Խորենացւոյ բուն գրչէն ըլլալու կամ ոչ՝ երաշխաւորութիւն մը չեն տար ասոնք, եւ ոչ ձեռագիրը. բայց թերեւս իրմէ է՝ օրինակի համար՝ այն լեզուական փոփոխութիւնը, զոր կը տեսնենք երկրորդ նամակին վերջը, ուր երկու անգամ ասորաբան «ՎԷՐԱՑԱՅՑ» բայը փոխուած է՝ «ՀԱՄԲԱՐՁԱՅՑ» համազօրին, նոյնպէս «կեանս տալ» բացատրութիւնը փոխարինուած «կեանս շնորհել» ասութեամբ։ Կրնար մտածուիլ որ Խորենացի ուզած ըլլայ Եւսեբեայ հայերէնին ասորաբանութիւնը սրբագրել. սակայն յայսմ ալ կը տեսնենք որ բաւական նման բաներ մնացած են անփոփոխ, օրինակի համար «ԻՋԻՐ- ոչ իջէ նորա տեսեալ զխս» եւն։ Զինչ եւ իցէ՝ այս ամէնը լոկ լեզուական խնդիրներ են, որ հոս մեզի համար երկրորդական են։ Անցնինք բուն յունականաց՝ Եւսեբեայ, Պապիւրոսին եւ Արձանագրութեան։

Մեր համեմատութիւնն եւ անոր ծանօթութիւնքն աչքէ անցընելով կրնար՝ առաջին հայեացուածքով՝ կարծուիլ որ Արձանագրութիւնը բազմաթիւ շեղումներ ունի Եւսեբիոսէն։ Սակայն ասոնց

---

1 Օրինակի համար Վենետկոյ տպագրութիւնը ունի «առ Յիսուս ... որ ԵՐԵՒԵՑԱՐ», ծանօթութեան մէջ նշանակելով եթէ երեք օրինակ ունին «երեւեցաւ», որ ուղղագոյնն է։ Քիչ մ'ետքը երկու օրինակ կ'ըսուի թէ ունին՝ «եւ զայսս պիղծս հանել, եւ որ միանգամ չարչարեալ են ընդ երկար հիւանդութեամբք», եւն. գոնէ վերջինը («ընդ երկար») ուղղագոյնն է քան պարզ «երկար», որ իբր Խորենացւոյ ընթերցուած դրուած է։ Զուտ գրչական տարբերութիւն է երբ աւելի վարը «Հրեայք դրդնջին զքէն», խօսքին մէջ մէկ օր. կը կարդայ «... դրդռնջ էն զքէն»։ Խորենացւոյ բնագիրը վերջնականապէս ճշգրտուած չէ ձեռագրաց համեմատութեամբ եւ ուսումնասիրութեամբ։

ամենամեծ մասը բոլորովին անտես ընել կրնայինք. պարզապէս սխալ գրութիւն կամ ուղղագրական պէսպիսութիւնք են, որ բնագրին ընթերցուածոց համար տարբերութիւն մը չեն։ Ընթերցման բուն տարբերութիւնք հազիւ քանի մը հատ են, եւ այն՝ բաց ի մէկէն՝ ընդհանրապէս անկարեւոր. մանաւանդ թէ՝ ինչպէս արդէն Հերբերդէյ ուղիղ դատած է, յոռի սրբագրութիւններ։ Օրինակի համար ծիշդ սկիզբը (տող 1) նամակը կ՚ուղղուի Եւսեբեայ քով առ Յիսուս "ܡܚܝܢܐ ܘܛܒܐ" (յոյն. σωτῆρι ἀγαθῷ.) Եթէ արձանագրութիւնը գոնէ Լաբուբնայի ընթերցուածը տար ("ܡܚܝܢܐ ܛܒܐ"), ստուգիւ յարգի ընթերցուած մը կ՚ունենայինք, որով գոնէ անվաւերութեան նշան մը պակաս կ՚ըլլար։ Ցակաւին հեթանոս Աբգար չէր կրնար ի հարկէ իւր հարազատ նամակը սկսիլ զուտ քրիստոնէական անուանակոչութեամբ զՔրիստոս "փրկիչ" աշխարհի կոչելով։ Բայց արձանագիրը տարբեր բնագիր չունէր առջեւն, այլ միայն նոյն բառերը շրջուն կարգաւ ("բարերար փրկիչ", ἀγ. σωτ.) որ ի հարկէ աննշան է։

Ճիշդ հոս յոռի սրբագրութիւն մ՚ալ կը գտնենք յարակից։ Նամակը կ՚ուղղուի Եւսեբեայ քով առ Յիսուս "որ երեւեցաւ ի ܒܐܬܪܐ (կամ ܒܐܬܪܗܘܢ, ἐν τόπῳ) Երուսաղեմացւոց" եւն։ Τόπος (տեղի, գաւառ) կրնայ յունարէնին մէջ շատ յարմար հըլլալ. բայց ճշգրիտ թարգմանութիւն է ասորական նախաբնագրին, զոր հոս պահած է Լաբուբնա, այսինքն ܐܬܪܐ, զոր հայ թարգմանիչք փոխադրած են "աշխարհէն Երուսաղեմացւոց", ճիշդ ինչպէս Եւսեբեայ ասոր համեմատ յօրինած τόπαρχης յորջորջումը փոխադրած է հայն՝ "ܫܠܝܛܐ ܐܬܪܐ"։ Արձանագիրը կամ իրեն առջեւ եղած Եւսեբեայ օրինակին գրողը կ՚երեւայ թէ ուզած է այս ոչյունական ասութիւնը՝ որ ասորաբանութեան հետք մըն էր, ջնջել. եւ ելք մը գտած է նոյնը

փոխելով դիւրաւ, քանի որ Երուսաղէմ քաղաք մըն էր. ուստի պարզապէս գրած է "ի քաղաքին (ἐν πόλει) Երուսաղեմացւոց:" Նոյնն ըրած է նաեւ Լաբուբնայի Հայ թարգմանը. (տես վարը:)

Գէշ սրբագրութիւն մ'ըլլալու է երրորդ տարբերութիւնն ալ: Եւսեբեայ քով Աբգար կը գրէ թէ լսած է (— ὡς γὰρ λόγος = Հայ "զի որպէս ասէ") բորոտները կը սրբէ, հիւանդներ կը բժշկէ Քրիստոս, ուստի իրեն կը դիմէ: Ասի ստուգիւ նախնական է: Լաբուբնա ալ գոնէ անուղղակի կը հաստատէ Աբգարի բերան դնելով խօսքը թէ "Բանիւ քով" (ܒܡܠܬܟ) կը բժշկես եւն: Արձանագիրը բոլորովին դուրս թողուցած է այս բառերը, թերեւս պարզ շփոթութեամբ, թերեւս նաեւ կամաւ իբր աւելորդ: Ցամենայն դէպս բնագիրն ասով աւելի վաւերականութեան գոյն մ'առած չէ, այլ ընդհակառակն:[1]

[1] Բանասիրաց ուշադրութենէ վրիպած չէ խօսքս՝ "Ցաս դու կուրաց տեսանել եւ կաղաց գնալ, զբորոտս սրբես եւ զայսս պիղծս եւ զդեւս հանես, եւ որ միանգամ չարչարեալ են ընդերկար հիւանդութեամբք՝ բժշկես դու, եւ զմեռեալս յարուցանես": Պակաս է Եւսեբեայ (եւ Խոր.) քով՝ "համերց լսել", զոր ունի իրաւամբք Լաբուբնա, լիակատար ընելով Աւետարանի խօսքը, (Մատթ. ԺԱ, 5 եւ Ղուկ. Է. 22՝ Պատասխան Յիսուսի՝ Յովհաննու աշակերտաց) թէ "կոյրք տեսանեն, կաղք գնան, բորոտք սրբին, եւ խուլք լսեն, եւ մեռեալք յառնեն": Աբգարու ժամանակ ի հարկէ Աւետարանք գրուած չէին, բայց թղթեր յօրինող Ասորւոյն համար այս ալ վնաս չունէր: Որչափ ալ փոխառութիւնն ակնյայտնի է, եղան պաշտպանք որ նմանութիւն ընդունեցան, բայց ոչ փոխառութիւն Աւետարանէն: Զինչ եւ իցէ, գոնէ այս պաշտպանները կը յենուին Եւսեբեայ վրայ, ուր հոս անկախութեան երեւոյթ մ'ունի խօսքը, վասն զի Աբգար ի լրոյ գիտէ այն ամէնը: Արձանագրողը գէշ ծառայութիւն մ'ըրած է պաշտպաններու՝ ջնջելով այն խօսքը: Իւր օրով ի հարկէ ի լրոյ գիտնալու պէտք չկար Քրիստոսի գործքերը, զոր ամէն օր կը լսէր ու կը կարդար, բերնուց ալ գիտնալով Աւետարանը:

Մեծ շփոթութիւն մը կը ցուցընէ Արձանագիրը յաջորդ չորրորդ տարբերութեամբն, որ նախընթացներէն աւելի մեծ է։ Աբգար լսելով Յիսուսի զարմանալի գործերը՝ կը գրէ նամակին մէջ (յոյն բնագիրը տես վերը)։

| ըստ Եւս., Հայ. Խոր. եւ Ղաբ. | ըստ Արձանագրութեան |
| --- | --- |
| Եւ իբրեւ լուայ վասն քո զայս ամենայն, եդի ի մտի իմում մի յերկուց, կամ թէ դու Աստուած էիր՝ իջեալ յերկնից եւ գործես զայդ. եւ կամ թէ Որդի Աստուծոյ էիր եւ զայդ առնես։ | Եւ իբրեւ լուայ վասն քո զայս ամենայն, եդի ի մտի իմում մի յերկուց, կամ թէ Որդի Աստուծոյ էիր դու եւ իջեալ յերկնից գործես զայդ, կամ թէ Աստուած էիր դու եւ իջեալ յերկնից գործես զայդ։ |

Թողունք այն կէտը, որ հեթանոս Աբգար լսելով Երուսաղէմ Յիսուսի բրածները, չէր կրնար՝ սնած իւր դիցապաշտ գաղափարներով՝ յանկարծ ինքնաբերաբար այսպիսի գաղափարներ յղանալ թէ նա կամ՝ Հրէից յայտնեալ կրօնից միակ ճշմարիտ “Աստուածն„ էր որ երկինքէն իջած էր, եւ կամ՝ յետոյ քրիստոնէութեան քարոզած հիմնական գաղափարին համեմատ՝ միոյն Աստուծոյ միածին “Որդին Աստուծոյ„ որ “իջեալ յերկնից„ էին։ Հեթանոս մը կրնար՝ իւր գաղափարին համեմատ՝ մտածել որ կամ զարմանագործ հրեայ մարգարէ մըն էր (հմմտ. Յիսուս “բժիշկ բարի„ առ Ղաբուբն.), կամ դեւ մը, կամ դիւցազն մը, ճիշդ այնպէս՝ ինչպէս Պօղոսի Առաքելոյ հրաշալի բժշկութեան վրայ ժողովուրդը “բարձին զձայնս իւրեանց լիկոնարէն եւ ասէին՝ Աստուածք նմանեալ մարդկան իջին առ մեզ, եւ կոչէին զԲառնաբաս՝ Դիոս եւ զՊաւղոս՝ Հերմէս„ եւն. (Գործք Առաք. ԺԴ, 10։) Ա՛յս է գաղափարաց բնական ընթացքը։ Ի հարկէ կեղծագիրք այսպիսի բաներու մտադրութիւն ընելու շատ սովոր չեն։ Զինչեւիցէ, նաեւ վերջին

Համեմատականը (Գործք ԺԴ, 10) կը ցուցնէ որ Եւսեբիոս իրաւունք ունէր գրելու Հակադրութեան առաջին անդամը՝ "կամ ... Աստուած իջեալ՝ իջեալ յերկնից եւ գործեաց զայս" եւն: Արձանագիրը տակնուվրայ ըրած է բոլորը. իւր ժամանակ՝ երբ քրիստոնէական եկեղեցւոյ ամէն անկիւն զբաղած էին Քրիստոսի Տեառն մերոյ աստուածութեան, մարդկութեան, բնութեանց եւն վէճերով, եւ քանի որ քրիստոնեայ արձանագրողն ի հարկէ գիտէր որ ոչ թէ Աստուած Հայր, այլ Որդին Աստուծոյ է որ իջած է յերկնից, շատ բնական էր որ փոխէր խօսքը, եւ ճիշդ Հակադրութեան առաջին անդամին ըլլար այնուհետեւ "կամ դու Որդի Աստուծոյ իջեալ եւ իջեալ յերկնից գործեաց զայս" ճշդիւ քրիստոնէական վարդապետութեան հետեւելով: Բայց քանի որ խօսքը Հակադրութիւն մըն էր, պէտք էր երկրորդ անդամ մըն ալ՝ "կամ Աստուած իցես": Հոս է արդ Արձանագրին շփոթութիւնը, որ՝ մոռնալով կարծես իւր ըրած փոփոխութիւնը՝ օրինակած է իբրեւ Հակադրութեան երկրորդ անդամ Եւսեբեայ առաջինը բառ առ բառ, եւ սաով կրկնած է սա բառերը "եւ իջեալ յերկնից գործեաց զայս:" Կը տեսնուի որ Արձանագիրը շատ աղաւաղած է Եւսեբեայ բնագիրը. եւ զուր է իրմէ թղթոցս վաւերականութեան ապացոյց մը սպասել:

Առաջին կամ Աբգարու թղթին մնացեալ մասին մէջ կարեւոր տարբերութիւն մը չկայ, եւ նոյն իսկ զուր կը սպասենք մէկ երկու տեղ աւելի լաւագոյն ընթերցուած մը գտնել, որ կարելի էր: Օրինակի համար "զմեռեալս յարուցանէս" խօսքին մէջ Եւսեբեայ բոլոր ձեռագիրք կը կարդան νεκροὺς ἐγείρεις. Արդ ἐγείρω կը նշանակէ՝ արթընցընել, ոտք հանել, դրդել, կանգնել, իսկ "յարուցանել" բառին դիմաց՝ գոնէ քրիստոնէական ժամանակի յունարէնին համեմատ՝ կը սպասուէր աւելի ἀνεγείρω, ինչպէս կը սրբագրէ Լէմմէր: Սակայն ար-

ձանագրին քանդակողն ալ լաւագոյն օրինակ մը չունէր Եւսեբեայ․ ինքն ալ տեսած է նոյնը եւ կը քանդակէ իւր ուղղագրութեամբ εγιρις. Միակ լաւագոյն ընթերցուածն է Աբգարու մականունը, զոր Եւսեբեայ ձեռագրաց ամենամեծ մասը չեն պահած, եւ միայն երկուքը աղաւաղ ձեւով οὐχ ἅμα պահած։ Հոս արձանագրողը լաւագոյն ընթերցուածը պահած է՝ Οὐχάμα. Ի հարկէ ասով անվաւերականութեան նշան մ'աւելի դրած է մեր առջեւ քան Եւսեբեայ միւս օրինակները։ Վասն զի վերջապէս թագաւոր մը իւր հարազատ նամակին մէջ չէր կրնար իւր մականունը "Սեաւ„, որ գոնէ մասամբ ծաղու անուն մըն էր, չգիտենք նախնաբար ինչու Ասորիներէն իրեն տրուած՝ բայց ըստ յետնոց հաւանօրէն հիւանդութեան կամ "սեաւ„ բորոտութեան պատճառաւ,[1] դնել իւր անուան կից։ Սակայն այս մականունը ստուգիւ կար

---

1 Գոնէ այս մեկնութիւնը կու տայ յետոյ աւանդութեան զարգացումը։ Թղթերը պարզ "հիւանդութեան„ վրայ կը խօսին, նոյնպէս Եւսեբիոս եւ Լաբուբնա, որուն համեմատ Ադդէ կը բժշկէ զԱբգար "ի հօրաաօծոց ցաաոց„։ Խորենացի քանի մ'անգամ կը կրկնէ թէ Պարսկաստանէն դարձաւ Աբգար "ղօրաղօր ցաաօվէ աիփացեաւ„ (Բ, իը), իսկ քիչ մ'եաքը (Բ, Լ.) "քանզի աղաւխանեաւ էր մարմինն իւր ի ղօրաղօր ցաաոց„ գրելով՝ կ'ակնարկէ․ թէ բորոտութիւն ըլլալու է այն։ Ճշդիւ այսպէս "սեաւ բորոտութիւն„ (μέλαινα λέπρα) գիտեն Վիեննայի Թ. 315 ձեռագիրն, զոր յիշեցինք, Կոստանդին Ծիրանածին, Կեդրենոս եւ ուրիշներ։ Ընդ հակառակն Պրոկոպիոս, Վարք Մարեայ եւ այլք Աբդիսուի հիւանդութիւնը տուած են Աբգարու, որ էր ըստ այսմ "պատագրոս։„ Կերեւայ թէ իրաւունք ունի Մատթէս (Matthes, Abgarsage, p. 9) պնդելու որ Աբգարու "Ուկամա„ (Սեաւ) մականունէն ծագած է Աբգարու բորոտութեան զրոյցը։ Բար-Հեբրէոս յայտնապէս ալ սով կը մեկնէ անունը, թէեւ ի հակառակէն միայն. վասն զի ինքը Աբգարու սովորական կամ "օղիփոխ„ բորոտութիւն միայն կու տայ։ Հմմտ. Tixeront, p. 47. եւ ուրիշներ։

*թղթերուս նախնականին մէջ ալ. եւ չենք կրնար՝ դժուարութենէ ազատելու համար՝ յետաստուտ համարիլ: Լաբուբնա պահած է նոյնը՝ ܐܒܓܪ ܐܘܟܡܐ, «Աբգար Ո-խամա» (Սեաւ), ինչպէս Եւսեբիոս, որուն* Οὐχάμα *ընթերցուածը կը հաստատէ այժմ Արձանագրութիւնը: Նոյնը տեսած են թէ Լաբուբնայի հայ թարգմանը եւ թէ Եւսեբեայ թարգմանիչն. երկուքն ալ պահած են նոյնպէս, վերջինը՝ «Աբգար Արջամայ», իսկ առաջինը «Արշամայ», եւ այս է Խորենացւոյ քով եղած «Արշամ»:*[1] *Այս Աբգար պատմական անձ մըն է, եւ է Ուռհայի արքայից հնգետասաներորդն, համանուն Աբգարներուն հինգերորդն, եւ իշխած է ըստ Գուտշմիդի* 13—50 Ց. Ք. *տարիները,*[2] *իւր պաշտօնական մա-*

---

[1] *Այս «Արջամ» եւ «Արշամ» անուանց առթիւ մեր դիտողութիւնքը տես* Zur Abgarsage, 27, 37: *Այժմ ուրիշ մեկնութիւն կու տայ Կարիեր, տես մանրամաս իրեն «Աբգարու զրոյցը», Վիեննա* 1897, *եր.* 49—53: *Շատ կարելի է որ Հայ թարգմանը* ܐܘܟܡܐ *անուան տեղ* ܐܘܟܡܝ *կամ նաեւ* ܐܘܟܡܝ *կարդացած էր, ինչպէս կը մեկնէ Կարիեր, որով «պարզ ընդօրինակութիւն է բառի մը, զոր թարգմանել չեն ուզած:» Սակայն միշտ զարմանալի երեւոյթ մը կը մնայ որ երկու թարգմաններ ալ (— եթէ երկու գործքն ալ մէկ թարգմանչի թարգմանութիւն չըլլայ, զոր սակայն պէտք է տակաւին քննել, —) որոնք ի հարկէ գիտէին «Ուկամա» բառին նշանակութիւնը, չեն փոխադրած եւ միապէս նորանշան ձեւ մը գործածած «Արջամ» կամ «Արշամ», որ վերջինս հայ անուն էր ստուգիւ եւ այս անուամբ արքայ մ'ալ գոյութիւն ունի. (տես Կարիեր, եր. 52): — Եթէ պէտք ըլլայ՝ կրնայ ենթադրուիլ որ թարգմանին համար՝ ժողովրդական ստուգաբանութեամբ մը՝ «Արջամ» անունն ալ «սեւ» կը նշանակէր: Գոնէ նմանահնչիւն հայ բառ կայ նոյն նշանակութեամբ՝ ցանցառ գործածուած, այսինքն՝ «արջն» (որմէ «արջնաթոյր», «արջնազգեստ» — սեւազգեստ:) Ի հարկէ «արջն» եւ «արջամ» բուն իրարու հետ գործ չունին:*

[2] Gutschmid, Die Königsnamen in den apocryphen Apostelgeschichten, *ի թերթին* „Rheinisches Museum

*կանուն ըլլալով "բար-Մանու, կամ "Որդի Մանուայ„՝ ըստ հայ թարգմանչին։ Ըստ Տակիտեայ* (Տար. ԺԲ, 10—14) *պարթեւական վէճերուն մասնակից՝ շատ խարդախ ընթացք մ'ունեցաւ Միհրդատայ դէմ, որուն պաշտօնապէս դաշնակցած էր, բայց խաբեց եւ մատնեց անոր թշնամւոյն Գոթարզին, ճիշդ ինչպէս վարուեցաւ նաեւ իւր ժամանակակիցն Իզատ Ադիաբենէի իշխանը որ իւր Հեղինա մօր հետ հրէական կրօնքն ընդգրկեց, որմէ սերած կ'երեւայ Աբգար Է* (108 Յ. Ք. *են*) *եւ Աբգարներու նոր հարստութիւնը։ Բուն Աբգար Ե կամ Ուխայի մասին՝ բաց ի աւանդութենէն* (*Ղաբուբնայի, Եւսեբեայ եւն*) *չենք գիտեր ամենեւին քրիստոնէութեան հակամէտ ըլլալը։ Մանաւանդ թէ գիտենք որ Աբգարներու արքունիքն հեթանոս էր տակաւին շատ ետքն ալ։ Քրիստոնեայ առաջին թագաւորն, որ պատմութենէ ծանօթ է, էր Աբգար Ը* (176—213), *կ'երեւայ՝ նաեւ իւր որդին Մանու Թ* (211—216)։ *Ասով լմնցաւ Աբգարներու պետութիւնը,* 216*ին հռոմէական նահանգ մ'ըլլալով։*[1] *Անոր համար գիտնականք*

---

für Philologie", Neue Folge, (1864) XIX, 2, p. 171ff.։ *Գուտշմիտ ճշգրտած է Աբգարներու ժամանակագրութիւնը։ Դիոնեսիոս Տելմահար՝ Աբգարու Ե տարիները կը դնէ* 9–46 Յ. Ք. – *Աքէօր* (= *կաղ*) *անուան մասին հմմտ.* Wright*ի գրութիւնը ի բառագիրս՝* Dictionary of christ. biogr. I, 5։

[1] *Աբգարու Ը օրով՝ իբր* 201*ին եղաւ Ուռհայի այն հռչակաւոր ողողումն եւ "քրիստոնէից տաճարին„ կործանումը, զոր նկարագրած են ժամանակակից հեթանոս դիւանական պաշտօնեայք եւ որուն պատճէնը պահած է "Եդեսական Տարեգիրքն„* (Assemani, B. O. I, 390.) *ըստ Ասեմանեայ սոյն յիշատակարանը գրուած է* 217*ին։ Ասոր համար է Եւսեբեայ Քրոնիկոնին* (*Հատ. Բ, տպ. Վենետ.* 1817, *էջ* 296, *յամի Աբրահամու* ՍՄԼԵ) *գրածը՝ "Ուռհա[յի] թագաւորեաց Աբգարիոս այր ազնիւ, որպէս Ափրիկանոս պատմէ։„ Ափրիկանոս բարեկամ էր նոյն Աբգարու, ինչպէս կը գտնենք իրեն տրուած գրոց մէջ՝* Κεστοί c. 29 (*հմմտ.*

վերջնոցս ժամանակ ծագած կը համարին ընդհան-րապէս Աբգարու զրոյցը։ Սակայն այս ամէնը կը թողունք մէկդի։ Մեզի համար բաւական էր այն որ Արձանագիրն հաստատելով "Ուկամա" ընթեր-ցուածն՝ ինքնին վկայ մըն է թղթերուս անվաւե-րականութեան։

Երկրորդ նամակին սկիզբը աչքի կը զարնէ նոյն իսկ վերնագիրը, զոր չէինք կրնար հոս գտնել, եթէ Արձանագրութիւնն Եւսեբիոսէ անկախ եւ ստուգիւ Ա դարուն ըլլար։ Նամակներուս երկու վերնագիրներն ալ Ե֊֊եբէ֊֊ւ գործն են, եւ ստու-գիւ կարեւոր էին։ Նախնականին մէջ արպահովա-պէս չկային, ինչպէս չունի նաեւ Լաբուբնա, որ պատմութեան մէջ հիւսած է զասոնք՝ առանց որեւէ խորագրով կամ վերնագրով բաժնելու զա-նոնք։ Մանաւանդ թէ երկրորդը կամ Քրիստոսի պատասխանը Լաբուբնայի քով եւ ո՛չ Նամակ է, այլ բերանացի խօսք. վասն զի "ընկալեալ Յիսուսի զթուղթն ի տան քահանայապետին Հրէից ա֊է ցԱնան հաւատարիմ արքային. Ե՛րբ Ե֊ տա՛ փէտա֊ն ֊տ֊մ որ առաքեաց զքեզ առ իս՝ Եր֊նի է" եւն։ Ուստի նամակ չէ, այլ խօսք։ Եւ արդէն այսպէս ալ կը ներկայանայ բոլոր բնագիրներուն մէջ։ Առաջինը կամ Աբգարու գրածը նամակի ձեւ ունի՝ սկզբան հասցէով ալ՝ "Աբգար Արջամայ... առ Յիսուս... ողջոյն"։ Երկրորդը չունի որեւէ սկզբնաձեւ, այլ անմիջապէս կը սկսի "Երանի է" եւն. այնպէս որ՝

---

Veterum mathematicorum opera, ed. Thévenot, p. 300ff.) տես Գուտշմիտ՝ անդ։ — Ըստ գիտնոյս Աբգարներու հնագոյն հարստութեան վերջինն էր Աբգար Զ բար-Մա-նու. իսկ նորագոյն ճիւղը կը սկսի՝ Իզատի սերնդէն՝ Աբգար Է (108–115, ԺԹ արքայն Ուռհայի), եւ սերնդակից Մանու Է (121—138, ԻԲ արքայն Ուռհայի), երկուքն ալ "բար-Իզատ" յորջորջուած։ Արդ հնագունին եւ նորագունին մէջ, այսինքն Աբգար Զ.էն մինչեւ Աբգար Է՝ 17 տարուան անջրպետ մը կայ (91–108), որ ժամանակ հայ Արշակունիք կ՚իշխէին Եդեսիոյ։

եթէ Լաբուբնայի քով պատմութեան ընթացքէն եւ Եւսեբեայ քով վերնագրէն չ'իմացուէր, անորոշ պիտի մնար նամակին գրողն եւ որուն գրուած ըլլալը։ Ասոր համար Եւսեբիոս աւելցուցած է վերնագիրներ, որ անհրաժեշտ էին, առաջնոյն՝ ոչ այնչափ, բայց երկրորդին՝ բացարձակապէս։ Արդ այս վերնագիրներէն առաջինը չունի այժմ Արձանագրութիւնը, հաւանօրէն՝ ինչպէս Հեբերդեյ կ'ենթադրէ՝ քարին կրկին կոփուելու ատեն ինկած ըլլալով. իսկ երկրորդը՝ պահուած է, միայն համառօտուած։ Խորենացի միեւնոյն վերնագրէն առած իւր Բ գրոց ԼԲ գլխուն խորագիր շինած է ազատութեամբ եւ յաւելուածով այսպէս՝ "Պատասխանի Թղթոյն Աբգարու, զոր գրեաց Թովմաս Առաքեալ հրամանաւ փրկչին"։ Նոյնպիսի ազատութեամբ շարժած է Արձանագիրն կամ իւր օրինակին գրողը՝ վերնագիրն այսպէս գրելով՝ "Պատասխանի ի Յեսուսէ ի ձեռն Անանեայ սուրհանդակի." մինչ Եւսեբեայ գրածն էր՝ "Պատասխանի ի Յիսուսէ ի ձեռն Անանեայ սուրհանդակի առ Աբգար իշխան" (կամ՝ ինչպէս կ'ուղղէ Լէմմէր՝ "Աբգարու իշխանի". յոյն բնագիրը տես վերը։) Եւսեբեայ հայերէնին խորագիրն, որ այնպէս տարբեր կ'երեւայ, ըստ ինքեան նոյն բանն է՝ միայն ասորաբան, համեմատ իւր ասորի բնագրին։[1] Զինչ-

1 Հայը տես վերը. ասորին Cureton, p. 2 (բնագիր։) Հայերէնին մէջ ստուգիւ պարզ գրչի սխալմունք մ'ըլլալու է "որ ինչ գրեցաւ յԵրուսաղէմէ" փխ. "ի Յեսուսէ", զոր կը պահանջէ ասորի բնագիրն ալ։ Համմտ. Նաւեկարիէր, էջ 79 ծան. 4։ Ինչպէս հոն ուղղութեամբ նշանակուած է՝ Եւսեբեայ հայ թարգմանչին երկու անգամ ալ "հրովարտակ" գրելը պարզապէս "թուղթ" կամ նամակ նշանակութեամբ է, ինչպէս Ասորին ալ կը ցուցընէ, առաջինը՝ "Պատճէն հրովարտակին" = ܦܚܡܐ ܕܐܓܪܬܐ (պատճէն թըղթոյն = ἀντίγραφον ἐπιστολῆς.) աւելի պայծառ երկրորդը, ուր Հայը գրած է "Պատասխանի հրովարտակին", մինչ Ասորին կ'ըսէ՝ "Պատճէն այնոցիկ որ գրեցան ի Յիսուսէ", եւն։

եւիցէ այս վերնագիրն ինքնին կը ցուցընէ որ Արձանագրողն Եւսեբիոսէն զատ օրինակ մը չունի։

Աւելորդ է երկրորդ նամակիս ալ մանր տարբերութիւնները նշանակել հոս կրկին. եղածներն արդէն քանի մը լեզուական պէսպիսութիւնք են։ Արձանագրողն ալ պահած է օրինակի համար անվաւերութեան նոյն նշանը, որ Եւսեբիոսէն ծանօթ էր, ճիշդ առաջին խօսքը, ըստ ասորաբան հայերէնին՝ "Երանի իցէ այնմիկ որ հաւատայ յիս, իբրեւ ոչ իցէ տեսեալ զիս." որ ի հարկէ Քրիստոսի Տեառն մերոյ խօսքը կ'ակնարկէ (Յովհ. Ի, 29) "Երանի որոց ոչ իցէ տեսեալ եւ հաւատասցեն։" Իսկ յաջորդը, երբ Յիսուսի բերանը կը դրուի թէ՝ "Զի գրեալ է վասն իմ այնպէս՝ զի Որք տեսանիցեն" եւն, կրնայ ակնարկել՝ ինչպէս գրեթէ ամէն քննիչք կ'ընդունին, հին կտակարանի մէկ խօսքը. (Եսայի, Զ. 9—10։) Սակայն այս ամէնը ոչինչ է համեմատութեամբ անոր, զոր Արձանագրութեան վերջը կը գտնենք, եւ որ ինքնին անվաւերականութեան ակնյայտնի փաստ մըն է, եւ որ պատմական ալ նշանակութիւն ունեցած է. այն է՝ Եդեսիոյ քաղաքին օրհնութիւնն եւ անոր անկործանելիութեան խոստումը։

Եւսեբիոսի քով Յիսուսի պատասխանը կը լմնայ պարզ խոստմամբ թէ Համբարձմանէ ետքը պիտի խաւրէ աշակերտներէն մին՝ "զի զցաւս քո բժշկեսցէ եւ կեանս տացէ քեզ եւ որ միանգամ ընդ քեզ են." ուստի բաց ի բժշկութենէ՝ խոստում քրիստոնէական կրօնից ծանօթութեան։ Եւսեբիոսի ասորին ալ նոյնպէս կ'աւարտի, որով նոյնպէս նաեւ հայը եւ անոր հետեւորդ Խորենացի։ Արդ Արձանագրութիւնը՝ ինչպէս տեսանք, վերջը յաւելուած մ'ունի, որուն մէկ երկու ընթերցուածին վրայ կրնայ խնդիր ըլլալ, բայց է ընդհանրապէս այսպէս՝ "...կեանս շնորհեսցէ քեզ եւ որոնց ընդ քեզ, որոց եւ քաղաքի քում մի՛ ոք ի Թշնամեաց

ֆոց էշխանուԹէան ունէցէ համ հալցէ էրբէֆ.» (այն բնագիրը տես վերը։) Ինչպէս կը տեսնուի՝ հանդիսական խոստում մըն է, բայց ոչ մարգարէութիւն մը եւ խոստում, զոր աստի կեղծաբան մը Քրիստոսի Տեառն մերոյ բերանը դրած է։ Խնդիր է թէ Եւսեբիոս իւր առջեւն եղած ասորական նախաբնագրին մէջ՝ զոր իրեն համար թարգմանել տուած էր, ստուգիւ չէ՞ր գտած այս խօսքը, թէ կար՝ բայց ինքը դիտմամբ դուրս ձգած է։ Խնդիրը յայնմ է որ Եւսեբիոս չունի նոյնը, զոր կը գտնենք արդէն Լաբուբնայի քով։ Արդ անկարելի չէ մտածել որ Եւսեբիոս (— որ Թղթերուս եւ Աբգարի պատմութեան ճշմարտութեանն ու վաւերութեան կը հաւատար եւ ասով իւր գրոց մէջ առած, —) նաեւ երբ կը կարդար նոյնն իւր թարգմանել տուածին մէջ, չէր կրնար նոյնը հարազատ համարիլ, այլ յաւելուած մը նկատելով՝ դուրս թողուցած։ Եւսեբեայ պէս պատմագրի մը անհնար էր հաւատալ Եդեսիոյ անկործանելիութեան խոստման մը, երբ նոյն իսկ իրմէ քիչ յառաջ դէպքերը ցուցուցած էին անոր ստութիւնը։ Եդեսիա՝ նոյն Եւսեբեայ ծնանելէն (Ծն. 265) կէս դար յառաջ 216ին առնուեցաւ Հռոմայեցիներէն եւ Աբգարներու հարստութիւնը ջնջուելով՝ հռոմէական նահանգ եղաւ։ Տիքսըրոն աւելի լաւագոյն կը համարի յիշել Եդեսիոյ հնագոյն առումն ալ, այսինքն 116ին Լուսիոս Քուիետոսի ձեռքով, երբ Եդեսիա բառացի կերպով առնուեցաւ եւ աւերեցաւ, որ տարին ալ կը դնէ Ս. Յերոնիմոս՝ Եւսեբեայ Քրոնիկոնի թարգմանութեան մէջ՝ Միջագետաց հռոմէական նահանգի վերածուիլը[1]։ Սակայն ճիշդ այս դէպքերը կրնան ցուցընել նաեւ որ զրոյցը դժուարաւ կրնար ծագած ալ ըլլալ

---

1 Տես Tixeront, p. 93 եւ ուրիշներ։ Lusius Quietusի ձեռօք Ուռհայի աւերիլը կը պատմէ Քսիփիլինոս (Xiphilin, LXVIII, 30.)

216էն յառաջ. եւ ասով հաւանական է որ նոյնն Եւսեբեայ գործածած ասորի բնագրին մէջ տակաւին չկար ստուգիւ։ Արդէն արժանահաւատ է Եւսեբեայ կրկնելն որ ինքը բառացի կը կրկնէ իւր գաղափարին ըսածները։ Եդեսիոյ անկործանելիութեան խօսքը յամենայն դէպս Եւսեբիոսի պատմութեան մէջ մուտք գտած չէր. եւ նոյնն ուշ ժամանակի յաւելուած մըն է Եւսեբիոսէն ետքը։

Այս յաւելուածին պատմութիւնը բաւական ալ ծանօթ է, զոր շատ լաւ ուրուագծած է Լիպսիուս[1]: Ցոյն բնագիրներն երկար ատեն ալ այս յաւելուածը չունէին, զոր կը շեշտէ նաեւ իբր 560ին Պրոկոպիոս, յայտնապէս հաստատելով որ թէեւ Ասորիք կը պնդեն թէ նոյնը Ցիսուսի նամակին մասն է եւ անով ալ մէկտեղ ամբողջ նամակը քանդակած դրած էին Եդեսիոյ դրան վրայ իբր պահպանակ-հմայք, սակայն ինքը չի գտներ նոյն խօսքը բոլոր հին մատենագրաց քով, որ նոյն իրերու մասին կը խօսին[2]։ Լիպսիուս իրաւամբ մտադիր կ'ընէ որ Պրոկոպիոսի այս խօսքն այնչափ աւելի արժէք ունի, որչափ նոյն ինքն Պրոկոպիոս է որ կը պատմէ թէ Պարսից Խոսրով Ա արքայն (531—579) գրգռուած Եդեսացւոց իրենց քաղաքին անյաղթելիութեան աւանդութենէն՝ ուզեց գրաւել

1 A. Lipsius, die edes. Abgarsage, p. 17–21.

2 Պրոկոպիոսի խօսքն է՝ (Վասն Պարսկ. Պատերազմին. Բ, ժբ) "Ասեն եւ զայս յաւելուլ ի վերայ, եթէ Ոչ երբէք առնիցի քաղաքն ի ձեռս բարբարոսաց (οὐδὲ ἡ πόλις ποτὲ βαρβάροις ἁλώσιμος ἔσται.) Բայց զայս կատարած բանից թղթոյն (τῆς ἐπιστολῆς τὸ ἀκροτελεύτιον) որք զայնր ժամանակի զպատմութիւն գրեցին՝ ոչ երբէք ծանուցին, քանզի ե-ւ ոչ ասել յիշեցին։ Իսկ Եդեսացիք ասեն գտանել նմին ընդ թղթոյն. որպէս արդարեւ եւ զպատճէն թղթոյն գրեալ այնպէս եդեալ են ի հմայս պահպանութեան (ἀντ' ἄλλου τοῦ φυλακτηρίου) ի դրունս քաղաքին։" Պրոկոպիոս հոս Եւսեբիոսէ զատ ուրիշ մատենագիրներ ալ կ'ակնարկէ։

նոյնը, բայց ստուգիւ չյաջողեցաւ։ Եւագր իւր Եկեղ. Պատմութեան մէջ (Դ, իէ) կրկնած է Պրոկոպիոսի թէ վերինը եւ թէ այս դէպքը։ Սակայն եթէ Պրոկոպ. եւ աւելի եւս Եւագր († 593) քանի մը տարի աւելի ապրէին, կը տեսնէին Եդեսիոյ գրաւումն ալ։ Արդէն 609ին գրաւեցին Պարսիկները, 641ին Արաբացիք։ Քաղաքին մնացեալ պատմութիւնը յայտնի է, եւ մեզի հոս անկարեւոր[1]։

Յամենայն դէպս զրոյցս Ասորւոց քով արդէն Դ դարուն վերջերը կազմուած էր։ Իբր նոյն ժամանակէն է Ղաբուբնայի արդի խմբագրութեան ձեւն, ուր նամակի վերջը նոյնը կը կարդանք, զոր գտած է նաեւ հայ թարգմանն այս ձեւով՝ "Եւ քաղաքդ քո օրհնեալ լիցի. մի եւս թշնամի տիրեսցէ նմա յաւիտեան" ճշդիւ ասորի բնագրին համեմատ։[2] Ինչպէս կը տեսնուի՝ երկու մաս է. նախ պարզ օրհնութիւն, երկրորդը՝ Եդեսիոյ աննուաճելիութիւնը։ Հնագոյնն է առաջինը, որմէ զարգացած է երկրորդը։ Առաջինը ծանօթ է արդէն Եփրեմայ († 378) որ իւր կտակին մէջ կը գրէ՝ "Օրհնեալ քաղաք յորում բնակեք ի նմա՝ Ուռհա, մայր իմաստնոց, որ է կենդանի բերանոյ Որդւոյն օրհնեցաւ ի ձեռն աշակերտին նորա. օրհնութիւնս այս հանգիցէ ի նմա մինչեւ երեւեսցէ

1 Խաչակրաց ժամանակ պահ մը արեւմտեան իշխանութիւն տեսաւ Ուռհա, Անտիոքայ իշխանութեան վերաբերելով իբր կոմսութիւն։ Բայց արդէն 1144ին Եմադեդին Մոսուլի իշխողը՝ պաշարեց եւ առաւ, բնաջինջ ընելով բոլոր քրիստոնեայ ժողովուրդն, եկեղեցիք հիմնայատակ, եւն։ Տես վերոյիշեալ գրութիւնքն, յատկապէս Duval, Գուտշմիդ եւն։ Հմմտ. նաեւ Bayer, Historia Osrhoëna et Edessena ex nummis illustrata, Petropoli 1734. Ասեմանեայ գործը՝ յաճախ. Ritter, Erdkunde, XI, 335ff. Wetzer und Welte, Kirchenlexicon (Բ. Տպ.) IV, 122ff եւ անթիւ ուրիշներ։

2 Phillips, The Doctrine of Addai, p. 4 (բնագիր).

Սուրքն։„[1] Եփրեմայ այս խօսքը կը ցուցընէ թէ ինչ դիւրաւ կրնար յիշեալ յաւելուածը կազմուիլ։ Խօսքը պարզ օրհնութեան վրայ է, զոր արդէն նամակին մէջ կրնայինք գտնել, ճիշդ սկիզբն եւ որ Լաբուբայի քով է "Երանի է քեզ զի հաւատացեր յիս մինչ չեւ տեսեալ քո զիս„, ուստի բուն Աբգարի միայն ուղղուած, բայց վերջը ("բժշկեսցէ զքեզ եւ ղամինոյն ժողովուրդս քո„ եւն) արդէն ընդհանրացած[2]։ Եփրեմ գիտէ արդէն որ այս օրհնութիւնը "Թասոցէ ինծա մինչեւ երեւեսցի Սուրբն„, այսինքն՝ աշխարհիս կատարածը։ Քայլ մը միայն էր ասկէ Ուռհայի անյաղթելիութիւնը հետեւցընել եւ նոյնը բառերով աւելցընել նամակին վերջն, ինչպէս արդէն Լաբուբնա ըրած է[3]։ Ասկէ ետքն արդէն յաճախ է նոյն յաւելուածը տեսնել նաեւ արեւմուտք[4], բայց մանաւանդ ի հարկէ Ասոր-

---

1 Ephraemi Opp. ed. Rom. 1743, II, p. 399 (ասորերէն), 235 (յունարէն։) Տես նաեւ Assem. B. O. I, 141. Թէեւ նախնիք թարգմանած են այս կտակը. բայց առձեռն չունինք նոյնը, ուստի նոր թարգմանեցինք ասորի բնագրէն։

2 Նոյնն արդէն ըրեր են յոյն բնագիրք ալ։ Այսպէս Վիեննայի Թ. 315 նամակին սկիզբը կը գրէ՝ "Էրանիլէ հօ Աբգար հօ փաղաւ քօ որ ջոնէ Եդեսա, զի հաւատացեր„ եւն։ Տես Lips. Abgars. 18.

3 Թէ ինչ դիւրաւ կրնար այս զարգացումն ըլլալ. կը ցուցընէ նոյն Լաբուբնա, որ Ադդէի բերանը կը դնէ՝ անոր ընդարձակ քարոզին մէջ սա խօսքերը՝ ուղղուած բոլոր Եդեսացւոց եւ քաղաքին՝ "Արդ զի վերացեալ է (Քրիստոս) առ Հայր իւր..., մի ոք ի ձէնջ երկմտեսցէ ի խորհուրդս իւր, որպէս զի հաստատուն կայցէ առ ձեզ խոստումն օրհնութեան նորա որ առաքեաց առ ձեզ թէ երանի է ձեզ զի հաւատացէք յիս մինչչեւ տեսեալ իցէ ձեր զիս, եւ զի այսպէս հաւատասցէք յիս. փաղաւն՝ յորում քնաձեալ էք դուք, օրհնեալ լիցի եւ ճշմարիտ տեսէ դորա յաւիտեան։„ Ճիշտ նոյնպէս ասորի բնագիրը (Phillips, p. 28 բն. եւ թրգմ.։) Սակայն նաեւ նամակը Լաբուբնայի քով տակաւին կը կարդար՝ "Երանի է քեզ (Աբգար) զի հաւատացեր„ եւն, տես նաեւ վարը։

4 Լիպսիուս (Abgarsage, 19) կը յիշէ Դարիոս կոմսին

ւոց քով․ այսպէս Յեսու Սիւնակեաց 515ին եւ Յակոբ Սրճեցի, եւ անթիւ ուրիշներ[1]։

Բնական է որ նոյնը մտնէր յետոյ նաեւ Յունաց քով։ Յիշեցինք որ ծանօթ էր նոյնը Պրոկո-

---

(Comes Darius) նամակն առ Ս․ Օգոստինոս (epist. 230, Augustini opera, ed. Benedict, II, 635), ուր ի միջի այլոց կ՚ըսուի՝ "Դարձեալ հրամայեաց զի քաղաք նորա միշտ եւ հանապազ ազատ ի թշնամեաց իցէ„ (iussit insuper eius urbem ab hostibus in perpetuum esse ac semper immunem.)

[1] Յեսու Սիւնակեաց (Josua Stylites) իւր ժամանակագրութեան մէջ՝ զոր հրատարակեց Պ․ Մարտէն (ed. Martin, ի հաւաքման Abh. zur Kunde des Morgenlandes, VI, 1, 1876, դարձեալ W. Wright, the Chronicle of Joshua the Stylite. Cambridge 1882.), եւ զոր գրած է իբր 515ին, կը գրէ՝ "Ոչ կարացին (Պարսիկք) առնել քաղաքին մերում (Ուռհայի), քանզի եւ ոչ հնար էր եղծանել խոստման Քրիստոսի զոր խոստացաւ Աբգարու արքային հաւատացելոյ, յորժամ ասէ՝ Եւ քաղաքդ քո օրհնեալ լիցի, եւ թշնամի մի՛ տիրեսցէ նմա ի յաւիտեան։„ Այս խօսքը տես նաեւ Assemani, B. O. I, 261. Ասորի բնագրին մէջ վերջին խօսքը բառ առ բառ նոյն է Լաբուբնայի խօսքին հետ, միայն պակաս է "դարձեալ„ (հմյ՝ "մի եւս թշնամի․․․„)։ — Յակոբ Սրճեցի (451–521) բազմաթիւ գրուածքներ ունի Ուռհայի ու Աբգարի մասին։ Հատ մը՝ "Ցող Ցեառն մերոյ Յովոբայ Վարդապետի ի վերայ Ուռհայի յորժամ առաքեաց առ Տէրն մեր զի եկեսցէ առ ինքն„՝ հրատարակած է Կիւրըթոն (Cureton, Anc. syr. doc. p. 107–8 բն., 106–7 թրգմ.)։ Նոյն Կիւրըթոն յիշած էր արդէն (անդ՝ p. 154) Սրճեցւոյ մէկ նամակն, ուր կ՚ըսէ "վասն այնորիկ խոստացաւ Աստուած Աբգարայ թագաւորի եթէ ի վերայ քաղաքի նորա ոչ տիրեսցէ թշնամի ի յաւիտեան„ (բացատրութիւն շատ նման Լաբուբնայի։) Սրճեցւոյ առ Ուռհայեցիս թուղթը, որմէ շատ ընդարձակ քաղուածքներ կը թարգմանէ Մարտէն (J.-P. P. Martin, les Origines de l'Égl. d'Edesse, p. 111—118), ամբողջովին կը դառնայ ճիշդ այս յաւելուածին վրայ։ Ուռհայի կը սպառնար թշնամի բանակ մը, եւ շատերը կը սկսէին փախչիլ, որոնք "սակաւահաւատք են„ կ՚ըսէ Սրճեցի՝

պետյ (նոյնպէս Եւագրեայ), որ սակայն չի կրնար ընդունիլ այն խօսքին հարազատութիւնը։ Բայց երկար չէր կրնար մնալ նոյնպէս. այլ նոյն զրոյցն իւր ճամբան ըրած է յոյն գրականութեան մէջն ալ։ Ամենալաւ օրինակն է Թադդէի "Գրակքն„ որուն Պարիսի ձեռագիրը տակաւին չունի յաւելուածը, իսկ Վիեննայի օրինակն արդէն աւելցուցեր է ան ալ։ Ահա Ցիսուսի պատասխանն երկուքին ալ համեմատ,[1] որ բոլորովին ազատ կերպով կ'ըսեն.

| Գրակք Թադդէի, ձոգր. Պարիսի. | Գրակք ձոգր. Վիեննայի: |
|---|---|
| "Երթ եւ աւետարանեա առաքչին քում. Խաղաղու-թեան տեղ եւ տաղաւէ տուամ. զի վասն այսորիկ եկի՝ չարչարել վասն աշխարհի եւ յառնել եւ յարուցանել զնախահարս. եւ յետ համբառնալոյն իմոյ յերկինս՝ առաքեցից քեզ զաշակերտն իմ զԹադդէոս. որ լուսաւորեսցէ զքեզ եւ առաջնորդեսցէ տեղ յամենայն ճշմարտութեան՝ եւ տեղ եւ տաղաւէն տուամ (ὁδηγήσει… καὶ σὲ καὶ τὴν πόλιν σου.) | Երթ եւ տուր (զպատկերն) առաքչի քում եւ աւետարանեա նմա զայսօրէն. Խաղաղութեան տեղ եւ տաղաւէ տուամ (εἰρήνη σοὶ καὶ τῇ πόλει σου), զի մի ոք է Բշնամեայ տէրէսցէ նմա երբէք (πρὸς τὸ μηδένα τῶν ἐχθρῶν κατισχῦσαι αὐτῆς πώποτε.), զի ես վասն այսորիկ եկի յաշխարհ՝ կամեցեալ չարչարել վասն աշխարհի, յառնել եւ յարուցանել զնախահարս։„ |

Թէեւ կ'ընդունին Քրիստոսի տուած խոստումը, բայց կ'ըսեն կրնայ եղծանիլ նոյնը մեր մեղաց համար։ Ասոնց դէմ է ամբողջ գրուածքը, ցուցընելով թէ անհնար է Ուռհայի առնուիլը, խոստումը մշտնջենաւոր է, "Որդին Հօր խօսեցաւ բան մի մեծ, յորժամ ասէ՝ Բշնամի ոչ տէրէսցէ Ուռհայի։ Ոչ է հնար եղծանել բանին, որպէս չէ հնար անձրեւի յերկինս ելանել,„ կամ ուրիշ տեղ մը՝ "Այն որ օրհնեաց զհաստատեցեալ քաղաքս Ուռհայ՝ կարող է պահել ի յաւիտեանս նմա եւ մեզ՝ բարեկամացս Քրիստոսի՝ զխոստումն իւր, զոր ետ մեզ,„ եւն եւն։ — Անհնար է յիշել բոլոր միւս սաօրի աղբիւրները, որոնց ցուցակ մը դրած է՝ Tixeront, p. 23–5.

[1] Տես Lipsius, Acta I. 274, եւ Abgarsage, 20.

Ինչպէս կը տեսնուի միեւնոյն բնագրին մէկ ձեռագիրը տակաւին հին ձեւն ունի, միւսն արդէն յաւելուածն ամբողջովին։ Աւելի եւս բնական էր որ Վիեննայի Թ. 315 հմայագիրն աւելի ալ ճոխացած ունենար նոյնը։ Եւ արդեամբք հոն վերջաբանն է այսպէս՝[1] “Առաքեցից քեզ զմի յաշակերտաց իմոց Թադէոս անուն, որ զցաւս քո բժշկեսցէ եւ կեանս յաւիտենականս եւ խաղաղութիւն քեզ եւ ամենեցուն քոյոց շնորհեսցէ (ζωὴν αἰώνιον καὶ εἰρήνην σοι παρασχήσει καὶ τοῖς σοῖς πᾶσιν.) իսկ վասն քաղաքիդ քո, զորմէ յայտնեցեր ինձ թէ փոքրիկ է, ընդարձակելով ընդարձակեցից զնա եւ արարից բաւական զի մի ոք ի թշնամեաց քոց տիրեսցէ նմա մինչեւ ի կատարած յաւիտենից.„ (πλατύνων πλατυνῶ αὐτὴν καὶ ποιήσω τὸ ἱκανόν, πρὸς τὸ μηδένα τῶν ἐχθρῶν σου κατισχῦσαι αὐτῆς ἕως τῆς συντελείας τοῦ αἰῶνος.) Բացատրութեանս կերպը շատ կը նմանի Բողլեեան ձեռագրին ունեցածին հետ, զոր գործածած է Գրաբէ[2], այսինքն “Եւ քաղաքին քում եղիցի բաւական զի մի ոք ի թշնամեաց տիրեսցէ նմա.) (καὶ τῇ πόλει σου γενήσεται τὸ ἱκανὸν πρὸς τὸ μηδένα τῶν ἐχθρῶν κατισχῦσαι αὐτῆς,) Յետագայ ժամանակաց մէջ ալ յունական մատենագիրք նոյն յաւելուածը յաճախ ունին։[3]

---

1 Lipsius, Acta, I, 280—1.

2 Grabe, Spicilegium, I, 8.

3 Այսպէս Եդեսական անձեռագործ Պատկերի պատմութիւնը, որ ստութեամբ Կոստանդիանոս Ծիրանածին կայսեր անունը կը կրէ (Const. Porphyrogenetos, տես Combefis, manipul. rerum Constantinopolitarum, p. 81.) նոյնպէս Կեդրենոս (ed. Bonn, p. 310, 313ff.) եւ այլք։ Վերջին տեղս կը պատմէ Կեդրենոս որ 944ին Ռոմանոս կայսեր եւ Թէոփիլակտոս պատրիարքին օրով Պոլիս բերուեցան մաղաղաթեայ սուրբ “մանդիլիոն„ թղթոցս եւ Պատկերն Քրիստոսի։

*Յոյն բնագիրքն դիտմամբ երկարօրէն յառաջ բերինք, անոր համար որ ընթերցողը կարենայ համեմատել անոնց յաւելուածը մերինին՝ այսինքն արձանագրութեան ընթերցուածին հետ։ Կը տեսնուի որ ընդհանուր գաղափարը նոյն, բայց բացատրութեան կերպը բոլորովին այլակերպ է անոնց մէջ, այլակերպ մեր Արձանագրին բացատրութեան կերպէն ալ, զոր վերը դրինք։ Եւ արդէն այլազգ չէր կրնար ըլլալ։ Թղթերը Յունաց ծանօթացած էին Եւսեբեայ թարգմանութեամբ. բայց այս թարգմանութիւնը չունէր յաւելուածը։ Յետոյ երբ այս կամ այն յոյն գրիչը կ'ուզէր առնուլ այն խօսքն ալ, որ պէսպէս ձեւով կը յածէր արդէն, միակերպ եւ որոշ ձեւ մը պակսելով՝ պէտք էր որ այլաձեւ ըլլար միոյն՝ տարբեր միւսին քով, թէեւ ընդհանուր իմաստը նոյն. մինչ Ասորիք գոնէ որոշ՝ չըսենք պաշտօնական՝ ձեւ մ'ունէին անոր, Լաբուբնայի գրքինը, զոր բառ առ բառ կը կրկնէ օրինակի համար Յեսու Սիւնակեաց։ Մեր Արձանագրին վերջաբանն ալ ըստ այսմ բնական է որ տարբերէր վերոյիշեալ յունականներէն, որոնցմէ արդէն կանուխ ալ է ժամանակաւ։ Միակ օրինակն որ ծանօթ է եւ որ գոնէ ժամանակակից ըլլալու է, եթէ ոչ աւելի կանուխ, Էլ-Փայումի պապիրոսն է. բայց հոն յաւելուածը՝ թէեւ կայ ապահովապէս, այժմ միայն երկու աննշան վանկ մնացած է ընթեռնլի, ուստի չենք կրնար համեմատել. (տես վերը։)*

*Այսչափ բաւ կը համարինք Յաւելուածիս մասին։ Մինչեւ հիմայ ըսուածը բաւական էր ցուցնելու որ Արձանագիրը նախ Եւսեբեայ բնագիրը կ'ենթադրէ, զոր առջեւն ունեցած է քանդակողը. երկրորդ՝ Եւսեբիոսէն շատ ետքն է քանդակումն, ուր մուտք գտած է յիշեալ Յաւելուածը։ Այս՝ մատենագրական տեսակէտը։ Իսկ վաւերականութեան խնդրոյն տեսակէտով՝ այս յաւելուածն ինքնին բաւական է ցուցընելու թղթոյն անվաւեր ու կեղծ*

ըլլալը, ընդունելով ալ որ նոյն յաւելուածին հիմն եղող զրոյցը՝ Ուռհայի անյաղթելիութիւնը՝ նաեւ Գ. դարէն յառաջ գոյութիւն ունենար։ Չենք կրնար ի հարկէ վաւեր ընդունիլ եւ Տեառն մերոյ վերագրել թուղթ մը, որ անհնարին եւ սուտ մարգարէութիւն ու խոստում կը պարունակէ, ըսեն պաշտպանել ուզողներն ինչ որ կ՚ուզեն։

Կը մնայ միակ կէտ մը, Եւսեբեայ թարգմանութեան խնդիրը, զոր պէտք ենք տեսնել։

## 4.

Թղթոյս Յունական բոլոր բնագիրները՝ ինչպէս տեսանք, միակ աղբիւր մը կ՚ենթադրեն, Եւսեբեայ բնագիրը, նաեւ անոնք՝ որ այլաձեւ փոփոխած են բովանդակն, ինչպէս “Պրակք Թովմայի„։ Արձանագրութիւնը՝ բաց ի յաւելուածէն՝ առանց Եւսեբեայ չի կրնար մտածուիլ, ինչպէս վերը տեսանք։ Կը մնայ հիմայ տեսնել թէ այս միակ աղբիւրը կամ Եւսեբիոս ուստի՞ ունի զանոնք։ Խնդիրն այսպէս ընդհանուր առած՝ կը շօշափէ Լաբուբնայի դրքին խնդիրը, զոր չենք ուզեր երկրորդել։ Մեզի համար կարեւոր է միայն այն կէտը թէ նամակներուն յունարէն խմբագրութիւնը, զոր Եկեղ. Պատմութեան մէջ կը գտնենք, ուստի՞ է. հնագո՞յն թարգմանութիւն մըն է զոր Եւսեբիոս երկրորդած է՝ թէ իրեն ժամանակ եղած։

Եւսեբիոս բաւական որոշ խօսած է այս մասին, եւ այն՝ միեւնոյն գլխուն մէջ քանի մ՚անգամ։ Նամակներուն ճիշդ սկիզբն՝ իբր նախաբան՝ կը ծանուցանէ թէ ուստի՞ ունի զանոնք, հետեւեալ կերպով, զոր նոր թարգմանելով յառաջ կը բերենք՝ դիմացը դնելով ասորաբան հին հայ թարգմանութիւնը։

*Եւսեբ. Ա. ժգ. (Նոր Թրգմ.)*[1]

Ունիս եւ սոցին գրեալ զվկայութիւն, առեալ ի դիւանացն յԵդեսիա, որ յայնժամ թագաւորեալ քաղաքն էր։ Արդ ի հասարակաց քարտէսս որ անդ, յորս բովանդակին (կան գրեալ) որ ինչ յառաջագոյն եւ մինչեւ ցԱբգար գործեցան, եւ այսօրէն մինչեւ ցայժմ անդէ (ἐξ ἐκείνου յայնմանէ) գտանին պահեալ։ Եւ չէ ինչ աւելորդ զնոյն իսկ զթղթոցն լսել, որք առեալ են մեզ ի դիւանացն (ἀπὸ τῶν ἀρχείων ἡμῖν ἀναληφθεισῶν) եւ նոքին բա-

*Հայերէնն Եւսեբեայ = Ասորին։*[2]

Ունիս դու քեզ գրով վկայութիւն սոցա՝ որ առեալ լինին ի մատենէն անդէ յելստակաց որ են յՈւռհայ քաղաքի, զի յայնմ ժամանակի ցայնվայր կայր արքայութիւնն նորա։ Անդ է տուրքեաս որ կային անդ, զի (= յորս) էր գրեալ ի նոսա ամենայն ինչ որ միանգամ գործեցաւ յառաջնոց անտի մինչեւ ցԱբգար, նաեւ սոքա մինչեւ ցայսօր ժամանակի պահեալ գտանին անդ։ Բայց չիք ինչ արգել լսել զնոյն թուղթս, զոր առեալ է մեր ի տանէ

---

1 Նոր թարգմանել հարկ եղաւ Եւսեբեայ յոյն բնագիրը ճշդիւ ցուցընելու համար։ Ճարեանի Նոր Թարգմանութիւնը (Եւս. Եկղ. Պատմ. Վենետ. 1877)՝ թէեւ յունարէնէ կ'ըսուի, գոնէ հոս բաւական կը չեղէր, ճշդիւ նոյն ըլլալով Վալեսիոսի լատին թարգմանութեան հետ։ Քանի որ խօսքը մեր խնդրոյն համար կարեւոր է՝ աւելորդ չէ դնել հոս յոյն բնագիրը (ըստ Հրտ. Լեմմերի)՝ ἔχεις καὶ τούτων ἀνάγραπτον τὴν μαρτυρίαν, ἐκ τῶν κατὰ Ἔδεσσαν τοτηνικάδε βασιλευομένην πόλιν γραμματοφυλακείων ληφθεῖσαν. ἐν γοῦν τοῖς αὐτόθι δημοσίοις χάρταις, τοῖς τὰ παλαιὰ καὶ τὰ ἀμφὶ τὸν Ἄβγαρον πραχθέντα περιέχουσι, καὶ ταῦτα εἰσέτι νῦν ἐξ ἐκείνου πεφυλαγμένα εὕρηται. Οὐδὲν δὲ οἷον καὶ αὐτῶν ἐπακοῦσαι τῶν ἐπιστολῶν, ἀπὸ τῶν ἀρχείων ἡμῖν ἀναληφθεισῶν, καὶ τόνδε αὐτοῖς ῥήμασιν ἐκ τῆς Σύρων φωνῆς μεταβληθεισῶν τὸν τρόπον.

2 Ասորի բնագիրը տես Cureton, Anc. syr. doc. p. 2 (բնագիր) ճիշդ նոյն հայերէնին հետ, որ այնպէս գէշ չէ՝ ինչպէս կը տեսնուի։ Միայն պէտք է Ճարեանի հրատարակութեան սխալ կէտադրութիւնն ուղղել, ինչպէս ըրինք, բոլորովին ուղիղ բնագիր մը ստանալու համար։

նէ— յԱսորւոց թարգմանեալ [?] թարգմանելու [?] (ἐκ τῆς Σύρων φωνῆς μεταβληθεισῶν) զայս ձեւ օրինակի: Պատճէն" եւն:

անդի դիւանէն, որ ունին օրինակ զայսր բանից, որ ձգնեալ [?] են (Ա. "մեկնեալ" կամ "թարգմանեալ է մեր") յԱսորւոց լեզուէ ի յայն անդր: Պատճէն" եւն:

Եւսեբիոս որոշ կը շեշտէ հոս նախ որ գրաւոր վկայութիւն մ'ունի առջեւ կամ գրուածք մը, որ Եդեսիոյ դիւանէն էր կամ այնպէս կ'ըսէր ինք իրեն համար. (հմմտ. Լաբուբնա) ուստի առնուած "ի դիւանաց" (— որ հասարակաց կամ արքունի էր —) եւ որ կը պարունակէր թէ պատմութիւն մը (Թադէի եւ Աբգարու), զոր Եւսեբիոս բաւական ընդարձակ կ'ուրուագծէ նոյն գլխուն մէջ, եւ թէ նամակը: Եւսեբիոս անձամբ չէ տեսած Եդեսիոյ դիւանին այն յիշատակարանքն (document), այլ Աբգարու օրով եւ անկէ յառաջ գործուածները դիտէ պահուած մինչեւ իւր ժամանակ "անդի" (ἐξ ἐκείνου յայնմանէ), այն գրաւոր վկայութենէն կամ գրքէն: Այս ալ Ասորւոց լեզուաւ էր: Այս կերպով դիտէ թղթերս Եւսեբիոս. ուստի կրնար ըսել թէ զանոնք ինքը առած է Եդեսիոյ դիւանէն (Հայը որոշ "առեալ է մեր", յոյնն անորոշ), եւ թարգմանուած յառաջինէն [?] յիշեալ ասորի գրաւոր վկայութենէն:

Այս ամէնը կը յեղյեղէ Եւսեբիոս նաեւ տակաւին քանի մ'անգամ: Ի հաստատութիւն որ թղթերն ալ պատմութեան հետ կից էին՝ կը յաւելու ճիշդ նամակներուն վերջը ըստ թարգմանութեան Հարեանի՝ "Ընդ նամականւոյս զտան եւ այսոքիկ յԱսորի լեզու", եւ կը պատմէ Թադէի գալն յԵդեսիա եւն եւն: Յոյն բնագիրն է՝ Ταύταισ δὲ ταῖς ἐπιστολαῖς ἔτι καὶ ταῦτα συνῆπτο τῇ Σύρων φωνῇ (Ընդ թուղթս այսոսիկ կցեալ կային եւ այսոքիկ յԱսորւոց լեզու), զոր հայ թարգմանը քիչ մը զարմանալի կերպով փոխադրած է՝ "Բայց ընդ նոյն թուղթ

[դէ] սոքա եւս մեկնաւոր են ի լեզու ասորի.» ուր գտնէ «դէ»՝ զոր փակագծի մէջ առինք, ջնջելու է իբր աղաւաղութիւն։ Ասորին պայծառ է, եւ Հայերէնն ալ կը մեկնուի, եթէ «դէ» ջնջելէն ետքը՝ «մեկնաւոր են» համարուի գրուած իբր «յաւելեալ են, չէին» եւն իմաստով, ինչպէս կ՚ըսէ Ասորին։[1] Ամենէն վերջն ալ՝ Թադէի եւ Աբգարի մասին պատմելէն ետքը, կը կնքէ Եւսեբիոս նոյնը եւ անով իւր Եկեղ. Պատմութեան առաջին գիրքը, կրկնելով դարձեալ՝ «Որք՝ ոչ յանպէտս բան առ բան յԱսորւոց լեզուէն թարգմանեալք՝ աստէն յինէն եդան ի (պատշաճ) կարգի ժամանակաց (ἃ καὶ οὐκ εἰς ἄχρηστον πρὸς λέξιν ἐκ τῆς Σύρων μεταβληθέντα φωνῆς ἐνταῦθά μοι κατὰ καιρὸν κείσθω.) Այս է նաեւ Հայերէնին բանը, թէեւ դարձեալ աղաւաղ ըլլալով՝ առաջին Հայեցուածքին նորանշան թարգմանութիւն մը կ՚երեւայ։[2] Վերջապէս նաեւ Երկրորդ գրքին սկիզբը (Եկղ. Պատմ. Բ, ա) քանի մը խօսք ըսելով Թադէոսի մասին, կը յիշէ Եւսեբիոս իւր այս գրածները թէ «որպէս սակաւիկ մի յառաջ ցուցաք

---

1 Տես Cureton, p. 3 բնագիրը։ Ասորւոյն ܦܫܩ (յաւելեալք, կցեալք) բառն է զոր Հայը «մեկնաւոր են» թարգմանած է։

2 Հայը (= Աս. Cureton, p. 5) կարդալու է այսպէս՝ «Բայց զի ոչ տարապարտուց էլէն (= ܦܫܩ, այսինքն՝ թարգմանեցան) սոքա՝ ոմենայն պարբառմօք՝ (նիւթական = [illegible], բան առ բան) յԱսորւոց անտի ի յոյն, աստէն (այլ. «այս է») ի ժամանակի իւրեանց եդան աստ» (այլ. «անդ»)։ Ասով կը նոյնանայ Ասորւոյն հետ, որ սակայն չունի «աստէն», որ բուն աւելորդ է։ Եւսեբեայ խօսքը քիչ մ՚այլ-ազգ ալ կրնար թարգմանուիլ, օրինակի համար վերջին մասը՝ «. . . աստէն ինձ պատշաճ թուեցաւ դնել» կամ նման կերպով. Վալեսիոս կը փոխադրէ՝ Quae non sine fructu, ut opinor, ex Syrorum lingua translata ad verbum hic opportune collocata sunt.

ի գրոցն որ գտան անդ (ὡς ἀπὸ τῆς εὑρεθείσης αὐτόθι γραφῆς μικρῷ πρόσθεν ἐδηλώσαμεν) եւ կ՚աւարտէ խօսքովս թէ. «Եւ այսոքիկ՝ որպէս ի հնոցն պատմութենէ՝ ասասցին (καὶ ταῦτα μὲν ὡς ἐξ ἀρχαίων ἱστορίας εἰρήσθω) դարձցուք արդ այսուհետեւ յաստուածեղէն գիրս»[1] եւն: Այսչափ Եւսեբիոս:

Ինչպէս քննադատք մտադիր կ՚ընեն[2], զուր տեղ չէ որ Եւսեբիոս այնչափ կը յեղյեղէ այս ամէնը, երեք անգամ թէ այն գրաւոր վկայութիւնն Եդեսիոյ դիւաններէն էր. երեք անգամ թէ Ասորւոց լեզուէ թարգմանուած է. եւ երկու անգամ թէ բառ առ բառ յառաջ կը բերէ: Վերջին կէտս յատկապէս թղթերուն համար է, ինչպէս նաեւ միւսները: Եւ արդէն եթէ Եւսեբիոս այս ամէնն առած չըլլար իւր գրոց մէջ եւ անով տիեզերահռչակ ըրած, պիտի մնար իբրեւ մին այն անթիւ անվաւեր գրուածքներէն, որոնցմով այնչափ ճոխ է ասորի գրականութիւն, առանց ընդհանուր ամէն դարուց քրիստոնէական գրականութեան վրայ այն ազդեցութիւնն ընելու: Եւսեբիոս է որ թղթերն (ու յարակիցք) ծանօթացուց յունարէն թարգմանութեամբ, եթէ միայն առած չէ վերոյիշեալ տեղերը, զոր որեւէ կուռան մը չունինք ընդունելու: Այժմ կը մեկնուի նաեւ թէ ինչու նաեւ Արձանագիրն՝ որ իբր թէ Ա դարուն պիտի ըլլար եւ վաւերական, ոչ Բնագիր մը գիտէր՝ բայց Եւսեբեայ թարգմանութիւնը միայն, ինչպէս տեսանք. թողունք որ Եւսեբիոսէն ալ Եփրեմ է՝ ընդունած ըլլալով հանրածանօթ յաւելուածը:

---

1 Հայ թարգմանն այս տեղերը փոխադրած է՝ «...զի ի գրոց անտի որ գտան անդ՝ ցուցաք յառաջ քան զփոքր մի... եւ սոքա ասացեալ են իբրեւ ի պատմութեանց առաջնոցն», ձեւալով միշտ նոյն ասորաբանը:

2 Այս ամէնուն մասին հմմտ. նաեւ Tixeront, p. 82–89, եւ ուրիշներ:

*Սակայն Եւսեբիոս յո՞նէ՞ր թարգմանած է, թէ թարգմանել տուած։ Ասորի թարգմանութիւնը (— որ պատկառելի հնութիւն մ'ունի եւ ձեռագիր մ'ունինք նոյն իսկ Ե դարէն[1] —) եւ անկէ բղխած հայ թարգմանութիւնը շատ աւելի որոշ կերպով զԵւսեբիոս կ'ըսեն թարգմանիչ, երբ կը կարդան "զոր տուեալ է մեր եւ մեկնեալ (թարգմանեալ)". (տես վերը։) Բայց յոյն բնագիրն այսպէս որոշ չէ. այլ ընդհանուր կերպով կ'ըսէ "որք տուեալ են մեզ (ἡμῖν ἀναληφθεισῶν) եւ ...թարգմանեալ". ուստի՝ առնուած "մեզ" կամ "վասն մեր": Ինչպէս կը տեսնուի՝ Եւսեբիոս բացայայտ չի յայտներ թէ ինքն անձամբ թարգմանած ըլլայ, որով նոյնպէս ընդհանուր են այս մասին միւս խօսքերն ալ. (հմմտ. "ի գրոց որ կային անդ", "ի հնոցն պատմութենէ", "ոչ յանպէտս... յԱսորւոց լեզուէ թարգմանեալք", եւն։) Ուստի իրաւունք ունի Տիքսըրոն[2] ըսելու որ "քիչ հաւանական է" Եւսեբեայ թարգմանիչ ըլլալը, ապա թէ ոչ աւելի պայծառ ըսած կ'ըլլար նոյնը. բաց աստի չենք գիտեր որ կրնար ասորերէնէն այսպէս դիւրութեամբ թարգմանել, քանի որ սեմական լեզուաց՝ այսպէս հեբրայականին՝ շատ քիչ ծանօթութիւն ունէր։[3] Ջիարդ եւ իցէ, մեր խնդրոյն համար այնչափ կարեւոր ալ չէ այս կէտը։ Վասն զի խնդիրը յէականս նոյն կը մնայ, ըլլա՛յ թարգմանիչը նոյն ինքն Եւսեբիոս, ըլլա՛յ ինքը լոկ թարգմանել տուողը։ Որոշ է որ էրէն — կամ եթէ կ'ուզուի՝ ընդհանրապէս*

---

[1] Եկեղ. Պատմ. ասորի ձեռագիրն ի Պետրբուրգ գրուած է 462ին, Եւսեբեայ (Theophania, Պաղեստինի վկայից եւն) այլ գրութեանց ձեռագիրը՝ որ Բրիտ Թանգարան կը պահուի (Add. 12, 150) գրուած է նոյն իսկ 410ին։ Wright, A short hist. of Syr. Lit. p. 61, եւ այլուր։

[2] Tixeront, p. 84, n. 7.

[3] Հմմտ. անդ, եւ Heinichen, Comment. in Eus. Hist. Eccl. p. 25ff; Dictionary of christ. biogr. II, 859ff.

Կեսարիոյ հռչակաւոր մատենադարանին[1] — համար եղած է այն թարգմանութիւնը, զոր «տարապարտուց» կամ «յանպէտս» ընել տուած չըլլալու համար՝ առած դրած է իւր գրոց մէջ. (տես վերջին խօսքը։) — Քանի մը խօսք ալ թէ ինչ էր այն «գրաւոր վկայութիւնն» կամ ասորի մատեանը։

Ասորական այն «գրով վկայութիւնն» կամ մատեանը, որուն հեղինակը Խորենացի յանուանէ ալ յիշած է իբր «Ղերուբնայ որդի Ափշադարայ դպրի» (Բ, լգ), երկար ատեն կորսուած էր, մինչեւ 1864ին Կիւրըթըն հրատարակեց մաս մը, իսկ Հ. Ղ. Ալիշան 1868ին ամբողջական հայերէնն եւ անոր գաղղիերէն թարգմանութիւնն, իսկ Փիլլիպս 1876ին առաջին անգամ ամբողջապէս նաեւ ասորին,[2] եւ որ ճշդիւ նոյն կերպարանօք կը ներկայա-

---

1 Tixeront, p. 85—6 n. 4 կը նշանակէ որ կրնայ խօսքն ընդհանրապէս առնուիլ նաեւ այնպէս, եթէ ուզուի, իբր յէականս նոյն մնալով։ Կեսարիոյ Պաղեստինացւոց հռչակաւոր գրատան հիմնադիրն (կամ մեծապէս զարգացնողն) է Ս. Պամփիլոս վկայ (նահատակուած 309ին), որուն աշակերտն էր Եւսեբիոս ինքն, որուն համար ինքն զինքն «Եւսեբիոս Պամփիլեայ» կ'անուանէ։ Շատ գործեր անձամբ օրինակած էր մատենադարանին համար Պամփիլոս, մաս մ'ալ Եւսեբեայ հետ. այսպէս երկուքն միասին յօրինեցին Աստուածաշնչի (Եօթանասնից) նոր խմբագրութիւնն Վեցէջեանի համեմատ. նոյն իսկ բանտին մէջ Եւսեբիոսի հետ յօրինեց ջատագովութիւն մ'Որոգինեայ, եւն։ (Հմմտ. ի միջի այլոց Wetzer u. Welte, Kirchenlexicon, 2. Aufl. IX, 1326–7, եւ այլուր։) Ինքնին կը հասկցուի թէ ինչպէս Եւսեբիոս՝ այնպէս յարգի «դիւանական» յիշատակարաններ գտած, եւ այնպիսի թղթեր Աբգարու եւ Քրիստոսի Տեառն մերոյ՝ զորոնք ի հարկէ հարազատ կը կարծէր, փութացած էր թարգմանութիւն մը հոգալ իրեն կամ՝ որ նոյն է՝ նոյն մատենադարանին համար։

2 Cureton, Anc. syr. doc. p. 5–23 (բն. եւ թրգմ.) — «Ղերուբնա Եդեսացի» Թուղթ Աբգարու եւն. տպ. Երուսաղէմ 1868։ — «Լաբուբնեայ դիւանագիր դպրի եդեսացւոյ

նայ իբրեւ Եդեսիոյ դիւաններէն քաղուած։[1] Լաբուբնայի մասին անկէ ետքն եղած անթիւ քննութիւնքն ու գրուածքները յիշել եւ այն խնդրով զբաղիլ հոս կարելի ալ չէ, եւ մեզի համար աւելորդ ալ։[2] Բաւական է մեզի այս քննութեանց արդիւնքը. այսինքն՝ արդի Լաբուբնա էապէս այն է, զոր Եւսեբիոս տեսած էր, բայց իւր նախնական ձեւին մէջ (Acta Edessena), մինչ արդի ասորի գրուածքն (— որուն ասորի ձեռագիրն արդէն Զ դարէն է, —) փոփոխեալ է բաւական կամ հնոյն ու նախնականին աւելի կամ նուազ այլայլած նոր խմբագրութիւն մը։ Հնագոյն վկայն է հոս ալ — հոս ի նկատի կ'առնուի յատկապէս թղթերը, — դարձեալ Եւսեբիոս, որ թարգմանած է զանոնք ասորական նախնականէն, մինչ արդի խմբագրութիւնն Եւսեբիոսէն ետքն է, Դ դարու վերջերէն կամ նաեւ Ե դարու սկզբէն։ Այսու հանդերձ կ'արժէ տեսնել թէ հոն ինչ ձեւ ունին թղթերը։

Ասորւոց մէջ, ուր զրուցիս բուն հայրենիքն էր, ի հարկէ անթիւ են մատենագիրներու գրուածք-

---

թուղթ Աբգարու„, Վենետ. 1868, եւ Labubnia, Lettre d'Abgar etc. Venise 1868. — G. Phillips, the Doctrine of Addai etc. Lond. 1876.

1 Հմմտ. յիշատակարանը հայերէնին ալ համեմատ՝ "... գրի եւ դնի ի տունս յիշատակարանաց։ Սոյնպէս եւ յՈւռհա քաղաքի Ղերուբնեա որդի Սնակայ (ձեռ. "Անակայ„), որդի Աբշադարայ դպրի թագաւորին գրեաց զամենայն ինչ զոր միանգամ իրք եղեն Ադէի առաքելոյ ... ձեռն արկանելով եւ Աննա (Ա. "Խաննան„) հաւատարիմ թագաւորին, եւ եդին ի տան յիշատակարանաց քարտիսից, ուր դնին մատեանք եւ օրէնք արքունականք, եւ ... մուրհակք հաստատութեան, անդր պահին հաստատութեամբ առանց արհամարհանաց։„

2 Նորագոյն գրուածքները տես վերը՝ ուսումնասիրութեանս սկիզբը, հիները՝ մեր Zur Abgarsage, Վիեննա 1890, նաեւ "Հանդէս„ 1889, էջ 48։ Շատերն արդէն առիթ եղաւ յիշելու յընթացս գրութեանս։

ներ, որ Աբգարու զրոյցն ու յարակիցք կը պատմեն կամ կը յիշեն, սկսելով նոյն իսկ Եփրեմէն:[1] Ոմանք յիշուեցան արդէն, ուրիշ շատերը կրնան տեսնուիլ գիտնոց քով յիշուած:[2] Մեզի համար՝ որ միայն թղթերովս կը զբաղինք, կարեւոր է միայն վերջիններս տեսնել իրենց ասորական ձեւին մէջ: Եւ հոս հնագոյնն է դարձեալ այն՝ որուն նախնականը տեսած էր Եւսեբիոս, այսինքն՝ Ղաբուբնայի գրքինը, որ՝ ինչպէս Եւսեբիոս յունական թղթերուն համար՝ նոյնպէս հիմն է թղթերուս բոլոր ասորական օրինակներու եւ խմբագրութեանց: Հնագոյն բնագիրներէն է նաեւ այն, որ մուծուած է Միջագետաց առաքելոյն Մարեայ վարուց մէջ, որ իբր Ե կամ Զ դարուն գրուած կ'ըսուի, համառօտուած խմբագրութեամբ.[3] նոյնպէս համառօտ խմբագրութեամբ կ'ըսուի Աբգարու թուղթը, որ Ժ դարու ձեռագրի մը մէջ կը գտնուի:[4] Պարիսի մէկ ձեռագիրը՝ գրուած 1264ին՝ կը պարունակէ թղթերս, զոր հրատարակած է Տիքսըրոն:[5] Կրնան շատ ուրիշներն ալ գտնուիլ. բայց մեզի համար բաւական է այսչափն ալ: Քանի որ Ղաբուբնայի գիրքն է հիմը այս ամէնուն, նոյնը կարեւոր էր տեսնել. ուստի կը դնենք յաջորդովս, ի հարկէ ոչ

---

1 Բաց ի Կոտա՛կի խօսքէն, զոր վերը դրինք, կը յիշուի նաեւ Եփրեմայ Տաղ մը Ուռհայ եկեղեցւոյ վրայ (ձեռգր. Բրիտ. թանգ. 17, 141), Wright, Catalogue, II, 359.

2 Ցուցակ մը տես Tixeront, p. 23–5. Lipsius, Acta p. CVII–VIII.

3 Acta S. Maris, հրտ. J. B. Abbeloos Բոլլանդեանց քով՝ „Analecta Bollandiana“, IV (1885), p. 43–138. Թղթերս՝ բնագիր եւ լատ. թրգմ. անդ՝ էջ 53–4:

4 Add. 17,218 Բրիտ. Թանգ. Wright, Catal. I, 100. (ասոր բնագիրը չկրցանք համեմատել:)

5 Bibl. Nat. Anc. fonds 12, fol. 191. Հրատարակուած՝ Tixeront, p. 195–6, որ Ղաբուբնայի տարբերութիւնքն ալ նշանակած է:

ասորի բնագրոյն՝ որ աւելորդ է, այլ Հայերէն թարգմանութեամբն, որ արդէն հաւատարիմ է հոս բնագրին։ Եղած քանի մը տարբերութիւնք կը նշանակենք ստորեւ։ Տիքսըրոնի հրատարակած բնագիրն՝ որ իբրեւ անկախ գրուած՝ արդէն յատուկ խորագիրներ ալ ունի, տարբերութիւններ կը ցուցընէ, որոնց կարեւորները նոյնպէս կը նշանակենք իբրեւ "Պ" (Պարիսի) ձեռագրի ընթերցմունք, ի հարկէ այնչափ՝ որչափ իմաստի պէսպիսութիւն կը բերէ. զուտ ասորի լեզուի տարբեր ընթերցուածները հոս մեզի համար աւելորդ են։ Դիմացը՝ իբրեւ օրինակ համառօտ խմբագրութեան՝ կը դնենք Մարեայ վարուց միջի բնագիրը, ուր նոյնպէս՝ ինչպէս Ղաբուբնայի քով՝ պատմութեան մէջ հիւսուած են թղթերս, նոր թարգմանելով ասորի բնագրէն։ Ահա այս ասորական թղթերը, որոնց Եւսեբիոսի բնագրէն եղած կարեւոր տարբերութիւնքը շեշտով կը նշանակենք։

| Ղաբուբնա (Հայ = Աս. եւ Պ): | Վարք Մարեայ: |
| --- | --- |
| Գրէ այնուհետեւ թուղթ եւ տայ տանել առ Քրիստոս ի ձեռն Անանիայ հաւատարմի ... զոր գրեալ էր այսպէս։[1] | Եւ գրէ նմա թուղթ եւ առաքէ առ նա դեսպանս եւ պատգամաւորս ... բայց գրէ ի թղթին իւրում այսպէս։ |
| "Աբգար Արշամայ[2] առ Յիսուս Բժիշկ Բարի,[3] որոյ | "Աբգար Սեաւ (Ուկամա) իշխան աշխարհի՝ առ |

---

1 Պատմուածքի մասին տես Պ.՝ իբր անկախ օրինակ՝ խորագիր մը յօրիներ է՝ "Թուղթ զոր առաքեաց Աբգար արքայ Ուռհայի" (տող մ'ալ անընթեռնլի։)

2 "Արշամայ" = Աս. "Ուկամա" (Սեաւ.) տես վերը։ Մարեայ վարքը իբր տիտղոս կը կցէ ܫܠܝܛܐ, զոր "իշխան աշխարհի" թարգմանեցինք, պահելով Եւսեբեայ ասորաբան հայերէնին ընթերցուածը = τοπάρχης.

3 Այսպէս հայը, Աս. եւ Պ "բժիշկ բարի"։ Ընթերցուածս հնագոյն եւ լաւագոյն է քան Եւսեբեայ "փրկիչ բարի", քրիստոնէական գաղափարաւ ընթերցուածը, որուն հետեւած է Մարեայ վարքն ալ։

երեւեալ յերկրի Հրէաստանի ի քաղաքիդ Երուսաղէմ,[1] ողջոյն, Տէր։[2] Լուայ վասն քո եւ վասն բժշկութեանցդ՝ զոր առնես,[3] զի ոչ դեղովք եւ արմատովք բժշկես դու. Այլ բանի—[4] զկոյրս լուսաւորես, զկաղս գնացուցանես,[5] զբորոտս սրբես, եւ խլից տաս լսել,[6] զդեւս հալածես, զմեռեալսն յարուցանես, եւ զամենայն չարչարեալս եւ զախտաժէտս բանիւ բժշկես։[7] Եւ իբրեւ լուայ ես զայսպիսի մեծամեծ սքանչելիս՝ զոր առ- Յիսուս Փրկիչ, ողջոյն։ Լուայ եթէ զբորոտս սրբես, զայսս պիղծս հանես եւ զդեւս հալածես։ Եւ եդի ի մտի իմում վասն քո եթէ Աստուած ես եւ որդի Աստուծոյ, որ եկիր յառողջացուցանել զարարած։ Հիւանդութիւն չարաչար է իմ. եւ աղաչեմ զքեզ զի եկեսցես առ իս եւ բժշկեսցես զցաւս զայս։ Եւ դարձեալ լուայ վասն քո եթէ Հրեայք քաղաքակիցք քո («որ ընդ քեզ են»)՝ ատեան զքեզ եւ

---

1 Հայոյն յատուկ է՝ որոյ երեւեալ յերկրի (օր. Եր. «յերկիրդ») «Հրէաստանի ի քաղաքիդ Երուսաղէմ.» Ա. եւ Պ (= Եւս.) միայն «երեւեալ յերկրի Երուսաղէմ» (տես Եւսեբեայ τόπῳ եւն վերը. «ի քաղաքի» Հայերէնին այնպիսի սրբագրութիւն մ'ըլլալու է՝ ինչպէս էր Արձանագրութիւնը։)

2 Հայ ձեռագիրը կը բաժնէ «ողջոյն։ Տէր, Լուայ» եւն. բայց ուղղելու է՝ ինչպէս ըրինք՝ Ասորւոյն համեմատ. (Ա = Պ «... Երուսաղէմի, Տէր իմ, ողջոյն։ Լուայ» եւն։)

3 «Զոր առնես» չունին Ա. եւ Պ (= Եւս.։)

4 «Այլ բանի—» նոյնպէս Ա. եւ Պ., իսկ Եւսեբեայ քով էր՝ «զի որպէս ասէ.» տես վերը. — Ա. բուն է «զկոյրս բանաս» (այսինքն՝ զոյն կուրաց.) Հայը լաւ փոխադրեր է «լուսաւորես»։

5 «Զկաղս գնացուցանես» = Ա. եւ Եւս., իսկ Պ. դուրս ձգած է։

6 «Եւ խլից տաս լսել» (օր. Եր. «լսել տաս») ունին Ա. եւ Պ ալ. իսկ Եւս. չունի. (տես վերը։)

7 Ամբողջ այս խօսքը Հայը ինքնուրոյն կերպով ունի. Ա. եւ Պ. այս ձեւով են՝ «Եւ զդեւս (Ա. «զոգիս», Պ. «զդեւս») եւ զչարանուսս եւ զչարչարեալսն (կամ «նեղեալսն յայսոց») բանիւ քով բժշկես. նաեւ զմեռեալս յարուցանես։» Մատագրութեան արժանի է որ Հայը աւելի համեմատ է Եւսեբեայ, ուստի իւր բնագիրը լաւագոյն էր քան արդի ասորականք։

նես դու,[1] եղի ի մտի իմում (եւ հաստատեցի)[2] թէ Աստուած ես դու որ իջեր յերկնից եւ առնես զայդ, կամ որդի Աստուծոյ որ առնես զայդ ամենայն:[3] Վասն այնորիկ գրեցի առ քեզ աղաչանս՝[4] գալ քեզ առ իս, զի Երկէր պատեց քեզ,[5] եւ բժշկեսցես զիս ի ցաւոց եւ ի հիւանդութենէ իմմէ, որպէս հաստատեալ է քեզ:[6] Եւ զայս եւս լուայ եթէ Հրեայք տրտնջեն զքէն եւ հալածեն զքեզ. եւ կամին կորուսանել զքեզ:[7] Քաղաք կամին չար առնել քեզ: Եւ եթէ կամիս, քաղաք մի փոքրիկ է իմ, որ բարի է ինձ եւ քեզ, եւ բաւական երկոցունց, եւ եղիցուք անդ ի հանգստեան:„

---

1 Այսպէս նաեւ Աս. եւ Պ. լաւագոյն եւ հնագոյն է Եւսեբեայ՝ "Եւ իբրեւ լուայ վասն քո զայս ամենայն„, եւն:

2 "Եւ հաւատացի„ փակագծի մէջ առինք. յաւելուած կ'երեւայ հայ գրչի մը. չունին ոչ Աս. եւ Պ. եւ ոչ Եւս.:

3 Այսպէս ուղղեցինք հայերէնը, ինչպէս կ'ուզէր Աս. եւ Պ. եւ Եւս.: Արդի հայերէնն աղաւաղած է եւ կը կարդայ հոս՝ "...Աստուած ես դու եւ որդի Աստուծոյ որ իջեր յերկնից եւ առնես զայդ ամենայն„ Զենք կարծեր որ արդէն հայոյն տեսած ասորի բնագիրն այսպէս աղաւաղած ըլլար:

4 Աս. "գրեցի աղաչեցի ի քէն՝ գալ„ եւն:

5 "Զի երկիր պատից քեզ„ չունի Եւս. եւ իրաւամբ: Ասորականք ալ քիչ մը տարբեր կ'ըսեն, այսինքն՝ "գրեցի աղաչեցի զքեզ՝ գալ առ իս քեզ՝ որում երկէր պատանեմ, եւ բժշկեսցես„ եւն:

6 Այսպէս հայը. Աս. եւ Պ. աւելի նման են Եւսեբեայ՝ "եւ բժշկեսցես զցաւս իմ՝ զոր ունիմ ես:„ — "Որպէս հաւատացի ի քեզ„ ունին հայոյն հետ ասորականք: Եւս. լաւ եւս չունի:

7 Այսպէս հայը՝ քիչ մը տարբեր Ասորականէն, որ վերջինս կ'ըսէ "հալածեն զքեզ եւ կամին է խոչ հանել զքեզ եւ խորհին չարչարել զքեզ„ (= Պ:) Ցամենայն դէպս հայը լաւագոյն բնագիր մ'ունէր առջեւը, գոնէ մասամբ, միայն "կորուսանել„ պէտք է համազօր համարիլ "չարչարել„ բացատրութեան, զոր ունի Եւս., որ պարզ կ'ըսէ՝ "տրտնջեն զքէն եւ կամին չարչարել զքեզ:„

մի է իմ փոքրիկ եւ վայելուչ. եւ բաւական է երկոցունց մեզ բնակել ի սմա խաղաղութեամբ։„[1]

Եւ ընկալեալ Յիսուսի զթուղթն ի տան Քահանայապետին Հրէից՝ ասէ ցԱնանն հաւատարիմ արքային. Երթ եւ տուր տեառն քում՝ որ առաքեաց զքեզ առ իս[2]

"Երանի է քեզ, զի հաւատացեր յիս մինչ չեւ տեսեալ ես զիս։[3] Զի այսպէս գրեալ է վասն իմ, զի Որք տեսանեն զիս՝ ոչ հաւատան,[4] եւ որք ոչ տեսանեն՝ հաւատասցեն։ Եւ զի գրեցեր դու առ իս՝ գալ ինձ առ քեզ, վասն որոյ առաքեցայ ես յաշխարհս՝ կատարեալ է ամենայն.[5] այ-

Եկին պատգամաւորքն եւ մտին յԵրուսաղէմ...։ Բայց ես Նմա պատգամ պատասխանւոյ, գրեալ առ Նա ողջոյն այսպէս՝

"Գրեալ է վասն իմ, եթէ՝ Երանի այնոցիկ որք ոչ տեսցեն զիս եւ հաւատասցեն յիս։ Բայց այժմ զգործն Նորա՝ որ առաքեացն զիս, պարտ է ինձ կատարել։ Այլ յետ յառնելոյ իմոյ եւ յետ ելանելոյ յերկինս, առաքեցից առ քեզ զմի յաշակերտաց իմոց, որ բժշկեսցէ

---

1 Այսպէս նաեւ Աս. ("վայելուչ„ = գեղեցիկ՝ ըստ Աս. Եւս.։) Եւս. չունի վերջին "բնակել ի սմա խաղաղութեամբ„ խօսքերը։

2 Այսր տեղ՝ որ Լաբուբնայի պատմութեան մասն է, ուր հիւսուած են թղթերս (հմմտ. Վարք Մարեայ)՝ Պարիսի ձեռագիրը բնականաբար նոր խորագիր մը չինէր է՝ "Թուղթ պատասխանւոյ զոր առաքեաց Քրիստոս առ Աբգար։„

3 Այսպէս նաեւ Աս.։ Եւս. աւելի ընդհանուր ("Երանի իցէ այնոցիկ որ . . . Նորա զիս„) ըստ Հայերէնին. յոյնը տես վերը։

4 Ուղղելու է՝ "ոչ հաւատասցեն„ = Աս. եւ Եւս.։

5 Ամբողջն տարբերան տաւութիւն։ Փոխանակ "յաշխարհս„ կ՚ըսէ Աս. ". . . առաքեցայ ես այսր„։ — "Կատարեալ է ամենայն„ ճշդիւ համեմատ է Ասորւոյն Լաբուբնայի, որ կ՚ըսէ ամբողջը՝ "այն՝ վասն որոյ առաքեցայ այսր՝ կատարեալ է արդ եւ վերանամ„ (= Պ., որ միայն վերջինը կ՚ըսէ ". . . այսր՝ կատարեալ է արդ„։) Եւս. "արժան է ինչ կատարել աստ զամենայն„ եւն։ Ուստի հայն

առ Հետեւ վերանամ ես առ Հայր իմ որ առաքեացն զիս: Եւ յորժամ վերացայց առ Հայր,[1] առաքեցից (օր. Եր. "առաքեմ„) առ քեզ մի յաշակերտաց իմոց, զի բժշկեսցէ զքեզ եւ զամենայն ժողովուրդս (Իբ. օր. "ժողովուրդ„) քո՝ որ ընդ քեզ, եւ դարձուսցէ զձեզ ի կեանս (օր. Եր. "ի կեանսն„) յաւիտենականս:[2] Եւ քաղաքդ քո օրհնեալ լիցի. մի՛ եւս թշնամի տիրեսցէ նմա յաւիտեան.„[3] (օր. Եր. "եւ թշնամի մի՛ տիրեսցէ դմա յաւիտեան:„)

Եւ լուեալ զայս ամենայն Անան՝ զոր ասաց ցնա Յիսուս, առեալ նկարեալ զպատկեր Յիսուսի„ եւն եւն:[4]

զցաւս քո, նաեւ կեանս տացէ քեզ եւ այնոցիկ եւս որ ընդ քեզ են: Եւ քաղաք քո օրհնեալ լիցի. եւ թշնամի մի՛ տիրեսցէ նմա:„

Եւ տուաւ թուղթս Աբգարայ արքայի, որ եւ ընկալաւ զնա ուրախութեամբ մեծաւ„ եւն եւն:

---

ալ կարդալու է՝ ըստ իւրեան "կատարեալ է ամենայն պատուիրանն. եւ վերանամ„ եւն:

1 Առաջին անգամ "առ Հայր իմ„ ունին Ասորականք ալ (Եւս. "առ այն որ . . .„) իսկ հոս երկրորդ անգամ՝ "յորժամ վերացայց առ նա, առաքեցից„ եւն: "Վերանալ„, մեր ասորաբանից սովորական փոխագրութիւն է = "համբառնալ„. (Աս. "ելանել, վերանալ„:)

2 Քիչ մը տարբեր են Ասորականք, այսինքն՝ "Եզցաւս՝ զոր ունիս դու, բժշկեսցէ եւ ողջացուսցէ. եւ զամենայն ոք որ ընդ քեզ է՝ դարձուսցէ ի կեանս յաւիտենից:„ Եւս. "զցաւս քո բժշկեսցէ եւ կեանս տացէ քեզ եւ որոց ընդ քեզ„՝ աւելի հնագոյն, որով կ'աւարտի:

3 Այս յաւելուածը տես վերը: Լաբուբնայ ալ հայոյն պէս կ'ըսէ "մի՛ եւս (ܬܘܒ) տիրեսցէ„ եւն: Պարիսի ձեռագիրն, Վարք Մարեայ եւն չունին այս "եւս„, այլ պարզ եւ վճռական կ'ըսեն "եւ թշնամի մի՛ տիրեսցէ նմա յաւիտեան„:

4 Լաբուբնա կը շարունակէ իւր պատմութիւնը. Մարեայ Վարքը նոյնպէս իրենը: Բնականաբար Պարիսի

Այս համեմատութեամբ կրնանք կնքել մեր դիտողութիւնքն ։ Ի վերջոյ այս (Լաբուբնայի) ասորի բնագիրն է հիմն բովանդակ զրուցին կամ ուղղակի, կամ անուղղակի Եւսեբեայ ձեռօք․ միայն թէ ինքն ալ փոփոխութիւն կրած է արդի ձեւի մէջ, հնագոյնը մնալով Եւսեբեայ թարգմանութիւնը։ Արդի Լաբուբնայի անկէ ունեցած տարբերութիւնքն՝ ինչպէս նշանակեցինք, բաւական բազմաթիւ են․ սակայն եթէ լաւ մտադրուի՝ մեծաւ մասամբ անճահ յաւելուածներ, այսպէս “զի երկիր պագից քեզ„ եւն, որոնց մասին աւելորդ է երկարաբանել ։

## 5.

Մեր ուսումնասիրութեան ցուցուցած արդիւնքն ինքնին յայտնի է։ Արձանագրութիւնը նոր բնագիր մը չէ եւ գոյութիւն չունի առանց Եւսեբեայ հօգացած թարգմանութեան, որմէ շատ եաքն ալ պէտք է որ քանդակուած ըլլայ։ Ուստի ոչ Ա դարու գործ մը կրնայ ըլլալ եւ ոչ թղթերուս վաւերականութեան խնդրոյն մէջ կշիռ ունեցող վկայ մը․ մանաւանդ թէ իւր ծայրի յաւելուածովը վկայ մըն է անվաւերութեան ։ Եւ արդէն թղթերն ինքնին կեղծագրի մը գործ են։ Եւ եթէ երբեք կարելի պիտի ըլլայ ասոնց հարազատութիւնը ցուցընել, թողլով ուրիշ կէտերը՝ նախ պէտք է գտնել բնագիրներ որ ստուգիւ հնագոյն ըլլան Եւսեբիոսէն, ազատ բոլոր անվաւերացուցիչ կէտերէ, վերջապէս բնագիրներ՝ որոնք գոնէ կարելի ըլլան վերագրուելու Տեառն մերոյ ։ Այս հօգը կը յանձնենք վաւերականութեան պաշտպաններու․ մենք յոյս չունինք ասորի կեղակարծ զրոյցներէն եւ գրուածքներէն Քրիստոսի Տեառն մերոյ հարազատ թուղթ մը հանելու փորձ անգամ ընել ։

---

ձեռագիրը հոս կ'աւարտի, կցելով վերջաբան մը՝ “․․․Նմա յաւիտեան ։ Կատարեցաւ Թուղթն, զոր գրեաց Քրիստոս առ Աբգար արքայ Ուռհա քաղաքի ։„

Մինչեւ այստեղ խնդիրը զուտ բանասիրական տեսակէտով քննեցինք, տեսակէտ մ'որ այնչափ պարսաւ կը կրէ ճիշդ այս խնդրին մէջ, ինչպէս վերը յիշեցինք։ Միայն զարմանք է որ ճիշդ այս պարսաւուած նոր բանասիրութիւնը հոս այն եզրակացութեան կը հասցընէ, զոր դարեր յառաջ վճռած են սուրբ Հարք ալ, եւ այն՝ զուտ աստուածաբանական տեսակէտով։ Ծանօթ է որ Գելասիոսի տրուած վճիռն անվաւեր հրատարակած է թղթերս ալ, բացայայտ այսպէս՝ "Թուղթ Յիսուսի առ Աբգար անվաւերական. Թուղթ Աբգարու առ Յիսուս անվաւերական։„[1] Անշուշտ Գելասիոսի վճռաթուղթն՝ որ իբր թէ 494ի Հռովմայ ժողովոյ մը արձանագրութիւնն է, ինքնին խնդրական է, գոնէ այլեւայլ կարծիքներու եւ վէճերու առիթ տուած. բայց գոնէ կը ցուցընէ թէ Ե դարու վերջերը կամ ամէնէն ուշ Զ դարու սկիզբն ինչ գաղափար ունէր Հռովմայ եկեղեցական դասն այս թղթոցս վրայ։ Շատ օգուտ չունի, երբ՝ օրինակի համար Նիրշլ (որ Գելասիոսի վճիռը վաւերական կ'ընդունուի), փախստի ճամբայ մը գտնէ ըսելով թէ վճռովս միայն թղթերուս Ներշնչեալ չըլլալը վճռուած է կամ Ս. Գրոց կանոնի մաս չըլլալը, ոչ թէ անհարազատութիւնը։ Վասն զի՝ եթէ ստուգիւ հարազատ էին, Տեառն մերոյ հարազատ պատգամներ, անհնար էր որ ընդհանուր եկեղեցւոյ անծանօթ մնար այս մեծ գրաւոր պատգամն Քրիստոսի, եւ անվաւեր վճռուէր երբեք այս կամ այն իմաստով։ Աստուածաբանական տեսակէտն ամէնէն լաւ շեշտած են Ս. Յերոնիմոս (in Ezech. 44, 29) եւ

1 Decretum Gelasii VI, 57-8: „Epistola Jesu ad Abgarum apocrypha. Epistola Abgari ad Jesum apocrypha.“ Բնագիրը տես Mansi, VIII, 152։ Գելասիոսի վճռոյս մասին հմմտ. ի միջի այլոց՝ Hefele, Conciliengeschichte, II (1875), 618--623, ուր յիշուած են բազմաթիւ գործեր։

Ս. Օգոստինոս (contra Faustum. XXVIII, 4, de consensu Evangelistarum I, 7), բացարձակ վճռելով որ Քրիստոս Տէր մեր գրաւոր բան մը չէ թողուցած, թէեւ՝ ինչպէս Ասորիք թղթերս, Գնոստիկեանք եւ Մանիքեցիք յօրինած են "գիրս առ Պետրոս եւ Պաւղոս"։ Այսօր ալ կ'արժէ Ս. Օգոստինոսի խօսքը թէ՝ "Եթէ աւանդուած էին թղթեր (literae, գրուածքներ) որ նոյն իսկ Քրիստոսի ինքնին կը վերագրուէին, ինչպէս կրնար ըլլալ՝ եթէ ստուգիւ Իրենն էին, որ չկարդացուէին, չընդունուէին, ամենամեծ ճոխութեամբ չփայլէին Անոր եկեղեցւոյն մէջ" եւն եւն։[1] Թողունք սակայն այս կէտն ալ. քանի որ մեզի համար կարեւոր չէ զբաղիլ այլեւայլ կարելիութիւններով։ Որոշ ձեւով բնագիրներ կան առջեւնիս եւ որոշ ձեւով Արձանագրութիւն մը, որոնք քննուելու արժանի էին բանասիրութեան տեսակէտով։ Այս էր զոր յուսանք կատարեցինք ներկայ գրութեամբս։

Ի վերջոյ աւելորդ չէ կրկնել որ այս ամէնը բուն մեզի Հայոցս չի վերաբերիր։ Բայց եւ այնպէս բնական է որ հայ գրականութեան մէջ ալ ընդարձակ շրջանակ մ'ունենար զրոյցս, եւ այն՝ երկու ձեւովն ալ, յունական եւ ասորական։ Արդէն թղթերուս բնագիրը նոյն կրկին ձեւերով ալ թարգմանուած էր հայերէնի, յունականը՝ Եւսեբեայ Եկեղ. Պատմութեան, ասորականը՝ Ղաբուբնայի թարգմանութեամբ։ Կայ երրորդ՝ հայացեալ ձեւ մ'ալ, այն՝ զոր Խորենացի կը ներկայացընէ եւ որ բարեբախտաբար թղթերուս գրուելու եւ խաւրուելու պարագաները միայն կը շօշափէ, իսկ բուն բնագիրն պահած է ճշդութեամբ՝ Եւսեբեայ հայ թարգմանութեան համեմատ։ Եթէ հայ գրականութիւնը լիովին պրպտուի, շատ առատ կրնանք հաւաքել այս ամէն զրոյցներուս, եւ յատկապէս

---

1 Հմմտ. նաեւ Lipsius, Abgarsage, 6 եւ ուրիշներ։

թղթերուս մասին։ Հայ պատմագիրք սովորաբար Խորենացւոյ կը հետեւին, խառնելով երբեմն ուրիշ աղբիւրներ ալ։ Բայց թղթերը՝ որ մեզի համար հոս նշանակութիւն ունին, յաճախ յառաջ չեն բերուած բառացի, այլ միայն ակնարկուած եւ յիշուած։ Այսպէս Յովհ. Կաթուղիկոս, Թովմաս Արծրունի, Ստ. Ասողիկ եւ ուրիշներ։[1] Ընդհակառակն լիակատար կը գրէ բնագիրները Ժ դարուն Ուխտանէս՝ հետեւելով Խորենացւոյ ընթերցուածին, ուր սակայն քանի մը հետաքրքրական շեղումներ կան։[2] Չենք յիշեր ուրիշները, վասն զի մեր

---

[1] Յովհ. Կթղ. գլ. Զ (տպ. Երուս. 1867, էջ 46 եւն.) — Թովմ. Արծր. Ա, գ. (տպ. Պետր. 1887, էջ 46 եւն.) — Ասողիկ. Ա, ե (տպ. Պետր. 1885, էջ 45 եւն.) Միք. Աս. եւ ուրիշներ։

[2] Ուխտանէս, Ա. լա–լթ. (տպ. Վաղարշապատ 1871, էջ 46–55։) Թղթոց տարբերութիւնքն են համեմատութեամբ վերնոյն՝ զոր գրինք (Խոր. = Եւս.)՝ "Թուղթ Աբգարու առ Փրկիչն։ Աբգար Լամոյէ (այսինքն՝ "Արշամոյէ", Լ եւ Շ, ուղղելի՝ "Արշամայ") իշխան աշխարհի, որ երեւեցար յաշխարհիդ ... լուեալ է իմ ... բժշկութեանդ զոր առնես ի վերայ հիւանդաց առանց ... եւ զկոյրս տեսանել, եւ զայս պիղծ հանել ի մարդկանէ, եւ որ միանգամ չարչարեալք են ընդ երկար հիւանդութեամբ՝ բժշկես։ Դու ես զմեռեալս ... դու իցես Աստուած՝ իջեալ յերկնից որ գործես զայդ, և կամ թէ որդի իցես դու Աստուծոյ և այդ գործես։ Արդ վասն այնորիկ գրեցի ես առ քեզ... աշխատ լիցիս ... եւ բժշկես զհիւանդութիւնս ... Հրեայքդ տրտնջեն ընդ քեզ ... քաղաք մի փոքրիկ եւ գեղեցիկ է իմ ... երկոցունց. էնչ բնակեցուցանէ ի միասին" (Հմմտ. Լաբուբնա։) — Յիսուսի պատասխանը՝ "Պատասխանի թղթոյն, զոր գրեաց Թովմաս Առաքեալ հրամանաւ Փրկչին։ Երանի իցէ այնմ որ հաւատայցէ յիս, իբր ոչ իցէ տեսեալ զիս ... զի որք տեսանենն զիս՝ ոչ հաւատայցեն յիս, եւ որք ոչ տեսանեն զիս՝ նոքա հաւատայցեն եւ կեցցեն։ Իսկ վասն այն զի գրեցեր ... Եւ իբրեւ կատարեցից զայս, ապա համբարձայց ... եւ կեանս քեզ եւ որոց ընդ քեզ են՝ շնորհեսցէ։" — Ուստի բնագիրը թէեւ Խորենացիէն առնուած

նպատակը չէ Աբգարու եւ յարակից զրոյցներու Հայոց մէջ կատարած դերին պատմութիւնը գրել, որ ինքնին յատուկ ուսումնասիրութեան մ'արժանի նիւթ է։ Շատանանք իբր վերջաբան յիշել երկու գրուածք, որ թարգմանութեան կերպարանօք կը ներկայանան։ Ասոնց մին է "Յաղագս պատմութեան սուրբ եւ աստուածային Խաչին, զոր գտեալ արքայ Հարցն յարեւելս յԱղուանից երկրէ եւ թարգմանեցին ի հայ գիր.„[1] չգիտենք ստուգիւ թարգմանութիւն "ազուանից գրոց„ թէ ոչ։ Գոնէ ամբողջը հայ գրչի կարկատանք մըն է, եւ նպատակը որոշ. այն է՝ "պատճառն սուրբ Խաչին Եղրդուտոյ սուրբ ուխտին, զոր յետոյ կրկին հաստատեաց սուրբն Գրիգոր Լուսաւորիչ„ եւն, եւ զոր՝ ուրիշ գրիչ մը մ'աւելի կ'որոշէ գրելով՝ "Շիշ իւղոյն ի վանքն Տարօնոյ երկիրն Եղրդրէց։„[2] Գրողն այս իւղն արդէն Սինայ լերան վրայ կը գտնէ՝ Մովսիսի մարգարէի գործածած օծման իւղն, նոյնը՝ զոր Մագդաղենացի կը գործածէ, զոր Թադէոս Աբգարու կը բերէ եւն եւն։ Մեզի համար հետաքրքրական է այն կերպն, որով հոս Աբգարու եւ իւղոյն զրուցին մէջ խառնուած է թղթերու զարմանալի համառօտուած ձեւ մը, որ է յաջորդը։[3]

Եւ յորժամ զհրաշից համբաւն եւ զքանչելիսն՝ զոր կատարէր Յիսուս որդին Մարիամու,

---

է հոս, շատ տեղ Եւսեբեայ հայերէնին համեմատ է, վասն զի այնպէս էր իւր առջեւ եղած Խորենացւոյ օրինակն, որուն տարբերութիւնք՝ ինչպէս ըսինք՝ գրչաց արդիւնք են։ — Թղթերս բնագրաւ կը դնէ նաեւ Մխիթար Անեցի (տպ. Պետրբ. 1879, էջ 24–5) առնելով Խորենացիէն, կամ որպէս "գրէ րաբունին Մովսէս„։

1 Ձեռագր. մեր Մատ. Թ. 257, Թղ. 47ա–49 C, տես "Ցուցակ„, 659, ուր պարունակութիւնը յառաջ բերած ենք։

2 "Վասն Ցնօրէնութեանցն Քրիստոսի„ գրուածքը՝ Թ. 398, Թղ. 36ա եւն, տես "Ցուցակ„, 851։

3 Թ. 257. Թղ. 48ա–բ։

հասանէր առ Աբգար թագաւորն Հայոց եւ Ասորւոց, առաքեաց առ նա զհաւատարիմ ծառայս իւր զՀամշագրամ եւ զԱնանիա սուրհանդակս աղաչանաց հրովարտակաւ առ Յիսուս որ ունէր օրինակ զայս:

"Տէր Յիսուս որդի Մարիամու. ահաւասիկ երկու բան եդեալ կամ առաջի իմ, զի կամ դու Աստուած ես եւ կամ որդի Աստուծոյ, ճշմարտապէս հաւատամ. եւ լուեալ է մեր թէ դու երթալոց ես ի չարչարանս խաչի եւ մահու: Կայ ինձ քաղաք մի փոքրիկ լի ամենայն բարեօք եւ յոյժ պտղաւէտ. եկ զի բնակեսցուք ի միասին, եւ բժշկեա զիս:„

Եւ Յիսուս պատասխանի ետ նոցա թէ Ի ճանապարհի եմ, եւ ուղարկեաց նմա թուղթս այսպէս գրեալ՝

"Օրհնեալ լիցիս դու եւ քաղաքդ քո՝ Աբգար, եւ է քո ձեռնամուխ առն եւ աստր է դու մի՛ մտցէ: Ես ոչ կարեմ գալ. բայց յետ համբառնալոյն իմոյ յերկինս առաքեցից զմի յաշակերտաց իմոց, զի եկեալ բժշկեսցէ զքեզ:„

Ինչպէս կը տեսնուի, զարմանալի ձեւ մըն է ամբողջը, բայց յատկապէս Եդեսիոյ օրհնութեան բանաձեւը: Նման բան մըն է երկրորդն ալ, այն է ճառերու կամ զրոյցներու այն զարմանալի խառնակոյտը, որ Եպիփանու Հռետորի անունն կը կրէ ճակատը,[1] եւ ուր Աբգարու զրոյցը քանի մ'անգամ շօշափուած է.[2] ի միջի այլոց կայ յատուկ ճառ մ'ալ որուն խորագիրն է՝ "Նորին Եպիփանու յաղագս Պատկերագրին Տեառն, այսինքն Դաստառակին՝ որ ի Տեառնէ տուաւ Աբգարու:„[3] Թղթերը միայն ակնարկուած են հոս. սակայն մոռցուած չէ գոնէ

---

1 Մեր Մատ. Թ. 11, ընդարձակ տես "Ցուցակ„ 102—7:

2 Անդ՝ Ճառ Լ (Թ. 11, էջ 439) "Իսկ Տէրն ի նմին երեկոյի եկն ի տուն Գամաղիելի Վարդապետին, եւ անդ ետ պատասխանի եկելոցն յԱբգար արքայէ„ եւն:

3 Ճառ կամ Հատ. ԺԳ, Թիւ 11, էջ 735-46. "Ցուցակ„ 106:

Ուռհայի օրհնութիւնը, վերնոյն շատ նման ձեւով մը։[1] Իսկ ամբողջ ճառը, ուր զարմանալի բաներ ալ կը կարդանք (— Աբգար եղած է որդի Տիգրանայ, Տիգրան կը շինէ զՈւռհա եւն եւն.) յատկապէս Դաստառակի գրոյցին մասին է, անոր պատմութիւնն, գործած սքանչելիքն ու նմաններ, որոնք՝ թէեւ կապ ունին մեր քննութեան առած խնդրին հետ, սակայն հոս անտես կ'ընենք՝ ինչպէս ըրինք ցայս վայր միւս յարակից գրոյցներն ալ։ Եւ որչափ ընդարձակ է այս գրոյցներու շրջանը նաեւ Հայոց քով, եթէ նկատի առնունք նաեւ միայն Յայսմաւուրքները։[2] Ասոնց մէջ ընդհանրապէս թղթերը կը յիշուին միայն. քիչ անգամ բնագիրները լիա-

---

[1] Անդ՝ էջ 738 "Զկնի գրեաց եւ մուրհակս կոչելով եւս զՑերն գալ առ նա մեծաւ պատուով...։ Եւ Ցերն ընկալեալ զնուա աստուածային ողջունիւն, եւ անդէն հրամայեաց Թովմայի գրել պատասխանի Աբգար արքայի, եւ օրհնեաց զնա եւ զքաղաքն եւս Ուռհայ, եւ ասէ՝ Մի երկիցես ի թշնամեաց քոց, զի ոչ կարասցեն տիրել քեզ կամ քաղաքի քո սրով կամ սովով, զի ես ընդ քեզ եմ,, եւն։

[2] Հմմտ. Աբգարու պատմութիւնքն, որ այլեւայլ ձեւերով կը գտնուին, թղթերովս ("Ցուցակ,,, 34) եւ առանց թղթերու (այսպէս՝ Թ. 10, Թղ. 234, Թ. 219, Թղ. 194ա, կամ "Ցուցակ,,, 70, 561.) ուրիշ պատմութիւն՝ Թ. 228, Թղ. 121, "Ցուցակ,, 590–1, եւն։ Դաստառակի Պատմ. բաց ի Թ. 219էն, ուր կան թղթերս, կայ բաւական յաճախ. տես "Ցուցակ.,, 26, 566, 896, 898։ Ուրիշ գրոյց մըն է Պատմ. Անկար Պատմուճանին եւ Աբգարու., տես "Ցուցակ,,, 48, 747 (Թ. 313, Թղ. 277բ։) Աբգար եւ Թադէոս նաեւ Աստուածաշնչի Ասորւոց "Պեշիտտա,, թարգմանութեան հետ կապուած են երբեմն, տես "Ցուցակ,,, 426։ Թաթարերէն մը տես անդ՝ 944։ Բազմաթիւ են վերջապէս այս կարգի գրուածքներ, հմմտ. Աբգար, Թադէոս, Ադդէ Ագգէ եւն անունները. ("Ցուցակ,, 1051, 1053, 1089 եւն եւն։) Ուրիշ մեծամեծ հաւաքմունք պրպտելով՝ անսպառ ատաղձ կրնանք հաւաքել այս ամէն գրոյցներուն, որ Հայոց քով ալ այնպէս սիրելի եւ ժողովրդական դարձած էին։

կատար գրուած են։ Բայց հոս ալ երկու տեղ կը գտնենք Թղթերուս բնագիրը, բաւական տարբեր խմբագրուած, եւ այն՝ միեւնոյն ոճով երկու բոլորովին տարբեր գրուածքներու մէջ, որոնց մին Աբգարի պատմութիւն է կամ “Յիշատակ է թագաւորին Հայոց եւ Ասորոց Աբգարու„ եւն (Թ. 7, Թղ. 283ա եւն, “Ցուցակ„ 34), միւսը՝ Պատմութիւն Դաստառակին, “յորում նկարեալ էր Անձեռագործ պատկեր Նորա (Քրիստոսի)„, նոյն Թղթերովն. (Թ. 219, Թղ. 476բ եւն. “Ցուցակ„ 566—7։) Ահա այս բնագիրն՝ համեմատ այս երկուքին, ուր Դաստառակի Պատմութեան կարեւոր ընթերցուածոց տարբերութիւնք B տառով կը նշանակենք։ Երկուքն ալ պատմուածքին մէջ հիւսած են Թղթերս, որ են հետեւեալքը։

“Եւ գրեաց առ Յիսուս այսպէս (B եւ գրեաց թուղթս օրինակ զայս։) Աբգար որդի Արշամայ իշխան աշխարհաց առ Յիսուս Փրկիչ եւ բարերար, որ երեւեցար յաշխարհիդ Երուսաղեմացւոց, ողջոյն։ Լուեալ իմ վասն քո եւ վասն նշանացդ զոր առնես, զի որպէս ասեն զ'ի ծնէ կոյրս բանաս դու, զբորոտս սրբես, զի զխլից ականջս բանաս, զդեւս պիղծս ի մարդկանէ հալածես, զկաղս գնացուցանես եւ զայլ ախտաժէտս անբժշկելիս բժշկես դու առանց դեղոց եւ արմատոց, նաեւ զմեռեալս յարուցանես դու. (B նշանացդ՝ զոր առնես դու, զի որպէս ասեն՝ զհիւանդս բժշկես դու, զդեւս հալածես, զկոյրս բանաս, նաեւ զմեռեալս յարուցանես դու։ Բ ինչ„ եւն։) Եւ իմ ածեալ զմտաւ զմի յերկուց կամ Աստուած ես դու իջեալ յերկնից եւ գործես զայդ եւ կամ որդի ես Աստուծոյ եւ կատարես զայդ. (B Բ ինչ զմտաւ ածեալ եմ, կամ Աստուած ես դու զի զայդ առնես, եւ կամ որդի Աստուծոյ իջեալ յերկնից որ զաւրութիւնսդ կատարես. Քաղաք մի . . .։) Նաեւ լուեալ եթէ Հրեայք եւս տրտնջեն զքէն. քաղաք մի փոքրիկ եւ գեղեցիկ է իմ, եւ բաւական է երկոցունցս, աղաչեմ զքեզ գալ եւ լինել ընդ մեզ. (B Քաղաք մի փոքրիկ եւ գեղեցիկ է

Ուռհայի օրհնութիւնը, վերնոյն շատ նման ձեւով մը։[1] Իսկ ամբողջ ճառը, ուր զարմանալի բաներ ալ կը կարդանք (— Աբգար եղած է որդի Տիգրանայ, Տիգրան կը շինէ զՈւռհա եւն եւն.) յատկապէս Դաստառակի զրոյցին մասին է, անոր պատմութիւնն, գործած սքանչելիքն՝ եւ նմաններ, որոնք՝ թէեւ կապ ունին մեր քննութեան առած խնդրին հետ, սակայն հոս անտես կ'ընենք՝ ինչպէս ըրինք ցայս վայր միւս յարակից զրոյցներն ալ։ Եւ որչափ ընդարձակ է այս զրոյցներու շրջանը նաեւ Հայոց քով, եթէ նկատի առնունք նաեւ միայն Ցայսմաւուրքները։[2] Ասոնց մէջ ընդհանրապէս թղթերը կը յիշուին միայն. քիչ անգամ բնագիրները լիա-

---

[1] Անդ՝ էջ 738 "Զկնի գրեաց եւ մուրհակս կոչելով եւս զՑէրն գալ առ նա մեծաւ պատուով...։ Եւ Տէրն ընկալեալ զնոսա աստուածային ողջունիւն, եւ անդէն հրամայեաց Թովմայի գրել պատասխանի Աբգար արքայի, եւ օրհնեաց զնա Իս. եւ զքաղաքն իւր Ուրհայ, եւ ասէ՝ Մի երկնչիր ի թշնամեաց քոց, զի ոչ կարասցեն տիրել քեզ կամ քաղաքի քո սրով կամ սովով, զի ես ընդ քեզ եմ,, եւն։

[2] Հմմտ. Աբգարու պատմութիւնքն, որ այլեւայլ ձեւերով կը գտնուին, թղթերովս ("Ցուցակ,,, 34) եւ առանց թղթերու (այսպէս՝ Թ. 10, Թղ. 234, Թ. 219, Թղ. 194ա, կամ "Ցուցակ,,, 70, 561.) ուրիշ պատմութիւն՝ Թ. 228, Թղ. 121, "Ցուցակ,, 590—1, եւն։ Դաստառակի Պտմ. բաց ի Թ. 219էն, ուր կան թղթերս, կայ բաւական յաճախ. տես "Ցուցակ.,, 26, 566, 896, 898։ Ուրիշ զրոյց մըն է Պտմ. Անկար Պատմուճանին եւ Աբգարու, տես "Ցուցակ,,, 48, 747 (Թ. 313, Թղ. 277բ։) Աբգար եւ Թադէոս նաեւ Աստուածաշնչի Աստր. ոց "Պեշիտտա,, թարգմանութեան հետ կապուած են երբեմն, տես "Ցուցակ,,, 426։ Թաթարերէն մը տես անդ՝ 944։ Բազմաթիւ են վերջապէս այս կարգի գրուածքներ, հմմտ. Աբգար, Թադէոս, Ադդէ Ադգէ եւն անունները. ("Ցուցակ,, 1051, 1053, 1089 եւն եւն։) Ուրիշ մեծամեծ հաւաքմունք պրպտելով՝ անսպառ առաջձ կրնանք հաւաքել այս ամէն զրոյցներուն, որ Հայոց քով ալ այնպէս սիրելի եւ ժողովրդական դարձած էին։

կատար դրուած են։ Բայց հոս ալ երկու տեղ կը գտնենք թղթերուս բնագիրը, բաւական տարբեր խմբագրուած, եւ այն՝ միեւնոյն ոճով երկու բոլորովին տարբեր գրուածքներու մէջ, որոնց մին Աբգարի պատմութիւն է կամ “Յիշատակ է թագաւորին Հայոց եւ Ասորոց Աբգարու„ եւն (Թ. 7, Թղ. 283ա եւն, “Ցուցակ„ 34), միւսը՝ Պատմութիւն Դաստառակին, “յորում նկարեալ էր Անձեռագործ պատկեր Նորա (Քրիստոսի)„, նոյն թղթերովն. (Թ. 219, Թղ. 476բ եւն. “Ցուցակ„ 566—7։) Ահա այս բնագիրն՝ համեմատ այս երկուքին, ուր Դաստառակի Պատմութեան կարեւոր ընթերցուածոց տարբերութիւնք B տառով կը նշանակենք։ Երկուքն ալ պատմուածքին մէջ հիւսած են թղթերս, որ են հետեւեալքը։

“Եւ գրեաց առ Յիսուս այսպէս (B եւ գրեաց թուղթս օրինակ զայս։) Աբգար որդի Արշամայ իշխան աշխարհաց առ Յիսուս Փրկիչ եւ բարերար, որ երեւեցար յաշխարհիդ Երուսաղեմացւոց, ողջոյն։ Լուեալ իմ վասն քո եւ վասն նշանացդ զոր առնես, զի որպէս ասեն զ'ի ծնէ կոյրս բանաս դու, զբորոտս սրբես, զի զխլից ականջս բանաս, զդեւս պիղծս ի մարդկանէ հալածես, զկաղս գնացուցանես եւ զայլ ախտաժէտս անբժշկելիս բժշկես դու առանց դեղոց եւ արմատոց, նաեւ զմեռեալս յարուցանես դու. (B նշանացդ՝ զոր առնես դու, զի որպէս ասեն՝ զհիւանդս բժշկես դու, զդեւս հալածես, զկոյրս բանաս, նաեւ զմեռեալս յարուցանես դու։ Բ ինչ„ եւն։) Եւ իմ ածեալ զմտաւ զմի յերկուց կամ Աստուած ես դու իջեալ յերկնից եւ գործես զայդ եւ կամ որդի ես Աստուծոյ եւ կատարես զայդ. (B Բ ինչ զմտաւ ածեալ եմ, կամ Աստուած ես դու զի զայդ առնես, եւ կամ որդի Աստուծոյ իջեալ յերկնից որ զաւրութիւնսդ կատարես. Քաղաք մի . . .։) Նաեւ լուեալ եթէ Հրեայք եւս տրտնջեն զքէն. քաղաք մի փոքրիկ եւ գեղեցիկ է իմ, եւ բաւական է երկոցունցս, աղաչեմ զքեզ գալ եւ լինել ընդ մեզ. (B Քաղաք մի փոքրիկ եւ գեղեցիկ է

իմ. եւ բաւական է մեզ երկոցունց. նա եւ լուեւ եմ թէ եւ Հրեայք եւս տրտունջ են զքէն. արդ աղաչեմ զքեզ, զի եկեալ բժշկեսցես զիս:)„

...Եւ հրամայեաց Թումայի (B Թովմայի) գրել պատասխանի Աբգարու այսպէս (B աւրինակ զայս:) Երանի այնմ որ ոչ իցէ տեսեալ զիս (B չէ+ “զիս„) եւ հաւատասցէ յիս: Զի գրեալ է վասն իմ այսպէս. Որք տեսանեն զիս (B որք տեսանենն՝ ոչ) ոչ հաւատան յիս, եւ որք ոչն տեսանեն (B ոչ տեսանեն զիս) նոքա հաւատասցեն եւ կեցցեն: Փոքր ինչ ժամանակ վասն մատակարարութեան իրիք առաքեցայ աստ (B փոքր ինչ ժամանակ եմ աստ.) եւ ապա վերանամ (B վերացայց) առ այն՝ որ առաքեացն զիս: Եւ յայնժամ (B եւ ապա) զմի յաշակերտաց իմոց առաքեցից առ քեզ, կեանս տալ քեզ եւ որոց ընդ քեզ են. (B ...առ քեզ, որ եկեալ բժշկեսցէ զքեզ. եւ տացէ կեանս քեզ եւ որոց ընդ քեզ են:)„

Բնագիրքս՝ ինչպէս կը տեսնուի, Եւսեբեայ Հայ թարգմանութեան համեմատ են, բայց միայն ըստ էականին. վասն զի ամբողջը բոլորովին այլակերպ եղած է: Նման ձեւեր եւ ընդհանրապէս տակաւին շատ աւելի ճոխ ատաղձ կարելի է գտնել Հայ մատենագրութեան մէջ: Բայց մեզի համար բաւական է այսչափն ալ:

---

## Ժ.

# ԳԷՈՐԳԱՅ ՊԻՍԻԴԵԱՅ ՎԵՑՕՐԵԱՅՔ

## 1.

Բիւզանդեան իմաստասէր Սարկաւագին անուանի տաղաչափութիւնը, զոր մեր նախնիք փութացած էին թարգմանել արդէն բաւական կանուխ, այն գործերէ՛ն է որոնք Հայ ձեռագրաց մէջ շատ ցանցառ կը գտնուին։ Հատակտոր մը ծանօթ էր Վենետկոյ Հաւաքման մէջ, ամբողջը կամ գրեթէ ամբողջը — վասն զի տակաւին՝ համեմատութեամբ յոյն բնագրին՝ շատ տողեր թերի կ՚երեւան, — կայ միակ ծանօթ օրինակի մը մէջ, այն է Մեծ. Անտոնեան Հարց ձեռագիրը Կ. Պոլիս։ Հատակտորը շատոնց հրատարակուած էր։ Ամբողջին հրատարակութեան ալ կրկին փորձեր եղան իբր տասն տարի յառաջ. բայց այնպէս լոկ փորձ մնացին, մինչեւ այս օրերս ամբողջովին լոյս տեսաւ Վենետկոյ Հարց մամլէն, եւ այն՝ ամէն կողմանէ խնամեալ հրատարակութեամբ մը։ Ասոր մասին կ՚արժէ քանի մը խօսք ըսել, նպատակ ունենալով ոչ այնչափ նոր բան մ՚ըսելու՝ որչափ ընդհանուր գործին նկատմամբ համառօտ եւ ամփոփ տեղեկութիւն մը տալու, յուսալով որ ապարդիւն եղած չ՚ըլլար այս կամ այն տեսակիտով։

Թէ Պիսիդեայ վեցօրէից Հայ թարգմանութիւն մը կար, ծանօթ էր շատոնց։ Վենետկոյ Հատակտորը գործածած է արդէն Հ. Մ. Աւգերեան “Հայկազնեան Բառագրոց„ մէջ, որուն սկիզբն ալ

կամ հեղինակաց ցանկին մէջ կը դրէ[1]. «Պիտակ։ Հատուած քերթուածոց Գէորգեայ Պիսիդեայ յոյն սարկաւագի եւ քարտուղարի յաւուրս Հերակլի կայսեր՝ ի վերայ վեցօրեայ արարչութեան. Է Նմին Է դարու ուղղեօք յեղեալ ի հայ բարբառ արձակ շարադրութեամբ, պահելով քաջ զյունական ոճն զոյգ ընդ հոյակապ հայկաբանութեան։ Ի նէն մատենի Ե—էԲ միամ ունիմ զայս հատուած ընդ վերնագրով՝ Պիտակեայ է պատառիկս։ Իցէ թէ ամբողջն ի վեր երեւէր»։ Ասկէ ճիշդ կէս դար ետքը հրատարակուեցաւ այս պատառիկն ալ խնամով՝ ինչպէս յետոյ ծանօթացաւ (— վասն զի բուն գրուածքն առանց ստորագրութեան է, —) վաղամեռիկ Հ. Արսէնի Սուքրեան։ Ինքը գրած է գեղեցիկ յօդուած մը, որուն նիւթն է «Հելլենաքանութիւն եւ հելլենաբան թարգմանիչք հայկական լեզուի, դար Զ—Ժ[2]» ի նկատի ունենալով թարգմանութիւնքն Ստ. Սիւնեցւոյ եւ այլոց, որոնք «մինչեւ Ժ դարուն վերջը թարգմանուած» էին։ Ահա ատոնց ցեղէն «իբրեւ յետին եւ պակասաւոր թարգմանութիւն մ'ալ» ըլլալով Պիսիդէս, եւ «իբրեւ նախնեաց յիրաւի արժանաւոր պատառիկ մը» կը դնէ կից նոյնը, իբր 186—7 տող ամբողջը։[3] Զե-

---

1 Հյկզն. Բառգ. (Վենետ. 1836) Ա, 18։ Աւելի յառաջ ալ Սոմալեան նշանակած էր հայ թարգմանութեանց ցուցակին մէջ, տես Somal, Quadro delle opere di vari autori anticamente tradotte in Armeno. Venezia 1825, p. 32.

2 «Բազմավէպ» 1875, էջ 118–125։

3 Անդ՝ էջ 122–5։ Հրատարակուած են յունականի տողերս՝ 85–109, 149–160, 167–217, 220–32, 242–270, 338–68, 371–3, 379–81, 383–401, 883–91, 896—7։ Թարգմանութեան մասին կ'ըսէ՝ «իբրեւ յետին եւ պակասաւոր թարգմանութիւն մ'ալ մեր ձեռքը հասածներէն է յոյն սարկաւագի մը վեցօրեայ արարչութեան վրայ գրած ճառերէն մաս մը. այս սարկաւագն՝ Գէորգ Պիսիդացի Է դարու

ւագրին մասին հոս բան մը չէ նշանակուած։ Բայց անոր մասին ալ խօսած է նոյն հեղինակն ուրիշ յօդուածի մը մէջ, որ՝ որչափ կը տեսնենք՝ անծանօթ մնացած է Պիսիդեայ խնդրով զբաղողներուն։ Այս յօդուածն է "Ընդհանուր տեսութիւն մը նախնեաց թարգմանութեանց վրայ դատաստան ընելու.[1]" ուր՝ ի միջի այլոց՝ յատկապէս քննութեան եւ դէմ առ դէմ համեմատութեան առնուած են Պիսիդեայ այն պատառիկները, զորոնք կը գտնենք Վարդանայ Արարածոց խմբագիր մեկնութեան մէջ, եւ ուր կը ծանուցուի թէ Վենետկոյ պատառիկը կը գտնուի Քերականութեան մը ծայրը[2]։ Այս երկու կէտին մասին ալ քիչ մ'ետքը. հոս միայն նշանակենք որ Սուքրեան այս վերջին տեղը Վարդանայ քով եղած Պիսիդեայ կտորներուն մասին այնչափ ապահով չի խօսիր. մինչեւ կարելի կը համարի որ Վարդանայ թարգմանութիւնն ըլլան[3]։ Այսչափ Վենետկոյ Հատակոտորը։

---

անձ մ'է, բայց թարգմանութիւնն չի գիտցուիր երբ եղած է, սակայն ամենայնիւ վերոյիշեալ թարգմանութեանց հելլենաբանութիւնն ունենալով՝ հանդերձ հայկաբանութեամբ, առանց երկբայելու այս ժամանակաց մէջ եղած կը կարծենք. եւ օրինակողն իսկ այսպէս մաս մը ու պակասաւոր գտնելով այս հատուածն՝ գրած էր ի վերնագիրն՝ "Պիսիդեայ ի պատարէկոյ"։ Բուն հեղինակին՝ յոյն քերթողին ուրիշ տաղաչափական գրութեանց մէջ երկարագոյնն է այս գործս՝ 1910 տող չափաւ, որուն միայն 84 տողն է մերն՝ ենթադրելով յունական տողերուն չափովը" եւն։

1 "Բազմավէպ" 1875, էջ 352–7։

2 Վարդանայ համեմատութիւնք՝ անդ էջ 354–7. ձեռագրին մասին ըսածը տես քիչ մ'ետքը։

3 Հմմտ. անդ՝ էջ 257 "Յայտնապէս կրնամք ըսել որ Վարդան այնպիսի միտք չէ ունեցած մեզի Պիսիդեայ կտորներն աւանդել, այլ ինչպէս ուրիշ գրոց վկայութիւններն առած էր՝ նոյնպէս Պիսիդեայ գրքէն՝ կամ անձամբ թարգմանած կամ թարգմանածին մէջէն քաղելով՝ իրեն պատշաճ դատած վկայութիւնները ժողված է" եւն։

Ամբողջական օրինակին գտնուիլը Հարց Անտոնեանից գրատունը ծանուցած էր 1880ին Նորայր[1]։ Քանի մը տարի ետքը Հ. Գարեգին նախնեաց թարգմանութեանց շարքին մէջ յիշելով Պիսիդեան, որմէ իբր օրինակ քանի մը տող ալ կը դնէ, կը ծանուցանէր որ նոյն ամբողջականին ընդօրինակութիւն մ'ընդունած ըլլալով՝ Վենետկոյ մամլէն շուտով լոյս պիտի տեսնէ գործը. իսկ իբր թարգմանիչ կարելի կը համարէր նաեւ զՅովհաննէս Սարկաւագ[2]։ Յաջորդ տարին արդեամբք հրատարակութեան ձեռնարկութիւն եղաւ. եւ այն՝ երկու կողմանէ, երկուքն ալ ի վերջոյ թերի մնալով։ Մխջագիւղի Անտոնեան Հարց ձեռագրին ընդօրինակութեան համեմատ հրատարակել սկսաւ Հ. Աթա-

---

1 Նորայր, «Հայկական Բառաքննութիւն», Կ. Պոլիս, 1880, էջ 61–2։ Նորայր բուն քննութեան առած էր այստեղ Բարսղի Վեցօրեայն (անդ՝ էջ 61–69), որուն Վենետկոյ տպագրութեան սխալ ընթերցմունքը կ'ուղղէ Անտոնեան Հարց ձեռագրին համեմատ, որ «թէ գրողին հմտութեանը եւ թէ մանաւանդ պարունակութեանցը մի քան զմի պատուականութեանը պատճառաւ Անտոնեան Հարց մատենադարանին գլխաւոր զարդերէն մին կրնայ համարուիլ։ Բարսղէ Վեցօրեայն, Գրիգորիսի Արշարունեաց քորեպիսկոպոսի Մեկնութիւնն Ընթերցուածոց, եւ քան զամէնն աւելի՝ Գէորգայ Պիսիդեսի վեցօրէին ամբողջական թարգմանութիւնն, որոյ մի պատառիկն եւեթ ծանօթ էր մեզ . . . ահաւասիկ ասոնք են ցանկալի տփոյս անգին գոհարներն» եւն։

2 Հ. Գ. Զարբհ. «Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց», Վենետ. 1889, էջ 654–6։ «Թարգմանութեան ժամանակը, կ'ըսուի, յառաջ կ'երեւի քան զՆարեկացւոյ եւ Մագիստրոսի դարը, աւելի Իմաստասիրին եւ իւր ժամանակցաց ախորժելով ընծայել, թէպէտ ոմանք ինչուան Է դարու հնութիւն ալ ուզած են տալ։ Բայց եթէ կարծուի աւելի մերձաւոր ժամանակաց Սարկաւագ Յովհաննու ալ վերագրել, Սարեկի քերթուածոյն աջող եւ ընտիր շարադրութիւն՝ կրնայ այդ կարծիքն ալ արդարացընել։»

նաս Տիրոյեան, որ Պիսիդեայ Թարգմանիչն ալ կը համարէր նոյն իսկ ինքն Ստեփաննոս Սիւնեցի. բայց հրատարակութիւնը կիսատ մնաց[1], ինչպէս այժմ կը ծանուցանէ "վեհագոյն հրամանաւ... ի կէս ուղւոյ թողեալ զգործն՝ զամս ձիգս ի հեռաւոր սահմանս հայրենեաց" գտնուելով: Ճիշդ նոյն ժամանակ Հ. Դաւիթ Նազարէթեան կը ծանուցանէր Կ. Պոլսոյ երկշաբաթաթերթի մը մէջ[2] որ պիտի սկսի հրատարակել Պիսիդեայ "մեծագին երկասիրութեան ամբողջութիւնը... արդեամբ Մեծ. Անտոնեան Հարց, որք ամենայն կերպ դիւրութիւն եւ ընդունելութիւն ըրին մեզ, ոչ միայն օրինակելով եւ տալով իրենց քով գտնուած Պիսիդեայ հայկական ամբողջ գործը, այլ նաեւ յանձնելով մեզ զձեռագիրն ի քննութիւն եւ հետազօտութիւն" եւն: Արդեամբք ալ յաջորդ թուով կը գտնենք նախ "Պիսիդեայ իմաստասիրի վարքն եւ իւր Վեցօրեայ գրուածքին հայերէն թարգմանութիւնն եւ ձեռագիրը", ուր թարգմանիչը կը համարուի Սեբէոս պատմագիրը[3]. եւ ասոր կից արդէն

---

[1] "Բազմավէպ" 1890, էջ 109–110. "Ցաւուրս երրորդի թարգմանչացն մերոց հելլենաբանից, կ'ըսէ, երեւի յեղեալ եւ սորայս քերթուած ի հայ բարբառ, որում՝ վկայեն ակնյայտնի յունախառն ոճ լեզուին եւ առմունք իմաստից բառիցն, այլովքն հանդերձ, մինչեւ չթողուլ երկբայութիւն բայց միայն զանուանէ թարգմանչին անծանօթի, զոր ինձ ախորժելի թուի զՍիւնեցին համարել Ստեփաննոս, զթարգմանիչն Նեմեսեայ եւ Նիւսացւոյն գրոց": — Բնագրին հրատարակութիւնը տես՝ անդ, էջ 110–111, 144–7 եւ 220–214, ամբողջը տող 22—335. բնագրին ներքեւ համեմատութեամբ յոյն սկզբնագրին:

[2] "Պարփէր հանդէս կիսամսեայ" Կ. Պոլիս 1890 (Ա. Տարի Թիւ 1՝ Ապրիլ 15), էջ 23–4:

[3] "Պատկեր" անդ՝ Թ. 2, էջ 40—3: Ձեռագրին մասին տեղեկութիւնքը քիչ մ'ետքը: Թարգմանութեան համար կ'ըսուի՝ "թարգմանիչն անծանօթ է, բայց հաւանական է զՍեբէոս Բագրատունեաց եպիսկոպոսն կարծելը, որ ժա-

կը սկսի բնագրին հրատարակութիւնը՝ որ նոյնպէս կիսատ մնաց։[1]

Հրատարակութեան այս կրկին փորձերը գոնէ այն օգուտն ալ ունեցան որ հայագէտ Տեզա զբաղեցաւ Պիսիդեայ խնդրով, եւ հրատարակեց փոքրիկ բայց գեղեցիկ ուսումնասիրութիւն մը՝ նախ Հռովմայ Գիտութեանց ճեմարանի տեղեկագրոց մէջ[2] եւ ապա առանձին տետրակով,[3] եւ ուր քննութեան ու համեմատութեան կ'առնուին բացի յոյն սկզբնագրէն նաեւ սլաւական թարգմանութիւնն, բայց բուն եւ յատկապէս հայերէնն՝ որչափ ծանօթ էր յիշեալ փորձերովն։ Հայագէտին յայտնած բաղձանքն էր որ լոյս տեսնէ ամբողջական հայ բնագիրը, համեմատութեամբ ընթերցուածոց տարբերութեանց՝ եւ յոյն բնագրին հետ միասին. (էջ 14։) Այժմ ահա նոյնը կատարուած է յաջող կերպով։ Հ. Ա. Տիրոյեան իւր հրատարակութեան փորձին ընդհատելէն ճիշդ տասը տարի ետքը՝ կրկին ունենալով նոյն դիւրութիւնը կը հրատարակէ այժմ առանձին հատորով մ'ամբողջական բնագիրը, դիմացը կամ էջ առ էջ յոյն բնագրի հետ մէկտեղ, եւ ճոխացած ամէն էջ բազմաթիւ ծանօթութիւններով, լուսաբանելով հայ թարգմանութիւնը[4]։

---

մանակակից էր Պիսիդեայ, եւ գրած է նաեւ Պատմութիւն ի Հերակլ... օգտուելով անշուշտ ի Պիսիդեայ։"

1 Անդ՝ (Թ. 2) էջ 43—8 եւ (Թ. 7) էջ 153-156, ամբողջը տողք 22-279, ծանօթութեանց մէջ համեմատութեամբ Մուքրեանի հրատարակած օրինակին։

2 Rendiconti della R. Accademia dei Lincei, Classe di scienze morali, storiche a filologiche. Vol. II, fasc. 5 (1893), p. 277-297. (Նիստ 21 Մայիսի նոյն տարւոյ։)

3 E. Teza, Dell' „Essaemero" di Giorgio Piside secondo la antica versione Armena. Nota. Roma 1893. 8° pp. 23։

4 "Վեցօրեայք Գէորգեայ Պիսիդեայ իմաստասիրի

*Համառօտ ներածութենէ կամ կանխաբանէ (էջ 5—11) մ'ետքը, ուր համառօտիւ տեղեկութիւն կը տրուի յոյն հեղինակին, իւր գործոյն, հայերէնին եւ ներկայ հրատարակութեան հանգամանաց մասին, կը դրուի հայ բնագիրը՝ դիմաց յունարէնը (էջ 12 – 191), իբրեւ խորագիր ընտրելով՝* "Վեցօրեայ կամ Աշխարհակազմութիւն Գէորգեայ Պիսիդեայ„ *յունարէնին հետեւելով* (Ἑξαήμερον ἢ Κοσμουργία Γεωργίου τοῦ Πισίδου.) *վասն զի Անտոնեան Հարց ձեռագրին մէջ ալ սկիզբը պակսելով՝ այժմ իբր խորագիր կը կարդացուի Սաղմոսի մէկ խօսքը* (Սղմ. ՃԳ, 24) *կամ* "Ո՛րպէս զի մեծ են գործք քո:„ *Յոյն բնագիրը դրուած է Մինյի հրատարակութեան համեմատ. բայց ծանօթութեանց մէջ լիովին համեմատուած եւ նշանակուած են նաեւ Հէրքէրի հրատարակութիւնը եւ անոր տարբերութիւնքն, յատկապէս անոնք որ աւելի մերձաւոր են հայոյն ընթերցուածոյ՝ երբ կը շեղէր ասիկայ, պարագայ մը՝ որ շատ յաճախադէպ է:*[1] *Յոյն բնագիրը չափական ըլլալով որոշ տողերով՝ պէտք էր արձակ հայ թարգմանութիւնն ալ տրամատել տողերու եւ թուարկել: Այս կերպը՝*

---

*տպագրեալ հանդերձ յոյն բնագրաւ եւ լուսաբանութեամբ ի Հ.* Ամբրոս Վ. Ցէրոյեանց„. Վենետ. 1900, 8⁰ *էջք* 191:

[1] *Պակասութիւն մը կը համարինք որ յաճախ ուր հայն այս կամ այն յոյն ձեռագրին հետ կը նոյնանար, նշանակուած է պարզապէս օրինակ մ'առ Մինյի կամ նման ոճով: Լաւագոյն էր ձեռագիրքը նշանակել համառօտութեամբք: Միւս կողմանէ Պիսիդեայ աղբիւրներն ու համեմատականներն (Ս. Գիրք, Բարսեղ, Նազիանզացի, Նիւսացին) աւելորդ համարած է իրաւամբ նշանակել մի առ մի, ընթերցողն ուղարկելով միանգամ ընդ միշտ Մինյի հրատարակութեան (տես էջ 9:) Այս ամէնը նշանակութիւն ունի Պիսիդեայ բուն գործն ուսումնասիրողին, ոչ հրատարակչին եւ ոչ ալ այժմ մեզի՝ որ հայ թարգմանութիւնն աչքի առջեւ ունինք:*

զոր գործածած էր արդէն Սուքրեան, ստուգիւ յարմար է, եւ կը դիւրինցընէ աշխատասիրողի մը վաստակը՝ նշանակելու այս կամ այն խօսքը։ Բայց ասոր հետեւութեամբ երկու դժուարութիւնք կը ծագէին։ Նախ Հայ բնագիրը ներկայ գրոց մէջ հարիւրաւոր տողեր պակաս ունի, մասամբ անշուշտ այն գաղափարին թերութեամբն՝ որմէ օրինակուած է Միջագիւղի ձեռագիրը, բայց նաեւ շատ մասամբ պարզապէս անկէ որ թարգմանիչն զանոնք գտած չէր իւր յոյն սկզբնագրին մէջ, ուստի եւ ոչ թարգմանած ընդհանրապէս։ Արդ՝ հայն ու յոյնը դէմ առ դէմ դնելով՝ բնական էր որ ամբողջ էջեր պարապ մնային հայերէնին կողմը։ Ասոր դարման տարած է Հրատարակիչն անով որ պակասածները նոր թարգմանած է եւ ասով լրացուցած հայերէնին թերի տողերը. բայց հնոյն հետ չխառնուելու համար՝ զատ տեսակ տառերով տպագրած։ Աւելի դժուար էր երկրորդ կէտը։ Հայերէնը մերձաւորապէս մինչեւ կէսը կը համընթանայ սկզբնագրին. Մնացեալ մասին մէջ բոլորովին տակնուվրայ է տողերու կարգն, այնպէս որ անհնար էր յունին դէմ առ դէմ դնել, բայց եթէ վերջնոյս համեմատ դասաւորելով տողերը։ Այսպէս ալ ըրած է Հրատարակիչը, ծանօթութեանց մէջ նշանակելով հայերէնին տողերու կարգը[1]։ Անշուշտ այս ոճն ուղիղ է. եւ անշուշտ իրաւացի ալ կ'երեւայ հրատարակչին կարծիքը թէ այս խառնակութիւնն յառաջ եկած է հնագոյն գրչութեան ցիր ու ցան թերթերուն տեղափոխութենէն. բայց եւ այնպէս ասով բնականապէս հրատարակութեան վերջին կէսը չի ներկայացըներ ճշդիւ Անտոնեան Հարց միակ ձեռագիրը. եւ ասով դարձեալ կ'ենթադրուի որ նախնական հայն ալ լիովին համաձայն էր արդի յոյն բնագիրներուն։ Բայց այս կէտը գոնէ ամէն մասամբ

[1] Տես ընդարձակ Ծան. 927 տողին (էջ 98–100.)

դատելով այնչափ ապահով չէ. քանի որ շատ տարբեր էր ապահովապէս հայ թարգմանչին գործածած յոյն օրինակը։ Սակայն չ'արժեր այս կէտին վրայ ծանրանալ։

Հայ բնագրին լուսաբանութիւնը ճոխ է եւ ընդհանրապէս յաջողած։ Տող առ տող նշանակուած են յունին տարբերութիւնքն, հայ թարգմանչին տարբեր ընթերցուած գտած ըլլալը, ընթերցման շփոթութիւնք ու նիւթական փոխադրութեանց իմաստն ու մեկնութիւնը։ Բնականապէս մոռցուած չեն Վենետկոյ Հատակոտորին տարբերութիւնք, որոնք՝ ինչպէս նաեւ Վարդանայ տուած քաղուածքներն իրենց տեղը զետեղուած են։ Ընդհանրապէս խնամեալ հրատարակութիւն մըն է, գովութեան արժանի ամէն կողմանէ։ Քանի մ'երկրորդական կէտեր գործոյն յարգը չեն կրնար որեւէ կերպով նուազեցընել։ Ահա այս հրատարակութիւնն է որ առիթ եւ դիւրութիւն տուաւ ներկայ համառօտ գրութեանս։

Գալով հայերէնի ձեռագրաց՝ զարմանք է որ Վենետկոյ հատակոտորին մասին, որ ամէնէն յառաջ հրատարակուած է, ամէնէն քիչ բան գիտենք որոշ կերպով։ Աւգերեան՝ ինչպէս տեսանք կ'ըսէ թէ "ի հին ժողովին միում" կը գտնուի։ Այժմ Հրատարակիչը բացայայտ կը յայտարարէ (էջ 5) թէ "Չիք մեր գտեալ պատեհ տեսանելոյ զյիշեալն ի վերոյ հին ժողովն, առ ի ծանօթս տալ զբովանդակութենէ մատենին, զժամանակէ գրութեանն եւն. չգտանեմք եւս զայսցանէ տեղեկութիւն ինչ նաեւ ի յօդուածի ուրեք Հ. Արսենի Սուքրեան" եւն։ Վերջինս այնչափ միայն ճիշդ է որ Սուքրեան ստուգիւ բան մ'ըսած չէ ձեռագրին մասին իւր վերոյիշեալ առաջին յօդուածին մէջ՝ Հատակոտորը հրատարակելու ատեն։ Սակայն Երկրորդ յօդուածին մէջ՝ որ անծանօթ մնացած է, կը գտնենք գոնէ ընդհանուր տեղեկութիւն մը։

Երկու անգամ կը կարդանք որ [illegible] մըն է ձեռագրին նիւթը, ուր կը գտնուի Պիսիդէս[1]։ Սուքրեանի տուած տեղեկութիւնն՝ որչափ ալ անբաւական, այնպէս որոշ է որ չենք կրնար սխալմունք մ'ենթադրել։ Բայց արդ առեղծուած կը մնայ մեզի ասոր դէմ ուրիշ տեղեկութիւն մը՝ զոր կը գտնենք Վենետկոյ ձեռագրաց առձեռն ցուցակի մը մէջ։ Հոս հետեւեալը նշանակուած է՝ "[illegible] ([illegible]։) "Ով մշտաշարժ երկնի բնութիւն" եւն, ձեռագիրը՝ "[illegible] Դ, 101—105։" Հոն քերականութիւն էր ձեռագիրը, հոս՝ Ցօնական։ Բայց քանի որ միւս պարագաները համաձայն են[2], երկու տեղեկութիւնքն ալ միեւնոյն ձեռագիրը կը նշանակեն ան-

1 "Բազմ." 1875, էջ 354 Պիսիդէս "գտած էինք ձեռագրի մը [illegible] վերջը, եւ գործն ստորակէտով մը կը վերջանար, յայտնի նշան որ ամբողջութենէ ինկած ու պակսած էր։" — Անդ՝ էջ 257 "բայց բուն իսկ ձեռագրին նայելով, նոյն իսկ այդ Պիսիդեայ պատառիկն Թերեւս Ստեփանոս Սիւնեցւոյն կամ Դաւթի կամ ուրիշի մը քերականական Վարդապետութեան օրինակ գրուած է. վասն զի յետ տաղաչափութեան եւ վանկերու քանակութեան վրայ խօսելու [illegible] մը [illegible], [illegible] "Քառամանակ Մոշրոյ, (Մոշ Գ գիր, եւ ոտքն Գ. Ջ եւ քառամանակ.) զի առաջին վանկն այբն լիաձայն է, եւ շայն կիսաձայն. յերկրորդ վանկն՝ ս սուղ եւ յ կէս, եւ ոտքս քառամանակք կոչին." ոտքը անմիջապէս կը յաւելուն՝ "[illegible]", եւ գրեթէ չորս ու կէս էջ բռնած է ձեռագրին մէջ։"

2 Երկուքն ալ պատառիկ, սկսելով նոյն տողով, որ է Տող 85 Պիսիդեայ, մինչ Անտոնեան օրինակը կը սկսի 32 տողէն՝ "Եկի բերելով քեզ յանապատ սրտէ" եւն։ Երկուքին ալ ծաւալը նոյն է, Սուքրեանի քերականութեան մէջ 4 1/2 էջ, հոս "Ցօնական" Դ, 101–5։ Բաց աստի Վենետկոյ Հատակոտորը միշտ միակ կը յիշուի՝ որչափ մեզի ծանօթ է։ Կամ "Ցօնականի" անուանակոչութիւնն անյատուկ է, կամ անոր մէջ կը գտնուի քերականութիւնը։

շուշտ։ Այս կէտը կը մնայ այլոց բացատրութեան կարօտ։

Ամբողջական օրինակին կամ Անտոնեան Հայոց ձեռագրին մասին, զոր հարեւանցի տեսած ենք առթիւ մը, տեղեկութիւն կու տայ Հ. Դ. Նազարեթեան վերոյիշեալ տեղը[1]։ Ձեռագիրը՝ որ նոյն հաւաքումը մտնելէն յառաջ սեպհականութիւն էր "Մետրապօլսեցի Խալիֆայ Եաղուպեան ազգատոհմին", թղթեայ է՝ "բայց մագաղաթի նման" եւ "գրութիւնն ընտիր"։ Գրուած է ՌՃԾ (= 1701) թուին Տիգրանակերտ Պաւղոս գրչէն նոտրգրով, ինչպէս յիշատակարանն ալ կ'ըսէ[2]։ Հնութիւնն ինչպէս կը տեսնուի մեծ բան մը չէ. բայց յարգի է ձեռագիրն իր պարունակութեամբն, ուր երեք վեցօրեայք կան, յատկապէս Բարսղինն՝ ընտրելագոյն օրինակ մը[3], եւ յարգի նաեւ այն կողմանէ որ խնամոտ եւ բանիմաց գրչէ մ'եղած է ընդհանրապէս։ Միայն Պիսիդէս ինքնին բաւական է մեծ յարգ տալու ձեռագրին. առանց ասոր բաց ի Հատակոտորէ մը՝ կորսուած պիտի համարուէր։

---

1 "Պատկեր" 1890, էջ 40–3։

2 Ճիշդ Պիսիդեայ ծայրը կայ յիշատակարանս՝ "Օրինակեալ է գիրս ի Տիգրանակերտ քաղաքի ձեռամբ Պաւղոսի գրչի ի թուին Հայոց ՌՃԾ (— 1701) յամսեանն Յուլիսի ի գիր նոտր։"

3 Ձեռագրին "ընդհանուր պարունակութիւնն ըստ իւր ցուցակին" հետեւեալն է՝ "Ա. Գիրք Վեցօրէից թարգմանեալ ի լատին բարբառոյ ձեռամբ Բարթօլօմէոսի եպիսկոպոսի քաղաքին Մարաղու Հռովմայեցւոյ. — Բ. Գիրք Դժոխոց. (Նոյնպէս Բարթուղիմէոսի։) — Գ. Գիրք վասն բանին մարմնացելոյ. (Նոյնպէս։) — Դ. Ս. Բարսղի Մեծին Վեցօրէից արարչութեան առաւօտն. — Ե. Լուծմունք Հարցողաց Բարսղի. — Զ. Պատճառք եւ Լուծմունք Պահոց Բարսղին։ — Է. Մեկնութիւն ընթերցուածոց զոր արարեալ է Գրիգորիոսի Արշարունեաց քորեպիսկոպոսի. — Ը. Պիսիդեայ իմաստասիրի Վեցօրէից։" — Բարսղի վեցօրէին մասին հմմտ. Նորայրի վերոյիշեալ գործը։

Այսու հանդերձ բաղձալի է որ ուրիշ օրինակներ ալ երեւան գան, մանաւանդ այնպիսիններ՝ որ թերիները լրացընեն։

## 2.

Գէորգ Պիսիդէս (Γεώργιος ὁ Πισίδης) կամ Պիսիդացի՝ իւր հայրենեաց Պիսիդիա անունէն այսպէս կոչուած, Սարկաւագ եւ “աւանդապահ„ Ս. Սոփիա եկեղեցւոյ Կ. Պօլսոյ՝ Հերակլեայ կայսեր օրով (610—641 Յ. Ք.) եւ մտերիմ Սերգիոսի Պատրիարքի (610—638)՝ որ յետոյ հիմնադիր եղաւ Միակամեայց աղանդին, նշանաւոր տաղաչափներէն է Բիւզանդեան գրականութեան։ Իւր անձին եւ իւր գրութեանց մասին յաճախ գրուած է ի հարկէ, գործոց մեծագոյն մասը յաճախ հրատարակուած եւ քննուած[1]։ Գրութիւնքն ըստ Կրումբախերի “պարզ ու հասկընալի են, իւր տողերը սահուն եւ մեծ ճշդութեամբ„ տաղաչափուած, այնպէս որ “բիւզանդեան ժամանակի ամենալաւ աշխարհիկ-բանաստեղծն է„, զոր Յոյնք մինչեւ անգամ Եւրիպիդեայ հետ համեմատել կարծած են երբեմն։ Մաս մը պատմական տաղաչափութիւնք են, ինչպէս սա երեքը՝ 1. “Յարշաւանս Հերակլի արքայի ընդդէմ Պարսից.„ (1093 տող.) — 2. “Ի յարձակումն որ եղեւ ի բարբարոսաց եւ ի մերժումն նոցին կամ բացատրութիւն պատերազմին առ պարսպօք Կոստանդնուպոլսոյ ի մէջ Աւարաց եւ քաղաքացեաց.„ (541 տող։) Աւարաց այս յարձակումն է 626ին։ — 3. “Հերակլիական (Ἡρακλιάς) կամ ի կատարեալ կործանումն Խոսրովայ արքային Պարսից„ (471 տող.) ներբողեան մը Հերակլի, իբր

---

1 Մանրամասն տես Krumbacher, Geschichte der Byz. Litteratur. München 1897, p. 709–712. Teza, dell' “Essaemero„ etc. p. 3–10 եւ այլուր, զոր օր. Wetzer u. Welte, Kirchenlexicon (II. Aufl.) V, 1888, p. 337–8, եւն։

628ին գրուած՝ երբ Կ. Պոլիս հասաւ վերջնական յաղթութեան լուրը: Միւս բազմաթիւ չափական գրուածներէն յիշենք՝ “ի վերայ ընդունայնութեան կենաց„ (262 տող.) Սիրաքայ ոճով, ընծայուած նոյն Սերգիոսի: — “Ընդդէմ ամբարիշտ Սեւերեայ Անտիոքացւոց„ (726 տող.), վարդապետական նիւթով ընդդէմ հռչակաւոր աղանդաւորին Սեւերոսի. — Տաղ “ի սուրբ յարութիւն Քրիստոսի մերոյ„, իբր 628ին. դարձեալ՝ տաղ Ազատման Խաչի (Պարսից ձեռքէն Հերակղի կայսեր կողմանէ 628ին, տողք 116.), ուղերձ մ'առ նոյն Հերակղ՝ երբ 610ին զՓոկաս մերժելով գահ ելաւ. (89 տող.) տաղագիր մ'առ պատրիկն եւ կուսակալն Բոնոս (168 տող,) եւ անթիւ վերտառութիւններ պէսպէս անձերու (ի սուրբս Կազմաս եւ Դամիանոս, Գր. Նազիանզացի, Նիւսացի, Բարսեղ եւն եւն) եւ նիւթերու վրայ, օրինակի համար՝ Սերգիոսի հիմնած մատենադարանին, Հերակղի շինած մէկ բաղանեաց եւ նմաններ: Շատ կը գովուի իւր տաղաչափութիւնն “վասն մարդկային կենաց„ (90 տողք) չյիշելով շատ ուրիշներ: Սակայն իւր ամենամեծ գործն է ճիշդ այն, որոյ հայերէնին մասին է այժմ մեր խօսքը, Պիսիդեայ “Վեցօրեայ կամ Աշխարհակազմութիւն„ (Ἑξαήμερον ἢ Κοσμουργία), լի բնապատմական նկարագրութեամբք՝ իր ժամանակին գաղափարաց համեմատ, եւ նաեւ լի պատմական ակնարկներով, մանաւանդ վերջը՝ որոնք սակայն հայերէնին մէջ այժմ շատ կրճատուած են:

Պիսիդեայ այս գործոց մեծագոյն մասին ընտիր հրատարակութիւն մ'ըրած է՝ ներածութեամբ եւ լուսաբանութեամբք՝ Քուերչի, որուն գործը լոյս հանած է անոր մահուանէն ետքը Ֆոճճինի[1]: Վերյիշեալ երեք պատմականներն ի

1 Querci, Opera Georgii Pisidae, Theodesii Diaconi et Corippi Africani Grammatici, ed. Fr. Foggini, Romae 1777.

Հերակլ ասկէ առած՝ հանդերձ ներածութեամբն ու ծանօթութեամբք՝ հրատարակած է նաեւ Բեկկեր:[1] Ամբողջը կրկնած է Մինը իւր հռչակաւոր հայրախօսութեան մէջ:[2] Ասոնցմէ ետքն ալ շատ քան գտնուեցաւ եւ հրատարակուեցաւ. այսպէս բազմաթիւ տաղեր եւ վերտառութիւններ հրատարակեց Շտերնբախ:[3] Իրաւացի է Կրումբախերի յայտնած բաղձանքն՝ այս ամէն հին ու նոր գրութիւնքն ամփոփելու նոր լիակատար հրատարակութեան մը մէջ: Արձակ միակ գրուածքը՝ ճառ Ս. Անաստասայ վրայ՝ որ Պիսիդեայ կը տրուէր, այժմ կ՚ընծայուի Սոփրոնիոսի. (տես Կրումբախեր, էջ 190):

Յատկապէս Վեցօրեայն, որ հոս մեզի համար կարեւոր է, առաջին անգամ հրատարակած էր Մորել, որ յետոյ յաճախ տպուեցաւ[4]. նաեւ վեց տարի ետքը հրատարակեց Բրունելլի՝ առանց առաջինը ճանչնալու, եւ այն՝ ձեռագրի մը սխալ խորագրէն խաբուելով Կիւրղի Աղեքսանդրացւոյ անուամբ:[5] Քուերչի ընդունած է Մորելի բնագիրը,

---

1 J. Bekker, Georgii Pisidae Expeditio Persica, Bellum Avaricum, Heraclias. Bonnae 1836, 8° pp. XLII + 166. (Corpus Scriptorum Hist. Byz.)

2 Migne, Patrologia Series Graeca XCII, 1162 –1756.

3 L. Sternbach, Georgii Pisidae Carmina inedita, ի գիրս Wiener Studien XIII (1891), 1—63, XIV (1892), p. 51–68. — Հմմտ.՝ Sternbach, De Georgio Pisida Nonni sectatore, ի գիրս՝ Analecta Graeco-latina philologis Vindobonae congregatis obtulerunt collegae Cracovienses et Leopolitani. Krakau 1893, p. 38–54.

4 Hexaemeron, ed. F. Morel, Paris 1584. դարձեալ՝ Հայդէլբերգ 1596, միայն լատինականը յաճախ Ս. Հարց գրութեանց հաւաքմանց մէջ, այսպէս de la Bigne, Magna Bibliotheca (տպ. Կէօլն 1618), VII, 256–270, եւն եւն:

5 Ed. Brunelli, Roma 1590. ըստ Կրումբախերի

*միայն անոր լատին թարգմանութիւնը չհաւնելով՝ նոր մը հոգացած. նոյնը՝ Միյնի քով 1865ին։ Թէեւ միայն տարի մ'ետքը՝ բայց շատ աւելի լաւ բնագիր մը հոգաց ու հրատարակեց Հէրքէր՝ Կղաւդեայ Էլիանու իւր հրատարակութեան մէջ։*[1] *Ճիշդ այս երկուքը գործածած է՝ ինչպէս ըսինք՝ այժմ Հրատարակիչն ալ, ընտրելով Միյնի բնագիրը՝ բայց լիովին համեմատելով եւ նշանակելով Հէրքէրի տարբերութիւնքն։*

*Պիսիդեայ գործոյն՝ բաց ի հայերէնէ՝ միակ ուրիշ հին թարգմանութիւն մը ծանօթ է, որ հայերէնին համար ալ նշանակութիւն ունի։ Սլաւական-ռուսական թարգմանութիւնս եղած կ'ըսուի 1385ին Դեմետրիոս Զոգրաֆէն* (Demetrius Zograf) *եւ այն՝ հին-սլաւ օրինակի մը վրայէն։ Երկու ձեռագրաց մին արդէն նոյն ԺԴ դարէն է, միւսը ԺԵ դարէն, որոնց համեմատ հրատարակեց նոյնը Շլեապկին, որ յետոյ ուսումնասիրութիւն մ'ալ հրատարակեց նոյն գործոյ մասին՝ Մինիստրութեան թերթին մէջ։*[2] *Ուրիշ ուսումնասիրութիւն մը*

---

*Կէօրղէ Աղէքսանդրիացըոյ անուամբ ունին երկու ձեռագիր-ներ՝* Cod. Paris. 2893 (*ԺԶ դարէն*) *եւ* Paris. Bibl. Mazarine 588 (*ԺԶ դարէն։*) *Բիւզանդեան ժամանակագրութիւն մ'ալ կայ Կիւրղի Աղեքսանդրացւոյ տրուած սխալմամբ, եւ Վիեննայի մէկ ձեռագիրը* (Cod. Vindob. hist. gr. 124) *հատ մ'ալ Գէօրգէօյ Պիսիդէօյ եւ Կէօրղէ Մօնաչօօ անուամբ. (տես Կրումբախէր,* 365։) *Փոխադարձաբար զինքը կը շփոթեն ոմանք Գէորգայ արքեպիսկոպոսին Նիկոմեդիոյ հետ, որ Փոտայ կողմնակիցն էր, շփոթելով գրութիւնքն ալ։*

1 R. Hercher, Claudii Aeliani Varia historia (Lips. 1866.) II, 603–662։ *Բազմաթիւ ուրիշ գրուածքներ տես Կրումբախէր։*

2 Schljapkin, Шестодневъ Г. Пизида въ славянорусскомъ переводѣ 1385 года, Petersb. 1882. *Ի հաւաքման՝ "Յիշատակարանք հին ռուսական Գրականութեան",*

հրատարակած էր արդէն Նիկիտին լուսաւորութեան մինիստրութեան Թերթին մէջ։[1] Հայագէտ Տեզա ցուցուց[2] որ այս սլաւականն՝ որ դժբախտաբար մեզի անմատչելի է այժմ, շատ կարեւոր է հայերէնին համար ալ։ Վասն զի երկուքն ալ իրարու հետ աւելի կը համաձայնին քան արդի ծանօթ յունարէնին հետ։ Պատճառը յայտնի է. երկուքն ալ ունեցած են յոյն բնագիր մ'առջեւնին՝ որմէ թարգմանուած են, որ այժմ ծանօթ յոյն ձեռագիրներէն բաւական տարբեր էր։ Արդէն նաեւ վերջինքս այժմ իրարմէ նուազ պէսպիսութիւն չունին. օրինակի համար Հերքէրի բնագիրը շատ աւելի մերձաւոր է հայերէնին քան Միյնի հրատարակածը, թէեւ յաճախ կան նաեւ հակառակ դէպքեր։[3] Հայոյն գաղափար եղող յոյն օրինակին մերձաւոր մը պակսելով՝ այս պակասը գոնէ

---

թիւ 32։ — Շլեապկին գրած է քննութիւն մ'ալ "Գէորգ Պիսիդէս եւ իւր Քերթուածն„ եւն, Մինիստրութեան Թերթին մէջ 1890 (Հատոր 269) Յունիս էջ 264–94։

1 Նիկիտին՝ "Դիտողութիւնք Գէորգայ Պիսիդեայ Վեցօրէից բնագրին մասին,, նոյն Մինիստր. Թերթին մէջ՝ Journ. Minist. 1888 (Հատոր 255) Յունուար, էջ 1—29։

2 Տես Teza, անդ՝ p. 14–18։ Զենք կրնար կրկնել բազմաթիւ օրինակները։

3 Հարիւրաւոր են օրինակները, զորոնք տես Հրատարակչին ծանօթութեանց մէջ։ Օրինակի համար առ խօսքը (49) "Ըստ դիտմանս զխոնարհութեանս ձգտեալ առաջեցէ" ըստ Միյնի ըլլալու է "առ ի նպատակն անդր դիմօ ձգտեալ ունիմ,, (τὸ πνεῦμα... ἔχω.) բայց Հերքեր ունի ճշդիւ "զակնարկութիւնս,, (τὸ νεῦμα), իսկ "առաջեցէ" ստուգիւ չփոթութիւն մըն է ընթերցման՝ ինչպէս Տեզա նշանակած է (փխ. ἔχω ունիմ՝ կարդացուած է ἐρῶ առաջեցէ)։ Միւս կողմանէ տող 300 տերեւի համար թէ բնութիւնք "բերէ նոր մազ„ ճշդիւ համաձայն է Միյնի բնագրին (νέας τρίχας φέρει), իսկ Հերքեր "բուսուցանէ մազ„ կ'ըսէ (τρίχας φύει)։ Նման պէսպիսութիւնք անթիւ են։

անուղղակի կրնայ լրացընել սլաւականը։ Սակայն այս շատ կարեւոր կէտը ստիպուած ենք հոս միայն ակնարկելով անցնիլ։

Հայերէնն ինչպէս այժմ ծանօթ է՝ համեմատելով արդի յոյն բնագրին հետ՝ մեծապէս տարբեր է այլեւայլ կողմանէ, թէ՛ ծաւալով, թէ՛ տողերու կարգաւն եւ թէ՛ իւրաքանչիւր ասութեանց կերպին կամ ընթերցուածներու կողմանէ։ Ի հարկէ ասոնց մեծ մաս մը պարզապէս դժբախտ արկածի մը հետեւութիւն է, այսինքն՝ պակասաւորութեան այն գաղափարին՝ որմէ օրինակուած է միակ ամբողջական օրինակն Անտոնեանց։

Նախ աչքի կը զարնէ ծաւալին զգալի պակասութիւնը։ Այժմ Հայերէնը հարիւրաւոր տողեր պակաս ունի քան յոյն բնագիրը, թէեւ վերջինս ալ ձեռագրէ ձեռագիր պէսպէս է։[1] Շատ բան ստուգիւ թարգմանչին օրինակին մէջ ալ չկար։ Բայց շատ եւ շատ բան ալ պարզապէս ինկած կորսուած է Հայերէնէն, մինչեւ բախտով մը նոր ձեռագիր մը լրացընէ։ Պակսած են այժմ գործին ամենակարեւոր մասերը՝ Ներածութիւնը եւ Վերջաբանն, որոնցմէ քանի մը տող միայն մնացած է։ Ներածութեան (իբր տող 1—84) իյնալը թերեւս դեռ կարելի ըլլայ մեկնել. վասն զի ասոր մեծ մասը՝ մինչեւ տող 50՝ ընծայական է Սերգիոսի կամ Սարգսի Պատրիարքին, որուն մտերիմն էր Պիսիդէս եւ որ տակաւին ուղիղ դաւանութեամբ էր, բայց քիչ մ'ետքը հիմնադիր եղաւ Միակամեայց աղանդին եւ եկեղեցական ամենամեծ խռովութեանց

1 Սուիդաս՝ որուն սիրելական գրքերէն է Պիսիդէս (տես Կրումբախեր, անդ՝ 567) Քերթուածիս համար 3000 տող կ'ըսէ՝ τρισχίλια, զոր Քուերչի սրբագրած է δισχίλια Երկու հազար։ Եւ մերձաւորապէս այսպէս է։ Միյն ունի 1910 տող (— որուն համեմատ այժմ Հայերէնին Հրատարակիչն ալ, —) Հէրքէր 1894 միայն։ Տես Teza, p. 6 եւ այլուր։

ուիթ։ Կրնար մտածուիլ որ թարգմանչին կամ որեւէ հին գրչի մը հաճոյ չէր գործոյս անոր ընծայուիլն, ուստի յապաւած ըլլայ։ Սակայն այսպէս եղած չերեւար. վասն զի այս ընծայականէն ալ մաս մը պատռտած է կորստենէն (տող 32—50.) այնպէս որ Անտոնեան Հարց օրինակը՝ կորանցընելով սկիզբն ու գործոյն խորագիրն անգամ՝ այժմ կը սկսի 32 տողովս՝ "Եկի բերելով քեզ յանապատ սրտէ՝ Պտուղս մշակեալս ի քոյոյդ ցօղոյ" եւն։ Բաց աստի նոյն պատճառը չկար՝ ներածութեան միւս կէսն ալ յապաւելու, ուր Պիսիդէս կը յայտնէ իւր դիտաւորութիւնը՝ Պրոկղի եւ Պրոկղեանց դէմ գրելու այս գործը։ Ասկէ մնացած են՝ վեց տող սկիզբն (51—56) եւ չորս վերջերէն (77—80), որ գոնէ աղօտ գաղափար մը կու տան հեղինակին նպատակին՝ տողերս ըլլալով՝ "Արդ ով իմաստունդ օտարասերմն բանից, Լուր, Պրոկղ... Լռեցեն Պրոկղեղք (Πρόχλοι Պրոկղներ) եւ խօսեսցին վայրաբնակք։" Գրիչներն ալ հասկցած են նոյնը. հոս ձեռագրին լուսանցքի վրայ կարմրագիր նշանակուած է՝ "Գիտելի է թէ առ Պրոկղ ոմն յարտաքին իմաստասիրացն ձկտի". Լեզուէն իսկ յայտնի է որ բաւական հին լուսանցագրութիւն մըն է։ Պրոկղի Դիադոխոսի վրայ՝ որուն հայ թարգմանութիւնն ալ կայ, խօսած ենք արդէն։[1] Վենետիկոյ Հատակոտորը կը սկսի ներածութենէ ետքը՝ ճիշդ Երկնից հատածին առաջին տողէն կամ տող 85՝ "Ո զմշտաշարժ երկնի բնութիւն" եւն։

Մեծապէս վնասուած է վերջաբանն ալ՝ մաղթանք Հերակղի եւ որդւոց համար, եւ ի վերջոյ ուղղուած Հերակղի, որմէ միայն սկիզբը մնացած է (տող 1838—58) վերջինն ալ կիսատ մնալով եւ անկէ ետքը կցուելով երկու տող կէսերէն որ բուն

---

[1] "Մատ. Մանր. Ուսում." Ա (Վիեննա 1895), էջ 22-48։

Հերակղի որդւոց համար է, այսինքն (1863—4)՝ "Եւ սրեա զուր սորա (բն. "սոցա,) ընդդէմ Նոցա (բն. "բարբարոսաց„), Ցորժամ ընդդէմ մեր զայ- րասցի սուր Նոցա,„ այսպէս անկապ աւարտելով։ Մնացեալ ամբողջ տողերը պակաս են. (1859—62, 1865—1910։)

Բուն մարմնոյն մէջ նախ մինչեւ այն կէտը՝ գրեթէ կէսը՝ ուր Հայը նոյն կարգաւ կ՚ընթանայ, կան բազմաթիւ տողեր պակաս. բայց առհասարակ աննշան կրնան համարուիլ, քանի որ նոյնչափ պէսպիսութիւնք ունին յոյն ձեռագիրք ալ, միակ մեծ թերոյթ մ՚ըլլալով՝ ուր անշուշտ թուղթ մ՚ինկած է։[1] Խնդիրը կը փոխուի երկրորդ կէսին, ուր միակ Հայ օրինակը չափազանց մեծ տարբերութիւն կը ցուցընէ տողերու շարքին ու կարգին։ Կարգի աննշան տարբերութիւն՝ առաջին մասն ալ կայ մէկ երկու տեղ.[2] բայց բուն 927 տողէն ետքը բոլորովին տարբեր կարգ ունի Անտոնեան օրինակը։ Հրատարակիչն՝ ինչպէս ըսինք՝ ուղղեր դրեր է յոյն բնագրին համեմատ, ծանօթութեան մէջ նշանակելով ձեռագրինը, որ բոլորովին խառնակ է։[3] Մենք ալ իրաւացի կը գտնենք Հրատարակչին

---

1 Այս մեծ պակասն է տող 783–838. միւսներն են կարգաւ Ներածութենէ ետքը՝ տողք 96, 115, 159, 197 (Հերքեր ալ չունի), 306, 322–5, 464, 493, 516–7, 555, 570–1, 675, 678, 764–5, 850–1, 879–80, 892–5 եւ 907–8։ Շատերն յետասամուտ են։

2 Այսպէս 401–6 տողերու կարգն է՝ 402, 404–6, 401, 403. տարբեր նոյնպէս տող 479—81 (օր. Անտոնեանց), 492–7, 1661, եւն։

3 Տես մանրամասն տող 927 ծան. (էջ 98—101։) Գաղափար մը տալու համար յիշենք սկզբան կարգը։ Տող 927էն ետքը կու գան կարգաւ 1009, 1010, 1052—3, 1046–51, 1054—69, 1136—53, 1165—85, 1188—97, 1204—7, եւ այսպէս յառաջ մինչեւ վերջ, այսպէս 1346էն ետքը 928–35, 959—66, եւն եւն։

կարծիքը (տես 927 Ծան.) թէ "Խառնակութիւն մեծ տեսանի կարգի բանիցն կամ տողիցն Պիսի-դեայ, դուցէ ի փեղկ-խօ-թենէ ցիրե-ցան թերթեց Անտգէտ գրչ-թեանն, յետոյ ուրեմն ի մի հատոր ամփոփելոց, որպէս կարծել տան ինձ զայս նաեւ պակասաւոր քաղէն՝ թերթի- միով ընդարձակ-թեամբ ուրեք ուրեք, որք նշանակք են թերթից կորուսելոց:„ Արդեամբք ալ այս վերջին կէտը շատ մեծ է պակասներու թիւը, երբեմն ստուգիւ թերթի կամ թղթի մը չափ:[1] Կը տեսնուի որ Հայերէնին գաղափարն՝ որմէ օրինակուած է Անտոնեան Հարց օրինակը, կամ թերեւս անոր ալ գաղափարը՝ չափազանց մաշուած եւ թերթեր ինկած գրչագիր մըն էր: Սպասելու ենք լաւագոյն օրինակի մը:

Նախ քան այս կէտը թողուլը նշանակենք երկու պարագայ: Տեղ մ'ուր մեծ թերութ կայ՝ այնպիսի երեւոյթ մ'ունի որ մտածել կրնայ տալ թէ արդէն թարգմանիչը կամաւոր զանցառութիւն ըրած է զանոնք թարգմանելու: Այս պակասն է այն տեղն ուր Պիսիդէս մի առ մի յառաջ կը բերէ անասնոց եւ բուսոց պէսպէս օգտակարութիւնքն: Հոս սա տողէն ետքը՝ "Ճարպ փոկին ծովայնոյ՝ զայտուցումն շիջուցանէ, որպէս զհնոց ցօղ,„ կը պակսին շատ տողեր (1549—1602), որոնց տեղ սա համառօտ զեկուցումը կը գտնենք՝ "Են ե- այլ բազ-մ ինչ յերկրէ ե- ի ծովէ-՝ [illegible], եւ զմեծա-

1 Այս մեծ թերիներն՝ ուր թուղթ ինկած ըլլալու է, են տողք 1011–29 (Նաւակալ ձուկն եւն), 1070—86 (ընդդէմ Պորփիւրի եւն), 1127–1135 (Հողամաղ եւն), 1550–1605 (տես վերը.) 1694—1710 (ուր երեք "օտար„ տող:) Միւս մանր պակասները չափազանց շատ են, այսպէս՝ 941–3, 967, 973—6, 1043–4, 1159—60, 1183–4, 1198–1203, 1279—83, 1286–92, 1321—3, 1369–70, 1373–6, 1472 1474—5, 1500–4, 1506—11, 1526, 1545–6, 1665–6, 1675–6, 1684, 1689, 1723, 1749–56, 1776, 1847, եւ ամենէն մեծ վերջաբանը:

մեծ ախտս բժշկեն„, կցելով եւ պահելով պակասէն միակ տող մ'ալ (1591) "Ընդ որս ոքանչացեալ՝ զաստուածային օրհնեսցես զիշխանութիւն:„ Հրատարակիչը կը դիտէ (տես տող 1548 ծան.) թէ թարգմանիչն ըլլալու է որ "կամ ոչինչ օգտաւէտ գտեալ, կամ ի վաստակոց խոյս տուեալ զկայծորդ տողսն եւս յեղուլ ի հայ„ եւն: Մենք կարծենք որ ուեւէ գրչի մը գործն ըլլալու է այն, դժուարաւ բուն թարգմանչին, որ այլազգ Պիսիդեայ նոյն մասն ամբողջովին դուրս ձգելու էր. (ամբողջ այս բաժինն է տող 1512—1615 կամ բուն 1651:) Բայց արդ այժմ ալ այս բաժնէն պահուած է բաւական մաս մը, սկիզբը բաւական (տող 1512—48) եւ վերջերէն ալ գոնէ քանի մը տող (1603—7:) — Երկրորդ պարագան աւելի կարեւոր համարելու ենք. այսինքն այն որ տեղ մ'ուր բոլոր յոյն ձեռագիրք թերակատար են, նոյնպէս է հայերէնն ալ:[1] Նշան է որ հայ թարգմանչին օրինակն ալ հոս տարբեր չէր. թերութիւնն բստ այսմ շատ հին է:

Այսչափ պակասներու դիմաց քիչ բան կայ հայերէնին մէջ աւելի, որ յոյն այս կամ այն ձեռագրին մէջ չըլլայ. բայց ոմանք կարեւոր են. հատ մը՝ որ կրնայ օգնել թարգմանութեան ժամանակը ճշգրտելու, կը տեսնենք քիչ մ'ետքը: Հրատա-

---

[1] Տես տող 1681, ինչպէս նշանակած է Հրատարակիչն ալ: Ծրագրող ձեռքերու վրայ է խօսքն՝ ուր հայը կը գրէ "Ապառնի, Ներկայ, Անցողական. Առաջի Եղեալ (— հոս տող մը թերատ յոյն բնագրէն, ուստի հայն ալ անիմաստ թողուցեր է. —) Անսահման, Գերակատար„ եւն: Անցողակի յիշենք իբրեւ օրինակ թարգմանութեան որ հոս "Ընթացական„ է այն զոր այժմ Անկատար կը կոչենք (παρατατικὸς). իսկ "Առաջի Եղեալ„ չփոթ թարգմանութիւն է փխ. "Կատարեալ„ (բայ). յոյնը՝ παρακείμενος առնուած է սովորական իմաստով իբր առջեւ՝ քովը գրուած, զետեղուած:

րակիչը զասոնք ընդհանրապէս "օտարք ի յոյն բնագրէ" կը համարի, եւ մէկ երկուքն ստուգիւ այնպէս կրնան երեւալ։ Սակայն նաեւ հոս ըսելու ենք որ գոնէ մաս մը թարգմանիչն ապահովապէս գտած էր իւր յոյն օրինակին մէջ, օրինակի համար սա տողերը (տես 403 ծան.) "Որպէս զի ամենայն խստապարանոց ծառայ՝ զծառայակից իւր գոնէ-ողջախոհեալ տեսանելով, նախ քան զառնուլն զան բարեկարգ լինել ուսանի։" Բացատրութեան կերպն արդէն կը ցուցընէ թարգմանուած ըլլալը։[1] Երկրորդ տեղ մը՝ ուր մեծ պակաս կայ ձեռագրին մէջ (պակաս 1694—1710) քանի մը տող կայ նոյնպէս "օտարք ի յոյն բնագրէն", բայց լեզուն նոյնպէս ստուգիւ հին է. ուստի եթէ յաւելուած՝ շատ հին է։[2] Ամենէն կարեւորն է երրորդն, ուր (932 տողին կից) ճիշդ 12 տող աւելի ունի հայերէնն, բայց տողեր՝ որոնք ինչպէս Հրատարակիչն ալ նշանակած է, շատ նման են քիչ մ'ետքն յաջորդող 959—966 տողերուն։ Նոյն բնագրին երկու տարբեր թարգմանութիւն կ'երեւան ասոնք, ինչպէս արդէն Պիսիդեայ քով ուրիշ տեղեր ալ կը գտնենք յոյն բնագիրը կրկնուած՝ հայը տարբեր թարգմանուած։[3] Այս ամէնը կը մեկնուի կամ անով որ

---

1 "Գոնէ-ողջախոհեալ" այսինքն՝ զգօօփրոցեալ, սովորական յունաբանութիւն է. Հմմտ. Աստուածաբանի թարգմանչին գրածը՝ "Ոչ պատուհաս ընդունել է չար, այլ չողջախոհանալն [illegible] չարագոյն է", եւ նմաններ. (տես ՀԲ, Բ, 512–13։)

2 Այս խօսքն է (տես 1693) "Եւ ողոօֆօօձ առ ի գիտութիւն բերելով, զքո երեսդ ցուցանել ոչ կամելով. այլ փոխանակ դնես առաջի զարարածս, որպէս զի ոչ զայլոյ էութիւն կարգաւորես։" "Սղօօֆօօձ" տես Սոկրատ Ա, 31, Սպուժեմ՝ անդ եւ այլուր. Հմմտ. ՀԲ, Բ, 739–40։

3 Ասոնք բաւական շատ են թուով. տես տող 110–121 (= 232–9.) 1654, 1486 եւ նմաններ։ Թարգմանչին պէս պէսպիսութիւն ունի յաճախ բուն բնագիրն ալ, այսպէս

սառուգիւ յոյն օրինակն ունէր զանոնք կրկնութեամբ եւ քիչ մը տարբեր ձեւերով, որով այնպէս թարգմանած է հայն ալ. կամ եթէ յիշեալ 12 տողերն չկային յոյն օրինակին մէջ՝ առջեւնիս ունինք հայ թարգմանութեան սրբագրութեան կամ նոր խմբագրելու շօշափելի օրինակ մը։ Յիշեալ տողերը յետոյ կը տեսնենք. վասն զի Վարդան ալ ունի եւ աւելի նման անոնց։ Այժմ չեշտենք որ հայ բնագիրը սրբագրուած կամ փոփոխուած ըլլալու շատ նշաններ ունի։

Նոյն իսկ Վենետիկոյ փոքրիկ Հատակոտորը քիչ տարբերութիւն չունի։ Զանոնք մանրամասն նշանակած ըլլալով Հրատարակիչը՝ պէտք չունինք մի առ մի նշանակել հոս։ Արդէն այս քանի մը տողերու մէջ կը գտնենք տարբեր շարադասուած եւ համառօտուած տողեր, նոյնպէս "օտար„ կտոր մը՝ որ չկայ ոչ յունին եւ ոչ միւս հայ ձեռագրին մէջ։[1] Ընթերցուածոց տարբերութիւնքն ալ աննշան չեն, երբեմն լաւագոյն, ուրիշ տեղ երկուքն ալ յոռի, մինչեւ անգամ սրբագրուածներ կան եւ նմաններ։[2] Քանի մը հատածոց բաժանումները,

---

տող 108) "Կայիւք փոխչէ եւ շարժիւք կայ մնայ„ եւ (տող 178) "Կայիւք Բոլչին եւ կառուցմամբ ընթանան„. նոյնպէս յունարէնը։

1 Տես տող 359 Ծան. (տողեր աւելի ի Հատակոտորն.) եւ 369—84 (այլակերպ կարգաւ եւ համառօտուած Հատակոտորն), եւ նմաններ։

2 Օրինակի համար տող 168 "կամ հոգէխօցուցեալ կամ սրագոյն բոց„. Վենետիկոյն "հոգէ ցուցեալ„ (= Յոյն.) իսկ "սրագոյն բոց„ առութեան տեղ Յոյնը πυρίστομον (հրաբերան.) ըստ Հրատարակչին հայը կարդացած կ'երեւայ πυρίτομον. — Տող 126 "Հրաշացեալ ընդ ասհէփն.„ Հատակոտորն ուղիղ՝ ". . ընդ ոս հինին„ (= Հէրբէր οἱ πάλαι, իսկ Մխին "որպէս մեծ ինչ„։) — Ընդհակառակն տող 177 "Սերովբէք արշարժ երագութեամբ„, ըստ Ընտոնեանին, Վենետիկոյն՝ "անշարժաբնեամբ.„, ուղղելի է երկուքէն՝ "անշարժ

զոր ունի Անտոնեան Հարց օրինակը, Վենետկոյն չի ցուցըներ, ինչպէս չունի յունարէնն ալ։[1]

Նոր բնագիր մը գտնել ըստ այսմ անհրաժեշտ է, թէ պակասները լրացընելու եւ թէ հարազատագոյն հայ թարգմանութիւնը պատկերացընելու համար։ Արդի միակ օրինակը՝ բաց ի վերոյիշեալ պակասութիւններէն՝ կը ցուցընէ նաեւ բազմաթիւ աղաւաղումներ, մինչեւ անգամ ռամկացած ասութիւններ որ թարգմանչէն չեն կրնար ըլլալ։[2] Լաւագոյն օրինակ մ'այս ամէնը մաքրելով՝ աւելի հասկընալի բնագիր մը պիտի ընծայէ։ Բայց այս վերջին կէտին համար շատ մեծ ըլլալու չէ մեր ակնկալութիւնը։ Մթին՝ շատ տեղ առանց յունարէնի ստուգիւ անհասկընալի՝ պիտի մնայ միշտ հայերէնը. վասն զի այնպէս եղած է խրթնաբան եւ յունաբան թարգմանչին գրչէն, նիւթական ու տառական թարգմանութիւններու առատութեամբ, շփոթութեամբք ընթերցմանց յոյն օրինակին եւ

երադութեամբ»։ — Սրբագրութիւն կը ցուցընէ տող 201 «զլոյս մաքրեալ եւ մթացուցեալ զերեկ (= μελαίνων ἑσπέραν.) որ յունարէն երեւցած է, ուստի սրբագրուած՝ Վենետկոյն «եւ մթացուցեր զերեկ», սրբագրութիւն մ'որ շատ հին է, արդէն Վարդան նոյնը տեսած է։ Սակայն նոյն թարգմանն ալ ուրիշ տեղ մը (տող 366) գրած է «մթացուցեալ երեկո տարբեր յոյն բառի դիմաց (σκόπησας.) իսկ Վենետկոյն պահեր է երրորդ տեղ մը (տող 307) «երբեմն թխացուցանէ զերեկոյն»՝ հայերէնին յարմար ըլլալով։

[1] Այսպէս տող 85 կը սկսի խորագրով «Ցղ. Եւրիպ. 203՝ «Ցղ. Օդոյ.» 216՝ «Ցղ. Արեգական» եւ 241՝ «Ցղ. Լուսնի.»

[2] Այսպէս 287 «Այլ ի գարուն խոխէ» (մատնէ), անշուշտ՝ փոխէ. — 573 «Ձոր . . . ալ պնդէ եւ չիթք լուծանեն.» Հրատարակիչն ուղղած «խոնիլ.» — 608 «ճեղք իցէ» (ճեղքեալ.) — 753 «Ձիարդ վեհագոյնակի հոգւոյն բանաւորեալ» (վեհագոյն ակն հոգւոյն բնաւորեալ.) — 1050 «ապիտակ գոյն.» (ապիտակ լոյս.) — 1204 «Ձոր խանան» (= «զործանն, ὄργανον գործարան».) — 1822 «խողովէ», 1243 «զնոսա մօրձագոյնէ», եւ շատ նմաններ, զորոնք սրբագրած է Հրա.։

նման պարագաներով։ Ասոնք թարգմանութեան որպիսութեան վերաբերելով՝ կ'արժէ գոնէ համառօտիւ տեսնել յաջորդովս։

## Յ.

Թարգմանութիւնը մթին է ըսինք։ Եւ ասի այլեւայլ պատճառներ ունի։ Նախ չափազանց մեծ քանակութեամբ կը գտնենք շփոթուած ընթերցուածներ, կամ անով որ այնպէս շփոթած էր արդէն այն յոյն օրինակին դրիչը՝ զոր թարգմանիչն առջեւն ունէր. կամ նաեւ ինքը շփոթած է՝ նման ընթերցուածներն իրարու խառնելով։ Հոս չենք հաշուեր այնպիսի շփոթութիւնքն որ արդէն սովորական են ուրիշներուն ալ, ինչպէս "ստեղծել" եւ "ստանալ" իրարու տեղ գործածելը, կամ նման բաներ՝ որ անթիւ են[1]։ Հրատարակիչն այս ամէնը

---

[1] Այսպէս տող 55 "Որպէս զի մեծ է Աստուծոյ ստացուածոյս ... ամենագործութիւնն" (ձեռագր. "ամենագթածութիւն.") յոյն՝ κτισμάτων արարածոց, ստեղծուածոց. — տող 217 "Ո՛ որ զհսկայս զայս զարեգակն ստացող" (κτίσας ստեղծ.) յունարէն κτῆσις "ստացումն." κτίσις "ստեղծումն." — տող 1060 "ամենակեր մարմինն", ուր յոյնն է τὸ παμφάγον στόμα, ուստի "բերան", հայը յայտնապէս σῶμα (մարմին) կարդացեր է։ Բայց հմմտ. 1100 "ամենակեր բերան." ուր յոյնն է χάσμα (խորք, անդունդ.) տես քիչ մ'եաքը նոյն բառը՝ "ձորութիւն"։ — Տող 1667 "իշխանութեամբ անսկզբնաբար", ուր յոյնն է "իշխողն անսկզբնաբար" (ἄρχων ἀνάρχως,) ինչպէս Հրտ. կ'ըսէ շփոթած կ'երեւայ ἀρχὴ (սկիզբն) եւ ἀρχός (իշխան.) բայց արդէն ἄρχω բայը կը նշանակէ՝ 1. սկսիլ, 2. իշխել։ — Կամ տող 859 "Հաց առանց ցորենոյ բեկցէ", ուր յոյնն է ἄρτους ... πλάσει (հացս... յօրինեսցէ,) ուստի՝ ինչպէս Հրտ. կ'ըսէ կ'երեւայ կարդացած κλάσει (բեկցէ։) Բայց հայերէն "բեկանել", հացի կրնար ըսուիլ նաեւ նոյն ընդհանուր իմաստով։ — Տող 98 "Կամ գունդ կիսակտուր հեցէ օրինակաւ." յոյնը՝ ἀψῖδος δίκην

եւ ընդհանրապէս այն ամէնն ալ՝ զոր յաջորդներովս պիտի յիշենք, չէ մոռցած նշանակել եւ լուսաբանել։ Մաս մ՚ալ անշուշտ կրնայ պարզապէս Հայ գրիչներուն շփոթութեանց հետեւութիւն ըլլալ։ Գեղեցիկ օրինակ մըն է թէ յունարէնին եւ թէ հայերէնին նմանահնչութեան եւ անկէ ծագած շփոթութեան այս խօսքը (տող 376) Աստեղաց մասին՝ "Եւ ճղխմամբ ընկալեալ հարկաւորս". մինչդեռ յոյնն է "կրելով ճողխմամբ հարկաւորս" (προσβολὰς πάσχουσαν, ուստի προσβολὴ ընդդիմահարութիւն, բաղխումն եւն։) Հոս կրնայ ըլլալ որ թարգմանիչը նմանաձեւ προβολὰς կարդացած ըլլայ. (προβολὴ ծագիլ, ծոփումն, ուստի "ճղխումն։") Բայց կրնայ նաեւ պարզապէս հայ գրիչ մը շփոթած ըլլալ "բաղխմունս" եւ "բղխմունս" բառերը։ Նմաններ բազմաթիւ են[1]։

---

(զմբեթաձեւ եւն։) Հայագէտ Ցեզա կը համարի որ հայը կարդացեր է ἄμπυξ որ ստուգիւ կը նշանակէ "հեց" կամ անուոյ պսակ։ Սակայն հայը կրնար շատ լաւ առաջինն ալ այսպէս թարգմանել. արդէն "հեց" կամ "խեց" փոխաբերութեամբ իբր կամարէ ձեւ կրնար գործածուիլ, եւ ճիշդ ἀψὶς բառին գիմաց գործածուած կը գտնենք ուրիշ տեղեր ալ. (տես ՀԲ, Բ, 95։) Թող շատ ուրիշները։

[1] Օրինակի համար տող 106 Երկինք "պարզի ըստ յորդաբխեան ի լայնութիւնն." յոյնն է՝ πρὸς τὸ χάσμα τοῦ πλάτους, "ըստ անդնդոյն (կամ խորոցն) լայնութեան"։ Հրա. կ՚առաջարկէ կարդալ "ըստ խորութեան", ուստի գրչի մը պարզ շփոթութիւն։ Շատ լաւ կրնայ այսպէս ըլլալ. բայց "Ձորութիւն" ալ կը գտնենք՝ ինչպէս ՀԲ կը մեկնէ իբր "ձեւ ձորոյ, խորք, վիհ", ճշդիւ = χάσμα, լտ. hiatus. (տես ՀԲ, Բ, 106։) — Տող 697 "Առեալ ժամանակ այլայլաբխեան՝ յարենէ", որ իմաստ չունի։ Յոյնն է՝ λαβοῦσα καιρὸν ἀλλοιώσεως ἐξαιματώσει, այսինքն՝ "առեալ ժամանակ փոփոխութեան (նիւթոյ, մարմնաբխեան)՝ արեան յօրինէ"։ Հրա. կ՚առաջարկէ կարդալ "արենայօղանէ", Ցամենայն դէպս "յարենէ" գրչի սխալ մը կ՚երեւայ. բայց զարմանալի

Սակայն հանելով ալ այսպիսիները՝ կը մնայ տակաւին չափազանց մեծ քանակութիւն մը շփոթ ընթերցուածներու, զորոնք հաւանօրէն թարգմանչին վերագրելու ենք: Ահա քանի մ'օրինակ: Երկնից համար կ'ըսուի թէ (տող 132—3) "մեծ է որպէս Աստուծոյ փոքր աթոռ, կամ գնալոյ յարուցեալ, որոյ յոգնումն ոչ գոյ„ եւն: Բայց Պիսիդէս կ'ըսէ թէ "յարբեանս է նաեւ ի ծերութեան, որոյ յոգնումն ոչ գոյ„ կամ չի վատուժնար, ուստի բնագիրն է՝ ἡβᾷ δὲ γηρῶν, զոր հայ թարգմանը շփոթմամբ կարդացեր է՝ ἢ (կամ) βάδους (գնալոյ) ἐγείρων (յարուցեալ): — Տող 184 Սերովբէք Ս. Երրորդութեան "պատշաճեն պաշտօն, ցուցանելով բարւոք ժողովոյն որոշմամբ„ եւն. ուր յոյնը կ'ըսէ "ցուցանելով այն յանդիման որոշմամբ„ եւն. (εὐσύνοπτα, հայը կարդացեր է՝ εὖ συνάπτα, բարւոք ժողովեալ:) — Տող 194—5 Քրիստոս Տէր մեր "ոչ յաւելուածով շփոթեալ եւ ոչ անջատմամբ, ամպոյն չարչարեալ, այլ ոչ փոփոխեալ շփոթմամբ:„ Պիսիդէս կ'ըսէ "եւ ոչ անջատմամբ բաժանմամբ կրեալ„ (μὴ διαιρέσει τομὴν παθόντα,) եւ ճիշդ այս "բաժանումն կրեալ„ բառերը շփոթեր է թարգմանը կարդալով τὸ μὲν (Որ ամպոյն) παθόντα (չարչարեալ.) վերջին բառս ալ իւր սովորական իմաստով առնելով: — Տող 315 "Զի մի կիզցէ (Or. կէց է) ըմբռնմամբ ջերմութիւնն„ զմիրգս. որուն իմաստն է "զի մի կիզցէ սաստկագէս„ եւն. (φλέξει δραστικῶς.) մեկնութիւնը դիւրին է, վասն զի δράσσω կը նշանակէ "ըմբռնել„. (մակբայն δραστικῶς սաստիկ, ազդուապէս եւն, δραστὴρ գործող, ազդու, եւն եւն:) — Տող 747—8 "թէ ըմբոփ

---

կերպով ճիշդ նոյնը կրկնուած է ուրիշ տեղ մ'ալ. տող 1092 "զերանս իւրեանց ծակեալ՝ յարբենէին (յոյն՝ ἠματωμένοις արիւնացեալք) կաթին բղխմամբ սնուցանեն զորդայն„ եւն: Չենք յիշեր ուրիշները:

բանիցս խօսէ անյայտից էութեանց կշռօղն.„ ուր Պիսիդէս ճիշդ հակառակը կ'ըսէ՝ "Թէ զբաւիղս խօսիցս պարզեսցէ„ եւն. (εἰ τοὺς λαβυρίνθους δὲ τῶν λόγων φράσῃ.) Զարմանալի է "բաւիղ„ բառին տեղ "ծոփ„ գտնել թարգմանուած. իսկ "պարզել„ բառին տեղ հակառակը "խնուլ„ պարզ շփոթութիւն է: Թարգմանիչը շփոթեր է φράζω (պարզել, մեկնել, բացատրել եւն) եւ φράσσω (խնուլ) բառերը: — Տող 954 "Եւ գայլք զհող (ուտեն), նապաստակք՝ զընդուզնս, Առիւծ՝ զկապիկս, եւ նոքա՝ զգորտս.„ ուստի կապիկները: Բայց Պիսիդէս կ'ըսէ "եւ կարապք՝ զգորտս„ կ'ուտեն. (οἱ δὲ κύκνοι.) Հայ թարգմանը շփոթեր է կամ կարդացեր է ἐκεῖνοι (նոքա,) ինչպէս նշանակած էր արդէն Սուքրեան: Թողունք անթիւ ուրիշները:

Մթարութեան բուն պատճառն է թարգմանչին Հելլենաբան ոճը, նի–բառական — բառական թարգմանելու ձիգը, ինչպէս արդէն սովորական է մեր բոլոր յունաբաններուն քիչ կամ շատ չափով: Պիսիդէս մեծ յունաբաններէն է. առանց յոյն բնագրի օգնութեան յաճախ հայոյ մ'անհնար է իմաստը հասկընալ, յաճախ նաեւ յունարէնի օգնութեամբ ալ դժուար է մեկնել թէ ինչու այնպէս փոխադրած է[1]: Նիւթական փոխադրու-

---

1 Այս նկատմամբ շատ լաւ կը գրէ Հրատարակիչն (էջ 10) յիշելով Աւգերեանի կարծիքն որ "հոյակապ հայկաբանութիւն„ կը գտնէր հոս, թէ "Աւելի էր մանաւանդ հոյակապ յունաբանութիւն, կամ ճշգրտագոյն եւս՝ ձուլումն հայկական եւ յունական լեզուաց ի մի, դրոշմելով զյունականն բարբառ հայկական բառիւք. այնպէս զի անհնարին համարիմք անգէտ եղելոց յունարէնի՝ իմանալ զիմաստս հայերէն թարգմանութեանն. զի ոչ կազմութիւն եւեթ բառից ըստ հոլովոց եւ խոնարհմանց եւ թուոյ, այլ եւ բովանդակ նախադասութիւնք եւ ողջ պարբերութիւնք՝ են նիւթական իսկ հետեւողութիւնք յունական բարբառոյ...: Յունագիտաց եւս՝ լոկ թարգմանութեամբդ սակաւ ինչ ի բազմաց հասկանալ կարծեմք„ եւն եւն:

թիւնք այնչափ շատ են որ պէտք չկայ ընտրել օրինակներ. իւրաքանչիւր էջ կրնայ ստուգիւ քանի մը հատ գտնուիլ։ Ահա քանի մը հատը։ Տող 268 “ի մի կամս շնչեփելոյն մարտին„ (= ἓν θέλημα συμπνεούσης τῆς μάχης, համաշնչող մարտին։) — Տող 281 “Եւ հնձոյ կիզող ծայրութեանն։„ Հայու մ'անհնար է գուշակել որ ասիկայ կը նշանակէ՝ ամառուան կիզիչ սաստկութիւնը. (= τοῦ θέρους μὲν ἡ φλογώδης ἀκρότης.) Արդ θέρος կը նշանակէ՝ ամառն, եւ անկէ՝ հունձք. Թարգմանչին համար բաւական էր այս՝ ամէն տեղ “հունձք„ թարգմանելու, օրինակի համար (549—51) “Եւ երբեմն զնոսա որպէս վէմ սառուցեալ յձեան չորացոյց, իսկ երբեմն եւ հնձոյ (ամառն) արարին կարկտեղէն քարինս„, եւ այլուր յաճախ, ճիշդ ինչպէս ուրիշ յունաբանք ալ ունին[1]։ — Տող 287—8 Գարունը “մոռացուցանելով զցրտութիւն մղէ„ (= λεληθότως, անզգալաբար, գաղտնի եւն.)։ Թարգմանչին համար բաւական էր որ նոյն յունարէն բառն ընդունելութիւն անցեալ մըն է λανθάνω (մոռանամ) բային, առանց յատուկ նշանակութեան միտ դնել ուզելու[2]։ — Տող 334 “Որպէս զի զառ ի մէնջ սրտի հմութեան ճառագայթ իմանալոյ արեգականն ծագեալ ջեռուցանէ„ եւն. այսինքն՝ դժնդակութիւն, կարծրութիւն սրտի. (ὠμότητα καρδίας, իսկ ὠμότης է “հմութիւն„, հում ըլլալը, բայց նաեւ՝ անգթութիւն, սառնութիւն, կարծրութիւն, եւն։)

---

1 Նոյնպէս 304 “Հնձոց ժամանակ„, այսինքն՝ ամառն. 562 “կարկուտ քարատեսակ ի հնձոց բնակէ բռնութեամբ քարացեալ.„ 575 “Զայս առնէ եւ հնձոց ջերմութիւն„ եւ այլուր յաճախ։ Նոյնը միւս Յունաբաններու քով տես ՀԲ, Բ, 124, մինչեւ անգամ տարւոյ եղանակները կոչուած “Գարուն, Հունձք, Աշուն„ եւն։

2 Համմտ. նաեւ 358 “Ոչ զանխլանալ ժամանակին„ (= μὴ λαθοῦσα τῷ χρόνῳ, այսինքն՝ մի յանցանել ժամանակաց ի վերայ...) եւ նմաններ։ Բայց նոյնպէս տես ՀԲ, Ա, 713–4։

Բայց նոյնն ունին ուրիշներն ալ։[1] — Տող 409 «Առաջակելով զմեղս երկիւղիւ», որուն իմաստն է՝ «Երկիւղիւ առջեւելով զմեղս». (յոյնը՝ ὁδοστατῶν δὲ τὴν ἁμαρτίαν φόβῳ.) Յունարէն ὁδοστατέω կը նշանակէ՝ ճամբան բռնել, արգիլել, ὁδοστάτης ճամբան բռնող, ճամբան պահող, բայց նաեւ ասկէ՝ դարանակալ եւ յարձակող, ուստի «աւազակ»։ Ասկէ հայը գրեթէ ամէն տեղ «աւազակել» փոխադրած է, նաեւ ուր բոլորովին անյարմար էր, ինչպէս արդէն կը գտնենք ուրիշ յունաբաններու քով ալ։[2] — Տող 584 «Իսկ եթէ ոք ունիցի միտս սրաշարժս եւ հոգի սուր (Օր. «սուրբ») առ ի բանալ բան», այսինքն՝ «ի մեկնութեան խօսիցն» (εἰς ἀνάπτυξιν λόγου.) յունարէն ἀνάπτυξις է ստուգիւ՝ «բանալ», քակել, բայց նաեւ՝ մեկնութիւն, պարզաբանութիւն եւայլն։

Ասոնք անթիւ են, որոնց մէջ կայ մեծ քանակութիւն մ'ալ որոնք հայու մ'անհասկնալի պիտի մնան առանց յունարէն բնագրին համեմատութեան։ Շարք մը կայ դժուարիմաց թարգմանութեանց, նորանշան փոխադրութեանց եւ նմաններու, մասամբ անկէ որ հայ թարգմանն ուզած է նիւթականօրէն պահել ճոռոմաբան բնագրին բացատրութիւնքն[3], մասամբ շփոթելով բնագրին

---

1 Տես Ոսկեբ. Յովհ. Բ, 4 եւն (ՀԲ, Բ, 104։)

2 Հմմտ. 1008 կէտք «աւազակեսցեն զնաւս». (= ἀδοστατήσει ... τὰ σκάφη.) 1010 «ով առնէ զձուկն փոքրիկ Նաւակալ (τὸν ναυκράτην) ընթացից ծովուց աւազակ ճանապարհի», ուր յունարէնն է «ընդդիմակաց» (ἀντιστάτην, հայն անշուշտ կարդացեր է ὁδοστάτην.) 769 «զաղանի աւազակ», եւ նմանները։ Ուրիշ յունաբաններէն հմմտ. Կլիմաքսոսի խօսքը «Սնափառութիւն մինչեւ ի վախճան աւազակէ զառաքինութիւն». (տես ՀԲ, Ա, 388։)

3 Անթիւ ուրիշներէն յիշենք միայն 741 «բանիւք պատմել զաստուածային մէգն (= τὸν θεῖον γνόφον խաւարն) իմաստն է՝ «զաստուածային գաղտնիս, խորհուրդս», եւն —

իմաստը, մինչեւ անգամ յատուկ անունները իբր պարզ բառեր թարգմանելով։ Պիսիդէս կարկտի մասին Արիստոտելի կարծիքը յիշելէն ետքը կը սկսի ընդդիմախօսել բացագանչութեամբ՝ (567) "Ո՜ ծուղոյ դիւրաւ գայթակղելի ալեաց", որմէ հայ մը դժուարաւ կը հասկընայ Պիսիդեայ ըսածը։ Յոյն հեղինակը փիլիսոփայական բացատրութիւն մ'ուզած է գործածել, զոր այժմ կը բացատրենք "Ո՜ դիւրագթելի ալիք ճառաւորաբանութեանց." (ὦ συλλογισμῶν εὐόλισθα κύματα, ուստի syllogisme, պատճառաբանութիւն։) Հրատարակիչն իրաւամբ նշանակած էր թէ հայ թարգմանն այս բառը շփոթեր է σύλλογος (ժողով) բառին հետ։ — Անյարմար է (669) խօսքս "Աճեցուցանէ զմարմինն նորաքելոց գործարանաց", ուր իմաստն է տղոց մասին՝ "անզարգացեալ գործարանաց" (τῶν ἀνήβων ὀργάνων.) որ սակայն կրնայ մեկնուիլ[1]։ Բայց բոլո-

525–6 "Որ զշանթեաց ճանապարհ խոտորես, ընդդարձուցեալ զվերին ներքոյ ի վայր", (= ἀναστρέφων δὲ τὴν ἄνω φορὰν κάτω, շանթի վերին ընթացքը վար դարձնելով.) — 769–71 "Դարձեալ խորհրդոցս գաղտնի աւազակն, հոգեգողն (= ψυχοκλέπτης), ապականիչ սրտի, խաւարային ամբարձումն (τοῦ σκότους ἔπαρσις, հպարտութիւն, ամբարտաւանութիւն խաւարային), առաջին վիշապն" են։ — 910 "տեսանելով... զներկ վարդի (βαφὴν ῥόδου գոյն վարդի) ...ծանիցէ զներկողն մշակին" (τῆς βαφῆς τὸν ἐργάτην, ներկողը գունոյ.) — 1046 "Ո՞վ զգեցուցանէ զկրիա հանդերձ խեցեղէն, եւ զոսկր մարմինն յօրինեալ ցուցանէ ի ներքս ի փոխ ներփակեալ", այսինքն՝ ընդ յարկաւ (պատեանիւ) իբրեւ ի տան շրջելով. — 1125 "Երկայնածերին ագռաւուց բերանով" են (τῆς μακρογήρου τῆς κορώνης.) — 1627 "Եւ զխարդ տերեւ՝ զպատրաստս ի ռահել պտուղսն գիրկս արկեալ պահէ", (τὰς ἑτοίμους εἰς ῥύσιν, "զպտուղս որ պատրաստ են ի հոսել." թափիլ եւն.) Անթիւ ուրիշները չենք կրնար յիշել։

[1] Վասն զի ἄνηβος է՝ անզարգացած, արբունք չհասած. իսկ ἀνηβάσκω բայը՝ տղայանալ, կրկին պատանեկու-

բովին անհասկանալի է՝ (672) «Եւ շքեղերեսն զարդարէ դալարով.» որուն իմաստն է՝ թէ Երեսը կը զարդարէ դեռաբոյս մօրուօք, զոր Պիսիդէս նմանցուցած է «դալարի». (καὶ τὴν πρόσοψιν ὡραΐζει τῇ χλόῃ.) Հայոյն սխալմունքն է բուն «Երեսք» բառը «Տեսութիւն» թարգմանելը[1]: Ուրիշ բազմաթիւ նմաններ թողլով՝ յիշենք միայն օրինակ մ'ալ, այսինքն (1113—4)՝ «Ո՞վ հաւանեցոյց զմեծամեծայն հաւն ի ներքոյ յարկին ժամացուցել (Որ. «ժամացուցլ») զբարբառ խորհրդեան:» Հայ մը չէր կրնար հասկընալ, եթէ նաեւ ըսենք թէ խօսքն Աքաղաղի մասին է: «Ժամացուցել» անսովոր է՝ բայց կրնայ մեկնուիլ (ὡρολογεῖν, որմէ արդի horloge, «ժամացոյց» բառը.) բայց «բարւոք խորհել» նիւթական եւ անճիշդ փոխադրութիւն է փխ. «գիշեր»:[2] — Թէ առատ են բացարձակ սեռականներ[3], յունաբանութիւններ, նորանշան առումներ հայ բառերու[4] եւ նմաններ, աւելորդ է անգամ նշանա-

---

թեան՝ արբունքի դառնալ, երիտասարդանալ, ուստի «Նորոգիլ»

1 Առոր ճիշդ հակառակը Սիւնեցի Նեմեսիոսի թարգմանութեան մէջ «Երեսք» կը թարգմանէ փառաւորեան տեղ. տես «Մատ. Մանր Ուսումն.» Ա, էջ 19:

2 Յոյնն է փոխաբերութեամբ՝ ὡρολογεῖν τὴν εὐφρόνην, որ եթէ նիւթական ալ թարգմանուէր՝ պիտի ըլլար «ժամացուցել զբարեխորհուրդն» կամ նման: Ինչպէս Հրատարակիչը կը նշանակէ՝ «Յոյնք քերթողաբար զգիշերն կոչեն բարի խորհրդարար (= εὐφρόνη), զոր նիւթապէս ըստ բառիցն յեղեալ է թարգմանչին՝ թէպէտ անճշդօրէն՝ ի հայ լեզու, փխ. ասելոյ՝ ի Գիշերի նշանակել կամ ազդել զժամս»:

3 Օրինակ՝ 655–6 «Եւ զխարդ անկէ զհրաբերձ սիրտն (τὴν πυρώδη καρδίαν, յածախ). կայծակն ոչ բնաւորեցելոյ ի նմա» (= σπινθῆρος μηδενὸς πεφυκότος,) եւ շատ ուրիշներ:

4 Շատ բան յիշեցինք արդէն: Ահա քանի մ'ուրիշ օրինակ ալ: Տող 387 ծովու մասին՝ «անարատ բախմամբ հող-

*կել, այնչափ սովորական են։ Շատանանք յիշելով միայն սա խօսքը (477) "Եւ շահի զանձինս հարստավաճառաց (πλουτοπράτης) եւ որք առնուլն կամին՝ երկնավաճառէ" (οὐρανοπράτης.)*

*Չենք կրնար անցնիլ առանց յիշելու այն երեւոյթն ալ, զոր քանի մ'անգամ կը տեսնենք, մարդկան անունները թարգմանել իբրեւ պարզ բառ։ Հատ մը կը գտնենք ճիշդ սկիզբն (տող 128) այսպէս՝ "Առասպելս իմն ստեղծին բանդագուշեալ աշխատութեամբ." ուր ըլլալու էր "որպէս Ատլանտեայ աշխատութեամբ" (ὡς Ἀτλαντικοῖς πόνοις.) ակնարկելով Ատլասայ զրոյցը։[1] Մանեայ անուան թարգմանութիւնը կրնայ մեկնուիլ. քանի*

---

*Ծոց բոլորովիմբ զնա ամբոխեալ." յոյն՝* ταῖς ἀτάκταις προσβολαῖς τῶν ῥευμάτων, *"անկարգ բախմամբք հոսանաց" են, ուր* ἄτακτος *կը նշանակէ բուն "անկարգ", եւ ասկէ ինչպէս հայերէնն ալ՝ փոխաբերութեամբ՝ ստահակ, ուստի "անառակ"։ Ի հարկէ "անառակ հողմն" անհնար է հայերէնին մէջ։ — Տող 459 "Մտածօք ձեւացուցանես զահն"* — τῇ δοκήσει σχηματίζεις τὸν φόβον *այսինքն "առ երեւոյթ ձերպարանես զերկիւղ", ի կեղծս երեւեցուցանես եւն. "Մտածու" անսովոր ձեւ մըն է եւ անսովոր իմաստով. — 687 "Եւ ջիղս եւ շարախառնելոյ ոսկրեղէնս հիւսս"* (= σύμπηξιν ὀστώδη, *ոսկրեղէն հիւսուածս.) — 1738 "Եւ բացից զփակեալս՝ Պետրոս գոլով ստեղծեալ", այսինքն՝ Պետրոս յօրինուած ըլլալով* (Πέτρος ὢν πεπλασμένος, *ձեւացուած, կեղծեալ,* fictif.) *"Ստեղծեալ" հայերէնին մէջ այս իմաստով անսովոր է, բայց թարգմանն ուրիշ տեղեր ալ նոյնպէս գործածած է, մինչեւ անգամ երբ կը գրէ (տող 1339) "որպէս բանաստեղծելոյն իմաստասիրաց թուեցաւ", չի հասկընար բուն բանաստեղծ կամ պոետ, այլ "ստեղծելոյ յօրինողն"* (τῶν πλασμάτων.) *Թողունք շատ ուրիշները։*

[1] *Յայտնապէս* ἀτλαντικός *բառի տեղ կարդացեր է* πλανητικός *կամ նման բառ մը, հմմտ.* πλανάω *(ասկէ* πλανητεύω *եւն) մոլորիլ, թափառիլ, փոխաբերաբար՝ "բանդագուշել." ասկէ* πλανητής *մոլորակ, եւն։*

որ Պիսիդեսալ բառախաղ մ'ըրած էր անով։[1] Բայց բոլորովին զարմանալի է հետեւեալը (տող 591) "Այլ տաս այժմ Հօոփոփօն Նմանօ-թիւն եւ զաշակերտս հաւանեցո„։ Թարգմանիչն ինքնին հասկըցած չէ թէ ինչ պիտի նշանակէ։ Իմաստն է՝ "Այլ հուսկ ուրեմն տաս ցՍփոպեիրոցին (Արիստոտէլ), ով Պղատոն, եւ զաշակերտն հաւանեցո„ ենն։ (ἀλλ' εἰπέ λοιπὸν τῷ Σταγειρίτῃ, Πλάτων.) Ուստի Ստագիրացին եղած է "Հօոփոփօն„, իսկ Պղատոն՝ "Նմանօ-թիւն„։[2] Աւելի լաւ օրինակ մը պէտք չկայ փնտռել. բայց կնքելու համար ահա ուրիշ կարգի օրինակ մ'ալ, այսինքն՝ (1538—9) "Եւ անպատուղ մորենեացն ասաց ըմնաղմնս բուսուցանեն բժիշկ։„ Հայ մը պիտի հասկընար թէ այլեւայլ բժիշկներ կը բուսցընեն ոստերը, որ ի հարկէ Պիսիդեայ մտքէն չէր կրնար անցնիլ։ Ինքը կ'ըսէ Ἀποικίλους φύουσι τοὺς Ἱπποκράτους (Հերքէր Ἱπποκράτας), այսինքն՝ զՊօրջօ (Ջէղօրօյօ) բուսուցանեն զՀիպոկրատեսյ„, ակնարկելով՝ ինչպէս Հրատարակիչը լաւ նշանակած է՝ Գաղենոսի եւ Հիպոկրատեայ "Պօրջէ„ կամ Անխառն (ἁπλᾶ ենն) կոչուած դեղերը։ Թարգմանին ἀποικίλους (Անխառն) բառը

---

[1] Հմմտ. տող 1394 "Ջիմրդ Մոլեգնեցոյ մոլի բան (τοῦ Μάνεντος ἐμμανὴς λόγος) կատաղեալ ընդդէմ մեր„ ենն։ Հմմտ. 1441 "Զայս տասցաք առ Մոլեգնօղացն մոլեգնութիւն„. (πρὸς Μάνεντα τὸν μεμηνότα, ընդդէմ մոլեգնելոյն Մանեայ։)

[2] Հնչական մեկնութիւնը կու տայ Հրտ. "Թարգմանչին զյատուկ անուանսդ վրիպակաւ ընթերցեալ թուի իբր հասարակ բառս, զորս համարիմ լինել σταθερότης (հաստատութիւն) եւ πλαστόν (ձեւակերպեալ նմանութիւն։)„ Ուրիշ տեղ մ'ուր "Ստագիրացի„ պիտի կրկնուէր, դուրս ձգուած կը գտնենք անունը. (տես տող 544։) — "Պղատոն„ անունը չփոթմամբ "Նմանօ-թիւն„ թարգմանած տեսանք ուրիշ տեղ մ'ալ, տես "Մատ. Մանր. Ուսումն„ Ա, էջ 20 (Նեմեսիոս։)։

կարդալով տառի մ'անուշադրութեամբ՝ ποικίλους («ցանազան»,) եւ իմաստն ալ արդէն չհասկընալով՝ չէր գիտեր թէ ինչ ընէ «Հիպպոկրատէս» անունը։ Ուլք գտած է պարզ «Ջմեռն» գրելով, թողլով ընթերցողին որ իմաստ մը հանէ անկէ՝ եթէ կրնայ։ Եւ ստուգիւ շատերը կ'երեւան աշխատած՝ Հայ Պիսիդեայ մթութիւնքը պարզելու։ Բազմաթիւ են ներմուծուած մեկնաբանութիւններ, որոնք մեծ մասամբ անշուշտ լուսանցագրութիւններ են՝ այժմ մարմնոյ մէջ մտած, մասամբ թերեւս նոյն իսկ թարգմանչէն իսկ ըլլալով[1]։

---

[1] Օրինակի համար՝ տող 842 «Անուցու աստուածային օրհանան փործորան. (θεῖον ὄργανον.) Թարգմանն անշուշտ միայն «օրկանոն» գրած էր, միւսը՝ մեկնութիւն է կամ լուսանցագրութիւն. Հմմտ. 930 «Ո՞վ թեքեաց զքերանս հաւուց զօրէն օրհանանի (ὀργάνου δίκην.) 1204 «Զո՞ր օրհանան (ձագր. «զո՞ր կանոնն») ստացեալ ունի մժեղ» եւն։ — Տող 854 «Հարցէ զՆիղոս ջեր եւ յարիւն դարձուցէ» (յոյն միայն Νεῖλος, «գետ» մեկնութիւն՝ յաւելուած է։) Այս մեկնութեանց մաս մ'արդէն Վարդան ալ տեսած է. այսպէս՝ 932 «Ուստի առեալ կատովլեպսն, որ կոչի Վայրահայեաց, հրաբերձ բերան», ինչպէս ունի Վարդան ալ (տես 959 Ծան.) «կատովփիլոսն թռչուն է, որ կոչի Վայրահայեաց, զհուր բերանոյն յերկիր առաքէ» եւն. իսկ յոյն բնագիրն է «Ուստի ընչէ կատովլեպսն (κατώβλεψ) բնաւորեալ հրեղէն շունչ ընդ անգունդն»։ Յոյն բառն ստուգիւ՝ մասանց բաժանելով՝ «վայրահայեաց» կը նշանակէ։ Տող 983 «Իսկ այլ հաւ խիթ բնաւորեալ, որում անուն է Տրոխիղոս, սա կերակրի» եւն. նոյնպէս Վարդան՝ «Եւ հաւն տրոխոս կերակրի ի մսոյ» եւն, մինչ յոյն բնագիրը չունի թռչնոյ անուն մը։ Կը գտնենք դարձեալ 1030 «Ո՞վ ուսուցանէ զաւակս առնել օձոյձկանն, որ կոչի Էնխեղիս, անարգանդ գոլով ... կողամայր լինի»։ Նոյնպէս Վարդան՝ «Ձուկն Էնխէլոս, որ կոչի կողամայր, որովայնս ոչ ունելով» եւն։ Յոյնն է Τίς ... δεικνύει τὴν ἔγχελυν. զոր թարգմանն «օձաձուկ» փոխադրած էր, լուսանցագիր մը նշանակած է թէ «Էնքեղէս», է այն՝ ուստի յոյն բնագիրը համեմատելով։ Վերջապէս նաեւ 977 «Եւ փոքրիկն հէ-ղու

Լեզուի մասին աւելորդ է երկարաբանել. արդէն նախընթացները կը ցուցընեն բաւականապէս որ մեծ հելլենաբան է թարգմանիչն, որ սակայն կ'ապրէր այն ժամանակ երբ հին գրաւոր հայ լեզուն տակաւին բաւական առոյգ էր եւ կենդանի։ Աչքի կը զարնեն յատկապէս այն բազմաթիւ բառակազմութիւնք, որոնք ընդհանրապէս յունարէնին համեմատ կազմուած են, որ արդէն լի է ճոխ դարձուածներով եւ այլաբանութեամբք[1], բայց երբեմն նաեւ բոլորովին ինքնայատուկ ոճով, եւ ցանցառ են միւս յունաբաններու քով։ Անսովոր է օրինակի համար (տող 314) "Որպէս զի խառնեցի . . . որ ի նոսա պարարտա-լինանցն ծայրութիւն", որուն իմաստը կը հասկընանք միայն յունարէնին բաղդատու-

---

(ὕλλος) զերկակեցիկ գազանն կրոկոդեղոս ապականէ", ուր յոյնը չունի "կրոկոդիղոս" (ինչպէս ուղղելու է ընթերցուածը՝ այժմ "կոկորդիլոս.") որ ըստ այսմ լուսանցագիր մեկնութիւն է մթին ակնարկութեանս բնագրին։ Վարդան գիտէ նոյն մեկնութիւնը՝ "իբրեւ զհիւղոս փոքրիկ, որ գտեալ ի քուն զկոկորդիլոս գազանն, մտանէ եւ ուտէ զամենայն փորոտիսն"։

1 Շատ օրինակներ տեսանք արդէն։ Ուրիշներէն յիշուին՝ 271 "Օդատեսիլ" (ἀερόστημον.) – 274 "ողջանս հրոյ" (μίτους.) – 341 "Անցուցանել զկենցաղոյս ուխտն առեղան" եւն. — 243 "կենդանախառնակեալ" (= ζωπυρώσας,) համմա. 164 "խարուկելով զօդս" (πυρῶν.) նոյն՝ 276, 375 եւն. — 338 "Զորեքերբեքվարեան որպէս կառաց դէր" (τετράπωλον . . . ἅρματος θέσιν.) – 366 "գեղեցկատեսիլ աստղ Լուսաբեր (φωσφόρον, Արուսեակ) . . . մշակ երկընթաց" ուղղելի "երկընթաց" = ἐργάτην διπλοδρόμον, իբր արուսեակ եւ գիշերավար.) – 707 "Նեղս գործէ զլեռնեցն մասս, ոլորակայծս" (κοχλοειδεῖς խխնջաձեւս) առնէ զդրունս որպէս զի պատշաճաբար (καθ' εἱρμὸν մի ըստ միոջէ, կարգաւ) առհեացին ի ներքս ճայթմունքն" եւն. 920 "ո՞վ զինեաց զկիտրոնն փշովք եւ բուսոյց ընդ նմին սուրս ինքնադարբնեալս" (αὐτοχάλκευτα.) եւն. եւն։

թեամբ, այսինքն՝ ποιοτήτων ἀκρότης, (յորակու-թեանց սաստկութիւն, չափազանցութիւն:) "Պա-րարութիւնք„ այս իմաստով՝ թէեւ խոտելի չէ, բայց անսովոր է, եւ բուն արմատը "Պարար, պարա-րեմ„ եւն ուրիշ բան կը նշանակէ: — "Ինքնիշխան„ կամ "անձնիշխան„ բառին տեղ կը գտնենք ուրիշ բացատրութիւն մը՝ (տող 348) "Եւ ոչինչ զմեզ անձնատէր տեսանել„. (καὶ μηθὲν ἡμᾶς αὐτοδέσποτον βλέπειν, եւ մի զմեզ առ անձնիշխանս ունի-ցիմք.) ուստի ճիշդ յունարէնին համեմատ կազ-մուած. որ սակայն ուրիշ տեղ ալ կը գտնուի: (Ոսկեբ. Յովհ. Ա, ժա, տես ՀԲ:) — Ամէն հայ երբ կը կարդար (տող 115) "ունի զպնդութիւն վարուց„՝ պիտի հասկընար թէ առաքինի վարք մ'ունէր: Բայց հոս եւ այլուր թարգմանիչը "վարք„ բառին տարբեր իմաստ տուած է. ("վարեմ„ բայի այլեւայլ նշանակութիւններէն առած.) Հոս սա-տեղաց մասին է յոյնը՝ τὸ σφίγμα τῶν χυλισμάτων (հոլովմանց, թանձրմանց; նոյնը՝ տող 235 "հո-լովէ„:) Քիչ մը վերը (տող 111) նոյնպէս սատեղաց համար "զոյգ-շարժութեան վարուց„ կը նշանակէ "համաշարժութիւն ընթացից„. (τὸ συγκίνημα τῶν ἐλασμάτων.) նոյնպէս ուրիշ տեղեր, զոր օր. տող 236: — Տող 695 "զքարշողական ջիղս ուղղէ„ (τόνους լար.) իսկ քիչ մ'եաքը (754) կը կարդանք "անյայտիցն տեսողութեան է ջիղս„, ուր յոյնը կ'ըսէ ուսումնական բառով "տեսողական անցս„ (ὀπτικοὺς πόρους.) ինչպէս Հրատարակիչը կը նշանակէ՝ նոյն πόρος (անցք եւն) բառը ուրիշ տեղ թարգմանուած է "ծակոտիս„ (տող 674, 714), "անցք„ (տող 709, 729, 732) եւ վերոյիշեալ տեղը "ջիղս„: Վերջին բառս բուն ուրիշ բան կը նշանակէ. (տես ՀԲ, Բ, 157:) Չենք կրնար յիշել շատ ուրիշ-ները:

Դարձեալ շատ բան անշուշտ սխալ գրչու-թիւն է, գոնէ խնդրական: Օրինակի համար (տող

56) "*իմաստութիւն ամենահնարութեան*" անկարելի չ'եղեւար, բայց անշուշտ ուղղելի է "*ամենագործութեան*"՝ յունարէնին համեմատ կազմուած. (σοφὴ παντουργία, *ամենագործութիւն եւն:*) Չենք գիտեր ստուգիւ թարգմանչին գրչէն է թէ լոկ աղաւաղութիւն, երբ արեգական համար կ'ըսուի՝ (231) "է հաստատակաց փութառութեան", զոր Վենետիկոյ Հատընտիրին համեմատ. վասն զի Անտոնեանց օրինակն. ունի "աշխատածառութեան", որ ապահովապէս աղաւաղ է: Յոյնն է ἐργεπείκτης (գործավար, շարժիչ ի գործ). գուցէ թարգմանը շփոթեր էր ἐπείκτης (տեսուչ գործոց, գործավար) եւ κτίστης ("ստացող" եւն:) Չեռագրաց "գթած" եւ "գործ" եւ վերջնոյս հետ "Աստուած" (պատուով գրուած) շփոթելը կը ցուցընէ որ երկաթագիր գաղափարէ մ'օրինակուած են կամ ուղղակի կամ իրենց օրինակը:

Ընդհանրապէս խնդրական ընթերցուածներ շատ բազմաթիւ են, օրինակի համար բայերու նորաշինան ձեւեր՝ որոնք դժուարաւ կրնան թարգմանչէն ըլլալ:[1] Շատ բան խնդրական կայ նաեւ բազ-

---

1 Այսպէս 276 "խարուկեալ խոռնգէն (φθαρτικῶς ὑποβράσῃ բորբոքեալ կեղծէ.") անսովոր է "եռանդիմ", բայց մ'այս ձեւը: — 687 "շարախօսութիւնս ոսկրեղէնս հիւսեն" (πλέκει, դիւթէ, հիւսէ.) ուստի "հիւսուլ" բայ մ'որ հայերէնի անծանօթ է. բայց թերեւս կարդալու է "հիւսեն" ("հիւսուլ.") երկաթագրի մէջ Ս եւ Ն դիւրաւ կրնային շփոթուիլ. — 1808 "ի հողեղէն բեռնէն ոչ ծանրէ", այսինքն "...բեռանէ ...ծանրանայ", եւ շատ ուրիշներ: Ստուգիւ թարգմանիչը գրած է՝ որչափ ալ յունաբան ըլլայ՝ 1095 "գթով ծնեցելոց", 1150 "ծնիցելոյն.", 1195 "ճիճի՝ ոստայնանկէ" (σκώληξ ὑφαίνει, որդն ոստայնանկէ՝ նիւթէ.) 1466 "գիտէ որոշել եւ զատել նոյնժամայն" (զատանել) եւ ուրիշներ: Հմմտ. նաեւ ձեւերս՝ 274 "պատամանս հինել անկանի." 285 "պաղջութեամբ զցրտութիւն ապահովեցուցանէ" (ἠρέμα τρέφει մեղմիւ սածէ, յապահովի պահէ.)

մաթիւ նորանոր բառերուն մէջ։ Վասն զի Պիսիդեայ թարգմանութիւնս որ իւր ամէն հելլենաբանութեամբ եւ մթարութեամբ հանդերձ առոյգ ու կենդանի հայ լեզու մը կը ցուցընէ, առատութեամբ ունի ընտիր բացատրութիւններ, ցանցառ բառեր եւ նմաններ[1], շարք մ'ալ բոլորովին նոր

---

1639 "եւ փոխեսցէ հատ զհատ համամբ.,, 1651 "թէ ցրտութեամբ մածցէ ամենայն քար,, եւն եւն։

1 Ինչպէս յունաբանութիւնք ու խրթնաբանութիւնք, նոյնպէս սոքա շատ առատ են, այնպէս որ դժուար է ընտրելագոյններն ընտրել իբրեւ օրինակ։ Համմ. ի միջի անթիւ այլոց՝ 391 "զանամոքելի աղութիւն ի խորոց գետոյ.,, — 399 ջուր կամ ալիք "անդրէն յինքն յորձորելով անկանի.,, — 458 "թուլացուցանես զնետն՝ ճոճելով զլար միայն.,, Համմ. 464 "փախիցէ ի վերոյ նետին թափեցելոյ.,, (τῆς βολῆς κινουμένης.) — 495 "Հիւծիչքն անդամոց խաղաւորք.,, — 651 "թուլացուցանէ զլեզու է չնէլ զբան ջրընդոյ լինել խօսից գործարանին,, (նոյն՝ Փիլոն, Նիւսացի եւն, տես ՀԲ, Ռ, 1106.) — 780 "շողոմել թուեցեալ՝ ի խածանել ճեպելով,, շանց. — 868 "ի փող վիմին մտեալ,,. (Համմ. Եւք. ԼԳ. 22 "ծերպս վիմին.) — 927 եւն "անդեղէք, (ἀντιφάρμακον.) — 990 "մազլամըք փորել,, (κνήθει.) — 1065 "եւ ընդելն զնա յարեւու.,, — 1226 "Իբրեւ զհաց խորովեալ ողանջելոցն.,, — 1535 "Խիժ եղեւնափայտի զըոր քերէ,, եւն։ Դարձեալ՝ 534 "Եւ ոչ դարձեալ մղկղեալ կարկտիւն զըոց,, (τεφρῶν.) Համմ. 1119 "զծերութիւն որմոյ հաւոյն (φοίνικος) հրով ի հրոյ գերեզմանի մղեղեալ զծերն,, (τεφρώσας, աճիւնացուցեալ, տես ՀԲ, Բ, 286.) — 564 "իսկ ձմեռն ցրտութեան ի վերայ հասեալ ճողչելով դնելով ի ներքս,, եւն. (տես ՀԲ, Ա, 794.) — 1102–3 փոխաբերաբար "գժրին իմաստութեամբ զգաղտակուրան (τὰς κόγχας) յորժամ յիւրեանց խեցեղէն փեխոն (ἐν ὀστρέοις) ամփոփին,, եւն։ — 1425–6 "մինչ կամեսցի չինել տուն եւ սուն հարկանել (σφῆνα πήξας պնդել զսեպ, պորտաքարը)՝ գնդաձեւ ձեղուանն ընդէլ. ինքն միայն գիտէ զկենդրոն,, (նոյն՝ τὸ σφίγμα), եւ լուծանէ միայն,, եւն. Համմ. քիչ մը վարը 1431 փոխաբերութեամբ՝ "ի բաց հանելով զսուն զհոգեկան,, (τὸν σφῆνα τὸν

բառերու եւ բառակազմութեանց, որոնց գոնէ ոմանք ապահով չեն։ Ահա քանի մ'օրինակ։ Տող 241 արեգական համար կ'ըսուի թէ "Զաշխարհ՝ ի շեղելն իւրում՝ փողոզէր." (յոյնն է καταφλέγειν այրել, տոչորել.) որ բուն հնոց քով՝ լափել, ծախել սպառել՝ իմաստով կը գործածուի, բայց յունաբանից քով ("Առ Որս", Պիտ.) նոյնպէս բոցակիզել իմաստով. (տես ՀԲ, Բ. 926։) Անկէ առած է Լամբրոնացի, տես քիչ մ'ետքը։ — Ցանցառ բայց նոյնպէս հին ընտիր բառ է (տող 345)՝ "խանգարումն առաքեսցէ եւ խռնեսցէ (Վենետ. "խանգարեալ խռովեսցէ") զտեսութիւն", այսինքն՝ տեսարանը շփոթէ. (ταράξῃ τὴν θέαν.) Նոյն բառն ունին Առակք եւ Ոսկեբ. (տես ՀԲ, Ա, 986։) — Ընդհակառակն շատ խնդրական է (տող 437)՝ "զտումարս ձեռնագրաց փորփոլէ," ուր յոյնն է՝ τόμους δὲ σαθροῖ (ջնջէ, եղծանէ։) Հրատարակիչը կ'առաջարկէ կարդալ "խորխոլէ", որ կարելի է, ինչպէս նաեւ նմանաձեւ "խորխորէ", երկուքն ալ հին բառեր. (տես ՀԲ, Ա, 931։) — Շատ խնդրական է յաջորդ խօսքը (տող 480)՝ "Զոր ոչ խեփոյոցին հնդկականքն սուզանք, այլ կենցաղոյս փլխոչոծ վշտագնութիւնք"։ Հրատարակիչն իրաւամբ կը նշանակէ որ "գլխակած" աղաւաղութիւն մ'ըլլալու է, եւ ինքը կ'առաջարկէ կարդալ "յեղոշործ կամ լխոշխոծ, իբր՝ արկածալից." (յոյնը՝ αἱ πενιχραὶ τοῦ βίου περιστάσεις թշուառ արկածք կենաց.) Նոր ձեռագրի մը պէտք կայ ուղղելու համար այս տեղը։ Իսկ բուն "խեփացուցանել" որ նոյնպէս խնդրական է, ուրիշ տեղեր ալ կրկնուած

---

ψυχοκράτην.) եւ 1439 "Պնդէ շոտնն (τὸν σφῆνα πήξας)՝ իբր զի ոչ եւս լուծցի," եւն։ Ինչպէս կը տեսնուի՝ ամէն տեղ որոշ ձեւով կ'երեւայ "ոռն" բառ մը՝ իբր պարտաքարի, գմբեթի միջնակէտի իմաստով։ Բայց "ոռն" կարդալու է եւ նոյն է "սռոն". (սեպ) բառին հետ՝ առ Ագաթ., Եփշատակք Գուրիայ եւն. (տես նաեւ ՀԲ։)

է “խեփոցեալ” (անցեալը։)[1] Անշուշտ մեկնելու է Հրատարակչին հետ իբր “խեփորացուցին” եւ “խեփորացեալ”, կրկին բայի ձեւեր “խեփոր” (պատեան խեցեմորթներու, խեցի) բառէն, զոր ունին Վանական եւ Վարդան ալ. (տես ՀԲ, Ա. 942։) Խօսքը մարգարտի վրայ է, “զոր ոչ խեփորացուցին հնդկական ծփանք” (οὓς οὐκ ἀπωστράκωσαν Ἰνδικοὶ σάλοι.) Ընտիր թարգմանիչ մը Ոսկեբերանի (Մեկն. Ես.) թարգմանած է “Հուր զոսկի հալէ եւ զկաւ խեցեցուցանէ.” (տես ՀԲ, Ա 941։) Խեփորի տեղ բուն հայ բառն է “խեցի։” — Զենք գիտեր ինչպէս ուղղելու է (տող 491) “Զփեղտ փայտս, կարմիրս, իբրեւ զխարոյկ վառեալս.” յունարէնն է στικτούς (պիսակախայտ, խայտաբղէտ։) — Տող 504 “Եւ մեզ նխոթէ զօրէն ուսուցչի.” յունարէնն է՝ ἡμᾶς δὲ νύττει συμφορᾷ διδασκάλῳ, այսինքն՝ “Եւ խրատէ (մտրակել, խարազանել) զմեզ թշուառութեամբ իբրեւ ուսուցչաւ։” Կրնար կարծուիլ թէ “խթէ” էր թարգմանչին գրածը. բայց “նխոթել” կրնայ շատ լաւ ըլլալ։ Նոյն բառը՝ թէեւ անգամ մը միայն՝ կը գտնենք գործածուած՝ Եւս. Եկղ. Պատմ. (Զ, խբ, տպ. Վենետ. 503) “Էառնա ցուպ մի մեծ եւ եհար նխոյն զորովայն եւ զգանձակ նորա եւ անգէն սատակեաց.” (տես Նաեւ ՀԲ, Բ, 427։) Ինչպէս կը տեսնուի՝ իմաստի փոքրիկ տարբերութիւն մը կայ. Եւսեբեայ քով “նխոթ” հարկանելն է ճշդիւ մեր արդի լեզուի “խոթել.” Պիսիդեայ քով՝ “խթել։” — Տող 970. “Ամենայն երիվար դողայ ի բռույ[2], կնի-ն երկեցուցեալ փախուցանէ զցուլ.” (οἴστρῳ

---

[1] Հմմտ. 483 “Թեթեւագնի. սակայն խեփոցեալը” (πλὴν ἀποκρότους ὅλους չործրացեալը գլխովին։)

[2] “Բռռ” մեզի լաւագոյն կ'երեւայ. յոյնն է՝ ἵππος σειρομάστιγα τρέμει, զոր Հրտ. կը համարի “տանջ ե-խորագան”, ինչպէս կը նշանակեն արդեամբք բարդ բառիս անջատ մասերը։ Թարգմանին անշուշտ ուրիշ բառ մը տեսած էր հոս։

δὲ φεύγει ταῦρος եւն։) «կնիւն» ընդհանրապէս բոյս է՝ ճիլ. հոս իբրեւ խայթիչ ձիապիծակ (οἶστρος, oestrus շանաճանճ.) եւ ճիշդ այս իմաստով կը դրէ Կալլիսթենէս «Ձիապիճակքն եւ կնիւնքն» (ՀԲ, Ա, 1104 կը համարի փոխառեալ յոյն բառ՝ κυναίος.) — Տող 1240 «ի ներքուստ կուռէ բլշանալ ամբարոցն» (ἀμβλῦναι πόρους, խնուլ անցից։) «Ամբարոց» իբր անցք տեսանք արդէն, եւ այլեւայլ ձեւերով ալ կ'երեւայ. (714 «ամբարոց», 694 «ամբարիչ».) իսկ «բլշանալ» սովորաբար աչաց համար կը գործածուի (բթանալ, աղօտանալ, եւն, տես ՀԲ, Ա, 492։) Պիսիդեայ քով ուրիշ տեղ մ'ալ կը կարդանք (տող 1525)՝ «Եւ այլ քար զշանթիոն բլշոցուցանէ. (τοὺς κεραυνοὺς ...ἀμβλύνει.) — Անսովոր բառ է (տող 1531)՝ «Աղանօք խափանէ զարիւնաթոյրն հեղմունս», զոր Հրատարակիչը կը համարի «ազգ ինչ գունաւոր կաւոյ» եւ յատկապէս Հայկ— նշանակութեամբ գործածուած։ Յոյնն է εἴργει δὲ βῶλος αἱματόπτυστον χύσιν (խափանէ գեղձն զարիւնաթուքն հեղմունս.) βῶλος է՝ հողակոշտ, գեղձ. πηλὸς կաւ։ — Տող 1635 «Պարունակ մըշնայն նուրբ ձգեալ լար» Նուան համար։ Հրատարակիչը կ'առաջարկէ ընթեռնուլ «պարոսափակ մշնայն» («պարոսափակ» եւ «մէշն»՝ թաղանթ.) յունարէնն է՝ ὑμὴν φλογώδης (պարուտակ բոցավառ.) ուստի ասով հայն նոյն ὑμὴν յոյն բառին դիմաց կրկին հոմանիշ դրած ըլլայ։ Զիարդ եւ իցէ՝ բաւական է այսչափն ալ, Պիսիդեայ բնագրին մանրամասն ուսումնասիրութիւնը չըլլալով մեր նպատակը։

Պիսիդեայ հայ թարգմանչին լեզուն խիստ յունաբան է, ինչպէս տեսանք, բայց նաեւ տակաւին կենդանի եւ առոյգ գրաւոր լեզու մը։ Կրնար սպասուիլ որ բազմաթիւ գիտնական բառեր եւ ձեւեր՝ որոնք այնչափ առատութեամբ կը գտնուին Պիսիդեայ յոյն բնագրին մէջ, հայացած գտնուէին հայ

թարգմանութեան մէջ ալ։ Բայց այս կողմանէ աղքատ է հայերէնը։ Նախ շատ տեղեր՝ ուր այսպիսեաց առատութիւն մը կը սպասուէր, այժմ պակաս են. (օրինակի համար տող 1550—1603։) Ուրիշ տեղեր ընդհանրապէս գիտնական եզրներու անորոշութիւն մը կը տեսնուի հայերէնին մէջ։ Համեմատելու է միայն Ուսման ընթացից (տող 611—31) եւ Քերականականաց մասը (տող 1670 եւն,) համոզուելու համար որ ստուգիւ ընդհանուր եւ անորոշ բառերու շարք մը գործածած է հայը։ Միակ օրինակ մը կը բաւէ ցուցընելու այս կէտը, այսինքն (տող 841) "զխլրփականն երակին գտեալ եւ զգէտութիւն ասասցէ." ուր յունարէնն է τὸν σφυγμὸν εὑρὼν, τὴν διάγνωσιν φράσοι, այսինքն՝ բժիշկը զարկերակը գտնելով իր diagnose կ'ընէ։ Ուրիշ կարգի օրինակ մ'ալ բերելու համար՝ յիշենք սա խօսքը (տող 633) 'Եւ այսպէս ապա որպէս ի տգիտութեան զծանուցեալն իւր առցէ ի տեսութիւն։" Անհնար է որ հայ մը գիտնար թէ հոս անորոշ "զծանուցեալն իւր" թարգմանութիւն է Սոկրատայ հռչակաւոր վճռին՝ "Ծանիր զքեզ." (յոյն՝ τὸ γνῶθι σαυτὸν, "զծանիրն զքեզ" եւն։) Ուրիշ տեղեր յոյն ասութիւնքն թարգմանելով կամ՝ ուր անհնար էր՝ պարզապէս յոյն բառն հայերէնին մէջ առնելով ելք մը գտած է թարգմանը[1], ինչպէս ըրած է արդէն մեր թարգմանչաց մեծագոյն մաս մը։

[1] Այլեւայլ օրինակներ տեսանք արդէն։ Համմտ. դարձեալ թարգմանութիւններէն՝ 1049 "ո՞վ տնկեաց ի կայծակէն կոչեցելոյ ճաճանչեղ" (τῷ διαυγεῖ λαμπύρῳ. Հրտ. λαμπυρίς կը համարի՝ կայծոռիկ, լտ. cicindela.) Համմտ. վերջին բառն իբր ածական՝ 137 "զօդ կկեալ կկոցաւ (κλωσθέντα κερκίδι) սքանչելեաւ, հեղեալ, ճաճանչեղ (διαυγῆ) եւ նուրբ հոսմամբ" եւն. ուստի կը տեսնուի որ "ճաճանչեղ" վերն ալ զուտ ածական է, իսկ λαμπυρίς է "կայծակն"՝ թէեւ ասութեան կերպը հակառակը կը ցուցնէր։ — 1054 "Ո՞վ եդ իմաստ ի հրածինան կոչեցեալս" (τοῖς πυρεκγόνοις.) — 1009

Թարգմանութեանս ուղղութեան, հելլենաբան խրթնութեան եւ ընդհանրապէս լեզուի մասին մինչեւ հիմայ բաւածը բաւական համարելով, մեր համառօտ ուսումնասիրութիւնը կնքելու համար կը մնայ տեսնել կէտ մ'ալ, այն է՝ թարգմանիչը կամ թարգմանութեան ժամանակն եւ իր դիրքը այլեւայլ հայ հեղինակներու հանդէպ։ Ասոր մասին յաջորդով։

## 4.

Պիսիդեայ հայ թարգմանութեան ժամանակին եւ թարգմանչին մասին պէսպէս են կարծիքները, ինչպէս կը տեսնուի անոնցմէ՝ զոր վերը մի առ մի յառաջ բերինք։ Աւգերեան կը մտածէր թէ արդեօք հայն ալ նոյն Է դարուն՝ երբ գրեց Պիսիդէս՝ թարգմանուած ըլլայ։ Սուքրեան ընդհանուր կերպով հելլենաբանից կարգը դասելով իրաւամբ զՊիսիդէս, եւ այն կարգի գրեանքն "մինչեւ Ժ դարուն վերջը թարգմանուած" ըլլալով, նոյնը Է—Ժ դարերուն կը դնէ ընդհանրապէս, աւելի մէտ երեւնալով վերջին ժամանակին՝ "իբրեւ չեզքն եւ պակասաւոր թարգմանութիւն" նկատելով զայն, քանի որ Հատակատորը միայն ծանօթ էր իրեն։ Հրատարակիչը՝ Հ. Ա. Տիրոյեան՝ Ը դարուն կը դնէ.

---

"ձուկն նաւակալ" եւ նմաններ, զոր արդէն ուրիշներն ալ ունին։ Փոխադրութիւններէն 978 "հիւլոս" (ὕλλος), 955 "ասկամունի" (ἀσκαμμωνία), 932 "կատոպլեպս" (κατώβλεψ), 911 "վաղամ" (որոյ մասին՝ տես նաեւ յետոյ.) 1053 "սաղամանդր" (σαλαμάνδρα) եւ նմաններ, որոնց ոմանք՝ ինչպէս վերջինս՝ արդէն ուրիշներուն քով ալ կը գտնուին։ — Կ'արժէ յիշել 1098 "Ո՞վ բանայ զբերան փարահաւոյն՝ փոխանակ ստամոքի, սքանչելի իմն գործեալ երկայն տեղս", եւն. յոյնն է τῶν πελεκάνων, ուստի հոս "փարահաւ" թարգմանուած է այն՝ որուն սովորական եւ բնիկ հայ բառն է "հաւալուսն"։

եւ թարգմանիչը յանուանէ կը նշանակէ զՍտ. Սէ-նեցի, ոչ միայն իւր առաջին փորձին սկիզբը, այլ նաեւ այժմ՝ ամբողջական հրատարակութեան առեն[1]: Նոյնպիսի կամ բուն աւելի. ալ հնութիւն կու տայ Հ. Գ. Նազարէթեան, թարգմանիչը համարելով՝ զՍեբէոս, որ Սիւնեցիէն քիչ մը յառաջ է, յենլով այն կէտին թէ Սեբէոս իւր Պատմագրութեան համար գործածած ըլլալու է զՊիսիդէսեալ: Հ. Գ. Զարբհ. յիշելով պէսպէս կարծիքները՝ անկարելի չի համարիր ընդունիլ որ Յովհ. Սարկաւագ ալ կրնայ ըլլալ թարգմանը:

Այսչափ կարծեաց մէջ դժուար է վերջնականապէս որոշել թէ արդեօք ընդհանրապէս եւ որն է բուն թարգմանը: Թերեւս այս ամէնէն եւ ոչ մին: Սեբէոս՝ օրինակի համար՝ գրեթէ անհնար է ընդունիլ իբր թարգման հելլենախօս Պիսիդեայ, ինչպէս իւր Պատմութեան լեզուն իսկ կը վկայէ:

---

1 Տես էջ 9. «Սուղ ինչ եւ զհայ թարգմանութենէն տասցուք: Անծանօթ է թարգմանիչն, այլ ծանօթ ժամանակն՝ յոճոյ թարգմանութեանն: Ի վերայիշեալ Պարքէր ամառգրի՝ Սեբէոսի ընծայի թարգմանութիւնք, այլ առանց ինչ հաւանեցուցիչ պատճառաց, բայց միայն գուցէ զի հանգոյն Սեբէոսի նաեւ Պիսիդէս գրեաց քերթողաբար զարշաւանաց Հերակլեայ կայսեր: Այլ որ միանգամ յակն արկցէ զզանազանութիւն հայերէն լեզուի նորին ի սմանէ՝ ոչ ինչ երկբայիմ եթէ անհիմն գտցէ զկարծիսն: Մեր առաջին արարեալ էր ի Բազմավէպ (ԽԸ. 109) զՍէ-նեցին Ստեփանոս՝ զթարգմանիչն Նեմեսեայ, եւ յայս կարծիս հաստատեալ կամք նաեւ այժմիկ, հայելով ի մերձաւորութիւն յունաբան ոճոյ երկոցունց թարգմանութեանցն, այլ եւ ի վրիպակ փոխաբերութիւնս ինչ յունական բառից ոմանց՝ համանման յեղելոց ի հայ յերկոսին եւս գրութիւնս: Եղեն եւս որք զանուն Սարկաւագայ Վարդապետի համեցան յօդել ընդ թարգմանութեան Վեցօրէից («Մատենադարան Հայկ. Թրգմ.» էջ 655. տպ. 1889 Վենետ.), որպէս եւ այլք՝ որք մինչեւ ցեօթներորդ դար վերածեալ իմն հանին զայն եւն:

Ընդունելով ալ թէ Սեբէոս գործածած ըլլայ Պիսիդէսի տաղերն իբր աղբիւր, — կէտ մը՝ որ տակաւին քննուելու եւ ապացուցանելու է, եւ որ մեզի գոնէ խնդրական կ'երեւայ, — բաւական չէ այս՝ զինքը թարգմանիչ ալ համարելու Վեցօրէից։ Նոյնն ըսելու ենք Սարկաւագի համար ալ, զոր թարգման անհնար է համարիլ նոյն իսկ անով որ Պիսիդէս ապահովապէս թարգմանուած էր Սարկաւագի ժամանակէն շատ յառաջ։

Բաց ի այն ընդհանուր ժամանակէն՝ զոր Մուքրեան կը նշանակէ եւ որ ապահով է (Է—Ժ դար՝), կը մնայ միայն Հրատարակչին կարծիքը՝ Ստ. Սիւնեցի համարիլ թարգման Պիսիդեայ, որ ըստ այսմ Ը դարու առաջին կիսուն ըլլալու էր՝ ինչպէս Սիւնեցւոյ միւս թարգմանութիւնքն Նեմեսեայ, Դիոնեսիոսի, Պարապմանց գրոց եւն։ Եթէ անպատճառ որոշ թարգման մը նշանակել կ'ուզենք, ստուգիւ ամենէն յարմարն է Սիւնեցի, ճիշդ նոյնպէս խիստ հելլենաբան իւր թարգմանութեամբքն ինչպէս է Պիսիդէսի հայերէնը։ Բայց ստուգութիւն չունինք, թէ ստուգիւ Սիւնեցի է թարգմանն եւ ոչ ուրիշ հելլենաբան մը, որոնց թիւն այնչափ սահմանափակ չէ։ Պիտոյից գրոց թարգմանական մասերը նուազ հելլենախօս չեն, եթէ ոչ աւելի։ Սոկրատայ թարգմանութիւնը կատարելապէս յոյն բնագրին հետեւողութիւն է, չհաշուելով ուրիշները։ Ժ դարուն Մագիստրոս նաեւ իւր ինքնագիր նամակները նուազ յունաբան լեզուով չէ գրած, եթէ ոչ աւելի ալ խրթին։ Հելլենաբանութիւնն ընդարձակ շրջան մըն է մեր գրականութեան, ուր բազմաթիւ գրիչներ եւ թարգմաններ գործած են, եւ անշուշտ շատեր ալ՝ որոնց անունն իսկ չէ հաղորդած մեզի ժամանակը։ Սիւնեցւոյ թարգմանութիւնքն ծանօթ են այն բարեբախտ պարագայովն որ պահուած են անոնց յիշատակարանքն, եւ այս պարագայն նպաստած է որ հայ մատենագիրք ալ

զանոնք կը յիշեն յանուանէ։ Սիւնեցւոյ թարգմանութեանց մէջ՝ որչափ մեզի ծանօթ է՝ չի յիշուիր Պիսիդէս. եւ որ՝ եթէ երբեք ունեցած է թարգմանչէն յիշատակարան մը, շատոնց ինկած կորսուած ըլլալու է՝ վերջին ընդարձակ մասին հետ որ կը պակսի։ Իւր թարգմանիչը կրնայ Սիւնեցին ըլլալ, բայց նոյն դիւրութեամբ նաեւ ուրիշ մը, որ մեզի անծանօթ կը մնայ։

Այս կէտը՝ թէ Սիւնեցի՞ է թարգմանը թէ ոչ, կարելի է ըստ ինքեան վճռել, եթէ Սիւնեցւոյ թարգմանութեանց հելլենաբան եզականութիւնք համեմատուին Պիսիդեայ առանձնայատկութեանց հետ։ Վասն զի որչափ ալ հելլենաբանից յունախօս լեզուն առհասարակ նոյն յատկութիւնքն ունենայ, իւրաքանչիւրը ստրկօրէն հետեւած ըլլալով միեւնոյն յոյն լեզուի ամէն կազմութեանց, ինքնուրոյն կազմութիւններ՝ այս կամ այն թարգմանչին յատուկ ձեւեր՝ չեն կրնար պակսիլ, եւ չեն պակսիր։ Համեմատութեան առնելու է ըստ այսմ ոչ այնչափ ընդհանուր գծերն՝ որ նոյն են բոլոր յունաբանից քով, եւ՝ իբր պարզ բառամթերք՝ անոնց շրջանէն դուրս ալ ազդած են եւ նաեւ այսօրս մեր արդի լեզուի մէջ թողուցած բառակազմութեանց մեծ մթերք մը (— արդի լեզուի ալ գիտնական եզրներու մեծագոյն մասը, —) որչափ առանձնայատկութիւնքն անհատ թարգմանչաց[1]։ Ասոնց նոյնութիւնը կրնայ միեւնոյն թարգմանչին գրչէն

[1] Օրինակներ յիշել գրեթէ անհնար է, այնչափ յաճախ են յունաձեւ ասութիւնք որ հաւասարապէս միւս յունաբաններուն քով ալ կան։ Բազմաթիւ բառեր արդէն նշանակեցինք ալ վերն իւրաքանչիւր տեղը՝ մատնանիշ ընելով ՀԲ, ուր կրնան օրինակներ տեսնուիլ։ Բայց ահա հոս ալ քանի մ'օրինակ։ Պիսիդ. 338 “Չորեքերեքկողմեան„ (τετράπωλον . . .) կառք„ ամենեւին կապ պէտք չկայ որ ունենայ Պրոկղի թարգմանչին հետ որ կը գրէ՝ “Արիոս եւ Փոտինոս եւ Նեստորիոս եւ Մակեդոն չորեքերեքկողմեան

ըլլալը ցուցընել, հակառակը՝ տարբեր թարգմանիչներ։ Դժբախտաբար հոս ո՛չ տեղւոյ անձկութիւնն եւ ո՛չ ուսումնասիրութեանս անձուկ շրջանակը կը ներեն մեզի քննութեան առնուլ Սիւնեցւոյ բազմաթիւ թարգմանութիւնքն եւ համեմատել Գրիգորեայ հետ։ Այս կէտը կը թողունք այլոց քննութեան։

---

(τέτριππος) կառքն առաջնորդի (տես ՀԲ, Բ, 578)։ — Գիրք. 191 "մի դէմ եւ աստուածապետութեան մի" (θεαρχία). Հարկ չկայ նոյն թարգմանիչէն ըլլալ, երբ կը կարդանք "Մէ կարծեսցուք եւ աթոռս նուիթեղէնս աստուածապետութեանն" կամ "Գերագոյն էութեամբ Աստուածպետութիւնն" այսինքն՝ Աստուած, եւ նմաններ առ Դիոնիսիոսի, որք Մագիստրոս, Շնորհալի եւն. (տես ՀԲ. Ա, 333։) — Ընդհակառակն Գիրք. 889 "Գերաէութեան" ուրիշ իմաստով կը գործածուի (ἐξοχὴ = "գերազանցութեան") քան Սիւնեցւոյն կամ Դիոնիսեայ քով, ուր ճշգագոյն է իմաստը (ὑπερουσιότης — "գերաէութեան", տես ՀԲ, Ա, 542։) Գիրգէս ամէն տեղ "տեսութիւն" եւ յարակիցք ուղիղ կը թարգմանէ. սխալած է յայնմ որ մինչեւ անգամ πρόσωψις (երեսք, դէմք) թարգմանած է "տեսութեան" (տող 672), ինչպէս վերը նշանակեցինք։ Սիւնեցի կամ Նեմեսեայ թարգմանն ընդհակառակն միշտ ὄψις (տեսութիւն) բառի տեղ կը թարգմանէ "Երեսք." (տես "Մատ. Մանր Ուսումն." Ա, 19։) Այն տեղ նշանակուած լեզուի առանձնայատկութիւնք Նեմեսիոսի (այսպէս "անձն" — ψυχὴ հոգի եւն) ընդհանրապէս չենք գտներ Գիրգեայ քով. օրինակի համար "ծայրք որակութեանց", որուն տեղ Գիրգէս յարինած է՝ ինչպէս նշանակեցինք "պարարութեանց ծայրութիւնքն" (տես վերը) եւ անթիւ ուրիշները։ Աչքի կը զարնէ միայն "Գղափոն" անուան երկուքին մէջ ալ սխալմամբ թարգմանուիլը. բայց նաեւ հոս նոյն չէ սխալմունքը։ Նեմեսիոս թարգմանած է "ճշմարտութեան" (տես անդ՝ Ա, 20), Գիրգէս՝ "Նմանութեան։" Այս ամէնը կարծենք թարգմանչի նոյնութիւն չի ցուցըներ. բայց խնդիրը հիմնովին վճռելու համար՝ անհրաժեշտ է աւելի մանրամասն ուսումնասիրութիւն մը։

Թարգմանութեան ժամանակը ճշգրտելու համար ապահով կռուան մը չենք գտներ բուն թարգմանութեան մէջ, թէեւ կան մէկ երկու նշանաւոր պարագաներ։ Ուշ ժամանակ կարծես կ'ուզեն ցուցընել այլեւայլ ընթերցուածներ, օրինակի համար յետնագոյն ժամանակի յունարէնին հնչման համեմատ սա ուղղագրութիւնք “Նէլոս„ (Νεῖλος, հնոց՝ Նեղոս. տող 854) կամ “Գաղէնոս„ (Γαληνὸς, տող 944) եւ նմաններ, եթէ միայն ապահով ըլլային այս ընթերցուածները։ Բաց աստի նման տառադարձութիւններ միշտ ապահով նշան չեն յետնագոյն ժամանակի մը։ Չենք կրնար մոռանալ նշանակել նաեւ սա ընթերցումն (տող 911) “Եւ ո՛վ ոք ի հոտ փղղամոյ„ եւն, որ “առ անորոշ գրութեանն ընթեռնլի է նաեւ փղղամոյ„, մնալով միշտ յետնագոյն դրոշմով ձեւ մը՝ “բալսամ„ կամ բուն հնոց “բաղսամոն„, յետնոց “բալսամոն„ փոխառեալ բառին. (εἰς ὄσφρησιν . . . βαλσάμου, ուստի β = վ։)[1] Ստուգիւ յետնագոյն ձեւ մըն է նաեւ (տող 1293)՝ “Ո՞ր սովորութիւն տայ որդանն ապրըշ-մակերի (σχώληκα Σηρικῶν) մանել զպայծառամանման նիւթս„։ Մեր հնոց ստուգիւ բոլորովին անծանօթ է “ապրիշում„ պարսիկ բառը, որուն տեղ կը գործածեն “մետաքս„ փոխառութիւնը. եւ Բուզանդայ “ապրըշում„՝ որ կը կապուէր վերնոյն հետ, բոլորովին ուրիշ բան է. յետինք միայն փոխառած են “ապրշում„, ինչպէս նաեւ “շերամ„[2]։ Այս կէտը ստուգիւ մտադրութեան արժանի է։

---

1 “Բաղսամոն„ արդէն Ե դարէն (Ագաթ., Բարսեղ, Ոսկեբ. տես Հբ. Ա, 429։) — “Բալսամոն„ Խոր. Աշխ. եւ այլուր՝ ըստ Հիւբշմանի (Hübschmann, Gramm. I, 263) արաբերէնէ փոխառեալ ձեւով է։ Նոյնպէս յետնոց քով կայ “ապրսամ„ ձեւը. (տես ՀԲ, Ա, 280։)

2 Բուզանդայ (Դ, ԺԹ) գրածը “Նժոյգս ոսկեվար-ուանդ ապրշմօք„, չի նշանակեր “իբր ապրսում, ապրիշում,„ ինչպէս կը մեկնէ ՀԲ (Ա, 279) այլ բոլորովին ու-

Ժամանակը ճշդրտելու կրնայ նպաստել նաեւ Հայ Թարգմանութեան վերջին տողը (տող 1858.) Պիսիդէս հոս կը մաղթէ Հերակղի եւ իւր որդւոց համար՝ “Անեցս զիշխանութիւն սորա քոյովդ երկիւղիւ, զայս ունելով հաւատարիմ յաղթանակ. երկրորդ յաղթութեան արժանաւորիլ ի վերայ թշնամեաց, եւ զայլս անյայտ բարբարոսս է հուր դատել„ եւն։ Վերջին “ի հուր դատել„ բառերն արդէն չկան այժմ հայերէնին մէջ՝ յարակից բոլոր վերջաբանով (տող 1859—1910.) բայց ասոր տեղ կ'աւարտի հայն այսպէս՝ “Եւ զայլս անյայտ բարբարոսս էր [illegible] եւս խառնել ընդ [illegible]„ Հրատարակիչն իրաւամբք կը նշանակէ որ “ի պաքադայից ժամանակին սրտնեղեալ թարգմանն, կամ գուցէ այլ ոք ի նախկին գաղափարողաց անտի, յաւելլու զըղձականն ի սրտին ի հայումս„։ Եթէ “Հագարացիք„ անձուկ միօք առնունք՝ կրնայ նպաստել ժամանակը ճշդրտելու, յիշելով օրինակի համար Բուղայի օրերը կամ նոյն ժամանակները։ Միայն թէ հոս ալ կրնան խնդիրներ ելլել։ Թարգմանչէ՞ն է այն թէ որեւէ հին գրչէ մը, կամ նոյն իսկ մի՞ գուցէ արդէն յոյն օրինակէն՝ զոր հայն առ-

---

րիշ բառ է ուրիշ իմաստով, ինչպէս Հիւբշման ալ կը նշանակէ (Gramm. I, 107, 244, 515.) Հնոց գործածածն է “Մետաքս„ (μέταξα) փոխառութիւնն արդէն Ե դարէն (Ոսկեբ., Ագաթ., Բարսեղ, եւն, տես նաեւ ՀԲ, Բ, 253) եւ ունկէ այլեւայլ ածանցներ։ “Շերամ„ գիտէ Բարսեղ ալ, բայց իբր որդոյն անուն (Վեց. Ը, տպ. Վենետ. էջ 157) գրելով “յայնմ զեռնոյ որ կոչի շերամ, որ է ջերդասաբեր„ եւն. Հմմտ. նոյն Բարսղի գրածը “Բոմբիւլոս (βομβύλιος) նիւթիչ է մետաքսոյն կերպասոյ„ եւն. (տես նաեւ ՀԲ, Ա, 1092, Բ, 476.) Ինչպէս ասոնցմէ եւ շատ ուրիշներէն կը տեսնուի՝ նախնիք “կերպաս„ ալ նոյն իմաստով կը գործածեն։ Իսկ “ապրիշում„ յետնոց քով միայն կայ. ՀԲ (Ա, 279) կը յիշէ Կաղանկատուացի, Նարեկացի եւ Գանձարան։

ջեւն ունէր։ Պիսիդէս ինքնին անշուշտ չէր կրնար Հագարացիքն այս ոճով յիշել։ Բայց իրմէ քիչ մ'ետքն յոյն գաղափարողները նուազ պատճառ չունէին նոյնպիսի մաղթանք մը ներմուծելու քան նոյն իսկ Հայք՝ իրենց չափովը։ Եւ կարծես այսպէս եղած ըլլալու է, մաղթանքը նաեւ յաւելուածիս մէջ Հերակղի եւ իւր յաջորդաց ուղղուած ըլլալով՝ "եւ զՀագարացիս եւս խրատել ընդ [illegible]"։ Բուն Հայ մը վերջին բառերը կցելու պատճառ մ'ունենալու չէր։ Թողունք այն պարագայն ալ որ "Հագարացիք" անյատուկ ոճով կը կոչէին Հայք ուրիշ ազգերն ալ. եւ այս՝ աւելի ուշ ժամանակ մը կրնայ ցուցընել նոյն յաւելուածին ներմուծուելուն։

Այսպէս կամ այնպէս գոնէ մերձաւորապէս ծանօթ են այն դարերն՝ որմէ յառաջ եւ որմէ ետքը չէ Հայ թարգմանութիւնը, դարքն Է—Ժ։ Պիսիդէս Է դարուն սկիզբը գրած է, իբր 628ին։ Հայ թարգմանութիւնն ամենէն կանուխ նոյն դարուն վերջերէն կրնար ըլլալ. բայց ըստ երեւութին քիչ մ'աւելի ուշ ըլլալու է։ Տեսանք որ շատ տարբեր յոյն օրինակ մ'ունէր Հայն իւր առջեւ, երբ թարգմանել սկսաւ. օրինակ մ'որ արդէն ծանօթ յոյն օրինակներէն շատ կը շեղէր՝ մերձենալով աւելի անոր՝ զոր սլաւ թարգմանն ալ գտած էր ԺԴ դարուն։ Այս ամէնը, եւ յատկապէս նմանահնչիւն ընթերցմանց շատ մը շփոթութիւնք, որոնց մաս մ'ալ բուն յոյն օրինակին մէջ արդէն այնպէս կը գտնուէին, կը ցուցընէ որ Պիսիդեայ գրելէն վեր բաւական ժամանակ անցած էր, եւ սկզբնագիրը ձեռագիր գրութեանց բնական ընթացքն ունեցած՝ շեղելով ձեռագրէ ձեռագիր, կրելով սրբագրութիւններ եւ նմաններ։ Ամենէն քիչ գոնէ դար մը դնելով այս ամենուն մինչեւ Հայերէնի թարգմանութիւնը, ամէն կանուխ հասած կ'ըլլանք Ստ. Սիւնեցւոյ օրերը՝ Ը դարուն սկիզբները։

Միւս կողմանէ հայերէնն ապահովապէս գոյութիւն ունէր Ժ դարուն, երբ արդէն կը գտնենք որ ծանօթ է հայ մատենագրաց։ Ուստի թարգմանութեան համար կը մնան իբր Ը—Թ դարերը, զոր աւելի եւս ամփոփել եւ ճշգրտել չենք կրնար առայժմ։ Բայց անշուշտ անկարելի պիտի չըլլայ աւելի ալ ճշգրտել, եթէ ոչ բախտով մը նոր ձեռագրի մը գտնուելովը՝ որ պահած ըլլայ յիշատակարան մը, գոնէ ուսումնասիրելով Ը—Թ դարուց հայ գրականութիւնն, ուր անշուշտ կարելի պիտի ըլլայ գտնել հայ Պիսիդեայ ծանօթութեան եւ գործածութեան հետքեր։ Ժ դարէն եւ անկէ ետքը բաւական առատ են այս հետքերը, նոյն իսկ աչքի առջեւ ունենալով միայն ՀԲ (Հայկազն. Բառգիրք), ուր նշանակուած են Պիսիդեայ Պատառկին ասութիւնքն եւ անոր համեմատականք միւս հայ մատենագրաց քով։ Կը չեշտենք՝ յաջորդ քանի մը համեմատութիւնք միայն պատահաբար մեր աչքին հանդիպած են յիշեալ տեղը, եւ միայն՝ Վենետկոյ Հատակոտորին կը վերաբերին։ Ամբողջականն այժմ հրատարակուած ըլլալով՝ համեմատաբար դիւրին է անոր համեմատականքը փնտռել բովանդակ հայ մատենագրութեան մէջ, ձեռնարկ մը՝ զոր ուրիշներու թողուլ ստիպուած ենք։

Ուսումնասիրուած են միայն Վարդանայ համեմատականքն, եւ այն՝ Սուքրեանի երկրորդ յօդուածին մէջ, զոր վերը նշանակեցինք[1]։ Վարդան Աստուածաշնչի իւր Մեկնութիւնը յօրինած է քաղելով Բարսղէ, Փիլոնէ, Աստուածաբանէ, Կիւրղէ, Եղիշէէ եւ ուրիշներէն, որոնց անուանքն ալ սովորաբար նշանակուած են լուսանցքի վրայ համառօտութեամբ[2]։ Բաւական տեղ կը գտնենք նաեւ

1 Տես յատկապէս "Բզմ.", 1875, էջ 254–57։

2 Տես նաեւ մեր Մատ. Թ. 229, զոր մանրամասն նկարագրած ենք՝ "Ցուցակ", 592–96։ Պիսիդէս ալ նշա-

"Պէ-էջ„ համառօտութեամբ, եւ ստուգիւ Պիսիդեսի կոչմունք են այն տեղերն՝ աւելի կամ նուազ ազատութեամբ յառաջ բերուած։ Զասոնք մի առ մի յառաջ բերած է Սուքրեան եւ համեմատած, զորոնք կրկնած է այժմ Հրատարակիչն ալ ծանօթութեանց մէջ[1]։ Բայց երբ Սուքրեան միակ օրինակ մը գործածելով՝ բաւական տարբեր կը գտնէր Վարդանայ ընթերցուածները, Հրատարակիչն այժմ կը նշանակէ Վարդանայ չորս ձեռագրաց ընթերցումներն, որով շատ տարբերութիւնք կը վերցուին, Վարդանայ ձեռագրաց միոյն կամ միւսին յատուկ ըլլալով, եւ ո՛չ Պիսիդեայ այն օրինակին՝ զոր Վարդան գործածած էր։ Այս չորս ձեռագիրքն են Վենետկոյ Մատենադարանի օրինակները, որոնց երկուքը՝ Թ. 999 (A) եւ Թ. 155 (B) բոլորգիր են, եւ երկուքը՝ Թ. 503 (C) եւ Թ. 552 (D) նօտրգիր են։ Յաջորդովս կը դնենք Պիսիդեայ եւ Վարդանայ այս համեմատականքը դէմ առ դէմ, միանգամայն իբրեւ օրինակ Պիսիդեայ հայերէնին։ Բախտով մ'ասոնք այնպիսի կտորներ են, ուր Պիսիդեայ հայերէնն առոյգ լեզու մը կը ցուցընէ, համեմատաբար աւելի ազատ հելլենաբան խրթին դարձուածներէ։ Բնագրին հետ մանրամասն համեմատութիւնը տես Հրատարակչին քով։

---

նակուած է հոն քանի մ'անգամ։ Մեր ձեռագրին ընթերցուածքը կը նշանակենք V համառօտութեամբ։

1 Տես ծանօթութիւնք տողերու՝ 85, 221, 254, 263, 945–47, 950–59, 977, 983, 1035 եւ 1320։ — Յաջորդ համեմատութեանց մէջ Վարդանայ տեղերը զետեղուած են Պիսիդեայ տողերուն կարգաւ. վասն զի Վարդան յաճախ յետեւառաջութիւններ ըրած է՝ քաղելու ատեն։ Մեր ձեռագիրը Թ. 229 այս կարգաւ ունի. Թղ. 13ա "Պէ-էջ. Ով մշտաշարժ . . . որ կառոյցն զնա„ (= Պիս. 85–89, 95, 97–102, 108–9, 125–27, 132–34։) — Թղ. 17ա "Պէ. "Որ զամենայն արար ոչ կարօտի յարհգականէ տալ զլոյս լուանի (— հմմտ. Պիս. 246 "Ոչ իբր թէ կարօտ գոլով լուսոյ

*Պիսիդէս:*

85 Ո զմշտաշարժ երկնի բնութիւն[1]
Գնդաձեւ խմատնագործ ձեղուանցն,
Բարձրութեամբ լայնացեալ, եւ այդքան հաստիւք
Խարխախ եղեալ[2], յոչնչի կառուցեալ
Որպէս խորան զգունդն ձգեալ...:

95 Նախահայեաց որատեսութեամբ սին տասց
97 Ըստ աղօտաբար ակնարկութեան տեսութեանն[3].
Կամ գունդ կիսակատար՝ հեցի օրինակաւն՝
Բարձրացեալ ի վեր կայս եւ կորացեալ[4]:
100 Կամ ըստ նմին ի վայր բերմանն.
Յանծանօթաբար շարժութեանցն
Ի ներքուստ կուսէ այլ երեւի թաքուցեալ...:
108 Կայիւք փախչի[5] եւ շարժիւք կայ միայ,
Կայս զշարժութիւնն ունի անճառաբար...:
125 Ոչինչ է սորա չափ՝ բայց անչափութիւն...:
132 Քանզի մեծ է՝ որպէս Աստուծոյ փոքր աթոռ.
Կամ գնացս յարուցեալ, որոյ յոգնումն ոչ գոյ,
Մինչեւ գալարեսցէ՝ որ կառոյցն զնա՝ բան...:

217 Ո՛վ որ զօկայս զայս զարեգակն ստացաւ...:
220 Զհաստարակաց ակն, զգեղեցիկն բիբ,
Զամենայնի կերակրիչն հուր[6], յորժամ ի ներքոյ երկրի է՝ գիշեր.

---

ստարի,, եւն), այլ մը գեղեցիկ գնիցէ կարգս, զխանաւն արար մեծի ջահին (— Պիս. 248–51.) Զարեգակն ասեմ... զմուտն գիշերոյ. (— Պիս. 217, 220–22.) Որպէս զի մեզ լցե- ոցա Նշուլիցն ... զսերմանեացն տղայս. (— Պիս. 255–57.) Ի տանս յայսմիկ ... ընդդիմանեցուկ. (— Պիս. 263–65.) — Թղ. 20բ. "Պէս. ինձ մաքրէ զաղտս ... եւ ոչ ախտանայ,, (— Պիս. 945–58.) Վերջինս շատ աղաւաղ ընթերցուածներով է մեր ձեռագիրը (V): Միւսները՝ որչափ կը տեսնենք՝ մեր ձեռագիրը չէ որոշած "Պիս.,, լուսանցանշով:

1 Վենետ. (Հատակոտորն Հրտ. Սուքրեանի) "Ով մշտաշարժ երկնի բնութեան:,,

2 Վենետ. "սարխախ,,, որ անցած է նաեւ Վարդանայ AC ձեռագրաց՝ "սարախեալ,,: ՀԲ ալ (Բ, 700) դրած է "Սարխախ,, բառ մը իբր համազօր "խարխախ,, բառին. եւ բայց ի Պիսիդեայ այս տեղէն կը յիշէ "Պրմ. Վրաց,, երկու անգամ, եւ նոյնպէս "Ցօնական,, երկու անգամ "սարխախ,, ձեւը

*Վարդան:*

85 *Ո՛վ մշտաշարժ երկնի բնութիւն* (DV *բնութեան*) *գնդաձեւ իմաստնագործ ձեղուամն, ըստ բարձրութեան եւ խորութեան լայնացեալ հաստիւք* (D *անհասիւք*, A *եւ* CV *անհաստիւք*,) *խարոխեալ* (AC *սարոխեալ յօշինչի*, B *խառոխեալ յօշինչէ*), *յօշինչի կառուցեալ.*
95 *Նախահայեաց* (B *զօր նախահայեաց*) *ոմն առաց ընդ աղօտ տեսեալ՝ գունդ կիսակատար հեցի* (D *լուսն. խեցի*) *օրինակաւ, ի ներքուստ կուռէ այլ երեւի թագուցեալ.* (AC *այլ եւ ի թաքուցեալ* C *լուսն. Գունդ կիսակատար հեցի. Կայիւք փախչի յեղեալ կիւին շարժական բնութիւն։*)

108 *Կայիւք փախչի եւ շարժիւք կայ եւ մնայ։*

125 *Ոչինչ է սորա չափ, բայց անչափութիւն.*
*Մեծին Աստուծոյ՝ փոքրիկ աթոռ.*
*Գ.նալով* (V *աթոռ գոլով*) *ոչ դադարէ, մինչեւ զալարեսցէ բան՝ որ կառոյց զնա.* (D *զալարեսցէ զվրանն*, B *եւ լուսն. եւ զալարեսցէ զնա բանն։*)
217 *Զարեգակն ասեմ*
*զհաստարակաց ակն, զգեղեցիկ բիբն* (A *զհաստարակ ակն*, D *զհաստարակաց գեղեցիկ բիբն.*) *զամենակերակրիչն հուր* (BV *զամենակերակրիչ հուրն*),

---

*գործած։ Ցես նոյն տեղը։ Չենք գիտեր թ՞նչ կապ ունի այս ամէնն իրարու հետ, ուր միեւնոյն սխալագիր ձեւը կը տեսնուի։*

3 *Վենետ.* "*...ակնարկութեանն տեսութեան։*"

4 *Հոս* "*կորացեալ*" (*κυρτουμένην*) *ունին ուղղութեամբ բոլոր ձեռագիրք. իսկ քիչ մ'ետքը* (*տող* 105) "*ի վեր ամբառնայ եւ խորանայ ի վայր*" (= *βαθύνεται κάτω*) *ունի Վենետ. դարձեալ* "*խորանայ ի վայր*"։

5 *Վենետ.* "*կայիւք շարժի* (*փխ.* "*փախչի*" = *φεύγει*) *եւ շարժիւք կայ մնայ։*" *Հմմտ. տող* 178 *եւ վերը։*

6 *Այսպէս Անտոնեանց օրինակը. իսկ Վենետ.* "*զամենակերակրիչն հուրդ*" (= *τὸ πάντροφον*), *զոր արդէն տեսած է Վարդան, եւ այն ըլլալու է թարգմանչին գրածն ալ։ Նոյն բառն ունին նաեւ Աստուածաշունչ գիրք՝ Իմաստ. ԺԶ.* 25. (*տես նաեւ ՀԲ, Ա,* 62։)

Պիսիդէս:

Իսկ գեր ի վերոյ[1] քան զերկիրս՝ մշակ տուընջեան…։

248 Այլ որպէս զի կարգ գնել ստացուածոցս
Գեղեցիկ կարեաց եւ իմաստուն իշխանութեան։
250 Զոմն լինել կարօտ ջահին՝
Զխոնաւարար պաշտպանութիւնսն ածել ի ներքս[2]…։
255 Որպէս զի լիցի խառնուածն ինչ՝ որպէս յամուսնու-
թեան
Եւ լծակցեալ՝ առ ի ծնանել երկոցունց
Գեղեցիկ ծնունդս ցուցցէ զսերմանելոցն տղայս[3]…։
263 Որպէս զի աշխարհս այս՝ որպէս տուն մեծ՝[4]
Անխախուտ ցուցցի, չորից սեանց օրինակաւ,
265 Առեալ ի ներքուստ հաստատութիւն ընդդիմա-
նեցուկ…։
944 Ո՞ր Գաղինոս զբազէիցն մաքրէ զախտս
945 Դառն տերեւով եղիգի,
Զշամանդաղ տեսանելեացն նուազ արբեալ։
Եւ ինձ զարիւն այծի վայրենւոյ
Ըմպէ ախտացեալ, եւ մաքրէ զախտն։
Դալար տերեւով կաղնւոյ մաղձադեղով
950 Ուղտ փսխէ զմաղաս այրեցած։
Իսկ զդալար սէզ կերեալ շան՝
Զգայռի զախտ սեաւ մաղձոյ.
Եւ գայլք՝ ղհող, նապաստակք՝ զընդառուս,
Առիւծ՝ զկապիկս, եւ նոքա՝ զգորտս[5].
955 Իսկ նոխազք զանամոքելի ասկամունին

---

1 "Գեր ի վերոյ քան զերկիրս„ ունի ուղղութեամբ Վենետ. (ὑπὲρ δὲ τὴν γῆν.) իսկ Անտ. օրինակը սխալմամբ՝ "իսկ գէշէր է վերոյ քան զերկիրս„ եւն։

2 Վարդանայ այս նշանաւոր ընթերցման մասին կ'ըսէ Սուքրեան ("Բզմ.„ 1875, եղ 256) "Թէ որ համարինք Վարդանայ յոյն բնագրէն անմիջապէս թարգմանած ըլլալուն փաստ մը գտնել, ահա զյոյն τὴν μὲν οὖσαν ըստ բնագրին Զոմն լինել՝ կարդացած կ'ըլլայ τὴν μὲν ὑγρὰν եւ թարգմանած զխոնաւն։„ Սակայն պէտք չկայ ամենեւին այսպիսի մեկնութեան, եւ Վարդան ոչ թէ յոյն բնագրէն գիտէ զՊիսիդէս, այլ հայերէնէն, ինչպէս արդէն համեմատութիւնք կը ցուցընեն։ Վարդանայ "զխոնաւն արար կարօտ„ (փխ. "զոմն լինել կարօտ„ եւն) պարզապէս սխալ գրչութիւն է, չփոթմամբ Պիսիդեայ յաջորդ տողին "զխոնաւարար պաշտ-

Վարդան:

զմշակն տուրնջեան (D զմշտակն) եւ զմուտն գիշերոյ։

248 Այլ զի գեղեցիկս գնիցէ կարգս, զխոնարհ ուրար կարօտ (V չունի "կարօտ„) մեծի ջահին։[5]

255 Որպէս զի լիցի ոսցա նշուլիցն խառնումն ինչ, որպէս յամուսնութեան (D ամուսնութեան,) ծնանել եւ սնուցանել զջերմանեացն տղայս։

263 Ի տանս յայսմիկ՝ կառուցեալ ի չորից սեանց ի ներքուստ հաստատութեան ընդդիմանեցուկ։

944 Բազէ ղշամանդաղ աչացն որբէ
զառն տերեւով եղեգի. (նոյնպէս եւ ծիծառն ղխաւարեալ ակն ծագուցն. տե՛ս 1318։)
Ինձ՝ դալար կեղեւով կաղնոյ մաքրէ զախտս, եւ ղարիւն վայրենի այծի (AC ընձու. V տես վարը.)
ուղտ ղայրեցած մաղձն փոխէ գոնգեղ ուտելով.
շուն՝ դալար սեզ ուտելով՝ ընկենու զեւաւ մաղձն.

գայլք հող ուտելով, եւ նապաստակք զընդունէս,
առիւծ զկապիկ, եւ նոփս զգորտս.
Նոխազ զառկամն (D լոռ. զառկամոլ),
եւ արագիլ ուտէ զօձս եւ ոչ ախտանայ։

---

պանութիւնս„ եւն բառը գրելով նախընթաց տողին մէջ։ [illegible]յ խնդրական ըլլալ թէ ինքը Վարդա՞ն ըրած է շփոթութիւնս թէ իւր գործոյն հնագոյն գրիչ մը։ Ցամենայն դէպս արդի բոլոր ձեռագիրք միապէս պահած են նոյն շփոթուած ընթերցումը։

3 Այսպէս օր. Անտ., իսկ Վենետ.՝ "եւ լծակցեալ ի ծնանել երկոցունց զգեղեցիկ ծնունդս, զջերմանցն տղայս առեալ զլուսինն (Անտ. "առեալ լուսնի„) ջերմ փեսայ„ եւն։

4 Վենետ. "...եբրեա զտուն մի մեծ„ եւն։

5 Սուքրեան (անդ՝ էջ 257) "Եւ նոփա՝ յոյն Էս կաբող, այս երկու բառից նման գրութենէն խաբուելով կամ թարգման կամ Վարդան։„ Ուղիղն է առաջինը։ Վարդան պարզ օրինակած է նոյն սխալմունքն, զոր չէր կրնար ալ իմանալ, բայց միայն եթէ յոյն բնագիրը համեմատէր։ Բայց

Պիսիդէս:

Կերեալ՝ ի բաց թքանէն զանհալութիւն.
Եւ առանց Ասկղեպեայ՝ ազարտեալ տառածոյ՝
Արագիլ ուտէ զօձս, եւ ոչ ախտանայ:
959 Ուստի՞ չնչէ Կատուղղէպան[1] բնաւորեալ
960 Հրեղէն շունչ ընդ ռընգունս
Եւ ի խոնարհ զհոսումն բոցոյն շրջէ....:

977 Եւ փոքրիկն հիւղոս զերկակեցիկ[2] պապանձ
Կրոկոդիղոս՝ ապականէ, կառուրեալ զաղխան.
Քանզի ի քուն գոլով՝ բաց ունի զբերանն.
980 Ուտէ զաղխն, եւ որպէս ընդ խողովակ՝
Ընդ նորոյն տեղին
Արտաքս ելանէ ողջ:
983 Իսկ այլ հաւ իմն բնաւորեալ (որում անուն է տրոքիղոս.)[3]
Սա կերակրի ի մնացեալ
985 Մսոյ՝ յատամունս գազանին.
Եւ ցուցանելով զգութս սրտի բարեկամի,
Ի սեղանոյն կերակրոյ պատկառեալ,
Յորժամ զհիւղան մերձ տեսանէ՝
Ճչէ, եւ թեւօքն բախէ.
990 Եւ մագլամբքն քորէ, եւ նախ քան զապանումն
Քարոզ կենաց լինի սատակմանն.
Եւ յանդիմանէ զսեղանոցն բարեկամս,
Որք ոչն մարտակից լինին՝ ի նեղութեան բարեկամաց իւրեանց....:

---

ինքը յոյն բնագիրը չունէր առջեւ, այլ Հայերէնը: — Ն.յս ամբողջ մասը (944–58) շատ աղաւաղ ունի V կամ մեր ձեռագիրն, այսպէս՝ "Պխ. ինձ մաքրէ զաղտ արեամբ վայրենի այծի, ուղտն զայրեցած փախէ գնդեղ ուտելով, շուն գալար սեզ կերեալ՝ ընկենու զսեւ մաղձն, գայլք հող, նապաստակ բնգնունս, առիւծ զկապիկ, եւ նորա զգորտ, նոխազ զաղկամոն, եւ արագիլ ուտէ զօձս եւ ոչ ախտանայ:"

1 Հոս ինչպէս կը տեսնուի չկայ "Վայրահայեացդ" մեկնաբանութիւնը. բայց կայ ուրիշ տեղ մը՝ տող 932, ուր Պիսիդեայ Հայերէնը մուծած է 11 տողեր, որ կը սկսին՝ "Ուստի՞ առեալ Կատուղէպան, որ է չոքն Վայրահայեաց, Հրաբերձ բերան, ասաքէ զոգին ի շունչ ապականիչ, Յերկիր կոյս բանայ զբերան իւր եւ Հայի ի խոնարհ: Եւ ի վայր

*Վարդան:*

959 Կատովփիլոոն (AC *կատովփիլայոն*, D *կատովլայոն*) *Թռչուն է, որ կոչէ կոյրոնոպոյդոյ¹, զհուր բերանոյն յերկիր առաքէ, զի մի վնասեսցէ զոք ի կենդանեաց:*

977 *Եւ են որք խորամանկութիւնս ունին, իբրեւ զհիւղոսն փոքրիկ, որ գտեալ ի քուն զկոկորդիլոս* (A *զկրոկոդիլոս*) *գազանն, մտանէ եւ ուտէ զամենայն փորոտիսն, եւ ընդ նոյն տեղն ի դուրս ելանէ:*

983 *Եւ հաւն տորղքոս կերակրի ի մսոյ՝ որ մնայ յատամունսն հիւղոսին, եւ բարեկամութիւն կալեալ ընդ նմա՝ ճչէ, եւ թեւահանեալ* (B *թեւահառեալ*) *փարի, եւ մագլցքն քորէ, յամօթ՝ որոց մոռանան զսեղան սիրելեաց:*

---

*հայելովն՝ չափաւորէ զմնասն„ եւն: Վարդան այս տողերը տեսած է:*

² *Հրտ. սրբագրած է իրաւամբ "զերկակեցիկ դազանն„* Օրինակն էր *"զերկակեաիկ„: Յոյնն է՝* ὑγροχέρσῳ θηρίῳ, *բառական "խոնաւացամաք„՝ նոյն իմաստով, այսինքն՝ երկակենցաղ:*

³ *Յաւելուածս լուսանցագրութիւն մըն է հայերէնին. յունարէնն որեւէ անուն չունի հոս: Հայ լուսանցագիրը Փիլոնէն գիտէր "Հաւուն„ անունը. (տես ՀԲ. Բ. 898:) Վարդան առնելով այս ալ՝ ինչպէս միւսները՝ թէեւ "տորոքոս„ աղաւաղ ձեւով, կը ցուցընէ որ իւր գործածած Գիտդեայ օրինակն արդէն շատ հին գաղափարէ մըն էր, երբ Հայ բնագիրը յաւելուածներն ընդունած էր եւ սրբագրուած:*

*Պիսիդէս:*

1030 Ո՞վ ուսուցանէ զաւակս առնել օձաձկանն, (որ կոչի էնքեղիս.)[1]
Անարգանդ գոլով, առանց սերման,
Ցիւր ի կողիցն
Զհաստատուածոն սերմանեալ ի աղմի,
Բուսուցանէ զաւակս օտար ծննդեամբ։
1035 Եւ կողամայր[2] լինի ծովային։
Եւ ոչ խօսելով՝ աւանդէ բնութեամբ
Թէ ոչինչ յանցեաւ Մովսէս զասելն՝
Կող լինել զազգիս գողացեալ[3]...։
1318 Աւատի՞ առնէ ծիծառն՝ ոչ երեւելով
Աչաց երեքօրեայ՝ աչս,
1320 Դալարի ինչ չփեալ ընդ բիբսն[4]...։

Այս համեմատութեանց մասին հարկ չկայ երկար դիտողութիւններ ընել։ Վարդան գործածած է ուղղակի հայ թարգմանութիւնը, ոչ թէ բնագիրը, որ արդէն ինքնին հաւանական չէր, իւր բոլոր միւս աղբիւրներն ալ հայերէն թարգմանութիւնքն ըլլալով։ Մէկ երկու տեղ որ ուղղակի յոյն բնագրէ մը թարգմանութեան կարծիք տուած էին Սուքրեանի, այժմ բոլորովին կը մեկնուին, եւ ճիշդ հակառակը կը ցուցընեն։ Վարդան պահած է մինչեւ անգամ սխալ կամ շփոթեալ թարգմանութիւնքն, ինչպէս "Նոտա (փխ. "կարապք") զգորտս" եւն։ Իրեն ինքնայատուկ երեւցած "ղխանան աշար

---

1 Նշանաւոր է յաւելուածս անով որ լուսանցագիրը յոյն բնագիրը համեմատած ըլլալու է, ուր կը գտնէր τὴν ἔγχελυν, զոր թարգմանն "օձաձուկ" փոխադրած էր պարզապէս։ Բայց լուսանցագիրը կրնար նաեւ Բարսղէն գիտնալ նոյնը. (տես ՀԲ, Ա. 660 "էնքեղիս։") Վարդանայ "անքիլա", նոյնպէս աղաւաղ է։

2 Շփոթութիւն մըն է՝ եթէ ոչ գրչաց աղաւաղութիւն՝ Վարդանայ ըսելը թէ "անքիլա, որ կոչէ կողամայր," երբ տեսակ մ'անուն էնքեղիսի. մինչ Պիսիդէս այլաբանութեամբ ըսած է թէ նոյն օձաձուկն անարգանդ ըլլալով եւ կողէն միայն ծնանելով "կողամայր լինի (= πλευρομήτρα γίνεται) ծովային", եւն, ինչպէս նշանակած էր արդէն Սուքրեան (անդ՝ էջ 257։)

*Վարդան:*

1030 *Ձուկն անքիլոս* (B *աքիլոս*, C *անքիլոս*), *որ կոչի խողամայր*[2], *որովայնս ոչ ունելով, բայց միայն գլուխս եւ մերկ կողերս, ուստի կատորատեալ* (D *կատրատեալ*, B *կատորեալ*) *անկէ եւ առնէ զաւակս: Ուրեմն հաւաստի է* (B *հաւատալի է*) *կին ի կողէն Ադամայ ստեղծեալ...:*[3]

1318 (*Բազէ զշամանդաղ աչացն սրբէ... եղեգի. տես* 944) *նոյնպէս եւ ծիծառն զխաւարեալ ակն ձագուցն:*[4]

*կարօտ մեծի ջահին„ ոչ թէ յոյն բնագիր մը կ'ենթադրէ. այլ ընդհակառակն խառնակութիւն մըն է հայերէնին կրկին տողերուն՝* (250) "*Ձուկն արար կարօտ ջահին* (251) *շնոտատորի պատշաճութիւնս„ եւն: Վերջին բարդ բառն է որ լուծուած է "շնոտատորը„ բառերուն: Վարդան մինչեւ անգամ արդէն սրբագրեալ եւ լուսանցագրութիւններ ունեցող հայ օրինակ մը տեսած էր. իրեն քով կը գտնենք հայոյն լուսանցագիր-յաւելուածները՝ "կատովղէպս որ կոչի փայրահայեաց„, "Հաւ... որոմ անուն է որոփէղոս.„ "օձաձկանն որ կոչի էնփեղիս„, ինչպէս արդէն նշանակեցինք: Իր օրով հայ-*

---

[3] *Պիսիդեայ հայ թարգմանն շփոթութիւն մ'ըրած է գրելով Եւայի համար "կող լինել զազգիս գողացեալ,„ ուր յոյնն է՝* πλευρὰν γενέσθαι τοῦ βίου (*Մխյն* τοῦ γένους = *Հայ*) λοχεύτριαν, *այսինքն՝ "կող լինել գկենաց* (*Մխյն զազգին*) *ծննդական:„ Թարգմանը շփոթած է* λοχεύω (*ծնանիլ եւն*) *եւ* λοχάω (*դարան գործել, ննջել, որմէ անշուշտ "գողանալ:„*) *Օրինակն ալ հոս աղաւաղ է՝ կարդալով "... զազգիս գողցեալ„: Վարդան իմաստը միայն առեր է "կին ի կողէն Ադամայ ստեղծեալ:„*

[4] *Վարդանայ քով այս խօսքը բուն վերն էր, կից ուրիշ խօսքի մը, տես* 944: *Այն տեղ մեր օրինակը կամ* V *չունի այս ամբողջը, ինչպէս նշանակեցինք, սկսելով* 947 *տողով:*

երէնն ըստ այսմ արդէն բաւական մաշուած էր գարերու ընթացքովը։ Միւս կողմանէ Վարդանայ նպատակը չէր Պիտիդեայ բնագիրը մեզի պահել, այլ միայն իւր նպատակին յարմար գործածել. ուստի ազատութեամբ վարուած է, յաճախ քաղելով միայն, առանց բնագրին կարգն ալ ամէն տեղ պահելու։ Այլապէս չէ վարուած արդէն միւս բնագիրներուն հետ ալ, զորոնք նոյնպէս գործածած է։

Վարդանէն յառաջ Ն. Լամբրոնացի ալ յաճախ գործածած է զՊիտիդէս, աչքի առջեւ ունենալով՝ ինչպէս ըսինք՝ նաեւ միայն Վենետկոյ Հատակոտորին համեմատականքն։ Միակ օրինակ մը բաւական է ապացուցանելու այս կէտը։ Պիտիդեայ սա խօսքը (տող 242—3) “Ո՛ր զաղօտ ջահն լուսնի յարեգական հրափայլութենէ կենդանախարուկեալ”՝ յառաջ կը բերէ Լամբրոնացի Սաղմոսի Մեկնութեան մէջ այսպէս՝ “Այլ եւ լուսին, զոր ողօր ջահ անօրինեաց արարիչն, յարեգական փայլմանէ կենդանախարուկեալ”[1] եւն. (տես ՀԲ, Ա, 1085։) Աստի արդէն բաւական է, թողլով նաեւ ուրիշները[2]։

---

1 “Կենդանախարուկեալ” սովորական է, տես ՀԲ՝ անդ։ Կ՚արժէ սակայն յիշել Դիոնեսեայ սա խօսքը՝ “Եռանդնել զնոսա եւ կենդանախարուկել ի նմանն կոյս ջերմութիւն” (տես ՀԲ, Ա, 662), որ կը յիշեցընէ՝ բաց ի ներկայ խօսքէս՝ Պիտիդեայ տող 276 “Զի մի գուցէ ջերմութիւնն խարուկեալ եռանդէ” (այսինքն՝ կիզցէ, ինչպէս նշանակեցինք։) “Հրափայլութեան” համար հմմտ. “Կայծակն հրափայլութեան։ Մոգկոյ. ԻԴ. — Քարինք եւ երկաթ ի ծննդականութիւն հրափայլութեան. Խոսր.” (տես ՀԲ, Բ, 140։) Թէ՛ Մագիստրոս եւ թէ Խոսրով Անձեւացի կրնան Պիտիդեայ հայերէնէն օգտուած ըլլալ։

2 Հմմտ. Պիտ. 95 “Նախահայեաց սրատեսութեամբ ոմն ասաց” եւն, եւ “Զղջումն երեւեցուցանէր՝ որում անմարթ է հետեւել նախահայեաց բնութեանն. Լմբ. Հմբ. — “Զայն փառքն որ յետ լինելութեան ունելոց էր ի ստացանէ՝ նախահայեցութեամբն ետես. Լմբ. Սղմ.” (տես ՀԲ, Բ, 390։) Նոյնը նաեւ Նարեկացի, տես վարը. — Պիտդ. 241 “Զաշ-

Նոյնպէս միայն Հատուկտորէն դատելով՝ Նարեկացի ալ յաճախ կը գործածէ զՊիսիդէս[1], ինչպէս նաեւ իւր ազգականն Անանիա Նարեկացի[2]։ Հատուկտորէն դուրս ալ եթէ համեմատուի ամբողջը՝ չենք տարակուսիր՝ շատ առատ պիտի գտնուին համեմատականներ ոչ միայն յիշեալ հեղի-

---

խարհ ի շեղելն իւրում փաղաղէր„ — Լամբրոնացի Մեկն. Սղմ. "Զաշխարհ ամենայն օրէկօնն կողոպէր„ (տես ՀԲ. Բ, 925–26։) Ցես անդ նոյն բառին ուրիշ օրինակները քիչ մը տարբեր իմաստով ալ, ինչպէս նշանակեցինք։ Ցիշենք սակայն՝ "Զօրէն հրոյ մտեալ փաղաղէր զբոլոր բնութիւն Պէտ.„ (ՀԲ, անդ։) Անորոշ "Պիտառութիւն„ չի թողուր քննել թէ կապ ունի ասի Պիսիդեայ հետ։

1 Հմմտ. "Նախահայեացդ աչօք նկատեալ զպատժապարտիս չարագործութիւն՝ եւ յօրինեցեր, Նարէկ ԺԸ.„ (ՀԲ, Բ, 390, տես Պիս. 95.) — "Որ զԱրտաքսօն միացուցեր, Նար. ԼՆ.„ (տես ՀԲ, Բ, 260 = Պիս. 366 "Լուսաբեր ծանուցեալ եւ մթացուցեալ զերեկ„, որոյ մասին վերը խօսեցանք։) — Պիսիդ. 182 "Նւ զերեփլօաօնան (τὸ τριφεγγὲς) սրբութեանն երգս.„ = "Խոստովանեսցուք զերեփլօաօնան անբաւութիւն„ Նար. Ցուլեր. "Ըստ գոյութեան մի, եւ ըստ անձնաւորութեան՝ երեփլօաօնան„ Շնորհալի Մեկն. Թղթոց կթղ., ուստի Ս. Երրորդութեան մասին Պիսիդեայ հետեւելով, ոչ Եպիփանու՝ որ կ՚ըսէ "Ով կուսական աշտանակ երեքլուսեան„ Ս. Կուսին համար. (տես ՀԲ, Ա, 680։) Նարեկացի ուրիշ ձեւով մ՚ալ կրկնած է՝ "Համապատիւն կցորդութեանց ... երալօաօանն զուգակցութեանց„ եւն. (տես ՀԲ, Ա, 661։) — Պիսիդեայ 298 բառծը "Թափի տերեւն էքրէ– Թ–ելօյ Լօղ„ կը յիշեցընէ ճշդիւ Նարեկացւոյ "էքրէ– Թ–եալ ի Լօղ„ գրածը՝ Մեկն. Երգ. (տես ՀԲ, Բ, 188։) Մանրամասն ուսումնասիրութիւն մը շատ բան յերեւան պիտի հանէ անշուշտ։

2 Պիսիդ. 87 "Ով մշտաշարժ երկնի բնութիւն, գնդաձեւ իմաստնապործ ձեղուանն, բարձրութեամբ լայնացեալ եւ այսքան հաստիւք խարիսխ եդեալ„ եւն։ Հմմտ. ասոր հետ "Անխափան եւ անարգելն հրաման հաօփէ–ւ հաօփօփէւլ ի պարզուածս բնէնօյեղօն յարկին. Անան. Եկեղ.„ այսինքն Անանիա Նարեկացի ճառ Եկեղեցւոյ. (տես ՀԲ Բ, 54։)

*նաւկներու քով, այլ նաեւ ուրիշներու՝ այսպէս Գ. Մագիստրոսի եւ այլոց, որոնցմէ այժմ քիչ բան համեմատելի նշանակած է ՀԲ[1], որ փոքրիկ պատառիկ մը միայն կրնար գործածել իր հաւաքման։ Եւ թերեւս՝ ինչպէս ըսինք՝ հնագոյն գրութեանց մէջ ալ հետքեր գտնելով, կարելի ըլլայ Պխիդեայ հայ թարգմանութեան ժամանակն աւելի ճշդրտել քան որչափ այժմ կրնանք, երբ գոնէ Ը եւ Թ դարերու մէջ անորոշ ծփալ ստիպուած ենք։*

*Այս ամէնը թողլով այլոց՝ որ աւելի պարապ եւ յարմարութիւն ունենան, կը կնքենք հոս մեր ուսումնասիրութիւնն, որ արդէն մեր ծրագրած մատենախօսական շրջանէն ալ անդին անցաւ եւ երկարեցաւ աւելի՝ քան որչափ կը բաղձայինք։*

---

1 *Մէկ երկու բան տես վերը։ Հմմտ. նաեւ "ի հոսից ըլլամձեւ կոհակաց. Մագ. ԻԹ.", (տես Պխիդ. 214. "հոսք" = ῥοή. ՀԲ, Բ, 120։) Մագիստրոս՝ որ այնպէս հմուտ է բոլոր յունախօս գրականութեան, շատ լաւ ծանօթ ըլլալու էր Պխիդեայ, կէտ մ'որ արժանի է յատուկ ուսումնասիրութեան։ — Ուրիշներէն հմմտ. Պխիդ. 341 "կառավարելով ժամանակս եօթն շրջագայիւք աւուրց շուրջընթացիւք, անցուցանելով զկենցաղոյս սեաւ առեղաւ սովորականաւ եւ անուաւ անցուցանելով" եւն։ Աստ հետ հմմտ. "կեանք աշխարհիս հոլովման անուոյ նման է, որ իբրեւ զսեաւ սայլի շրջի չորիւք յեղանակօք. Ցօնաչան" (ՀԲ. Բ. 708։) — "Առեղ" բառին համար (յոյնը ῥυθμός, ՀԲ մեկնէ ուղղութեամբ՝ կառաց քեղի.) հմմտ. "ի Ցորեղէն առեալ շարժումն կուրծն սայլին. Նարեկ. Ցող." "ի սաստիկ շրջագայութենէ սայլեցն բազում անգամ եւ առեղք փայտիցն վառամամբ հրոյ հրդեհին. Թովմ. Արծրունի Ա, Թ." (տես ՀԲ, Ա, 302։) Արծրունւոյ խօսքը կը ցուցընէ որ ինքն "առեղ" կը գործածէ լիսեռին բարձերուն իմաստով, որոնք կը բորբոքին։*



## ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գուլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց. (պատկերազարդ:) 1890: 8° Երես՝ 50: Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Դեմետրիոս Տանի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թարգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Ալպէր Տըվշէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թարգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թարգմ. Ոնոփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թարգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Ֆր. 1

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794–1860: (1 լուսանկարով:) 1893: 8° Երես՝ 232: Ֆր 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք զրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Է+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զընկատիպ.) 1893: 8° Երես՝ Ժ+533: Ֆր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Ջեննը Գլակ, Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես՝ 78: Ֆր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտակ՝ 55 պատկ.:) 1894: 8° Երես՝ 103: Ֆր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԺԱ+43: Ֆր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Ց. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8° Երես՝ 9+145: Ֆր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտր. Ա.: Ա—Զ: Ա. Նեմեսիոս: Բ. Պրոկղ Դիադոխոս: Գ. Խոսրովիկ: Դ. Գիրք Հերձուածոց կամ Եպիփան: Ե. Պրոկղ: Զ. Սեկունդոս իմաստասէր: 1895: 8° Երես՝ ԺԲ+294: Ֆր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես՝ 202: Ֆր. 2.50

ԺԸ. Տիգրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8° Երես՝ 192: Ֆր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կեռլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8° Երես՝ Թ+352: Ֆր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յակովբոս Վ., “Վարդապետութիւն առաքելոց„ անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: 8° Երես՝ Թ+442: Ֆր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Մասն Առաջին՝ Պատմական տեղեկութիւնք Սասնոյ վրայ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: 8° Երես՝ Ը+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աըգաւրու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գաբրիէլ Վ. Մէնէվիշեան: 1897. 8° էջ ԺԶ+107: Փր. 1.50

ԻԳ. Ցովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք Նախնեաց ուղղօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ուղղօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, 8° էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Ցովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք Նախնեաց ուղղօրէնի եւն: Տետր Բ: 1897: 8° էջ Ա—Ը+273—522: Փր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Ցաւելուածք թարգմանչին՝ 1. Ցանկ 1895—1897 Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897 8° էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մեսէվիշեան Հ. Գաբրիէլ Վ., Գիրք (կամ յօդուած) գրելու արուեստը: Նորոս հեղինակներուն ուղղեալ քանի մը կարեւոր ակնարկութիւններ: Ցաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: 8° էջ Ը+123: Փր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: 8°, 56 էջ: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Ց., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով): 1898: 8° ԺԱ+202 էջ: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Ց., Փաւստոս Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Մ. Խորենացու աղբիւրների ուսումնասիրութիւն: 1898, 8° 175 էջ: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899, 8° Երես՝ Ը+26: Փր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Ց., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ ԺԲ+369: Փր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Ց., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ միճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ Ժ+161: Փր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հատոր 1780—1825. (1 զնկարիւ:) 1899: 8°. Երես՝ Է+558: Փր. 5.—

ԼԴ. Գազամճեան Ց., Եւդոկիոյ Հայոց գաւառաքաղաքը: 1899: 8° Երես՝ Է+124: Փր. 1.—

ԼԵ. Կարիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Ցակովբոս Վ. Տաշեան: (1 աշխարհագրկն տախտակով:) 1899: 8° Երես՝ 48: Փր. —.75

ԼԶ. Տաշեան Հ. Ց., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: 8° Երես՝ ԺԱ+198: Փր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Ց., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է—Ժ. Խրիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Ցորդորականք առ Ցուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: 8° Երես՝ ԺԲ+388: Փր. 4.50

---

